# ՀԱՅ-ՎԵՆԵՏ

ԿԱՄ

ՅԱՐԸՆՉՈՒԹԻՒՆՔ

ՀԱՅՈՑ ԵՒ ՎԵՆԵՏԱՑ

Ի ԺԳ-Դ ԵՒ Ի ԺԵ-Զ ԴԱՐՍ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1896

# ՀԱՅ-ՎԵՆԵՏ

ԿԱՄ

## ՅԱՐԸՆՉՈՒԹԻՒՆՔ

## Հ Ա Յ Ո Ց Ե Ւ Վ Ե Ն Ե Տ Ա Ց

Ի ԺԳ-Դ ԵՒ Ի ԺԵ-Զ ԴԱՐՍ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1896

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի սկզբան գրոցս բացատրուած է և գրուելուն բարոյական առիթն, զարմանալին ի համաշխարհական պատկերի պատմութեան՝ Յարընչութիւն այդ երկու հեռաւոր ազգաց երկրի, Հայոց և Վենետաց. որոյ տպաւորութիւնն կամ ազդեցութիւն ի միտս գրողին՝ այնքան զօրաւոր է, որքան որ այս երկու ազգք և երկիրք՝ մէկ մէկ կերպով իրեն կրկին հայրենիք են եղած. մէկն՝ արեամբ և ծննդեամբ, միւսն՝ երկար և գրեթէ բոլոր կենացը բնակութեամբ։ Ասոր վրայ հարկ է աւելցընել և այս բնակութեան քաղաքին (Վենետկոյ), հարուստ բայց դեռ ոչ բոլորովին քննուած և քաղուած Դիւանքն. ուր՝ քան զամենայն դիւանաց աշխարհի՝ բազմաթիւ և բազմադէմ հաւաստչեայք (documents) և գրուածք պահուին՝ Հայոց ընդ օտար ազգի մի յարընչութեանց. կամ, պարզաբար ըսելով ազգային հայկական յիշատակաց՝ ի Վենետիկ, և ընդ ժողովրդեան Վենետկոյ Հասարակապետութեան, 7–800 տարիներու անընդհատ տեւողութեամբ. որ և շարունակուի հիմայ այլ, գըլխաւորապէս Միխիթարեան միաբանութեան մայրավանքով և տպագրատամբ, և Մուրատ-Ռափայէլեան վարժարանօք։

Ոչ լոկ հետաքրքրութեան՝ այլ և մարդավա-
րութեան պարտք մ'էր մեզ՝ գիտնալ և յայտ-
նել այս երկուց ազգաց յարընչութիւնքը, մե-
կուն Դիւաններէն և միւսոյն ազգային պատ-
մութիւններէն և աւանդութիւններէն հանելով
և հիւսելով: Թէ ոչ հաւասար՝ այլ և ոչ սա-
կաւ պարտք մի էր և Վենետաց՝ գիտնալ ի-
րենց փառաւոր և բազմադարեան ինքնիշ-
խանութեան ատէն՝ մեր ազգին հետ ունեցած
որ և է կերպով գործակցութիւնը. այս՝ որքան
յայտնի է եղեր իրենց երբեմն Հասարակապե-
տութեան վերջանալէն ետեւ դար մ'անցնելով,
մոռացուեր է, և սակաւուց միայն և սակաւ
ծանուցուեր է: Մեր երկար ամիսներով և տա-
րիներով քննութիւնք և ընդօրինակութիւնք ի
մեծի արքունի Դիւանատան, այլ և ի Նօտա-
րականն (որ քանի մի տարի առաջ յարեցաւ
միացաւ ընդ առաջնոյն), և որոյ պաշտօնեայք
անձնայն օգնութիւն և մեծարանք ցուցին մեզ,
բաւ բնածին ընտել և կակուղ վենետկեան
բարուց, միանգամայն և իրենց հետաքրքրու-
թիւնը շարժեցին գիտնալու՝ ինչ է մեր գտածը
և հաւաքածը. մանաւանդ երբ (թէ և շատ քիչ)
հայերէն գրուած մի ըլլար հանդիպածն, կամ
չթացուած կտակ մի: Պատշաճ էր և մեզ, ոչ
միայն այս իրենց ներկայ մարդասիրութեանն
համար, այլ և իրենց նախնեաց և Հասարա-
կապետութեանն, (զոր այնքան դարեր ցուցած
են մեր ազգին պանդխտելոց և երբեմն վա-
ճառականաց, և իբր 200 տարիներէ ի վեր
նոյն մերազգի Հօր Մխիթարայ և իր միաբա-

նութեան), իրենց ընծայել մեր աշխատանաց և գիշտից երախայրիքը։ Եւ այսպէս ըրինք, երեք տարի առաջ (1893), իրենց լեզուաւ հրատարակելով հիմակուան հայերէն հրատարակուածին առաջին մասն, կամ Ա. Ցեղանակն, նոյն անուամբ՝ ինչպէս ի հայումս՝ Հայ-Վենետ կոչելով, իտալերէն. L'*Armeno-Veneto.* Compendio storico e Documenti delle Relazioni degli Armeni coi Veneziani. Primo Periodo, Secoli XIII-IV. Այս մասն՝ Ա. Ցեղանակն՝ գուշէ աւելի քան մեզ՝ կերպով մի իրենց (Վենետաց) հետաքննական էր, ի մէջ այնքան ազգաց՝ նա և արեւելեան քրիստոնեայ ինքնիշխան տէրութեանց, մէկ հատիկ այնպիսի տէրութեան մի հետ դաշնակցելն։ Այդ տէրութիւնն կոչուէր և էր մեր Հայոց Ռուբինեան հռչակեալ հարստութիւնն, որ դար և կէս թղթակից և դաշնակից եղած է ընդ Հանրապետութեան Վենետկոյ. ընդարձակելով առոր թեւաւոր առիւծուն թռչանքը, և տալով ազատութիւն Սիսուանայ մէջ տուն, դատարան, եկեղեցի և փնդուկ հաստատելու, և անոր անդադար ծովակրկիտ և վաճառախնդիր, անկուշտ նաւերուն՝ ապահով և ոսկեղէն նաւահանգիստ մի, Այաս. հայկականն Վենետիկ։ — Ըսածէս և ի վաղուց յայտնի է, որ այս Ցեղանակիս՝ երկուց ազգապետաց, թագաւորին Սիսուանայ և դքսին Վենետկոյ՝ թղթակցութիւնքն՝ գլխաւորապէս և հիմնապէս ասոնց վաճառաշահութեան նկատմամբ էր, որ և Հայոց եւս ոչ սակաւ առիթ էր շահու։

Յայտ է եւս, որ ասոնց դրած և գրած դաշինքն՝ այս մեր դարուս բաւական ծանուցաւ եւրոպական գիտնոց, մանաւանդ վաճառականութեան վրայ գրողաց, նա և մեծաւ մասամբ հրատարակուած են յայլեւայլ անձանց, և աւելի շատ Վիկտոր Լանկլուայի ձեռօք՝ ի վանս մեր։ Բայց, այդ Հայոց և Վենետաց վերաբերեալ ծանօթ արքունի գրուածքն՝ հազիւ 10 կտոր բան կըրնան ըլլալ, դժբաղդաբար շատ անոնց նմանները այրած կորած ըլլալով։ Բաց ի մէկ երկու այդպիսի նմաններէն, զոր առաջին անգամ հրատարակեցինք՝ մեր վերոյիշեալ իտալերէն գրուածին մէջ, նոյնպէս առաջին անգամ հրատարակմամբ՝ այդ պատմական գրուածին յարեցինք 350էն աւելի հաւաստչեայք եւս, թէ՛ կարճ թէ երկայն, յայլեւայլ դիւանական գրոց գաղափարելով, որք պատմական մասէն մէկ ու կէս անգամ աւելի են քանակաւ։ — Այդ պատմական մասն՝ արդէն քիչ քիչ հայերէն այլ հրատարակուած էր ի Բազմավէպ օրագրի՝ յիտալականէն թարգմանելով, և հիմայ բովանդակն այս գրոցս մէջ։ Բայց զի հաւաստչեայքն գրեթէ բոլոր, բաց ի սակաւուց, լատիներէն գրուած են, սակաւքն իտալերէն և փռանկերէն, և մեր հասարակաց հասկանալի չեն, թարգմանելն այլ շատոց համար այնքան պիտանի պիտի չըլլար, մանաւանդ որ անոնց ծուծն անցած է ի պատմական մասին իսկ փափագողք կըրնան իտալերէն գրուածին մէջ գտնել։

Նոյն պատճառաւ Բ Յեղանակին (որ միայն

հայերէն անա հրատարակուշի) հաւաստչեայքն այլ՝ որ մեծագոյն մասամբ իտալերէն են, չեմք աւելցընէր, արդէն պատմական մասը չափաւոր և բաւական համմարելով։ Գուցէ այս մասն (Բ Ցեղանակ, ԺԵ—Զ դար) Վենետաց այնքան հետաքրքրական չըլլար. իսկ Հայոց՝ թերեւս աւելի քան զառաջինն. մէկ մ՚որ՝ մերոնք արդէն գիտեն իրենց ազգին պատմութիւնը, և երկրորդ, որ այդ (Ա Ցեղանակ) մասին մէջ կարճ և չոր յիշուած են անուանք Վենետ պայլից կամ որ և է անձանց և իրաց, որք ոչ մերայոց՝ այլ նոցա են հետաքրքրականք։ Սակայն, ինչպէս կըրնան դատել ընթերցողք, այս Բ Ցեղանակս այլ կ՚ընծայէ Վենետաց այնպիսի Հայեր, որ երբ մերազգեացս պարծանք են, իրենց այլ կրնան ըլլալ զարմանք, այլ և երախտաւորք. Անտոնեանքն և Գէորգեանք, ծովայոյզք, նաւազէտք, մեքենագործք, թարգմանք, թղթատարք, կարաւանապետք, գրատիպք, և այլն, անկողմնասէր և աննախանձ Վենետի մի՝ և ո՛ր և է օտարի՝ պէտք էր արժանի ըլլային յիշատակարանաց, ոչ միայն մտաւորօք և գրաւորօք, այլ և այնպիսի ցուցակութեամբք, որովք հիմայ ջանան եւրոպացիք իրենց սեփական ազգի և տէրութեան երախտաւորներն՝ ակն յանդիմանն երեւցընել, և որպէս կ՚ըսուի, անմահացընել։

Ասոնցմէ վերջը Գ Ցեղանակի Հայ—Վենետաց (ԺԷ—Ը դարուց) նկատմամբ՝ քանի մ՚անգամ գրոցս մէջ ըսուած է մեր մտածութիւնն, և աւելի երկայն ի վերջաբանին (երես 496

—516), աւելորդ համարիմ կրկնել։ Այն բաժ-ներես կ'իմացուցի, որ եթէ ոչ փառաւոր և նշանաւոր անձինք պիտի ընծայէ յետին Ցե-ղանակն, այլ և ոչ անփառունակ, և թուով անհամեմատ աւելի, (*) նոյնպէս և զանա-զան դէպք։ Վասն զի՝ այս երկու դարուց մէջ աւելի ձեւացեալ և կազմեալ կ'երեւի հայու-թիւնն ի Վենետիկ. և իրեն վերաբերեալ հա-ւատչեայքն այլ անհամեմատ շատ. յորոց մեծ մաս մի ընդօրինակուած է, այլ կայ դեռ և

(*) Ինչպէս կըրնան հաւաստի ընել յիշեալ անուանքն (յերես 503–14)։ որոց մէջ եթէ լռուած էր մոռաց-մամբ կամ զգուշութեամբ՝ անուն մ'այլ, անակնկալ հարկ մի՝ որ դեռ նոր վերոյգրեալ տողերը գրելուէն վերջը յայտնուեցաւ, կու ստիպէ հիմայ (նաեւ առանց անձին գիտութեան) հռչակել։ Կենդանի Հայ—Վենետ հեղինակ մի է նա, բանաստեղծ՝ ոչ միայն նրբազգաց այլ և խորազգած, և քերթող, այսինքն հմուտ իտալա-կան լեզուի տաղաչափութեան, որով գրած է և գրէ. և ի նորումս, Ղորմանոլէ վկայեալ տաղ մի հրատարա-կեց Իտալիոյ նշանաւոր La Rassegna Nazionale բա-նասիրական օրագրին մէջ, Լուռ—Ռէ—Ն կոչմամբ. զոր՝ գի-շերոյ սիրական նկատէ. բայց չկան (թերեւս յոմանց կարծեցեալ) սիրաբանութիւնք, այլ բնութեան և մարդ-կային կենաց վերացեալ գաղափարք՝ զուգաւորութեամբ գիշերոյ և լռութեան զգացման։ Արդարեւ բարձր և ոչ դիւրահաս իմաստ մ'է, որպէս և չարագրութիւնն. որով իր բնական չափէն և միճակէն այլ վեր կ'երեւի հեղինակն. որ է ազնուական և չափահաս օրիորդ մի, մեր հանրածանօթ հայազգի Սամուէլ Մուրատայ՝ դստեր և փեսային թոռն (դուստր Եդուարդայ) Վիքթորիա Ա-գանուր, Vittoria Aganoor։ Այսպիսի գրութեանցն համար պատուեցաւ նա այս տարի, Վենետկոյ հռչակեալ գիտնական Աթենէական ժողովոյ (Ateneo Veneto) ընկեր ընդունուելու։

ոչ սակաւ ընդօրինակելի. յուսացուցի թէ դեռ Բ Ցեղանականին վերաբերեալ գրուածք այլ գտուին, մանաւանդ ի Նոտարական դիւանի, զոր դիւրին չէ գտնել. վասն զի, ոչ ամեն նօտարք իրենց գրուածոց ցանկն ըրեր են, կամ ըրածնին կորած է։ Ապագային միշտ յուսալի է. գուցէ և քննութեան հնարքն դիւրանան, և հմտագոյն հետաքննողք ճոխագոյն և լաւագոյն հրատարակեն։ Այսու յուսով և մաղթանօք՝ կնքեմք այս գիրքս. որ՝ թէ և փոքր, այլ (հանդերձ մնացեալ ընդօրինակութեամբք) ոչ փոքր և ոչ կարճ աշխատանք և ժամանակ գողցած է ի գրչէս և ի կենաց։ Իցէ՜ թէ իմ գտածս և կորուսածս՝ այլոց պիտանի և անկորուստ ըլլար։

3 Յունիս, 1896.

Հ. Ղ. Մ. Ա.



# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

# ՀԱՅ-ՎԵՆԵՏ

Ա. ՑԵՂԱՆԱԿ

ԺԳ ԵՒ ԺԴ ԴԱՐՔ




**ՍՐ. ՀԵԹՈՒՄ Բ. = ՍՂ. ՅՈՎՀԱՆՆԷՍ**

ծն. 1266. † 1307, նոյ. 17.

# ՀԱՅ–ՎԵՆԵՏ

## Ա· ՑԵՂԱՆԱԿ

## ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ԺԱՄԱՆԱԿ

### Ա·

#### ԱՌԱՋԻՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

#### ԵՒ ՋՈՒԳԱԴԻՊՈՒԹԻՒՆՔ ՀԱՅՈՑ ԵՒ ՎԵՆԵՏԱՑ



ԸՆԴՀԱՆՈՒՐ ազգաց պատմութեան մէջ դէպք մի՝ որ զարմանախառն անդրադարձութիւն մի կ'ազդէ հետաքըննաց վրայ, այլալեզու և այլատարազ ազգաց՝ իրարու հետ ունեցած անակընկալ յարաբերութիւնն է. և այս իրաւացի զարմանքն այնչափ աւելի մեծագոյն կու լինի՝ որչափ այդ ազգաց հայրենիքն հեռու ըլլան իրարմէ, ոչ միայն ծովերով ու ցամաքներով անջատեալ, այլ և ընդմիջեալ ազգերով և

ժողովրդովք, որոց հետ թերեւս այնչափ սերտ յարաբերութիւն չեն ունեցած՝ որքան իրարու հետ՝ այդ հեռաւոր և բաժանեալ ազգերն։ Սակայն տեղեաց հեռաւորութեան հետ ժամանակի հեռաւորութիւնն այլ յայտնի կ'ընէ, որ ի սկզբան՝ աղօտ, նուրբ, և կերպով մի անշօշափելի պէտք է եղած ըլլան անոնց յարաբերութիւններն. մինչ մերձաւոր ժամանակ և ներկայութիւն գրաւոր հաւաստեաց կամ յիշատակարանք են՝ որ պատմութիւնը և անոր ստուգութիւնը յիրաւի կը հաստատեն։ Այլ և զայն չէ կարելի ժխտել՝ որ գրեթէ ամեն ազգաց պատմութեան ըսկիզբն՝ անօսր և գրեթէ առասպելական է, և թէ պէտք և արժան չէ յառիլ ի նոսա՝ իբրեւ իրական բաներու։ Բայց դարձեալ, այն խուսափուկ և ստուերական երեւութից մէջ այլ կայ գաղտնի զուարճութիւն և հաճոյք մի. և թէպէտ անաչառ միտք մերժէ զանոնք, սակայն երեւակայութիւնն միշտ հաշտ աչքով կու նայի այդ առասպելաց վրայ, և կարծես թէ կու փնտռէ իսկ զանոնք։ Բայց երեւակայութիւն ըսելով՝ կու հասկնամ ոչ զանձարձակն և զցնորական, այլ որ յեցեալ ըլլայ յաւանդութիւն ինչ և ի հաւանականութիւն, կամ ի յարմարաւոր և հնարաւոր կարելիութիւն։

Մեր աչաց առջեւ պարզելով ազգափիւռ

աշխարհացոյցը, և ուղղագրութիւննիս Հայաստանի վրայ դարձընելով, հետեւեալ երեք ինչ աներկբայ հաւաստութեամբ ընդունելի կը թուի մեզ։ — Ա. Հայ ազգին և աշխարհին հնութիւնն, ստոյգ պատմութեան սկիզբէն ի վեր, որ ջրհեղեղով կու սկսի, և անմիջապէս անկէ վերջ աշխարհագրական անուամբ Հայաստան կամ Արարատեան երկիր կու կոչուի։ — Բ. Այս երկրին բնիկ ժողովուրդն՝ Հայք, որ ցեղապետէն եւս յառաջ եկած լինին (միշտ ի Յաբեթեանց), հնագոյն ազգաց հետ ի միասին կու յիշուին. և անոնց մեծ կերպարանափոխութեան՝ այսինքն ազգաց բաժանման և ցրման օրերէն սկսեալ, կամ քիչ վերջը, մինչեւ այս օրս՝ անպակաս բնակեր են հօն, թէ և ոմանք յայժմու բանասիրաց Եւրոպիոյ՝ եկամուտ համարին զՀայն, և տիրող՝ իրմէ առաջ բնակող ժողովուրդ մի։ — Գ. Ջի այդ յամառ և անքակ բնակութեամբն իսկ ի վերայ հայրենի հողոյն, ոչ փոքր՝ այլ մեծ մասն մի հայ ժողովրդեան՝ ընդաբոյս իմն բարուք ստէպ գաղթեր է և կու գաղթէ, ոչ միայն ի մերձաւոր աշխարհներ, այլ պէտք համարած ատենին՝ նա և ի ծագս երկրի, — եթէ կու վայլէ այսպէս ըսել, — այլ և այլ պատճառներով։ Մեր այս ըսածին յայտնի վկայութիւն կու տան ամենայն

ծանօթք ներկայ քաղաքավարութեան աշխարհի և մերձաւոր դիպուածոց, և նոյն իսկ ընթերցողք լրագրաց։ Ուրեմն զարմանալու չէ՝ եթէ ըստ բաղդի՝ աշխարհաքաղաքացի համարուին Հայք, և ընդ գերագոյնս ի նոսին, որով և ի հարկէ այլ և այլ օրինակաւ և չափով ի յարաբերութեան ըլլան ընդ օտարալեզու և օտարաբարոյ հեռաւոր ազգս և նշանաւոր կենդրոնս, մանաւանդ ի շահաստանս և ի մայրաքաղաքս։

Հիմկուհիմայ թող տրուի մեզ վերցընել նախնի և կէս պատմական դարուց քօղը, և թողլով ուրիշ ամեն երկիրներու և ազգաց վիճակը քննել Հայոց ստոյգ կամ անստոյգ կցորդութիւնները կամ ծանօթութիւնը՝ միջին դարուց և նոր պատմութեան ամենէն աւելի նկատելի ու զարմանալի ազգի ու նահանգի մը հետ. այն է հռչակաւորն և գեղապանծն Վէնէտիկ։ Ստոյգ պատմութեան կարելի չէ այս երկու ազգերը հաւասարել ընդ միմեանս. այնչափ երկար է խտիր ժամանակի՝ եթէ ոչ ըստ ծագմանն, — վասն զի գրեթէ հարկ է ամեն ազգաց զուգաժամանակ ըլլալ, — այլ ըստ ծանօթութեան. և կրնամք ըսել՝ թէ այն օրն յորում յալեաց կու ծնանէր կոյսն Վենետիկ, կու նուաղէր հինն Արարատ, իր հազարամեայ էութեան շրջա-

նըք կարի իսկ ծանրացեալ, որոնցմով կատարեց իր զօրութեան և մեծութեան երկայն շրջանը, երկարատեւ քան զշրջան հասարակապետութեան Վենետկոյ. ապրելով հին աշխարհի հնագոյն ազգաց հետ, ընդ որս՝ երկրիս Թատեր վրայ խաղաց իր խաղը։ Սակայն, քա՛ւ, ոչ մեռաւ, այլ նուաղեցաւ միայն. և ըստ ինքնակեցութեան օրինաց՝ ի խոնարհագոյն կեանս յեղափոխեցաւ. և եթէ մեռած ալ ուզուի համարել զինքը, այնպիսի մահ է՝ որպէս և Վենետկոյ, յետ կորստեան հասարակապետութեան։ Եւ ո՞վ պիտի համարձակի ըսել կամ հանդուրժել լսել այսպիսի ինչ՝ Ադրիական ծովուց այս չքնաղ դշխոյիս համար, յետ գրեթէ դարու միոյ իր բաղդին յեղափոխութեան։ Նոյնը պէտք է իմանալ և վասն Արարատայ՝ նախածնելոյն յալեաց համաշխարհական ովկիանու ջրհեղեղին. բայց ոչ ի սպառ յանչքութեան և նուազութեան հազար տարիներու մէջ, այլ և ի նորահրաշ կենդանութեան և զօրութեան վերերեւեալ. որով սերտագոյն կցորդութիւն մ'այլ ունեցաւ ընդ Վենետկոյ, ինչպէս պիտի տեսնենք քիչ մ'ետքը, և որ նպատակ է մեր այս գրուածին։

Ձեռք առնունք ուրեմն պարզել զքող կիսապատում ժամանակաց. և որովհետեւ տեսանք զՀայս՝ հնագոյն դարուց մէջ ստուգապէս

հանդիսացած, արժան է փնտռել նա և Վենետկոյ խանձարուրքը, կամ անոր էութեան առաջին վիճակը, քանի որ դեռ ստացած չէր այն շքեղ կերպարանքը՝ որով ի հինգերորդ դարէ ցվերջ ութեւտասներորդին տեսարան եղաւ Եւրոպիոյ և Ասիոյ։ Եթէ այս վերածնութենէն նոյնչափ ժամանակ և դարվեր ելնենք, գրեթէ Տրոյական պատերազմաց դիւցազնական պարագային կու հասնինք. յորում հին՝ այլ ոչ երբէք հնանալի քերդողն, մանաւանդ թէ ամենայն մտաց և դարուց մանկացուցիչն, Հոմերոս, իր մոգական մատամբք կու սքողէ մեզ զուրուական Վենետկոյ, տառի մը նուազութեամբ կամ այլափոխութեամբ, Հենետ կամ Ենետ կոչելով Պափլագոնաց ցեղ մի, քաջաձի և քաջաջորի [1]. որոց համար կու վկայէ և Սոփոկլ, թէ յօգնութիւն եկած ըլլան տարաբաղդ ծերունւոյն Պրիամու. առ որ՝ կանխեր հասեր էին յօժանդակութիւն՝ այրարատեան գնդաց քաջաձի սերունդք, իրենց Զարմայր նահապետին առաջնորդութեամբ, որ Հեկտորի հետ ընկաւ ի յաւերժայիշատակ դաշտին. բայց ոչ

1. Հոմեր, Իլիական Բ. 85. Ն. 577։ — Ցիլիազի կարծէ, թէ ըստ Երոդոտ. (Ա. ՃՂԶ) Վենետք գաղթած ըլլան ի Մարաց. ուր յոյն պատմչին խօսքն Սիգենաց վրայ է և ոչ Վենետաց։

յայլմէ զարնուած, ինչպէս կու փափաքի և կ'ազդէ պատմիչն մեր (Մ. Խորենացի), այլ միայն ի դիւցազանց դիւցազնէն՝ յԱքիլլեայ։ Չեմ գիտեր թէ այդպիսի փառաւոր արկած մի հանդիպեցա՞ւ արդեօք և Պիլեմոնի՝ առաջնորդին Վենետաց կամ Հենետաց, երբ Տրովադայ պարըսպաց տակ ընկաւ և նա։ Բայց ինձ հաճոյ է նկատել այդ երկու ազգերն, մեր քիչ յառաջ յիշած դաշին համեմատ, պատմական ժամանակաց և արշալըրշոց մէջ, իբր համերաշխ, նիզակակից և գործակից, և գրեթէ իւրք նա և համանման։ Վասն զի, Պափլագոնացիք նաև սահմանօք իսկ մերձաւորք էին Փոքուն Հայոց և գաւառաց Հայախաղտեաց, Ալիւս գետով մի բաժնուելով. զգեստուք այլ համաձեւք, ինչպէս կու հաւատարմացընեն հինք, կրելով զտարազ փռիւգական. և զարմանալի իմն հանդիպմամբ՝ նոյն էր մեր երկու ազգաց այլ գլխաւոր նշանակն և այլաբանական ցոյցն։ Ծանօթ է հնագիտաց, թէ ինչպէս խրոխտ Հռովմայեցիք իրենց արձանաց և դրամերու վրայ սովոր էին կերպարանել զՀայաստան ի մանուկ փռիւգագտակ. Վենետիկեցիք այլ նոյն փռիւգացի գտակը կը դնէին իրենց դքսից գլուխը, և նիւթապէս անդրեաց վրայ։

Վենետկեան յիշատակաց հետամտից թող-
լով քննել և յայտնել, թէ որքան հաւանակա-
նութիւն կրնայ ունենալ իրենց չքնաղակերտ
քաղաքին և ազգութեան սկզբնաւորութիւնն
կամ թէ ըսենք մկրտութիւնն, Քրիստոսի
421 Թուականին և ի 25 մարտի, ըսենք, թէ
մեր հայկական պատմչաց յիշատակք այլ՝ նոյն
տարուան Թուականին դնեն Կարնոյ քաղաքի
բերդին՝ ի Բարձր Հայս՝ հիմնարկութիւնը
կամ ընդարձակուիլը, որպէս գի ըլլայ ամուր
ապաւինի կամ նիստ արեւմտեան (յունական)
Հայոց կուսակալաց, որ Հայաստանի արեւե-
լեան մասին գերիշխանք էին (suzerain), և
քիչ ետքը նա և տէարք: Այն քաղաքն և
բերդն որ հիմայ Էրզիրում, կամ Երկիր և
Արզն Յունաց կը կոչուի, այդ ժամանակէն
և ինչուան ետքը՝ նոյն վիճակին և պաշտա-
ման մէջ մնաց, որոյ համար չինուեցաւ. մա-
նաւանդ թէ այլ աւելի: Վասն զի Հայոց
հին մայրաքաղաքաց աղօտանալէն և աւրուե-
լէն ետքը, երբ յետին մայրաքաղաքն այլ՝
Դուին՝ սասանութեամբ քանդեցաւ, Կարնոյ
քաղաքն հազար տարիէ ի վեր՝ Հայոց քա-
ղաքաց առաջին և գլխաւորն համարուած է,
ինչպէս և այսօր, օսմանեան Հայաստանի
մասին մէջ, և Թուրքաց պետութեան գլխա-
ւոր նահանգական և զօրանիստ քաղաքաց մին,

և հզօր մարտկոց ընդդէմ ռուսական տէրութեան։ Արդ, ըստ այսմ տեսութեան և ժամանակի ծննդոց, զուգածինն Վեննետկոյ Կարին՝ իւր սեպհական տեւողութեամբ յերկարատեւ եղաւ քան զայս գծովագարփակ քոյրն։ Ո՛րչափ աննմանք իրարու՝ ոչ միայն ըստ քաղաքական հանգամանաց, այլ նա և բնական դրիւք. զի մինչ բարեհամբոյրս Վենետիկ՝ հեզօրէն մինչև յերեսս ծովուն՝ (որ կեանք և զարդ եղաւ իրեն), հարթ հաւասար գետեղուած է, ընդ հակառակն Կարին՝ կարծես թէ ըստ անուան իր հին նահանգին (Բարձր Հայոց՝ յորում հիմնարկուած է), իր աշտարակաց համար օդական իմն ալիք կը փնտռէ, 6000 ոտնաչափ բարձրանալով Պոնտոսի ծովուն երեսէն, որոյ մերձաւորագոյն է քան այլ ծովուց. և է հին և համբաւաւոր կենդրոն մի վաճառուց արեւելեան աշխարհաց՝ որ ի Հնդկաց և ի Պարսից. ինչպէս վկայէ նա և աշխարհագիրն Մարկոս Պօղոս (Marco Polo), և իրմէ աւելի հնագոյն արաբացի և այլ օտարազգի պատմիչք։

Վեննետկոյ ծննդեան Թուականին երկբայողք, հաւանականագոյն կու համարին անոր հաստատակապետութեան կազմակերպութեան Թուականը՝ դնել 451–2 տարւոյն. երբ հիւսիսայնոյն Ատտիլայ ձեռքէն փախչե-

լով, Ադրիական ծոցոյն ճախճախուտները՝
ծովէն ու ցամաքէն աւելի հզօրագոյն համա-
րեցան ի պաշտպանութիւն անձանց։ Այդ-
տարուան մէջ զուգադէպ կը հանդիպէր նա և
ի Հայաստան, աւա՜ղ, ոչ եթէ ծնունդ՝ այլ
մեծ մահ մի. Հայոց համազգային կամ համ-
իշխան միութեան մահն։ Վասն զի կենաց
ու մահուան մեծ վտանգի ու տագնապին մէջ՝
յերեսաց հրապաշտից Պարսից, վերջին ան-
գամ կը գումարէր կը ժողովէր իր հաւատա-
րիմ որդիքը, ու մահուան պատերազմը կու-
տար, առաջնորդութեամբ քաջագունին ի զօ-
րավարս ժամանակին, Սրբոյն և մեծին Վար-
դանայ, որ առաքինաբար նահատակեցաւ այն
անմոռանալի օրուան մէջ (2 յուլիս, 451),
և առաքինակրօն ընկերօքն դիւցազնօրէն
ընկաւ հայրենեաց վրայ. այդպիսի քաջու-
թեամբ ընկած բանակն այլ՝ վերացոյց բար-
ձրացոյց քան զաստեղս ի վեր։ Չկարծէ ոք
թէ ընդ Հայկին և Վահագնի՝ իր նախնեաց՝
դասեցաւ համաստեղութեանց կարգի մէջ, այլ
աւելի գերագոյն տեղ մի, ի խորանս Յիսու-
սի, և ստուգութեամբ. զի այն օրուընէն ի
վեր՝ եկեղեցի և աշխարհ Հայաստանեայց՝
տարուէ տարի կը կատարեն Սրբոց Վար-
դանանց՝ հազար երեսուն և վեց նահատա-
կաց՝ տօնախումբ հանդէսը, և դադրելով յա-

մենայն զբաղմանց և ի տուրեւառիկ գործոց՝ գերագոյն յաղթութեան յիշատակ մը կատարեն յեկեղեցւոջ, և վարժարանաց և խնջոյից մէջ, փոխանակ մէկ քաղաքի ջրածնութեան՝ բովանդակ ազգի մի արեամբ վերակենդանութիւն. որոյ տեւողութեան չափն է՝ կրօնք, երկրաւոր անմահութիւն, շաղկապ երկնաւորին և անանց յաւիտենականին։

Եթէ այդ երկատեսիլ թուականին վրայ դար մ'այլ աւելցընենք (451-551), յիշատակարանք ուրիշ Նոր Հայկա–վենետկեան զուգադիպութիւն մի կու ցուցընեն, ներկայացընելով մեզ նոյն ժամանակին հռովմէական բանակաց արիագոյն զօրավարը, զՆերսէս Պատրըէկ. որոյ առ օտարս համաշխարհական անունն և համբաւ, աւելի կերպով մը սեփականագոյն է առ Վենետկեցիս և առ Հայս՝ առ մեզ. զի մեր ազգին արիւնէն ընծայեցաւ, թէպէտ և ի ծառայութեան բիւզանդական կայսերաց. իսկ առ Վենետկեցիս՝ յորոց հիւրասէր մեծարանք ընդունեցաւ, մինչ հազիւ խրճթաց մէջ գլուխնին ծռելն վեր վերցուցած կը թուէին, առանց ձկնորսակ նաւակներէն օգտըւելով, իր գործերը կրելու, և այն ծովափանց աւերողքը վանելու համար. և իրենցմէ տեսած և ընդունած ծառայութեան փոխարէն՝ միջնորդ հաշտութեան

լինելով ընդ Պատուիրնացիս և Վենետկեցիս. և այն ժամու դեռ եւս անկերպարան Վենետիկ քաղաքին մէջ կառուցանելով առաջին եկեղեցիքը և գրատուն մի եւս։ — Մեր ժամանակաց ստուգախնդիր քննութեանն համար՝ աւանդական, որով և վիճելի համարուած են այս դէպք. Նոր քննիչք և նորայայտ յիշատակարանք՝ կ՚աւանդեն, թէ ոչ ի կէս վեցերորդ դարու, այլ ի սկիզբն իններորդին շինուած ըլլան Ս. Թէոդորոս Վենետկոյ մայր եկեղեցեաց առաջինն՝ զուգակցաւն նուիրելով Ս. Գեմինիանոսի, ուրիշ Ներսիսէ մի, որոյ եղբայրն այլ նոյն եկեղեցւոյն եպիսկոպոսն եղած ըլլայ։ Այդ երկու համանուն անձանց գործերն որչափ այլ իրարմէ առաւել կամ նուազ ստուգութիւն ունենան, թէ յառաջնոյն և թէ յերկրորդէն հաւաստի բան մի մնայ, և որ մեզ համար կարեւորագոյն է ի ժամուս, և է հայկական և վենետկեան ձեռաց մտերմաբար և օժանդակօրէն առ միմեանս կարկառիլն։

Անտարակուսելի է որ Զ - Ը դարուց մէջ ի Հռավեննա հաստատուած կայսերական փոխարքայից աթոռն՝ օգնական և զօրաւիգն էր Վենետաց։ Ոմանք այդ փոխարքայից ոչ միայն հայ էին ազգաւ, որպէս Ներսէս, Գրիգոր և Իսահակ, (որոյ հոյակապ դամբա-

բանին արձանագիրք ի Ս. Վիտալ եկեղեցւոյ Հռաւեննայ կու վկայեն ցայսօր), այլ և ամբողջ հայկական գունդ մի, Numerus Armeniorum, կու նստէր հոն՝ ի պահպանութիւն Իտալիոյ. և քաղաքին ծովափնեայ թաղերէն մին ի պատճառս նստոցի և ազգի զօրականին՝ կը կոչուէր Classis, և Armenia. Թաղին անուանի տաճարն նուիրեալ էր Սրբոյն Ապողինարի, և այդ անունը կրէր մինչև ի ԺԱ դար, իբրև զատ քաղաքիկ մը համարուելով: Փոխարքայք Հռաւեննայ ոչ միայն իրենց մերձաւորաց, այլ և հեռաւոր նորակիրթ վաճառականաց՝ Վենետաց՝ պակաս չէին ըներ իրենց թեւարկութիւնը. ինչպէս որ յիշուի յանուանէ՝ յաջորդն Ներսիսի՝ Լոնգինոս, որ այդ օգնութիւնը կու տարածէր մինչև ի սահմանս Անտիոքայ յԱսորիս բնակողաց. այն սահմաններն՝ որ յետոյ գլխաւոր կէտ կամ Թատր եղան Հայոց ընդ Վենետկեցիս վաճառականութեան և յարաբերութեանց, ինչպէս վերջը պիտի տեսնենք: Իսկ թէ ընդ ցամաք ո՛չ աւելի յառաջ կ՚երթայի՞ն շահախնդիր Վենետք, մինչև ի խոր Հայս և անոր արևելեան մեծ մայրաքաղաքը Դուին, (զոր մի ի մեծագոյն շահաստանաց Ասիոյ կու դրուատեն գրիչք Յունաց և Արաբացւոց Ե – Ը դարուց մէջ, ինչպէս քաջ հետազննու-

թեամբք պարզեց արդէն հմուտ գերմանացին Հայտ)․ կամ թէ և Հայք՝ անոնցմէ ոչինչ նուազ բազմաշրջիկք, չահախնդիրք և ճարտարք՝ կը հանդիպէին մինչև յաղտաղտաւկ ափունս Վենետկեան ծոցոյն․ — ստոյգ և որոշակի բան մը չենք կրնար ըսել, այլ մեծապէս հաւանական կու թուի․ վասն զի եթէ ուրիշ ազգաց երթևեկք էին ի Դուրին և ի վաճառաշահ քաղաքս Իտալիոյ, ևս առաւել Հայոց, որոց համար վաճառականութեան ոգին բնածին իմն էր և կրնայ համարուիլ․ մանաւանդ զի՝ ինչպէս տեսանք, այդ դարուց և ժամանակաց մէջ խմբովին կու գային Հայ զօրականք և զօրավարք, և կու բնակէին յափունս Ադրիականի, և անշուշտ իրենց ազգականք և ազգակիցք այլ՝ կըրնային գալ ոչ կռուոյ՝ այլ շահու պատճառաւ։

Կու թողունք յիշատակել նաև դեսպանաց երթևեկը, ինչպէս և Հայազգեաց ոմանց ի դրանէ կայսեր, և ի Վենետկոյ աւագաց և դքսերու որդւոց ի Կոստանդնուպոլիս, մանաւանդ ի սկիզբն իններորդ դարու․ ինչպէս ծովապետ նախարարն Կեփալեննեայ Պօղոս, — որոյ մականուն Cespherano այլ և այլ այլագրութեամբ՝ գուցէ հայերէն է, — եկաւ ի դիմաց Պեպինոսի ի պաշտպանութիւն Վենետաց (809-10)․ և անոր մերձանուն՝ Արտա-

ֆիոս (Arsaphius) Նիկեփոր կայսեր կողմանէ գնաց դեսպանութեամբ յԱկուիսգրանա (810), զոր ոմանք նոյն իր բուն հայկական անուանովը Արշակ կը կոչեն, իսկ Տանտոլոյ պատմիչն՝ խանգարելով Հէբէրսաբիոս կամ Եպերսապիոս (Hebersabius. — Թերեւս աղօտ հնչմունք Արշաւիր, Վարազշապուհ անուանց. երկրորդն եկեր էր Վենետիկ՝ Օպելերիոյ դուքսը դատելու համար:

Ուրիշ զուգադիպութիւն մ'այլ յիշենք՝ հայազգի կայսերաց գործակցութեան ընդ Վենետաց, որ այս միջոցին հանդիպած է (818). Բարդեշիրամ՝ցիոյ տոժին Ճիուստինիանոյ որդւոյն առաքումն առ Լեւոն կայսր, որոյ յատուկ մականունն է Հայկազն. սա ինքն եղաւ ձառաջին՝ որ առ ինքն ղրկուած Վենետկոյ դքսորդին Հռենոսն անուանեց, և պարգեւեց անոր և անոր քաղաքին՝ այնպիսի ընծաներ, որ ոչ միայն մինչեւ հիմայ՝ հազար տարիէ վերջ մնայուն են, այլ պիտի մնան միշտ. — դի են Սրբոց նուիրական նշխարներ, կենարար խաչի Փրկչին մերոյ և Տիրամօր պատմուճանի, և աւելի աչքի զարնող՝ Սրբոյն Զաքարիայ ամբողջ մարմինն, այլ և գանձեր՝ ի շինութիւն ասոր հոյակապ եկեղեցւոյն, որ թէ և նորոգութեանց ատեն փոփոխութիւններ կրեր է, այլ՝ դեռ կայ և պիտի մնայ յիշատակ մեծագործութեան տուողին և ընդունողաց.

և որոյ հովանւոյն տակ՝ ի Թիւս սրբատուն և աստուածանուէր կուսանաց՝ ընծայած են զանձինս և ոմանք ի հայազգի օրիորդաց։ Գտնուին Թերեւս և այլ Թանկագին անօԹք սրբազանք՝ հայկական նշմարօք, եԹէ յուզուի Ս․ Մարկոսի պատուական գանձատունն։

Սուրբ Մարկո՜ս... Անկարելի է Հայ–Վենետաց յիշատակուԹիւն ըրած ատեն՝ չյառնարհիլ անգամ մ'այլ առաջի հրաշակերտ և հրաշանուն տաճարիս, որոյ համար կրնանք ըսել, Թէ ճարտարուԹիւն, ճոխուԹիւն, բարեպաշտուԹիւն (չքաշուինք ըսել Թէ նա և գողուԹիւն), իրարու ձեռնտու ըլլալով՝ մասն առ մասն փոխադրեցին ի հարստագոյն քաղաքաց արեւելից, և կառուցին յանդիման Հանդրին հոյելւոյն, ի հազարամեայ զարմանս դարուց․ կամ իբր անդամ անդամ յօշելով ի գեղեցկակազմ մարմնոց՝ յօդեցին և հաստատեցին մի այլ գեղեցկագոյն մարմին, — զքանչելի Տաճար Սրբոյն Մարկոսի, Թերեւս յետ Սրբոյն Պետրոսի՝ աշխարհամուտ տաճար բովանդակ քրիստոնեայ ազգաց երկրի։.. Սուրբ Մարկո՛ս․ (որովհետեւ հարկ է ակամայ իսկ Թողուլ բազմապատիկ դիտելիք և ըսելիք,) որոյ կարգ կարգ ազնուանիւԹ և մեծամեծ սիւնք փարելով գրկաբաց ճակատին շուրջը՝ քանդակուած կուկրեն վրանին բազմաԹիւ անուանս հայազ-

գին ուխտաւորաց, Թէպէտ և յետին ԺԶ–ԺԸ դարուց, այլ յիշատակք են հետևողաց իրենց նախնեաց, որ յետ նախնագունիցն՝ գէթ ստուգիւ երկոտասաներորդ դարէն ի վեր՝ կը մտնէին և կ՚ելնէին ընդ պանծալի դրունան: Սուրբ Մարկոս, որոյ անթիւ բազմակերպ և հրաշակերտ կազմուածոց մէջ՝ դրանց աչքի զարնող առաջին է իր դրիւք և ձեռագործ արուեստագիտութեան մէջ նախապատիւ համարուած, մեծ և ճոխ քառեակ մը պղնձաձոյլ ոսկէզօծ Երիվարաց, որոց վրայ հայկական յիշատակ կը սաւառնի: Այս երիվարաց ճարտար արուեստագէտն՝ համարեալ է յոմանց՝ Լիւսիպպոս, և յայլոց ուրիշ անձինք. այլ հաւանական կարծուի թէ աշխարհակալ Թագաւորք Արշակունեաց Հայոց՝ որ Քրիստոսէ հարիւր տարի առաջ տիրեցին հեղ մի Ելլադայ, այն դրախտակերպ գաւառէն կորզելով յափշտակելով այդ երիվարները՝ փոխադրեցին ի Հայաստան. ուստի՝ ըստ աւանդութեան՝ Հայոց Տիրիթ Թագաւորէն ընծայեցան Հռովմայ Ներոն կայսեր. Բայց այլք հաւանականագոյն եւս կարծեօք կ՚ենթադրեն, թէ մեծն և Սուրբն Տրդատ՝ Կոստանդիանոսի ընծայ ղրկած ըլլայ այդ չորս երիվարները, և սա՝ իր Վոսփորի ափանց վրայ կառուցած Նոր դաստա-

կերտին՝ Բիւզանդիանի. անտի ի Վենետիկ
փոխադրուելուն դէպք և ժամանակ՝ ամե֊
նուն յայտնի է։ Մինչեւ որ անժխտելի քննա֊
դատութիւն իր վերջին և համոզիչ խօսքը
չըսէ, պիտի չդադրինք զարմանքով նայելէն
այդ նորաքանչ օդաչու երիվարաց վրայ,
իբրեւ ի գանձս՝ որ դարերով պահուեցան ի
Հայ երկրի, և իբրեւ ի կողոպուտս՝ հզօր ձե֊
ռաց Հայոյն ի տկարացեալ Հոռոմէ, և յա֊
ռատ տուրս Հայ ձեռաց առ հզօրագոյնն, ապա
նախախնամութեան տնօրինելովը՝ դադրած
հօն ուր հիմայ կեցեր են, ի պանծալի գլուխ
Վենետկոյ. զի այսպէս պատշաճական և ար֊
ժանաւոր է մեզ կոչել զեկեղեցի Սրբոյն
Մարկոսի, ի հոյլս իր հարիւրաւոր սուրբ և
քաղաքական շինուածոց։

Որքան հին և հզօր եղած է Հայոց յարա֊
բերութիւնն և Վենետաց հետ առուտուրն, ա֊
սանց առատ և ընտիր ակնոյն միջնորդութեամբ,
միանգամայն և ինչ կարծիք ունեցեր է ռա֊
միկ Հայն՝ իր մեծահանճար և մեծահնար և
ոչ ըստ արժանւոյն իրենց ժամանակի նախան֊
ձորդներէն պատուած անձանց վրայ, (ինչպէս
Խորենացի մի, Դաւիթ. մի, Ղազար մի),
ցուցընէ իր այս հետեւեալ աւանդութիւնն,
որ իր ծիծաղելի և աղուական՝ կնգուղի և
վենետկեան գդակին չփոթմամբն հանդերձ,

կըրնայ վերի ըսածներուս հաստատութիւն
տալ, ինքնին անհաստատ ըլլալով. «Անանիա
» Շիրակեցին տաղտկացեալ ի Հայոց, և
» գնացեալ ի Վենետիկ, և ուսուցեալ է
» նոցա Թագաւորին՝ քիմեյով զերկաթն առ-
» նել զոսկին (ոսկի). և նոքա յետ ուսանե-
» լոյն ի նմանէ՝ մտածեր են սպանանել
» զնա: Եւ ինքն խնդրեալ է, թէ ոսկոյ մի
» կողմն իւր պատկերն նկարել. և նոքա յանձն
» առեալ են այնպէս առնել. և ի նմանէ թո-
» ղութիւն առնելով՝ զգլուխն կտրեր են:
» Եւ ես ասեմ (ո՞վ ես դու), ինչ է պատճառն,
» եթէ ոչ՝ մեր Հայոց ազգին կարգաւորաց
» նախանձն, որ ի տգիտութենէ յառաջանայ,
» եւս առաւել ապերախտքն...[1]: որ այն-
» պիսի անհատնելի գանձն կորուսեր են:
» Որ և եալտըզ ոսկոյն մէկ երեսն կնկուղով
» պատկերն՝ Անանիայ Շիրակացուի պատ-
» կերն է»! — Վենետոն՝ Թող երկու ծիծաղի.
Հայն՝ մէկ ծիծաղի, մէկ խրատուի:

1. Այս տեղ անտարաշ բան մի կայ ուրն Զ ?

## Բ.

### ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՔ ՌՈՒԲԻՆԵԱՆ ՀԱՅՈՑ ԸՆԴ ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՎԵՆԵՏԿՈՑ. — ԼԵՒՈՆ ՄԵԾԱԳՈՐԾՆ ԵՒ ԴՈՒՔՍՆ ԵՆՐԻԿ ՏԱՆՏՈԼՈՅ։

Եթէ լոկ աւանդութիւնն այսչափ հեռու կարող է տանիլ զՀայն, որչափ եւս առաւել կրնայ յափշտակել զՎենետոն՝ իր հոյակապ գործոց, արձանաց և շինուածոց յիշատակաւ, աչքին առջեւ բերելով զաւարառուն յաղթող, զպանծալին ի շարս իր հարիւր և քսան տոժերու, զմեծն Ենրիկ Տանտոլոյ։... Բայց անշուշտ թոյլ պիտի տայ և Հայոյն՝ մասնակից ըլլալ իրեն ի մեծարանս այս անձին. վասն զի իրմով կու սկսի այն սերտ և ստոյգ կապակցութիւնն երկուց ազգաց և պետութեանց, հայկականին և վենետկեան. և եթէ ներելի է ըսել, Տանտոլոյ և Լեւոն Ռուբինեան՝ երկու դարուց միջոցին մէջ կրկին գլուխք կրնան համարուիլ իրենց կցորդութեան կամըրջին, ուղղակի. անուղղակի կերպով մ'եւս՝ իրենց ժամանակէն մինչև հիմայ։

Ինչպէս տեսանք, այս երկու ազգաց փո-

խաղարձ ծանօթութիւնն հին ժամանակաց ի վեր սկսած էր, և հետզհետէ պայծառացաւ երկոտասաներորդ դարու մէջ, Վենետացի վաճառականաց յարևելս յաճախելուն պատճառաւ, և ի Կիլիկիա՝ հայկական իշխանութեան մը հաստատուելով, քիչ յառաջ քան գդրդել խաչակրաց յԱսորիս, որ Կիլիկիոյ դրացի աշխարհ մը կրնայ գրուիլ, և դար մի ամբողջ տատանելով մերթ հզօր ու յաղթող, և մերթ տկար ու անյաջող բաղդիւ, երկոտասաներորդ դարու վերջերը համդիսական կերպով հաստատուեցաւ ու զօրացաւ մեծագործն և քաջին Լեւոնի թագաւորութեամբ. որ ոչ միայն Ենրիկոսի՝ այլ նա և ընդ ամենայն նշանաւոր իշխողս և զօրավարս ժամանակին՝ կրնայ մրցիլ, առանց մէկէ մը յետնելու: Նոյն դարու մէջ, և իր հօրը ժամանակէն, յառաջադէմքն Վենետք՝ որոց չէր պակսեր ոչ քաջութիւն և ոչ աշխարհաշինութիւն, Իտալիոյ ուրիշ վաճառական հասարակապետութեանց հետ մտեր ու հետազօտեր էին զՆորն Հայաստան, զԿիլիկիա, (որոյ պետք՝ Իշխողք լերանց կամ Լեռնականք կոչուէին, և ի շնորհս օժանդակութեանն զոր մատուցին խաչակրաց, առնցմէ՝ կոմսք, պարոնք և մարքիզք կոչուեցան). և վաճառականական գանձաբեր արուեստին բանալին քաջութեամբ

ձեռք ձգեցին, Տիւրոսի երրորդ մասին տիրապետելով, որ Լատինաց և բովանդակ խաչակրութեան ամուր ու ապահով ապաւէն մը եղաւ։ Եւ ո՞ գիտէ թէ նախ անոր պարըսպաց տակ (յամի 1124) հանչցած, հաճած ու զարմացած չըլլան Վենետք՝ ընդ Հայս. երբ տեսան անոնց մէկ երէցը, զԱ-ե-ռէ (Ventura), որ իրենց մերձաւորներէն աւելի ճարտարագոյն՝ պարսպամարտ մեքենայ հնարելով՝ դիւրացոյց քաղաքին առումը, ու երկրորդ Տրոյա մը ըրաւ զՏիւրոս, Հայոց և Վենետաց իրարու հանդիպման ստուգագոյն տեղի մը։

Վենետաց վաճառական տոհմից մէջ նոյն դարուն կիսէն մինչև ցկէս յաջորդին, նշանաւոր երևցաւ Ծիանի տոհմը, յորմէ և ճարտարք ոմանք և խոհականք՝ վերացան և բարձրացան մինչև ի գահն դքսական։ Ծանօթ է բազմաց թէ ինչպէս այն հռչականուն ցեղէն Սեբաստիանոս՝ դեսպանութեամբ գնաց առ կայսրն Յունաց յարեւելս. ինչպէս ծանօթ է նաև իր մեծանձն առատաձեռնութիւնն և ճոխութիւնն։ Կ'աւանդեն, թէ ոսկի հորթ մը գտած ըլլայ յԱլդինոյ, ու բաղդին յաջողութեանը փափաքելով հաղորդ ընել և զկարօտեալս, մեր ազգէն Վենետիկ եկող աղքատաց ու պանդխտելոց համար՝ ի բնակութիւն

շնորհեր է զատարեկան հասս իր կալուածոց և տանց, որ ի վաճառափողոցն (merceria) Սրբոյն Յուլիանոսի և ի կամուրջն Պարատտէրի. յետոյ իր Թոռն՝ Մարկոս՝ Նմանաբար իր տուներէն մէկը. պարգևեր է սեպհական Հայոց ազգին. որ այն ժամանակէն (1253) ցայսօր՝ վեցուկէս դարերէ ի վեր՝ Հայոց տուն կը կոչուի և իրենց ձեռքն է. յանուն Հայոց կը կոչուի և փողոցն և մերձաւոր կամուրջն, որ յետոյ նաև Ponte dei Ferali անունը կրած է, ինչպէս նաև հիմայ. Թերևս Զիանիի կտակին հաստատագոյն և աւելի ծանօթ մասն է սա, և որոյ արդիւնքն ու արդասիքը՝ քիչ մը յետոյ պիտի տեսնեն ընթերցողք։

Գրեթէ նոյն ժամանակաց մէջ առաջին անգամ կը յիշատակուի աղտաղտուկ գետին մի եւս՝ վենետկեան լճաց մէկ անկիւնը, tombe կամ tumbe կոչուած՝ շատ քիչ ջրի երեսէն բարձր, անբնակ կալուած մը Բենեդիկտեան միանձանց. որք կը բնակէին ի մերձաւոր Ս. Սերվիլիոյ կղզւոյն. անոնցմէ գնեց զհողն Ծօւքոլա անունով բարեպաշտ անձ մի յամի 1182, և շինեց անկելանոց ու եկեղեցի մը, որ յետոյ յանուն Սրբոյն Ղազարու կոչուեցաւ, և վրան հինգ հարիւր տարի անցնելէն ետքը՝ բնակութիւն և կայան տրուեցաւ այլալեզու

Բենեդիկտեան միանձանց գաղթելոց ի տար աշխարհէ, ի Հայոց. և ցայսօր յաջորդաբար կը պահեն զտեղին, որ յանուն իրենց Հիմնադրին և ազգին՝ Սուրբ Ղազար Հայոց, S. Lazzaro degli Armeni, կամ Մխիթարեանց վանք կոչուի յիտալացւոց, և մերթ ևս սոսկապէս Կղզի Հայոց Isola degli Armeni, կամ սոսկ՝ Հայք, Gli Armeni:

Բայց մեք փութանք դառնալ առ Ենրիկ և Լևոն, և հռչակել Հայոց և Լատինաց գրովք և դեսպանութեամբք՝ դաշնակցութեան վաւերական սկզբնաւորութիւնը:

Ոմանք ի ծերունի հարց մերոց՝ որ Սըրբոյն Մարկոսի հասարակապետութեան ատեն ապրեցան, հարցընելով քաղաքին գլխաւոր պաշտօնէից ոմանց, լսեր են անոնցմէ, թէ Հայոց առաջին գալուստն ի Վենետիկ եղած ըլլայ ի սկիզբն մետասաներորդ դարու, և երկրորդն՝ ի վեշտասաներորդին: Այս վերջինոյս կրնամք վկայել մենք՝ վասն զի թէպէտ երեքտասաներորդ դարէն ի վեր պակաս եղած չըլլայ Հայոց երթևեկն, այլ ի կէս վեշտասաներորդին կը յաճախէ, և ի դիւանս եկեղեցեաց քաղաքին կը նշանակուին՝ ոչ միայն անոնց հաստատուն բնակութիւնք, այլ նաև ծնունդք և մահք Հայոց. իսկ առաջին եկաւորութիւն նոցա ի մետասաներորդ դա-

րու՝ դեռ ևս մութ է․ բայց գուցէ ի վերջ ԺԲ դարու, առ իշխանութեամբ երկոցուն յիշեալ վեհիցն և յառաջ քան զԹագաւորել Լեւոնի՝ երբ դեռ ևս Պարոն կ'անուանուէր, և արքունական Թագին Թեկնածու էր․ որով հարկ կ'ըլլայ ենթադրել թէ քանի որ Ենրիկ արևելք եկած չէր, իր մէկ դեսպանին կամ Նուիրակի ձեռքով սկզբնաւորած ըլլայ ծագումն հայ-վենետկեան յարաբերութեանց․ ինչպէս կ'աւանդէ Նաւաճերոյ առանց մէկ գըրոզն, իբր թէ 1196ին ղրկուած ըլլայ ի Հայս (Կիլիկիա) իրենց առաջին փոնցն[1]։ ինձ կ'երեւի թէ պատմիչն կը կանխէ․ որովհետեւ Պայլեց հաստատուիլն ի Հայս աւելի ուշ է․ ու իրենց հաստատութենէն ետքն ալ առջի բերան Պայլք Աքքեայ՝ ի Հայաստան նստող Պայլին Թօշակը կը հատուցանէին։ Կարելի է որ յառաջ քան զայն՝ Պայլք Վենետաց ունեցած ըլլան իրենց մէկ երեսփոխանը Ռուբինեանց երկրին մէջ, ուր ի սկզբան սակաւաթիւ էին իրենց քաղաքացիք քան զԳենուացիս, ինչպէս կը գուշակուի Լեւոնի պար-

(1)․ 1196. La signoria di Venezia acciocchè i suoi cittadini potessero mercantare per tutto, mandò Messer Giacomo Badoer ambasciatore al re di Trebisonda, un bailo in Trebisonda e così nell' Armenia, e alla Tana un consolo.

գեւագիրներէն առ երկտոին ազգաց. յորոց Ճենովացիք քայլ մը կանխեցին քան զընակիչս Ադրիականին, բայց վերջը մնացին յետ. Այդ երկու ժողովուրդք, ինչպէս նաև ուրիշ պետութիւնք եւրոպականք, կարծես թէ զարմանքով մը կը նկատէին զՀայս՝ հին աշխական այլազգին ազգաց և եկամուտ արևմտեան իշխանութեանց մէջ. և կը տպաւէին հաստատուն ձևով մը կերպաւորուած տեսնել անոնց իշխանութիւնը՝ Կիլիկիոյ յարմարաւոր ու գիղան երկրին վրայ, որ լայնօրէն կը տարածէ զգիրկ ի Միջերկրականին, և կ'ամրացընէ թիկունքը յանմատոյց պատուարս Տաւրոսի: Եւ ահա արիասիրտն, անխոնջ և խորագէտ Լեւոն՝ տասն տարի աշխատելով, ու զէնքով և նուրբ քաղաքականութեամբ ամէն հնարք ու ջանք գործածելով, կ'ընդարձակէ հայրենի իշխանութեան սահմանը, կ'ամրացընէ անընկճելի բերդերով, ու զինուց զօրութեամբ, խաչակրաց նիզակակցութեամբ և արևմտեայց հետ խնամութեամբ՝ ահ ու սարսափ ձգելով թշնամեաց, Ասորւոց ու Փոքուն Ասիոյ հին ու նոր բնակչաց աչքին առջև կու բարձրացընէ իր թագապսակ գլուխը ի սկիզբն 1199 տարւոյն, մի և նոյն ժամանակի մէջ ընդունելով թագ ու պսակ ի կայսերաց արևելից և արևմտից և յամիրապետէն, և ի քահա-

նայապետէն Հռովմայ՝ դրօշ և օրհնութիւն։ Զայս տեսնելով՝ ամենքն զարմացմամբ, կամ առ շահի կամ առ ահի, իրարմէ առաջ կու փութան մեծարել զնա, և բարեկարգ ազգաց և պետութեանց օրինաց և սովորութեանց համեմատ դաշինք դնել հետը։

Լեւոնի թագաւոր պսակուելէն առաջ սկսած են թղթակցութիւնք քահանայապետականք. բայց իր թագանիշ և ոսկէկնիք թուղթք՝ որ կը պահուին ցարդ ի դիւանս Վատիկանի, երկոտասաներորդ դարու վերջին ամին թուանիշը կը կրեն. յետ որոյ են աշխարհական պետութեանց ու հասարակապետութեանց հետ դրուած դաշինքն. այնպէս որ երեքտասաներորդ դարու առաջին տարին՝ առաջին է և այս դաշնադրութեանց. և մի և նոյն 1201 թուականին տրուած և հաստատուած են դաշինք և շնորհմունք Լեւոնի առ Գենուացիս յամսեանն մարտի և առ Վենետս ի դեկտեմբերի։ Առ առաջինս տրուածներուն մէջ կը նշմարուի, ինչպէս քիչ յառաջ ըսինք, իրենց ազգակցաց այլ աւելի ձեւաւոր հաստատութիւնը, և կը շնորհուի իրենց դատարան (curia) և բնակութիւն, եկեղեցի, և փնդուկ ի մայրաքաղաքն Սիս, ի Տարոն և ի Մամեստիա։ Իսկ Վենետկեցւոց՝ միայն Մամեստիոյ մէջ կը տրուի բնակութիւն, եկեղեցի

և փնդուկ. սակայն դաշնագիրն աւելի երկար և մանրամասն է քան զշնորհեալն առ Գենուացիս: Եւ որովհետեւ հիմն կամ նախադաղափար կրնայ համարուիլ մեզի ծանօթ և ժամանակաւ կրտսեր ուրիշ ամեն դաշնագրոց և պարգևագրաց, աւելորդ չենք համարիր համառօտիւ նշանակել այն ամէն պայմաններն ու շնորհքն, զոր Լեւոն ոչ միայն իւր՝ այլ և յանուն յաջորդացն կու տայ Ենրիկի Տանտոլոյ դքսին Վենետկոյ, (և Դալմատիոյ, Խռուադաց, և քառորդ մասին կայսերութեան Յունաց, դեռ եւս Բիւզանդիոնի տիրած չըլլալով), և ամենայն Վենետաց. ըստ խնդրոյ Յակովբայ Պատոէրի՝ դեսպանին Ենրիկի. և շնորհէ,

Ա. Վենետաց ազատ երթեւեկ, իրենց ամեն ընչիւք՝ իր տէրութեան ամեն սահմաններուն և անցից մէջ:

Բ. Անդրածովու (oltremare, արևելք) բնակիչք՝ միայն ընդ պահնակ դրունս (Portella,) անցած ատեններին մաքս վճարեն, հաւասար ուրիշ ամէն քրիստոնէից: Այդ նշանակուած տեղ՝ հիմայ Ալեքսանդրեակ կոչուած քաղաքին արևելեան եզերաց մօտ. լեռանց նեղ կապանի դուռ մ'էր, և Ասորւոց երկրի ի Կիլիկիա անցից գլխաւոր տեղն. այն պատճառաւ հօն հաստատուած էր պե-

տակաւ մեծ մաքսատունն և ճոխ գանձարան, և նոյն դռնէն կ'ըլլային ի ցամաքէ բերուած անբաւ վաճառաց մուտք և ելք։

Գ. Դրամահատութեան համար բերուած արծաթն և ոսկի, ինչպէս յԱքքեա, ասանկ նա եւ հօս՝ տրոց ենթակայ էին. իսկ դրամ չըլլալու ոսկին ազատ էր ի տրոց։ Հայոց և Վենետաց վերջին ժամանակաց յարաբերութեանց մէջ ալ (1333, մայիս) կը յիշուի Հասարակապետութեան վճիռ մը, թէ այն նաւն որ կ'երթայ ի Հայս, և արծաթոյն կէսը պիտի դնէ ի դրամատուն (zecca) թագաւորին Հայոց, անոր դեսպանէն երդումն պիտի առնու։ Այս վճռէն տարի մը յառաջ ի Հայս և ի Կիպրոս արծաթ չփոխադրելու վճիռ մը տըրւած էր (1332). նոյն վճիռը կը կրկնուի նա և յաջորդ 1334 տարւոյն մէջ (օգոստոս 13)։

Դ. Ամենևին վնասու մը տակ չի ձգուին ոչ անձինք և ոչ ինչք Վենետաց։

Ե. Նոյնպէս և ի նաւաբեկութեան. բայց թէ անոնց նաւուց մէջ օտարականք գտնուին, միջին դարուց անհեթեթ օրէնքի մը համեմատ, այս վերջնոցս ինչք գրաւին յարքունիս։

Զ. Եթէ անոնց առ օտարս ըրած երթևեկի ատեն՝ իր երկրին մէջ վնաս մը հասնի, հատուցումն ըլլայ յարքունուստ։

Է. Վախճանեալ Վենետիկեցւոյ մը կտակն

հաստատուն ըլլայ. իսկ եթէ անկտակ մեռնի և հօն իրեն համաքաղաքացի մը գտնուի, ստացուածքն անոր տրուի. իսկ եթէ չգըտնուի ոք, մեռնողին քով եղած ինչք կնքուին, ու արքունի քարտուղարին (cancelliere) քով՝ որ էր արքեպիսկոպոսն Սսոյ, պահուին. մինչեւ դքսէն կնքուած վաւերական գիր հասնի։

Ը. Իրարմէ դատուին Վենետք՝ երբ մէջերնին խնդիր մի ըլլայ. իսկ ի չհամաձայնիլն՝ արքեպիսկոպոսն Սսոյ վճռէ անոնց դատաստանը։

Թ. Անոնցմէ գործուած սպանութեան յանցանք մը՝ թէ առ ազգայինս և թէ առ օտարս, արժանապէս դատուի։

Ժ. Նոյնպէս եթէ այլ և այլ վէճք կամ կռիւք ըլլան Վենետաց ընդ օտարս։

ԺԱ. Շնորհուի բնակութիւն քահանայի Վենետաց, եկեղեցի և փնդուկ ի Մամեստիա։

ԺԲ. Կարենան բնակիլ ուր որ ուզենան, թագաւորութեան երկրին մէջ։

Այս յետին երկու պայմաններուն առաջնովը կը յայտնուի՝ թէ թագաւորն ինքն ձրիաբար կը շնորհէր անոնց բնակութեան տեղի ի Մամեստիա. իսկ եթէ անկէ դուրս ուրիշ տեղուանք ուզենան բնակիլ՝ ազատ էին անձամբ և իրենց դրամով հայթհայթել. որով

և գուշակուի թէ առաջ Գենուացւոց նման զանազան քաղաքաց մէջ ցրուած չէին Վենետք, այլ միայն ի Մամեստիա. ուր թուի թէ պզտի նաւերով կու գային վաճառականք ընդ Ջահան գետ, և անտի ցամաքի վրայէն կարաւանօք կ'երթային յարեւելակողմն կամ ի Հիւսիս, վաճառականութեան գործածական ու վարուն ճանապարհօք, ի մեծամեծ շահաստանս ժամանակին. և առ այս՝ յարմարագոյն էր Մամեստիոյ դիրքն քան զՏարսոնի, որ ինչպէս ի հնումն՝ նոյն առենն ալ Կիլիկոյ գլխաւոր նաւահանգիստն էր՝ ծովու քով, բայց հեռու մնացեալ վաճառականութեան ցամաքային ճամբաներէն: Քիչ առենէն թէ Տարսոն և թէ Մամեստիա իրենց նախկին փայլն ու կարեւորութիւնը կորուսին, երբ Այաս կերպով մը իր մէջ կեդրոնացուց, ոչ միայն Կիլիկիոյ վաճառականութիւնը, այլ նա և բովանդակ անոր կամ վաճառականութեան մեծ մաս մի, ինչպէս պիտի տեսնենք:

Տասնուհինգ տարի ետքը (1215) նորոգեց Լեւոն, առ Գենուացիս տուած Պարգեւագիրը. բայց Վենետացը կ'երեւի թէ անփոփոխ մնացեր է քառասունեւհինգ տարուան միջոց: 1245ին դուքսն Յակոբ Թիէփոլոյ՝ իր Պետրոս Տանտոլոյ դեսպանին ձեռքով ուզեց Լեւոնի պարգեւագիրը վերահաստատել, գրելով

առ Հեթում Ա. որ քան տարիներէ ի վեր կը թագաւորէր (1226), իր հօր Կոստանդին մեծ իշխանին՝ ճարտարութեամբ, ամուսնանալով ընդ Զապելի՝ միակ դստեր և օրինաւոր ժառանգի մեծին Լեւոնի. անոր հետ տէր ըլլալով նաև արքունական գահուն, որոյ պաշտպան էր խորագէտ և աչարկու ծերունի թագաւորահայրն՝ քառասուն տարի: Հեթում՝ իր և թագուհւոյն անուամբը շնորհեց կամ կրկին հաստատեց Վենետաց տրուած երկրորդ ծանօթ Պարգևագիրը յամսեանն մարտի. որոյ մէջ քանի մը նոր պայմանք կամ շնորհք աւելցած են. ինչպէս, Վենետաց մէջ վէճ մը ծագած ատեն՝ իրաւարարքն յարքունուստ սահմանուին. ու երբ իրաւախոհութիւնն անկարելի ըլլայ, այն ատեն Սսոյ արքեպիսկոպոսն իրենց դատաստանը տեսնէ և վճռէ. նոյնպէս, անժառանգ վախճանեալ Վենետաց համար բաւական ըլլայ թագաւորական վճիռն, առանց դքսին կամ Աքքեայի պայլին թղթոց սպասելու:

Տասնուվեց տարիէ ետքը Ռանիերոս Ծէնոյ դքսին խնդրանօք ու իր Յովհաննէս Ծէնոյ դեսպանին ձեռօք՝ Հեթում նորոգեց պարգևագիրը, յամի 1261, յամսեանն նոյեմբերի, Թորոս վարդապետի ձեռքով, ու վաւերացնելով Յովհաննէս անուն քահանայի

մը ստորագրութեամբ, որ Վենետաց Նօտար
էր յԱքքեա։ Պայմաններն առաջնոյն մէջ
նշանակուածին նման ու համաձայն են. միայն
տար մէջ փոխանակ Մամեստիոյ՝ Թոյլ կու
տայ անոնց և իշխանութիւն ի Սիս մայրա-
քաղաքի հաստատել իրենց բնակութիւնը և
փնդուկ ունենալ հոն. և որ աւելի արժա-
նաւորն է նշանակութեան, նաև յԱյաս քա-
ղաքի, et apud Iaciam dabimus eis locum
ad faciendum domum: Նաւահանգիստ և
շահաստան քաղաքիս այս առաջին յիշատա-
կութիւնն լսուի ի մերոցս, որ գրեթէ ամբողջ
դարու մը միջոց Կիլիկիոյ առաջին անուանն
եղաւ, և առաջին ծանօթագոյն և ստէպ գը-
րուցուած թէ յարևելս և թէ մանաւանդ յա-
րևմուտս՝ այլ և այլ անուանակոչութեամբ.
ինչպէս Ayacio, Layazzo, Giazzo, Iacia. և
եթէ ոչ առաջին վաճառաշահ քաղաք ի վե-
րայ երկրի, բայց և ոչ մէկու մը երկրորդ.
որոյ վերայ մարթ էր յերկարագոյն գրել,
ինչպէս գրուած է յայլոց և մեզմէ։ Գուշա-
կուի թէ Եգէա (Egea) քաղաքին՝ ինչպէս
կը կոչուէր ի հնումն՝ աւերակաց վրայ կա-
ռուցուած և նոր քաղաք մը բարձրացած
ըլլայ, և ի կէս երեքտասաներորդ դարու՝
Հեթմոյ տուած երկու Պարգևագրաց մի-
ջոց ժամանակին՝ անքոյթ և յաջողակ նաւա-

հանգիստ մը դարձած։ — Հեթմոյ այս պարգեւագիրն առ Վենետս՝ կարծեմ որ մինչեւ հիմայ քննուած ու հրատարակուած չէր, ոչ այլ այսքան հին թուական ունեցող Այասայ անունն։ Հեթմոյ հրովարտակին լատին թարգմանութեան մէջ, ոսկէկնիք հայ բնագիրը՝ Հայոց թագաւորական քարտուղար Թորոս եպիսկոպոսի թարգմանութեանն հետ, տեսեր էր Վենետկեցի Նօտարն. բայց Վենետկոյ դքսական դիւանաց ուրիշ արքունի բնագրաց հետ հրոյ ճարակ եղած է անշուշտ. բարեբաղդաբար հին օրինակք և կրկնագրութիւնք պահուած են և կը պահուին ցարդ ի դիւանատան քաղաքին։

Երբ այսպէս հայկական նաւահանգիստն Այասայ բացուեցաւ համաշխարհական վաճառականութեան, հարկ էր այնուհետև հաստատել յայնմ քաղաքի և Պայլ ի դիմաց Վենետկոյ, ուր Հասարակապետութեան հպատակք խուռն կը դիմէին իրենց նաւերով (galea), և յարեւելից կարաւանք կու գային ընդ ցամաք։ Նոր պարգեւագիր մի տուած է յամին 1271՝ Լեւոն Բ որդի Հեթմոյ. որ և ի փռանկ լեզու թարգմանուած է ի Ժոֆրուա (Jeoffroy) արքունի թարգմանէ, և ի խնդրոյ Լորենցոյ Թիէփոլոյ դքսի յանձնուած առ դեսպանն Պանկրացիոյ Մալիբիէրոյ։ Այս

Պարգեւագրի մէջ նախ և ատէպ կը յիշուի Պայլն ի Հայս. իսկ Վենետկոյ դիւանաց մէջ ինձ ծանօթ եղածն՝ երեք տարի յետոյ շնորհուած է (1274, օգոստոս 14, ի վճիռս Քառասնից ժողովոյն), և առաջին կ'երեւնայ ի շարս նման Պարգեւագրաց. որովհետեւ այսպիսի սկզբնաւորութիւն մը ունի. Incipiunt consilia Baiulo Armenie pertinentia. որով կ'օրինադրէ Պայլին՝ իր խորհրդականաց երեքին երկու մասին խորհրդոյ համաձայնութեամբ՝ Հայաստանէն բամբակի գնման օրէնքը սահմանել. Քանի մը տարի յետոյ՝ (1279, յունիս 15) կը պատուիրէ նոյն ատեանն Քառասնից՝ իր պաշտօնակցաց հետ կրկին ընտրութեամբ վերահաստատել ի պաշտամանն զՊայլն Հայոց. իսկ 1282ին յ՝ 30 յուլիսի կը վճռէ Ատեանն Մեծ՝ որ Հայոց Պայլին Թոշակը հաւասար ըլլայ Աքքայի Պայլին տրուածին, և չափն ալ կը սահմանէ քանի մը օր ետքը ուրիշ վճռով մը (8 օգոստոս), 400 բիզանդ դրամ. զոր քանի մը տարի ետքը կը յաւելու մինչեւ ի 600 բիզանդ [1]:

(1). Նոյն ատեններն յաճախուած և ընդհանրապէս ի գործածութեան դրամն՝ էր "Բիզանդ" կոչուածն, որոյ անունէն կը յայտնուի ծագումն. բայց քանակը կը զանազանէր ըստ այլ և այլ տեղեաց՝ որոց անուամբը

Գ.

## ԴԱՇԻՆՔ ՎԵՆԵՏԱՑ Ի ՀԱՅՍ (ԿԻԼԻԿԻԱ).

Առաջին Պայլի յիշատակութեան կը հանդիպինք – ինչպէս ըսինք – յամի 1271. իսկ յանուանէ առաջին Պայլ՝ Վենետկոյ դիւանաց մէջ կը գտնենք ի 1282 (յուլիս 22) զՄարինոյ Պատոէր։ Բայց որովհետեւ զանազան գործք և վճիռք Հայ–Վենետկեան իրաց խառն են Պայլից անուամբ, ժամանակի կարգաւ այդ գործերը յիշատակելնէս յառաջ, դնենք նա և նոյնպէս ժամանակագրապէս Պայլերը, որչափ ծանօթք են մեզ, ի սուղ միջոցի իբրու վաթսուն և հինգ տարիներու. յորմէ ետքը Այասայ գերութիւնն կամ աւերածն, և Հայոց իշխանութեան դեդեւիլն ու տկարանալն՝ դադրեցոյց նա և

կը կոչուէր. ինչպէս Բիզանդ. սառակինեան, եգիպտական, Արքեայ, Հայոց, Կիպրոսի, և այլն։ Հոս յիշուածն հռոմանոքար կիպրոսեանն էր։ — Տես ի Սիսուան, 378։

Պայլից տուաքումը յԱդրիական ծովուց իշխողէն։

1282–3. Մարին Պատոէր
Marino Badoero.

1285. Լեոնարտոյ Ճիզի
Leonardo Gizi.

1286. Մարկոս Սինիոլոյ
Marco Siniolo.

128.. Յովհան տէ Գանալի
Giovanni de Canali.

1290. Բանգրատ Յուստինոս
Pancrazio Giustino.

1293. Ենրիկ Տէլֆին
Enrico Delfino.

1296–9. Մարինոյ Սինիոլոյ
Marino Siniolo.

1300. Պօղոս Գուիրինոյ
Paolo Quirino.

1302–3. Անդրէաս Սանուդոյ
Andrea Sanudo.

1304. Յովհ. Բրեմարինոյ
Giovanni Premarino.

1306–9. Նիկողոս Մորոզինոյ
Nicolò Morosino.

1310–2. Գրիգոր Տոլֆին
Gregorio Dolfin.

1313–6. Յուստին Յուստինեան
Giustino Giustiniani.

1317–8. Փիլիպպոս Պարպարիկոյ
Filippo Barbarigo.

1318–9. Պէլէտ Տանտոլոյ
Beletto Dandolo.

1320–2. Յովհաննէս Գարոզոյ
Giovanni Caroso.

1326. Վլաս Մալիբիէրոյ
Biagio Malipiero.

1328–30. Պետրոս Պրակատին
Pietro Bragadin.

1333. Նոյն Պետրոս
Pietro Bragadiu.

1333–4. Մարինոյ Կրիմանի
Marino Grimani.

Երբ Աքքէա քաղաք՝ քրիստոնէից ազգաց հզօր մարտկոցն՝ առնուեցաւ յայլազգեաց, այն ատեն Գայլն ալ վերցուեցաւ. Հայաստանի մէջ նաւորդին պէտքը հոգալն ալ՝ Վենետիկոյ ծերակոյտն ուղղակի իր վրայ առաւ, ու 1289 տարւոյն օգոստոսի 15 Թուականաւ տրուած վճռով մը՝ սահմանեց անոր Թոշակը մերձ ընդ մերձ հատուցանել. և ի 1301 սեպտեմբեր 14 հրամանագրով՝ որոշեց ամէն ամիս ընել այն հատուցումը. և նոյն տարւոյն օգոստոսի 13ին կը վճռէր, ի դիւրաթիւն իւր պաշտօնին՝ որ նոյն հրապարակին վրայ գտնուող Վենետացի վաճառականաց ապար-

կան ըլլան տուրք տալ մի առ հարիւր բիզանդ. և որովհետև տրոց հաւաքման պաշտօնեայք (Vicedomini Ternarie) վաճառաքերից վրայ խստութեամբ կը հսկէին, նոյն ինքն Պայլին խնդրանօք՝ Քառասնից մեծ ժողովն կը վճռէր (1292, յուլիս 1), որ այդ տուրքը հատուցողաց թոյլ և դիւրութիւն ըլլայ՝ իրենց բեռները ցամաք հանել: Ժամանակաւ համեմատ՝ սահմանեալ սակն ալ փոփոխութիւններ կրեց, մերթ հատուցանելով երկու առ հարիւր, և մերթ ալ Հասարակապետութենէն բոլորովին ազատութիւն ընդունելով՝ առանց տրոց ներս մտցընելու իրենց ապրանքը:

Յիշենք համառօտիւ առ Հայս խաւրուած Պայլից վերաբերեալքն, որ և մասամբ երբեմն մերազգեաց վերաբերին, և են անոնց ընտրութիւնքն կամ փոփոխութիւնք, Այասայ մէջ կենալնուն կամ անկէ հեռանալու համար տրուած հրամաններն, իրենց ռոճկին ու ի վաճառականաց պահանջած սակին և տրոց չափն. բնակութեան համար սահմանուած տանց շինութիւնք կամ նորոգութիւնք, և այն պատճառաւ և նպատակաւ եղած դրամական փոխառութիւնք, և այլն. Նմանապէս՝ Պայլից հրամայուած կամ յանձնուած առանձին և մասնաւոր պաշտամունք և գործք, ինչպէս,

որ 2740 հայկական նոր դրամոյ փոխատուութիւն մը կ'ընէ։ Այս դրամոց վրայ պիտի խօսինք ի կարգին։ Տարին չլրացած՝ Յուստինեանն ալ կ'արձըկուի ի պաշտամանէն. և ինչպէս Սինիբալդոյ իր նախորդն, ինքն ալ կը պահանջէ ռոճկին մնացորդը։

1293, մայիս 16. Մասնաւոր վճռով մը կ'որոշուի փոխատուութեամբ վճարել Ենրիկ Տոլֆինոյ Պայլին թոշակը։

1300, հոկտեմբեր 10. Արձակուրդ կը շնորհուի Պօղոս Գուիրինոյ Պայլին։ Նոյն տարւոյն ապրիլ 2 հրամանագրով մը վճիռ տրուած էր որ առ Մատթէոս Կանտինոյ պարտքն հատուցուի։

1302, յունիս 5. Հրաման առ Պայլն Անդրէաս Սանուտոյ, 1500 դրամ փոխատուութեան։ Յաջորդ տարին (մարտ 21) թոյլ կը տրուի նմա երեք ամիս կենալ ուր որ ուզէ, ի Հայս կամ ի Կիպրոս։ Սանուտոյի ժամանակ նոր օրինագրութիւն մը կ'ըլլայ առաքման Պայլից ի Հայաստան (1303, օգոստոս 26)։ Քանի մը օրէն ետքը (սեպտեմբեր 1) կ'արձըկուի նա ի պաշտօնէն։

1304, յունիս 10. Յովհաննէս Բրեմարինոյ Պայլ կը դրուի։ Իրմէ ետքը կը յիշուի Նիկողայոս Մորոզինոյ. և հաւանական կը թուի որ իր ընտրութեան ժամանակ (1307) կը

Բայց յաջորդ տարւոյն մէջ դեռ եւս կը գըտնուէր նա յԱյաս, և վաճառականական խընդրոց և նիւթոց վրայ կը գրէր, և կը ծանուցանէր դքսին. սակայն նոյն տարւոյն կէսէն արձկուած էր ի պայլութենէ, ինչպէս կը տեսնուի Հասարակապետութեան մէկ վճռէն, (1312, օգոստոս 10), որով կը հաւանի որ նա 1500 կամ 1700 դրամով տուն մը գնէ ի Հայս: — Ասոր յաջորդն եղաւ Թոմ. Սորանցոյ, որում պետական գործ մը յանձնուեցաւ առ Թագաւորն Կիպրոսի. և երկու տարուընէ ետքը ինքն ալ արձակուեցաւ ի պաշտամանէն (1314, մարտ 16): — Յաջորդեց զնա Յուստին. Յուստինիան. առ որ մասնաւոր վճռով հաւանութիւն տուին (1314, օգոստոս 12), որ կարենայ մինչև տասն վենետկեան լիպրէ ծախսել ի նորոգութիւն եկեղեցւոյ Սրբոյն Մարկոսի. և որովհետև քանի մի խնդիրք կային ի ժամանակին Հասարակապետութեան կողմանէ կարգադրելիք՝ բայց ոչ այնչափ որոշ և բացայայտք, յանձնեցաւ դքսին (1314, օգոստոս 20), որ հարկաւոր տեղեկութիւնները տրուին Պայլին այդ խնդրոց նկատմամբ: Նոյն օրուան վճռով թոյլ տրուեցաւ Յուստինիանու որ կարենայ Կրետէէն խար կամ անասնոց բուտ բերել տալ: Յետ իբր երկու ամաց (1316, ապրիլ

22) հրաման ըրին որ 100 սառակինեան բիզանդի փոխատուութիւն մը ընէ։ Նոյն տարւոյն օգոստոսի առաջին օրը ինքն ալ ազատեցաւ ի պայլութենէ. և յ'31 ամսոյն կը սահմանուին յանձնարարութիւնքն առ յաջորդ Նորա Փիլիպպոս Պարպարի՛կոյ, և ընծայք առ Թագաւորն Հայոց։ Ի սկիզբն յաջորդ ամին հրաման կը տրուի իրեն, (1317, յունուար 23), հարիւր բիզանդ դրամոց գումար մը ծախսել ի Նորոգութիւն տանն. և այս Նպատակաւ. հինգ լիրայ կրոս կը յանձնուի ի դրամաց պետութեան։ Վրան տարի ու կէս անցնելէն ետք, (1318, սեպտեմբեր 8), կը ծանուցուի արձակուրդն ի պաշտամանէն, և թէ արդէն օգոստոս 24 թուականաւ տրուած հրամփնագրով մը՝ յաջորդ որոշուած էր Տա՛նտոլոյ Պէլլէ՛դդի։ Սմա յաջորդեց Յովհ. Գարա՛զոյ, 1320, բայց Օշին Թագաւորին մահուան լուրն հասնելով՝ խափանեցաւ (1320, սեպտ. 20), երթն յԱյաս, մինչև յետ միոյ տարւոյ կրկին հաստատուեցաւ և երթալու հրաման տրուեցաւ (1322. փետր. 25), ինչպէս նաև երկոտասան լիրայ կրոսից գումար մը ծախսելի ի Նորոգութիւն տանն։ Այդ վախճանաւ յետ երից ամաց 1325 դրկուեցաւ փայտ ի Վենետկոյ. բայց չեմ գիտեր ո՛ էր Պայլ ի ժամանակին, Գարօ՞զոյ թէ այլ

դը։ Յետ վերջնոյս՝ յանուանէ Պայլ կը յիշատակուի Վլաս կամ Պիա՛ճիոյ Մալիբիէրոյ, որ յամի 1326 (յ՚ինն յուլիսի) առաքեցաւ պատճէնիւ նոր պարգեւագրի մը կամ դաշանց Լեւոն Դ Ռուբինեան Թագաւորի։ — Վլասայ յաջորդն եղաւ Պետրոս Պրակատին, (1328), որում կը յանձնուի այլ և այլ խընդրոց վրայ խօսիլ ընդ Թագաւորին Հայոց. պատուէր կ՚ընդունի օտար տուն չընակելու. կը յիշուի նաև արձակուրդն յամի 1331 ի 26 յունուարի։ Ի նմին ամի՝ վճիռ մի կը յիշէ նախորդն Վլաս վախճանեալ, և կը պատուիրէ Պայլին (Պրակատինի կամ ուրիշի մը) մեռնողին ժառանգաց շնորհել երկու առ հարիւր ի տակէն. Նոյն հրաման կը կրկնուի և ի 1332 յ՚եօթն յուլիսի տրուած վճռով։

Պրակատինի գործոց մէջ նշանաւոր և հետաքննական է տեղեկութիւնը՝ զոր տայ նոյն ժամանակի (1330) Հայոց վաճառականութեան հանգամանաց վրայ, ինչպէս քիչ ետքը պիտի տեսնենք վաճառականական յարաբերութեանց յիշատակաց մէջ։ Երեւի նա իբրեւ Պայլ նա և 1332 Թուականին։ Բայց յաջորդ տարւոյն մէջ կը յիշուի վերջին Պայլն՝ Մարինոյ Կրիմանի (1333, մայիս 13), որում կը շնորհուի նոր տուն մ՚ալ գնել. և որ կը կրկնուի յետ միոյ տարւոյ (1334, օգոստոս

նաւահանգիստք և վաճառականութեան պատկանաւոր տեղիք. բայց ոչ դիւանաց և ոչ պատմութեան մէջ անոնց յիշատակութեան հանդիպած եմք: Հնար է որ Կիպրոսի Գայլին յանձնուած ըլլայ այնուհետեւ ի Կիլիկիա Ռեացող վենետացի գաղթականաց խնամքն. վասն զի այս միջոց ժամանակի մէջ ալ Վենետաց Նաւարկութեան յիշատակ կ'ըլլայ:

Ասոնք սովորութիւն ունէին տարուէ տարի պատրաստել ու շինել այլ և այլ տորմիղս նաւաց՝ երեք, հինգ, եօթն, ութ, տասն և աւելի եւս թուով. և տարւոյն սահմանեալ եղանակաց մէջ որոշեալ ճամբով ուղղել ի զանազան շահաստանս աշխարհաց և պետութեանց. ի Կ. Պօլիս, ի Կրետէ, ի Կիպրոս, յԱղեքսանդրիա, ի Հոլանտա, և այլն. Նմանապէս որոշուած էր առաքել և ի Հայս, յաշխարհամուտն Այաս: Ծերակուտին վճռոց մէջ ինչպէս ուրիշ տեղեաց՝ ստէպ կը յիշուին նա և հայազնեաց տորմիղք և անոնց թիւն, 1278 թուականէն ցվերջ հայկական պետութեան: Այս բանս կը հաւաստարմացընեն բազմաթիւ վճիռք և հրամանագիրք, զորս ըստ ժամանակագրական կարգի և խընամով հաւաքեր ենք ի պետական դիւանաց, բայց աւելորդ համարիմք կարգել: Մեծ փոյթ

կը կոչուէր, սովորաբար սակաւօրեայ էր, ինչպէս տասնուհինգ կամ անկէ ալ պակաս, բաւական՝ բեռներն և վաճառականները ցամաք հանելու և նոր վաճառք և վաճառականներ առնելու համար։ Դուն ուրեք կը յիշուին չափք և կազմուածք բեռանց։

## Դ.

### ՎԵՆԵՏՔ Ի ՍԻՍՈՒԱՆ

Արժանի են հետաքննութեան հանգամանք վաճառականութեան Վենետաց ի Հայս. վասն զի այն պատճառաւ եղած են երկու ժողովրդոց իրարու հետ փոխադարձ յարաբերութիւնք։ Ցառաջ քան զմեզ հետամուտք և քննողք՝ գրեցին և հրատարակեցին ինչ որ այս նիւթիս նկատմամբ յաջողեցան գտնել ի դիւանաց Վենետկոյ, ի ժամանակագրաց և վաճառականութեան վրայ գրողներէ. որոց մէջ վերջին և ամենէն աւելի կատարելագոյն՝ բազմահմուտն Հայտ, նախ ի համառօտ՝ և ապա յընդարձակ երկհատոր գրքան, որ զվաճառականութենէ արեւելից ի Միջին դարս։ Մենք դիտաւորութիւն չունինք ասոնց ըսածները կրկնել, և կամ ջանալ յաւելուլ ի նոյնս. այլ միայն նախածանօթ կամ դեռ եւս անծանօթ հաւաստականները (documents) հրատարակել, որչափ գտեր ենք, վաճառականական այլ և այլ խնդրոց վրայ, դրամոց

համեմատութեան, Վենետկոյ հասարակա-
պետութենէն եղած շնորհմանց՝ առ վաճառա-
բերս կամ առ մաքսանենգս ոմանս. յիշե-
լով և գնիւթս վաճառուց բերելոց կամ տա-
րելոց. որոց վրայ զանազան գիտելիք՝ կը
գտնուին մեր Թագաւորաց ձեռքով տրուած
պարգևագրոց մէջ, յորոց զոմանս արդէն յի-
շեցինք ի նախընթաց յօդուածս, և զայլս ի մէջ
պիտի բերենք ըստ ժամանակի յարաբերու-
թեան նոցա ընդ պետութեան Վենետկոյ.
արդէն վերը գրուած նաւարկութեան յիշա-
տակարանաց մէջ ալ՝ յաճախ յիշատակութիւն
եղաւ վաճառականաց:

Այս վաւերականաց մէջ ամենէն կարեւոր
կրնայ համարուիլ Վենետկոյ մեծ Ատենին
վճիռն՝ յամի 1283 ի 22 յուլիսի, վաճառա-
կանական ընկերութիւն մը հաստատելու հա-
մար յԱյաս, ընդ տեսչութեամբ Պայլին,
վասն առևտրոյ Բոմբակի, Ցփոյ և Պղպեղի.
այդ ընկերութեան մէջ անոնք միայն կարող
էին մտնել՝ որ երկու հարիւր բիզանդէն ա-
ւելի գումարով մասնակցէին: Օրէն էր վա-
ճառականաց՝ սահմանեալ նաւատորմաւ յո-
րոշեալ ժամանակի նաւել. երբեմն թոյլ կու-
տրուէր առանձին նաւով ալ երթալ, յաւէտ
ընկերելով տորմղին. միայն պետութեան ի-
րաւունքն էր ուզած պայմանը դնել հետեր-

նին. ինչպէս ի 1311 (յունիս 22) Պէմպոյ Տօ՛րտի Նաւապետին վրայ պարտք դրաւ, որ առ Թագաւորն Հայոց ղրկուած դեսպանը ձրիաբար տանի և դարձընէ։ Քաղաքական դիպուածոց համեմատ՝ արգելք կու դրուէր վաճառականաց՝ չերթալ ի Հայս կամ յայլ աշխարհս. ինչպէս յամի 1320, Օշին Թագաւորին մահուան և Լեւոն Դի յաջորդութեան առթիւ։ Երբեմն ալ կ՚արգելուի այս կամ այն նիւթոց արտահանութիւն. օրինակ իմն՝ կտաւոյ, յամս 1322–3։ Յամի 1328 հրաման կու տրուի՝ որ ի Հայոց կամ ուրիշ աշխարհներէ վերցուած վաճառքը՝ որ ասդիս անդին մնացեր էին, Վենետկոյ ծոցին ծովապետն վերցընէ ու փոխադրէ ուր որ արժան է։ Աւելորդ է ըսել որ հասարակաց համար օրէնք սահմանած առենները, զանց չէին ըներ նա և առանձնականաց խնդիրները. օրինակի համար, վճիռ մը կը պատուիրէ քննել և խընամել Սէրվատէոյ նաւը, որ ալեկոծութեամբ վնասուած էր յԱյաս և յայլ կողմանս։

**Վաճառք**. — Արտահանուած նիւթք կրկին են. մին Թանկագին բերք մերձաւոր և հեռաւոր արեւելեան աշխարհաց, Հնդկաց, Չինաց, Ասորւոց և Պարսից, զորս յաճախ կարաւանք ցամաքի ճամբով կը բերէին յԱյաս. իսկ միւսն՝

ընիկ բերք Սիսուանայ, որոց մէջ գլխաւոր էր Բամպակ, ինչպէս յիշեցինք. և վաճառականական յարաբերութեանց վերջի տարիներուն (1344) կը հանդիպինք, որ մանտուացի մը (Միքայէլ Լօ-Թաթարոյ) այս նիւթէն 4000 հակ ղրկեր է ի Վենետիկ։ Նշանաւոր էր և բամբակեայ հիւսուածն Buche-rami կամ ըստ Փռանկաց Boucrans կոչուածն։

Կիլիկիոյ յատուկ բերք կամ ձեռագործ մ'ալ էր Ցփոխ, ի սուեւոյ այծից, որոյ յիշատակութեան կու հանդիպինք աւելի հնագոյն դարուց մէջ ալ. ուստի և պարգեւագրոց մէջ մասնաւոր պայմաններ ալ դնել հարկ եղաւ, մանաւանդ երբ Վենետք ալ սովրեցան արուեստը, և նոյն իսկ Հայոց երկրին մէջ սկսան գործել։ Թագաւորութեան վերցուելէն ետքը, նա և նոյն իսկ նոր դարուց մէջ (ԺԶ-Է), այս ձեռագործս Հայոց ձեռքով կը բերուէր ի Վենետիկ, որոյ յիշատակն շատ անգամ կ'ըլլայ Հինգ իմաստնոց կամ պետութեան վճռոց մէջ և ի գիրս նոտարաց։ Հայրենեաց իբրեւ սեպհական ու պատուական բերք՝ Հայոց դեսպանին ձեռքով ընծայ կը տարուէր երբեմն առ սրբազան քահանայապետն Հռովմայ. բայց որովհետեւ անգամ մի ծանկեր էր գայն և զուկեղիպակն,

գաղտուկ բանուեցաւ և արգիլուեցաւ ի մաքսաւորաց. այլ ի շնորհս տանողին և որում կը տանէր՝ ազատութիւն եղաւ դեսպանին։ Ուրիշ նիւթերէ զատ կը յիշատակուի տեղ տեղ և Հայկական աղ (Sal Armiago), որ հաւանօրէն պիտի ըլլայ Sal ammoniaco.

Հանքային նիւթերէն կամ ի մետաղաց՝ մասնաւոր կերպով կը յիշուին Երկաթ, Պղինձ, Պողպատ։ Ի կենդանեաց՝ Ձի, Ջորի, Էշ, Արջառ, և մանաւանդ Մուշտակ՝ զոր կը մատակարարէին Մեծ Հայք, և Մորթ քամչոյ։ Իսկ ի բուսականաց՝ տռանձինն, կամ ուրիշներէն աւելի յաճախագոյն կը յիշուի ի դիւանս Վենետկոյ Պղպեղ՝ յԱյաս. զոր անշուշտ ինքեանք Հայք կը բերէին ի Հնդկաց կամ իրենց սեպհականած էին զվաճառն։ Ասոնցմէ զատ Ցորեան, Ձուկն, Խաղող և Գինի, Անուշ Փայտ, Խար, և այլն։

Իսկ ի Վենետաց ի Հայս փոխադրած վաճառքն էին, նախ, գլխաւոր նիւթք զգեստուց, անկազմ հանեալ ի Հայոց և արուեստագործուած կրկին հօն մուծանելով, ինչպէս Աստեղջենք, Կտաւէք և պէսպէս Ոսկեթելանք (Samiti)։ Նշանակութեան արժանաւոր է մուրհակն պահանջից Միքայէլի Լօ Թաթարոյ կամ Լոքաթարոյի (1306), Սմբատայ Թագաւորի Մանուէլ դեսպանէն կամ գործակալէն,

որ իր ձեռքովը ինն տախտ կամ փերթ ու֊
կեղիպակ գնած էր, ամէն մէկը 800 նոր
դրամոյ արժէքով, Եգիպտոսի սուլտանին ըն֊
ծայ ղրկելու համար։ Ասոնցմէ զատ՝ այլ և
այլ Համեմեղէնք (Épiceries), զորս ընդ ծով
կը բերէին յԱրաբիոյ, ի Հնդկաց և յԵգիպ֊
տոսէ. նոյնպէս և վենետական յատուկ
ձեռագործ՝ Ապակեղէնք և նմանիք, Կաշմառք
Նառառոց և Գունք, երբեմն և Զէնք։ Հայոց
համար կարեւոր նիւթերէն մէկն ալ՝ տա֊
շուած և յղկուած փայտն էր, զոր իրենց եր֊
կրին մայրիք կը մատակարարէին օտարազ֊
գեաց, և պատրաստածը կ'ընդունէին ի պէտս
շինութեանց։ Հետաքննելի վաւերական մը
կայ 1326 օգոստոս 21 թուականաւ, յորում
և ցուցակ նիւթոց առաքելոց ի Վենետկոյ
ի Հայս, և գլխաւորաբար փայտեղէնք, ման֊
րամասն նշանակեալ չափաւ, թուով և ար֊
ժէքիւք. ուրիշ անգամներ ալ յԱյաս նաւով
Պայլին տանը նորոգութեան համար պէտք
եղած փայտը՝ ղրկուեցաւ ի Վենետկոյ։

Վաճառականաց շահասիրութիւնն երբեմն
չէր խղճեր պետութեան շահը ոտքի տակ
առնուլ, կամ անկէ խուսել փախչիլ, մաքսի
հարկը չվճարելով։ Իրենց այս ձեռնարկին
մէջ մերթ կը յաջողէին, և մերթ կը բռնուէին.
և պետութիւնն ալ երբեմն կը պատուհասէ

զննողին, երբեմն ալ ներողամիտ երեւնալով իր դիւանաց մէջ կ'արձանագրէ այնպիսեաց համար ըրած շնորհքը։

Դրամք. — Միջին դարուց՝ մանաւանդ ընդ արեւելից վաճառականութեան գիտութեան՝ կարեւորագոյն մաս մ'է դրամոց և անոնց արժէից ծանօթութիւնն, որոնցմով առեւտուրք կը կատարուէին. և թէպէտ շատք աշխատեր, ու առաւել կամ նուազ յաջողութեամբ կրցեր են ճանչնալ և ստուգել, բայց հարկ է որ ամէնքն երախտապարտ ըլլան փլորենտեան գործակալին Պալտինոյ Բեկոլոդդի, որ իւր ժամանակին՝ չորեքտասաներորդ դարուն, դրամոց և կշռոց համեմատութիւնն առ մեզ հասուցընելով, Հայոց Կիլիկեցւոց դրամոց և կշռոց վրայ ալ տեղեկութիւններ կու տայ. Վենետկեան դիւանաց մէջ ալ շատ պատուական ծանօթութիւններ կը գտնենք, և մեծապէս հաճելիք են՝ ի ծանօթութիւն յարաբերութեանց նոյն ատենուան հայկական տէրութեան ընդ Վենետաց։

1289 օգոստոս 18 թուականաւ տրուած վճռով մը Հայոց Նոր դրամը, որ նոյն ատեն և գրեթէ մինչ ի վերջ կիլիկեան թագաւորութեան վարուն կամ գործածուած դրամն էր, (թէպէտ և հետզհետէ նուազելով յար-

ժէան), այսպէս կը համեմատի. մէկ Բիզանդ սառակինեան = 10 Նոր դրամ Հայոց = 35 սոլտոյ վենետկեան. որ է ըսել՝ մէկ Նոր դրամ = երեքուկէս սոլտոյ վենետեան։ Քառասուն և չորս տարի ետքը (13 մայիս 1333) պետութիւնն կը վճռէ ուրիշ համեմատութիւն մի՝ ընդ Թակաւորին (Tacolini) կոչուած Հայկական դրամոց՝ որ Reale կը թարգմանուի, և ի ժամանակին՝ ու անկէ ետքն ալ՝ Հայոց սովորական դրամն էր, և հազիւ Նոր դրամն ու Թագւորին կոչուածն մէկտեղ կը յիշուին։ Վճիռն կու պատուիրէ վենետկեան տասուերկու Կրոսը՝ զուգել Հայոց տասուերեք Թագւորին դրամոյ հետ. Նոյն վճռոյն մէջ կան նա և ուրիշ կարեւոր համեմատութիւնք Վենետկոյ կրոսից ուրիշ տեղեաց դրամոց հետ. ինչպէս, Տրապիզոնի, Դանայ, Կիպրոսի, և այլն։ Եթէ ուզենայ մէկն մեր դրամքը համեմատել հիմկու վարուն դրամոց՝ Գաղղիոյ ֆրանքին կամ իտալական արծաթ լիրայի հետ, ըստ մեր քննութեան՝ Նոր դրամն առջի բերան կ'արժէր ըստ Նիւթականին իբր 0,90. յետոյ նուազելով իջաւ 0,85. 0,75 և մինչև 0,57. այսպէս և Թագւորին դրամն յառաջագոյն կ'արժէր 0,66 և ապա 0,49 կամ գրեթէ կէս ֆրանք։ Աւելորդ կու համարիմ յուզել մեծ խնդիր մի՝ դրամոց կամ անոնց

հաւասար նիւթոց վաճառական արժէից համեմատութիւնն այն ատենուան և ներկայիս հետ։ Հայք ունէին նա և արծաթի բիզանդ դրամ, որ կ'արժէր ֆրանք 2.50. և ոսկի՝ այլեւայլ կշռով, ըստ զանազան ժամանակաց. յորոց ոմանց արժէքն էր 21 ֆրանք, այլոց 15 և 12։ Սակաւագիւտ են հիմայ Հայոց գործածած ոսկեղէն դրամք. իսկ արծաթի Նոր կամ հին դրամք, ինչպէս նա և պղնձիք՝ համեմատութեամբ շատ աւելի կը գտնուին, և յաճախագոյն յանուն Լեւոնի և Հեթմոյ։

Ի լրումն ծանօթութեան կարեւոր խնդրոյս՝ անհրաժեշտ կը համարիմ մէջ բերել քիչ յառաջ յիշատակուած Բեկոլոդդեայ համեմատութիւնները՝ Զափուց, Կշռոց և Դրամոց Հայոց ընդ վենետկեանցն, և ուրիշ տեղեաց հետ, ուր որ կարելի չէ որոշել ի վենետականաց ։

Ruotoli 1 di Spezierie d'Erminia torna in Vinegia libbre 20, e once 3 e 1/4 sottili. — Ruotoli 49 di Cotone d' Erminia tornano in Vinegia libbre 9 sottili. — Occhia 1 di Seta, e di Spezierie sottile d'Erminia torna in Vinegia libbre 1 e once 4 sottili. — Il migliajo grosso di Vinegia torna in Erminia ruotoli 76 in

78 o vuogli Catars $20\,^1/_2$ d'Erminia. — Mars al cento dars al peso di Vinegia fa in Erminia mars $106\,^1/_2$. — Braccia 315 di tele line alla misura di Vinegia, torna in Erminia Canne 100. — Libbre 11 sottile di Vinegia tornano all'Ajazzo d'Erminia libbre 10. — Costano le mercatanzie a conducere da Vinegia in Erminia, e d'Armenia a Vinegia per nolo di comune ordinato per lo comune di Vinegia in Galee armate, come dirà qui a piede, e diviserà innanzi a una carta. — Tele grosse e Canovacci per soldi 6 di grossi dars di Vinegia alla balla, a peso 350 al peso grosso di Vinegia. — Rame, e Stagno e Ferro soldi 6 di grossi dars la balla di peso libbre 260 al peso grosso di Vinegia. Argenti in pezzi 1 per cento. — Oro filato, Argento filato, e altre simile cose dee avere di casse 3 per cento. — Tutte Spezierie soldi 13 di grossi dars del migliajo sottile. — Ciambellotti 2 per cento in Galee armate, in legno disarmato $1\,^1/_2$ per cento. — Zucchero soldi 10 di grossi dars del migliajo sottile.

*Առ լաւ եւս խելամտութիւն որպիսութեան*

առեւտրի Վենետաց՝ զորս յայլեւայլ ժամանակս և ի դէպս ունեցեր են ընդ Հայոց, և այն պատճառաւ մերթ ընդ մերթ յառաջ եկած դժուարութեանց, պիտանի են յոյժ երկու հաւաստագիրք (documents), յորոց մին գրուած է ի 1312 յԱյաս քաղաքէ՝ ի ձեռն Գրիգոր Տոլֆին պայլի՝ առ դուքսն Մարինոյ Ծործի. իսկ միւսն՝ ի 1330 գրէ Պետրոս Պրակատին։ Առաջնումն Տոլֆին կու ծանուցանէ դքսին, թէ տարի ու կէս կամ երկամեայ ժամանակ վարած պայլութեան պաշտամանը միջոց՝ ներս մտած վաճառուց՝ կէս առ հարիւր իրեն ընկած բաժինն ընդունելով, գումարն եղած էր իբրու վաթսուն լիրա կրոսից. այս կրոսը համարելով հարիւր քան ֆրանք, վաթսուն կրոսին գումարն կ'ըլլայ 7200 ֆրանք. և այս համեմատութեամբ (200×7200)=1,440,000 ֆրանք կ'ըլլան առ նուազն՝ Վենետաց վաճառուց արժէքն, իսկ հիմակուան արժէքով գէթ երեք միլիոնի կը գումարին։ Այս պզտի նշմարաւ կրնանք գուշակել և մերձաւորապէս համեմատել թէ քանի՛ հարիւր միլիոններու առեւտուր ըրած են Վենետք յութսուն ամս բարգաւաճութեան Այասոյ. և քանի՛ միլիարք անցած են քաղաքին հրապարակաց վրայ, ոչ միայն իրենց՝ այլ նա և ուրիշ վաճառական

ազգաց ապրանքէն, Գենուացւոց, Պիզացւոց, Փլորենտացւոց, և այլն, և ուրիշներուն, զորս կը յիշէ կամ չի յիշեր Բեկոլոդդի, և յամենայն աղխամաղխէ արեւելից և արեւմըտից՝ որ ընդ ծով և ընդ ցամաք կը թափուէին յառաջնակարգ շահաստանն և նաւահանգիստն այն՝ ԺԳ—Դ դարուց վերջին և առաջին կիսուն, որ ի ժամանակին ճառագայթաւէտ կը ցոլանայր ընդ ամենայն աշխարհ. իսկ հիմայ՝ իբրև զկէտ մի աղօտացեալ և աներեւութացեալ, մանաւանդ թէ անհետացած, մեռեալ և մոռցուած յամենայն վաճառականաց և ընչասիրաց աշխարհի։ Կու ծանուցանէ դարձեալ Տոլֆին թէ ղրկած է առ դուքսն տասն լիրա կրոսից, ինչպէս նա և քսան կրոս առ նախորդն, Մնացածը ծախեր է ի պէտս հայրենակցացն և անոց հօն ունեցած տանց վրայ։ Կու յաւելու, թէ դժուարին կ'ըլլայ տեղւոյն վրայ գանձել հարիւրին կէս սահմանեալ տուրքը, և թէ լաւագոյն է առնուլ զայն ի Վենետիկ. վասն զի, կ'ըսէ, Ռուպինի և Գոնդարինի երկու վաճառականներէն որ 1400 պարկէն աւելի վաճառք փոխադրեր էին իրենց նաւերովը՝ հազիւ կրցեր էր տասն կամ տասնումէկ կրոս բաժ առնուլ։

Իսկ Պրակատինի գրուածն՝ յամի 1330 կամ ի յաջորդին՝ ողբական եղանակ մ'ունի.

գանգատելով այն գրկանաց համար՝ զորս վաճառականք Վենետկոյ կրէին ի Հայս, յիշելով յանուանէ նա և զոմանս ի զրկելոցն. յորս՝ բանտուորք, ապաննուորք և կողոպ-տուորք ալ կան, և իրենց իրաւունք չըլլար։ Կ՚իմացընէ, թէ առըկին կշիռքն վեց առ հա-րիւր նուազած է. թէ, նաւուց համած կամ մեկնած ատեն՝ կ՚ուշացընեն կամ անկարգ-օրէն կու քննեն և կշիռքը կու խարդախեն. — Թէ, հակառակ պարգեւագրին տուելոյ ի Թագաւորէ՝ վեց կամ չորս առ հարիւր բաժ կու պահանջեն քաղաքէն դուրս, և մէկ առ հարիւր ի քաղաքին։ — Ի վենետացի ցփսխա-գործաց աւելորդ չափողչէք կը պահանջուին. — յԱտանա՝ անկտակ մեռնողի մը ինչքը՝ չթողուցին որ պայլն գրաւէ, և իրեն թոյլ չեն տար Վենետաց դատաստանը տեսնել, ինչպէս յառաջագոյն շնորհուած էր ու սահ-մանուած, այլ կու ձգեն յատեան Թագաւորին։ Այս գանգատանաց վրայ կու յաւելու, թէ ի վաճառականաց շատ ծախք պահանջուելուն պատճառաւ, պատշաճ կու համարէր տուները նորոգել ու վարձել, և այն հասոյթէն ռոճիկ ու թոշակ տալով երկու հրապարակախօսաց (plazeri) պահել՝ որպէս յառաջն։

Յայտնի է որ այսչափ ու այսպիսի բողո-քանաց վրայ չէր կրնար դուքսն լուռ կենալ.

ուստի գրեց առ Թագաւորն Հայոց Լեւոն Դ. և Նոր Պարգեւագիր մ'ալ ընդունեցաւ (1333), ինչպէս պիտի տեսնենք քիչ ետքը՝ ի կարգի յարաբերութեանց երկուցուն արքունեացն, ընդ որում և մեր Թագաւորին վերջին Թուղթըն առ դուքս ժամանակին.

Վենետաց Կիլիկիոյ Հայոց հետ վաճառականական յարաբերութեանց վրայ համառօտ և հարեւանցի տեսութիւննիս կնքելով, հարկ կու համարիմ յաւելուլ՝ ինծի ծանօթ քանի մը առեւտրոց յիշատակքն այն աշխարհէն դուրս, ի բուն և ի Մեծ Հայս. որպիսի է հետաքննական անձն և գործ Ա—է կոչուած մէկու մը, որ յանուանէն Հայ կը ճանաչի, մեծ Հայոց մէջ ի ժամանակին շատ գործածական անուն մը. և ի դիւանական գրուած՝ Թուրք և Թաթար բառով Քոլամաճ կը կոչուի, և համարիմ թէ թարգման, դեսպան կամ կարաւանապետ կը նշանակէ. և յիրաւի՝ այսպիսի պաշտօն մ'էր ունեցածը, Հայոց ու Պարսից սահմաններէն ընկերելով կամ առաջնորդելով կարաւանաց ի Տրապիզոն: Սա՝ անգամ մի հանդիպելով և ի Վենետիկ՝ խնդրեց որ ի վարձ իր բազմամեայ ծառայութեանց՝ յօգուտ և ի շահ հասարակապետութեան երկրին՝ երթալով և գալով ի Դաւրիժոյ ի Տրապիզոն, առ մէն մի գրա-

ստաբեռն՝ դրամական շնորհք և պարգեւ մը ըլլալ իրեն. բայց խնդիրն ընդունելի չեղաւ (16 յունիս, 1332)։ Նոյն օրերը (յունիս 20) ի Վենետիկ գտնուեցաւ մահմէտական մի՝ Հաճի Սիւլէյման Թայիպի անունով, որ նոյն Աւագոյ թարգմանութեամբ յանձն առաւ որ իրեն տրուած 4000 բիզանդ դրամէն՝ ի փոխարէն վնասուն յԷրզիռում, մասն հանուլ նոյնպէս վնաս կրող երկու անձանց՝ Սանուտոյի և Նիկողայոսի Ճիւսթինիանի, երեք փող առ բեռն։ Այս պայմանս՝ ինքն Սիւլէյման գրեց ի պարսիկ լեզու, և Աւագ թարգմանեց յիտալական. և վկայեցին՝ Մահմէտ որդի Շէյխ Գութպէտտինի և Հաճի Ալի։

Նշանաւոր և ոչ անծանօթ է ոմանց գիտնոց՝ Ղրիմու Թաթարաց հետ եղած վաճառականական դէպք մ'ալ. եւս և խնդիրք Հայոց՝ որ ի Թերակղզւոյն կու բնակէին բազմութեամբ, և որոց վէճք և գործք՝ յաճախագոյն եւս կու գտնուին ի դիւանս Ճենովացւոց։ Ղրիմու Սուլղաթ գլխաւոր քաղաքին կուսակալն Ռամազան, 1356 թուին (2 մարտ) Աքսէրայ քաղաքին մէջ պայման դրաւ Վենետաց հետ, որ իրենց վաճառուց արժէից համեմատ երեք առ հարիւր հարկ վճարեն. Նոյնպէս ուրիշ քանի մը պայմաններ ալ։ Դաշնագրով մ'ալ շնորհեց իրենց որ

կարող ըլլան գալ ի նաւահանգիստ Բրովա֊թոյ (Provato) կամ Նոր քաղաքի Թերակըղզւոյն, պահանջելով որ իր հպատակաց եղած վնասը հատուցանեն. որոց մէջ էին և Հայք՝ գերեալք ի Վենետաց այն գենուացի նաւուն հետ՝ որով եկեր էին ի Պոլիս, իրենց 4000 բեռ կարասեաւ. կուսակալն կը խոստանար որ ինքն ալ ետ դարձընէ իր գրաւած Վենետաց ինչքը։ Այս վաւերագիրս՝ արդէն իսկ շատ տարի յառաջ հրատարակուած է ի Մասլադրի կոմսէ։ Ռամազանի յաջորդն՝ միոյն տեղ երեք նաւահանգիստ շնորհեց, և էին, Provato, Calitra, Soldadi. Առ սա գրեց Ղրիմու Թաթարաց Գէրաի ղան՝ որ Ռամազան կուսակալին պէս պահանջէ ի Վենետաց իրենց կողոպուտը, որոց մէջ կը գտնուէր գումար մը 1300 արծաթոյ և 500 բեռն վաճառք Պասուար անունով անձի մը՝ որ կու գար ի Կիպրոսէ։ Բայց ղանին բարեսիրտ կինն Վենետաց շնորհք մ'ուզելով ընել, իւր անձնական գանձէն հատոյց զրկելոց՝ 11,000 բիզանդ դրամ, որոց 5000ն Հայոց բաժին էր, քսան բիզանդ ալ անոնց Թուշակ. դքսին ալ գրեց որ Հայոց պահանջից համեմատ (pro precepto Arminium) կը հատուցանէ զգումարն (10,998 բիզանդ). 550 դրամոց գումար մ'ալ ի փոխարէն 2,830 դրամոց,

զնենգողմն, երբեմն ալ ներողամիտ երեւնալով իր դիւանաց մէջ կ'արձանագրէ այնպիսեաց համար ըրած շնորհքը։

**Դրամք.** — Միջին դարուց՝ մանաւանդ ընդ արեւելից վաճառականութեան գիտութեան՝ կարեւորագոյն մաս մ'է դրամոց և անոնց արժէից ծանօթութիւնն, որոնցմով առեւտուրք կը կատարուէին. և թէպէտ շատք աշխատեր, ու առաւել կամ նուազ յաջողութեամբ կրցեր են ճանչնալ և ստուգել, բայց հարկ է որ ամէնքն երախտապարտ ըլլան փլորենտեան գործակալին Պալտինոյ Բեկոլոդդի, որ իւր ժամանակին՝ չորեքտասաներորդ դարուն, դրամոց և կշռոց համեմատութիւնն առ մեզ հասցընելով, Հայոց Կիլիկեցւոց դրամոց և կշռոց վրայ ալ տեղեկութիւններ կու տայ. Վենետկեան դիւանաց մէջ ալ շատ պատուական ծանօթութիւններ կը գտնենք, և մեծապէս հաճելիք են՝ ի ծանօթութիւն յարաբերութեանց նոյն ատենուան հայկական տէրութեան ընդ Վենետաց։

1289 օգոստոս 18 թուականաւ տրուած վճռով մը Հայոց Նոր դրամը, որ նոյն ատեն և գրեթէ մինչ ի վերջ կիլիկեան թագաւորութեան վարուն կամ գործածուած դրամն էր, (թէպէտ և հետզհետէ նուազելով յար-

ժէան), այսպէս կը համեմատի. մէկ Բիզանդ սառակինեան = 10 Նոր դրամ Հայոց = 35 սոլտոյ վենետկեան. որ է ըսել՝ մէկ Նոր դրամ = երեքուկէս սոլտոյ վենետեան։ Քառասուն և չորս տարի ետքը (13 մայիս 1333) պետութիւնն կը վճռէ ուրիշ համեմատութիւն մի՝ ընդ Թաքօլինի (Tacolini) կոչուած հայկական դրամոց՝ որ Reale կը թարգմանուի, և ի ժամանակին՝ ու անկէ ետքն ալ՝ Հայոց սովորական դրամն էր, և հազիւ Նոր դրամն ու Թագւորին կոչուածն մէկտեղ կը յիշուին։ Վճիռն կու պատուիրէ վենետկեան տասուերկու Կրօսը զուգել Հայոց տասուերեք Թագւորին դրամոյ հետ. Նոյն վճռոյն մէջ կան նա և ուրիշ կարեւոր համեմատութիւնք Վենետկոյ կրօսից ուրիշ տեղեաց դրամոց հետ. ինչպէս, Տրապիզոնի, Գանայ, Կիպրոսի, և այլն։ Եթէ ուզենայ մէկն մեր դրամքը համեմատել հիմկու վարուն դրամոց՝ Գաղղիոյ ֆրանքին կամ իտալական արծաթ լիրայի հետ, ըստ մեր քննութեան՝ Նոր դրամն առջի բերան կ'արժէր ըստ նիւթականին իբր 0,90. յետոյ նուազելով իջաւ 0,85. 0,75 և մինչև 0,57. այսպէս և Թագւորին դրամն յառաջագոյն կ'արժէր 0,66 և ապա 0,49 կամ գրեթէ կէս ֆրանք։ Աւելորդ կու համարիմ յուզել մեծ խնդիր մի՝ դրամոց կամ անոնց

հաւաստար նիւթոց վարկական արժէքից համեմատութիւնն այն ատենուան և ներկայիս հետ։ Հայք ունէին նա և արծաթի բիզանդ դրամ, որ կ՚արժէր ֆրանք 2.50. և ոսկի՝ այլևայլ կշռով, ըստ զանազան ժամանակաց. յորոց ոմանց արժէքն էր 21 ֆրանք, այլոց 15 և 12։ Սակաւագիւտ են հիմայ Հայոց գործածած ոսկեղէն դրամք. իսկ արծաթի Նոր կամ հին դրամք, ինչպէս նա և պղնձիք՝ համեմատութեամբ շատ աւելի կը գտնուին, և յաճախագոյն յանուն Լեւոնի և Հեթմոյ։

Ի լրումն ծանօթութեան կարեւոր խնդրոյս՝ անհրաժեշտ կը համարիմ մէջ բերել քիչ յառաջ յիշատակուած Բեկոլոդդեայ համեմատութիւնները՝ Զափուց, Կշռոց և Դրամոց Հայոց ընդ վենետկեանցն, և ուրիշ տեղեաց հետ, ուր որ կարելի չէ որոշել ի վենետականաց։

Ruotoli 1 di Spezierie d'Erminia torna in Vinegia libbre 20, e once 3 e 1/4 sottili. — Ruotoli 49 di Cotone d' Erminia tornano in Vinegia libbre 9 sottili. — Occhia 1 di Seta, e di Spezierie sottile d'Erminia torna in Vinegia libbre 1 e once 4 sottili. — Il migliajo grosso di Vinegia torna in Erminia ruotoli 76 in

78 o vuogli Catars 20 $^{1}/_{2}$ d'Erminia. — Mars al cento dars al peso di Vinegia fa in Erminia mars 106 $^{1}/_{2}$. — Braccia 315 di tele line alla misura di Vinegia, torna in Erminia Canne 100. — Libbre 11 sottile di Vinegia tornano all'Ajazzo d'Erminia libbre 10. — Costano le mercatanzie a conducere da Vinegia in Erminia, e d'Armenia a Vinegia per nolo di comune ordinato per lo comune di Vinegia in Galee armate, come dirà qui a piede, e diviserà innanzi a una carta. — Tele grosse e Canovacci per soldi 6 di grossi dars di Vinegia alla balla, a peso 350 al peso grosso di Vinegia. — Rame, e Stagno e Ferro soldi 6 di grossi dars la balla di peso libbre 260 al peso grosso di Vinegia. Argenti in pezzi 1 per cento. — Oro filato, Argento filato, e altre simile cose dee avere di casse 3 per cento. — Tutte Spezierie soldi 13 di grossi dars del migliajo sottile. — Ciambellotti 2 per cento in Galee armate, in legno disarmato 1 $^{1}/_{2}$ per cento. — Zucchero soldi 10 di grossi dars del migliajo sottile.

*Առ լաւ եւս խելամտութիւն որպիսութեան*

առեւտրի Վենետաց՝ զորս յայլեւայլ ժամանակս և ի դէպս ունեցեր են ընդ Հայոց, և այն պատճառաւ մերթ ընդ մերթ յառաջ եկած դժուարութեանց, պիտանի են յոյժ երկու հաւաստագիրք (documents), յորոց մին գրուած է ի 1312 յԱյաս քաղաքէ՝ ի ձեռն Գրիգոր Տոլֆին պայլի՝ առ դուքսն Մարինոյ Ծործի. իսկ միւսն՝ ի 1330 գրէ Պետրոս Պրակատին։ Առաջնոյն Տոլֆին կու ծանուցանէ դքսին, թէ տարի ու կէս կամ երկամեայ ժամանակ վարած պայլութեան պաշտամանը միջոց՝ ներս մտած վաճառուց՝ կէս առ հարիւր իրեն ընկած բաժինն ընդունելով, գումարն եղած էր իբրու վաթսուն լիրա կրոսից. այս կրոսը համարելով հարիւր քսան ֆրանք, վաթսուն կրոսին գումարն կ'ըլլայ 7200 ֆրանք. և այս համեմատութեամբ (200×7200)=1,440,000 ֆրանք կ'ըլլան առ նուազն՝ Վենետաց վաճառուց արժէքն, իսկ հիմակուան արժէքով գէթ երեք միլիոնի կը գումարին։ Այս պզտի նշմարաւ կրնանք գուշակել և մերձաւորապէս համեմատել թէ քանի՛ հարիւր միլիոններու առետուր ըրած են Վենետք յութսուն ամս բարգաւաճութեան Այասոյ. և քանի՛ միլիարք անցած են քաղաքին հրապարակաց վրայ, ոչ միայն իրենց՝ այլ նա և ուրիշ վաճառական

ազգաց ապրանքէն, Գենուացւոց, Պիզացւոց, Փլորենտացւոց, և այլն, և ուրիշներուն, զորս կը յիշէ կամ չի յիշեր Բեկոլոդդի, և յամենայն աղխամաղխէ արեւելից և արեւմըտից՝ որ ընդ ծով և ընդ ցամաք կը Թափուէին յառաջնակարգ շահաստանն և նաւահանգիստն այն՝ ԺԳ—Դ դարուց վերջին և առաջին կիսուն, որ ի ժամանակին ճառագայԹաւէտ կը ցոլանայր ընդ ամենայն աշխարհ. իսկ հիմայ՝ իբրև զկէտ մի աղօտացեալ և աներեւուԹացեալ, մանաւանդ Թէ անհետացած, մեռեալ և մոռցուած յամենայն վաճառականաց և ընչասիրաց աշխարհի։ Կու ծանուցանէ դարձեալ Տոլֆին Թէ զրկած է առ դուքսն տասն լիրա կրոսից, ինչպէս նա և քսան կրոս առ նախորդն, Մնացածը ծախեր է ի պէտս հայրենակցացն և անոց հօն ունեցած տանց վրայ։ Կու յաւելու, Թէ դժուարին կ'ըլլայ տեղւոյն վրայ գանձել հարիւրին կէս սահմանեալ տուրքը, և Թէ լաւագոյն է առնել զայն ի Վենետիկ. վասն զի, կ'ըսէ, Բուպինի և Գոնդարինի երկու վաճառականներէն որ 1400 պարկէն աւելի վաճառք փոխադրեր էին իրենց նաւերովը՝ հազիւ կրցեր էր տասն կամ տասնումէկ կրոս բաժ առնուլ։

Իսկ Պրակատինի գրուածն՝ յամի 1330 կամ ի յաջորդին՝ ողբական եղանակ մ'ունի.

գանգատելով այն զրկանաց համար՝ զորս վաճառականք Վենետկոյ կրէին ի Հայս, յիշելով յանուանէ նաւ և զոմանս ի զրկելոցն. յորս՝ թանտուողք, ապաննուողք և կողոպտուողք ալ կան, և իրենց իրաւունք չըլլար։ Կ'իմացընէ, թէ տարկին կշիռքն վեց առ հարիւր նուազած է. Թէ, նաւուց հասած կամ մեկնած ատեն՝ կ'ուշացընեն կամ անկարգօրէն կու քննեն և կշիռքը կու խարդախեն. — Թէ, հակառակ պարգեւագրին տուելոյ ի Թագաւորէ՝ վեց կամ չորս առ հարիւր բաժ կու պահանջեն քաղաքէն դուրս, և մէկ առ հարիւր ի քաղաքին։ — Ի վենետացի ցփսխագործաց աւելորդ չափողչէք կը պահանջուին. — յԱտանա՝ անկատակ մեռնողի մը ինչքը՝ չթողուցին որ պայլն գրաւէ, և իրեն թոյլ չեն տար Վենետաց դատաստանը տեսնել, ինչպէս յառաջագոյն շնորհուած էր ու սահմանուած, այլ կու ձգեն յատեան Թագաւորին։ Այս գանգատանաց վրայ կու յաւելու, թէ ի վաճառականաց շատ ծախք պահանջուելուն պատճառաւ, պատշաճ կու համարէր տուները նորոգել ու վարձել, և այն հասոյթէն առճիկ ու թոշակ տալով երկու հրապարակախօսաց (plazeri) պահել՝ որպէս յառաջին։

Յայտնի է որ այսչափ ու այսպիսի բողոքանաց վրայ չէր կրնար դուքսն լուռ կենալ.

ուստի գրեց առ Թագաւորն Հայոց Լեւոն Դ. և Նոր Պարգեւագիր մ'ալ ընդունեցաւ (1333), ինչպէս պիտի տեսնենք քիչ ետքը՝ ի կարգի յարաբերութեանց երկոցուն արքունեացն, ընդ որում և մեր Թագաւորին վերջին Թուղթըն առ դուքս ժամանակին.

Վենետաց Կիլիկիոյ Հայոց հետ վաճառականական յարաբերութեանց վրայ համառօտ և հարեւանցի տեսութիւննիս կնքելով, հարկ կու համարիմ յաւելուլ՝ ինծի ծանօթ քանի մը առեւտրոց յիշատակքն այն աշխարհէն դուրս, ի բուն և ի Մեծ Հայս. որպիսի է հետաքննական անձն և գործ Առաք կոչուած մէկու մը, որ յանուանէն հայ կը ճանաչի, մեծ Հայոց մէջ ի ժամանակին շատ գործածական անուն մը. և ի դիւանական գրուածս՝ Թուրք և Թաթար բառով Թոլամաջ կը կոչուի, և համարիմ թէ թարգման, դեսպան կամ կարաւանապետ կը նշանակէ. և յիրաւի՝ այսպիսի պաշտօն մ'էր ունեցածը, Հայոց ու Պարսից սահմաններէն ընկերելով կամ առաջնորդելով կարաւանաց ի Տրապիզոն: Սա՝ անգամ մի հանդիպելով և ի Վենետիկ՝ խնդրեց որ ի վարձ իր բազմամեայ ծառայութեանց՝ յօգուտ և ի շահ հասարակապետութեան երկրին՝ երթալով և գալով ի Դաւրիժոյ ի Տրապիզոն, առ մէն մի գրա-

ստաբեռն՝ դրամական շնորհք և պարգեւ մը ըլլուի իրեն. բայց խնդիրն ընդունելի չեղաւ (16 յունիս, 1332)։ Նոյն օրերը (յունիս 20) ի Վենետիկ գտնուեցաւ մահմէտական մի՝ Հաճի Սիւլէյման Թայիպի անունով, որ նոյն Աւագայ Թարգմանութեամբ յանձն առաւ որ իրեն տրուած 4000 բիզանդ դրամէն՝ ի փոխարէն վնասուն յերգիռում, մասն հանուի նոյնպէս վնաս կրող երկու անձանց՝ Սանուտոյի և Նիկողայոսի Ճիւսթինիանի, երեք փող առ բեռն։ Այս պայմանս՝ ինքն Սիւլէյման գրեց ի պարսիկ լեզու, և Աւագ Թարգմանեց յիտալական. և վկայեցին՝ Մահմէտ որդի Շէյխ Գութպէտտինի և Հաճի Ալի։

Նշանաւոր և ոչ անծանօթ է ոմանց գիտնոց՝ Ղրիմու Թաթարաց հետ եղած վաճառականական դէպք մ'ալ. եւս և խնդիրք Հայոց՝ որ ի Թերակղզւոյն կու բնակէին բազմութեամբ, և որոց վէճք և գործք՝ յաճախագոյն եւս կու գտնուին ի դիւանս Ջենովացւոց։ Ղրիմու Սուլղաթ գլխաւոր քաղաքին կուսակալն Ռամազան, 1356 թուին (2 մարտ) Աքսէրայ քաղաքին մէջ պայման դրաւ Վենետաց հետ, որ իրենց վաճառուց արժէից համեմատ երեք առ հարիւր հարկ վճարեն. նոյնպէս ուրիշ քանի մը պայմաններ ալ։ Դաշնագրով մ'ալ շնորհեց իրենց որ

կարող ըլլան գալ ի Նաւահանգիստ Բրովա-թոյ (Provato) կամ Նոր քաղաքի Թերակղզ-ւոյն, պահանջելով որ իր հպատակաց եղած վնասը հատուցանեն. որոց մէջ էին և Հայք՝ գերեալք ի Վենետաց այն գենուացի Նաւուն հետ՝ որով եկեր էին ի Պոլիս, իրենց 4000 բեռ կարասեաւ. կուսակալն կը խոստանար որ ինքն ալ ետ դարձընէ իր գրաւած Վենե-տաց ինչքը։ Այս վաւերագիրս՝ արդէն իսկ շատ տարի յառաջ հրատարակուած է ի Մասլադրի կոմսէ։ Ռամազանի յաջորդն՝ միոյն տեղ երեք Նաւահանգիստ շնորհեց, և էին, Provato, Calitra, Soldadi. Առ սա գրեց Ղրիմու Թաթարաց Պէրտի ղան՝ որ Ռա-մազան կուսակալին պէս պահանջէ ի Վե-նետաց իրենց կողոպուտը, որոց մէջ կը գըտ-նուէր գումար մը 1300 արծաթոյ և 500 բեռն վաճառք Պասուար անունով անձի մը՝ որ կու-գար ի Կիպրոսէ։ Բայց ղանին բարեսիրտ կինն Վենետաց շնորհք մ'ուզելով ընել, իւր անձնական գանձէն հատոյց գրկելոց՝ 11,000 բիզանդ դրամ, որոց 5000ն Հայոց բաժին էր, քսան բիզանդ ալ անոնց Թոշակ. դքսին ալ գրեց որ Հայոց պահանջից համեմատ (pro precepto Arminium) կը հատուցանէ զգումարն (10,998 բիզանդ). 550 դրամոց գումար մ'ալ ի փոխարէն 2,830 դրամոց,

որոյ պարտական ըլլալնին՝ ինքեանք Վենետք ալ կը վկայէին։

Բազմաթիւ յիշատակք ալ կը գտնուին ի դիւանս՝ վաճառականական յարաբերութեանց Վենետաց ընդ Դավրիժու՝ մայրաքաղաքի Պարսկահայոց, և որոց քննութիւնն կը հեռացընէ զմեզ մեր նպատակէն. այսչափ միայն յիշեցընենք որ Շէյխ Իւվէյզ ղան կամ Թագաւոր Դավրիժու՝ յամի իբր 1369 Պարգեւագիր մը տալով առ դուքսն, կը հաստատէր իր նախնեայն Պուսայիդ ղանի շնորհմունքը, և կը հրաւիրէր զվաճառականս՝ ապահով և անվտանգ ցուցընելով Տրապիզոնէ մինչեւ ի Դավրէժ ճանապարհը։ Դուքսն ալ կը ծանուցանէր նմա՝ թէ շատ վաճառականք կը սպասեն ի Տրապիզոն՝ ճամբաներուն ապահովութեանը կասկածանօք. վասն զի աւազակք կողոպտեր էին զվաճառականս մերձ յԱնիկ, որ հին և անուանի տեղ ու բերդ մ'է ի մեծ Հայս, ոչ շատ հեռի յԷրզիռումայ և ի Բասենոյ։ Իւվէյզ ղան գրեց յայնժամ առ պայլն Տրապիզոնի (իբր ի 1373), թէ Ապարամ (Իպրահիմ) անունով մէկը ղրկելով բռնեց ու պատժեց զաւազակսն ու գողօնը ետ դարձուց, ուստի աներկիւղ ու համարձակ կրնան վաճառականք գալ ու երթալ։

## Ե.

### ՎԵՆԵՏԻԿ Ի ՀԱՅՍ

Մեր ինչուան հիմա առաջ բերած վաւե-րական յիշատակագիրներէն յայտնի եղաւ, թէ Վենետկոյ Հասարակապետութիւնն Հա-յոց աշխարհին մէջ իրեն յարակայ ներկա-յացուցիչ ունէր զՊայլն, ոչ այնքան իբրու քաղաքական գործող մը ընդ հայկական պե-տութեան, — որովհետեւ այս վախճանաւ սո-վոր էր յատուկ դեսպաններ ղրկել, — որքան իբր հպատակացը վաճառականական գործոց համար. ուստի և Պայլն կու նստէր յԱյաս, որ մեծ կեդրոն և նաւահանգիստ մ՚էր հա-մաշխարհական վաճառականութեան: Ըսինք թէ Պայլն իր խորհրդականներն ունէր, և թէ ամէն կարեւոր գործ՝ անոնցմէ երեքին երկու մասին հաւանութեամբ կու սահմա-նուէր: Ասոնց հետ կային նա և ուրիշ պաշ-տօնեայք, ինչպէս Բոսրաղանք (placiarii), Վա-ճառաբերաւորք (merciarii), և պահապանք կա-լուածոց, որպիսիք էին՝ Հասարակապետու-

թեան Տունն, Փնդուկք, վարձարեր շինուածք, եկեղեցի, և այլն։ Այլ վաճառականաց բազմապատիկ և բազմազգի կարեւոր գործոց համար՝ յառեւտուրս, ի դաշնադրութիւնս, ի փոխառութիւնս, ի կտակս, անհրաժեշտ պէտք կար նա և ուրիշ պաշտօնէի մ'ալ. և էր Նօտարն, անանջրպետ անձ մի ամէն գլխաւոր պաշտօնակալի քով, որպիսի ոք էր Պայլն. և ինչպէս ի բուն Հայրենիսն՝ նա և յայլ աշխարհս, նոյն ժամանակաց սովորութեանց և օրինաց համեմատ՝ եկեղեցականք էին նօտարքն, իբրու հաւատարմագոյն անձինք, և յաճախ նա և թաղպետք իսկ եկեղեցեաց։ Վենետք ալ Սրբոյն Մարկոսի նուիրուած եկեղեցի մը ունէին յԱյաս. բայց հաւաստիք մը չկայ թէ անոր ժողովրդապետն նօտար այլ եղած ըլլայ. և հաւանելի այլ չերեւիր. այն քիչ թուով յիշուած նօտարքն ալ յԱյաս՝ Վենետկոյ եկեղեցեաց անուամբ կը կոչուին. ինչպէս Ս. Ռափայէլ եկեղեցւոյ քահանայն Փրանկիսկոս Ուրսոյ (1303), Պետրոս (1314–5) Թաղպետ Ս. Եւփիմեայ. յիշուի և Յովհաննէս Բէլլէկրինի քահանայ՝ նօտար, առաջին գրող կտակի յԱյաս մեռնող անձի մը, բայց որոշ չէ թէ արդեօք հո՛ն գրուած է կտակն թէ ի Վենետիկ։ Իբրեւ վկայ նօտարի՝ կը յիշուի

Մարկոս Զէնոյ՝ քահանայ Ս. Երմագորայ եկեղեցւոյ (1316), Պօղոս քահանայ եկեղեցւոյ Ս. Յակովբայ Տէլլուփրիոյ (de l'Orio, 1327)։ — Ուրեք կը յիշուի և Պայլին մատրանապետ՝ Նիկողայոս քահանայ Ս. Եւստաթեայ (1331)։ Այս յիշատակուածներէն՝ միայն Պետրոս քահանայի ձեռքով յօրինուած ու կնքուած հինգ կտակք ծանօթ են՝ գրեալք յԱյաս, յամս 1314–5. ուրիշ նօտարի մ՚այլ, որոյ անունն չի յիշուիր ի գործսն, այլ Վենետկոյ դիւանաց մէջ գտնուի ընդ գրուածս Յովհաննու Գամբրիոյ նօտարի, և են երեսունեւչորս թուով, յօրինեալք ի միջոցի ութ ամսոց, ի կիսոյ օգոստոսի (1316) ցմարտ հետեւեալ տարւոյն. դոյզն՝ մանաւանդ թէ ամենադոյզն նշխար մը յոգնաթիւ ու անհամար գործոց արձանագրելոց՝ գէթ յութսուն ամս բարգաւաճանաց Այասոյ և յաճախելոյ Վենետաց ի Հայս. յորոց ոմանք ոչ միայն ի շահաստան քաղաքի անդ բնակէին, այլ նա և յայլ քաղաքս աշխարհին, որպէս ի մայրաքաղաքն Սիս, յԱտանա, և այլն. որոց և քաղաքացի (borghesi) ալ գրուած կամ եղած են, ինչպէս կ՚իմանամք ի նօտարական յիշեալ գրուածոց, և յորոց դիւրին է գուշակել թէ որպիսի անակնունելի լոյս պիտի ծագեն Այասոյ նօտարա-

գրութիւնք՝ Վենետաց ընտանեկան պատմութեան, թող վաճառականական գիտելիքն։ Ճենովացի ազնուական ասպետն Տէ-Սիմոնի՝ հմուտ հետամուտ հայրենական և արեւելեան յիշատակաց՝ հրատարակեց ի պատուական գիրս Արեւելեան Լատինի դիւանաց (Archives de l'Orient-Latin) իբր 180 գործս արձանագրեալս յԱյաս ճենովացի Նոտարաց ձեռքով, գրեթէ միայն երկու տարուան (1274, 1279) միջոցին մէջ, և որ իրենց ազգայնոց կը վերաբերէին. և որովհետեւ Վենետք՝ անոնցմէ աւելի երկար ատեն և բազմաթիւ բնակեցան և երթեւեկէին ի Հայս, հազարաւոր թուով պէտք էր որ եղած ըլլային նա և Նոտարական գործք, որոց եթէ ոչ բովանդակն՝ այլ մեծ մասն մի յուսալի է Վենետկոյ անսպառ դիւաններէն։ Աստնցմէ առաջ բերենք միայն՝ ինչուան հիմայ հրատարակուածներէն կամ մեր առանձին քննութեամբ ի դիւանս ծանօթ եղածները, նկատմամբ այն ժամանակին՝ որոյ վերայ է մեր խօսքն. վասն զի վերջին ԺԶ-ԺԸ դարուց Նոտարական և պաշտօնական Հայկական գրուածք ի Վենետիկ՝ հազարաւորք են ծանօթքն, որ դեռ հրատարակուած չեն.

Այաս քաղաքին մէջ վախճանելոց կտակաց մին է՝ Յովհաննու Ռուծծինի (Ruzzini) (1

հոկտ. 1315) մականուանելոյ Թա՛Թարոյ (Tataro): Այս անուամբ ծանօթ է Միքայէլ ոմն որ ի վերջ երեքտասաներորդ դարու՝ Հայոց Սմբատ Թագաւորին դիպակ վաճառած էր, ինչպէս նա և ուրիշ չահավաճառի գործերով: Յուծծինի իր ստացուածքը կտակէ որդւոյն, և կտակակատար սահմանէ Վլաս Մալիբիէրի և Բենեդիկտոս Ճիրա՛րտի ազնուատոհմ անձինքը. փափաքի Թաղուիլ Այասոյ Ս. Մարկոս եկեղեցւոյն մէջ, և կը յանձնէ՝ նոյն քաղաքին նաւահանգստին մէջ գտնուած իր նաւը և ինչքը ժողվել, անոնց տիրութիւն ընելով. — Գտնուին դարձեալ ի դիւանս Վենետկոյ՝ վաւերագրեալ կտակք Անդրէի Նանի († 1 Նոյեմբ. 1315), որ նոյնպէս Թաղուեցաւ ի Ս. Մարկոս Այասոյ. — Եասոմինայ (Iasomina) այրւոյ Դանիելի Միքէլի (25 յուլիս, 1316), որ բաց յայլեւայլ բարեբարական հրիտակաց՝ կու Թողու քսան դրամ (deremi) Ս. Փրկիչ եկեղեցւոյ յԱյաս, ուր կը բնակի, կ'ըսէ, հայ քահանայն Միքայէլ, (ubi habitat presbyter Michael Armenus). — Կտակք Միքայէլի Սիենացւոյ և Սիմոնի Հռամացւոյ (25 Նոյեմբ. 1315). յետինն Թերեւս ասորի էր ազգաւ, իսկ բնակութեամբ հաստատուած յԱյաս։

Առնցմէ զատ՝ բազմաթիւ և հետաքըն-

նաւկանք են մանաւանդ Վենետաց համար՝ նօտարական գործք այլ և այլ խնդրոց, վճռոց, դաշնագրոց, զորս աւելորդ կը համարիմք առ այժմ մէջ բերել, չունենալով մեր նիւթին հետ անմիջական վերաբերութիւն մի։ Յիշենք միայն 1327 Նոյեմբեր 15 Թուականաւ գրուած դաշնագիր մը, որով հայանունն Հեթում (Aytonus de Oria) նաւապետ գենուացի՝ վեց խալէից (նաւուց)՝ խոստանայ չվնասել հօն գտնուող վենետկեան ութ նաւուց, և Պա՛լտոյ Սբի՛նոլայ Գենուաց գունցն՝ երաշխաւոր կ՚ըլլայ Էրիցցոյ պայլի Վենետաց։

Այս վերջին յիշատակ, կամաւ թէ ակամա՛յ՝ կ՚արթընցընէ ի յուշ Իտալաց, մանաւանդ Վենետաց և Գենուացւոց, այն նախանձընդդէմ մրցանքն և արիւնահեղ պատերազմներն՝ որ ի ջուրս ծովուց գրգռեցան այս երկու ժողովրդոց մէջ, և յորոց՝ յայլ և այլ ժամանակս և ի դէպս՝ բոլորովին անմասն չեղաւ նա և Այասոյ գոգն. որով՝ կարասեաց և ազգերու շահուց այն շտեմարանն՝ լայն և թոյլ գերեզման այլ եղաւ շահախընդիր զինելոց. որք երբեմն իրենց ասպնջական բարեկամաց և բարերարաց Հայոց դէմ այլ՝ հինաբար վերուցին իրենց ձեռքն ու զէնքը, թէպէտ և փութալով զղջալ և ջանալով միւ-

անգամ անոնց չնորհաց արժանաւոր ըլլալ։
Այսպէս 1267 Թըւին՝ Գենուաց նաւատոր֊
միղն առաջնորդութեամբ Լուգերգոյ Կրիմալ֊
տոյի՝ աւարելով կողոպտեց ի Կոռիկոս, (որ
Հայոց ամրագոյն նաւահանգիստն էր և յետ
Այասոյ երկրորդ չահաստան), վաճառա֊
բարձ նաւ մը, որոյ վրայ շատ վաճառականք՝
նա և ի Հայոց, բեռցուցեր էին իրենց ա֊
պրանքը, և յետոյ ստիպուեցան (1271) ա֊
նոնց եղած վնասը դարմանել, հատուցա֊
նելով իբր 22,800 բիզանդ սառակին – հայ,
ինչպէս կու ցուցընէ Գենուայի դիւանաց մէջ
գտնուած նոտարական մուրհակ մը։ Բայց
ամենէն աւելի հռչակաւոր և Վենետաց հա֊
մար աղխտագոյնն եղաւ՝ Այասոյ ջուրց մէջ
տրուած նաւամարտն, յամի 1293, զոր այս֊
պէս կը համառօտէ տարեգիրն Հեթում
պատմիչ. «Խալէքն ճնվիզացն կռվեցան յԱ֊
» յաս, ընդ երեսունուերկու խալէ և ընդ
» դարեթի Վենեցիանացն, և չահեցան ճըն֊
» վէզքն քսանեւչորս խալէ», առաջնորդու֊
թեամբ Սբինոլայ Նիկողայոսի։ Ինչպէս ծա֊
նօթ է, Լիկուրիացւոց այս յաղթանակն,
նոյնպէս և Վենետաց վրիժական պատերազ֊
մունքն յայլ և այլ ծովս, և նոյն իսկ յԱյաս՝
իրենց ձախողութենէն գրեթէ անմիջապէս
ետքը. վասն զի սկսան մէկէն յարձակիլ

հինաբար վաճառաբարձ նաւուց վրայ, ու վերը յիշուած Կոռիկոսի դիմաց կողոպտեցին Հարուստ նաւ մը Մարսիլիացի վաճառականաց. ուրիշ նաւու մը վրայ այլ յարձակեցան խալէք՝ Պածիլլի Մարկոսի առաջնորդութեամբ։ Այս անիրաւութեան դէմ բողոքեցին գրկուող Մարսիլիացի վաճառականք, և ամենէն աւելի Պետրոս Քադրըլէնկ ոմն (1295 մայիս), որ նաւով յԱյասայ պիտի երթար ի Ռումանիա. և կ'ըսեր թէ 700 տուրոմինեան ոսկւոյ վնաս կրած ըլլայ. խօսքին ստուգութեանը վկայեցին նա և պիզացի վաճառականք յատենի իրենց Ցովհաննէս Պորտի գունցին (consul) (1296, սեպտ. 2)։ Այս դիպաց կ'ակնարկէ անշուշտ Վենետկոյ Հասարակապետութեան վճիռ մը, տուեալ ի 22 ապրիլի, 1295։ Ասոնց և Մարսիլիացւոց մէջ յուզուած խնդիրն և վէճ երկար տարիներ քշեց (1302). վասն զի Վենետք ալ իրենց պահանջքն ունէին ի Մարսիլիացւոց, ինչպէս գրէր (1303, նոյեմբ. 18) Մարկոս ոմն Սիպող՝ առ դուքսն իւրեանց՝ այս խնդրոց և պահանջից համար։ Դուքսն արդէն երկու տարի յառաջ (1300) կանխեր գրեր էր խոստանալով գլխաւոր գրկելոյն՝ Թովմայի Բիզարտոյ կրած վնասը հատուցանել։ Երբ այս խնդիրք յուզուէին, Վենետք և Գե-

նուացիք՝ երկու ժողովուրդք ծովատեարք՝ չէին դադրեր ի խռովելոյ զալիս, և անոնցմէ առաւելի՝ խաղաղասէր վաճառականները. Վենետք ջրէն ի ցամաք յարձակելով՝ կարծեցին յաջողագոյն հարուածով տկարացընել իրենց հակառակորդը, քանդելով ցրուելով անոնց սեղանաւորաց ու վաճառականաց յԱյաս քաղաքի ունեցած տրապիզքը (1297), առաջնորդութեամբ Մորոզինոյ Թէոփիլեայ։ Նոյն ատեն և Գենուացիք ինչ որ չէին կարող գործել յԱյաս, ի սահմանս Կիպրացւոց՝ անոնց դաշնակցաց՝ գործէին յելուզակաբար. այն պատճառաւ Միքայէլ Թաթարոյ կը բողոքէր առ Թագաւոր նոցա (1298)։ Քանի մը տարի ետք կը յաջողէին Բէրսիվալ զօրավար առաջնորդին ձեռքով Այասայ մօտ, ի Կաւոյ Կարբասոյ, (Cavo de Carpasso), գերել վենետկեան խալէ մը. և որովհետև այն միջոցին իրարու հետ հաշտուած կը համարուէին երկու հասարակապետութիւնք, Վենետաց ի Կիպրոս նստող Պայլն բողոքեց առ երեսփոխան Գենուաց որ ի կղզւոջն. և տեսնելով որ փոյթը չէ և արժէք մը չուզեր տալ իր բողոքին, գրեց առ դուքսն, ծանուցանելով եղածը (1303, մարտ)։

Նոյն ժամանակներն այլ աւելի կարեւորագոյն խնդիր մը ծագեցաւ ոչ լոկ օտարաց՝

այլ և Հայոց ընդ Վենետոս։ Ստուգիւ չենք կրնար ըսել թէ ինչ պատճառաւ՝ Վենետաց երկու խալէք՝ նաւապետելով Անդրէի Սանուտոյ և Պաւղոսի Մորոզինոյ, յարձակեցան Այասայ ցամաքային բերդին վրայ, ու արքունականաց հետ կողոպտեցին նա և առանձնականաց Հայոց և օտարաց ինչքը. ընդ որս և զգունցին Բիզացւոց։ Աստ բողոքանաց վրայ առ Թագաւորն Հայոց, Բէրմարինոյ Ցովհաննէս Պայլն փութաց ի ստիպելոյ արքային և Լիկոս և Կալոժեն նաւապետաց Այասոյ՝ հատուցանել առ Թորոս դուքս (փոխանորդ) Գունդստապլին, ի փոխարէն վնասուց գունցին՝ 1214 նոր դրամ հայկական։ Բնականաբար այս հատուցմամբ քաջալերուած ուրիշ գրկեալք այլ՝ իրենց բողոքոյ ձայնը բարձրացուցին, իւրաքանչիւր ոք նշանակելով իր վնասը, և արքունի ատենին ձեռքով արդարութիւն և իրաւունք պահանջելով։ Ատեանն այլ աւելցուց արքունանական վնասը՝ զինուց և կազմածոց ի բերդին, և ներկայացընելով (1309) առ Պայլն և առ խորհրդականս նորա, ընդունեցաւ հատուցումը, ինչպէս մանրամասն կը նշանակուի [1], երեսուն հազարէն աւելի գումար մը

1. Cartulaire, յէջ 170.

նոր դրամոց. ուստի և Աւագ Պարոնն, որ թուի թէ ինքն Հեթում թագաւորահայրն էր, (որովհետեւ ստորագրութիւն չկայ, այլ միայն ի փռանկ լեզու Nous le Gran Seignor), իր և թագաւորին կողմէն անդորրագիր տուաւ։

Երբ աստ Վենետաց պարտքերը կը վճարուէին, յարեւմուտս իրենց մայրաքաղաքին մէջ Պետրոս Քաթրըլէնկ գրկուած մարսիլիացին՝ վաճառականաց պահանջից հատուցման խնդիրը կը յարուցանէր. և ուզած ու ենթադրած իրաւանց չհանդիպելով, շատ տարի անցնելէն ետքը (1332, մայիս 12) նորէն խնդիրը ներկայացուց, ուզելով առանց դատի՝ յատենի դքսին աւարտել գործը, զոր պետութեան յանձնարարութեամբ ի քննութիւն առած էր յառաջագոյն անդիկոսն Պենգա ու անընդունելի և մերժելի ցուցած էր զխնդիրն, մանաւանդ այն պատճառաւ՝ որ յառաջնում նուագին Մարսիլիացւոց իրաւունքը պահանջած ատեն, իրենին խօսքը չէր ըրած։ Սակայն ասով այլ բողոքողը չդադրեցաւ. ու գրեթէ վրան տասն տարի անցնելէն ետքը կրկին յուզուած է այս յամառեալ խնդիրս, և վերջապէս աւարտած, անդորրագիր տալով Թոմայինոյ Ֆոնդանոյ Պիաչենցացւոյ և իրեն հետ նա և Քաթրըլէնկի,

յետ գրեթէ քառասուն տարւոյ. ի ծագմանէ խնդրոյն։ Այն ժամանակաց մէջ ալ երբեմն այսպէս կը յերկարաձգէին դատք և իրաւունք. և բարեբաղդք համարուելու են որք Պետրոսի նման յերկարակեացք՝ յաջողէին հասանել իրենց խնդրոյն, և արդարութիւնը կատարուած տեսնել։

Սոյն 1332 տարւոյն մէջ հանդիպած է դարձեալ յամառ հակառակութեան դէպք մը Գենուաց ընդ Վենետաց ի ջուրս Այասայ, յարձակմամբ առաջնոցն նաւու մը վրայ՝ որ այն նաւահանգստէն կ՚երթար ի Կիպրոս։

Զարմանալի և հակառակընդդէմ զուգադիպութեամբ՝ այն միջոցին ու օրերուն՝ յատեանս Վենետաց ալ խնդիր կ՚ըլլար իրենց պահանջանաց համար և հարստահարութեանց, զոր ի Հայոց կը կրէին կամ կրել կարծէին, և զոր ըստ ժամանակին և կարգի պիտի ջանանք հետազօտել։ Դառնանք հիմայ այս երկու ազգաց իրարու հետ ունեցած յարաբերութեանց, ուր թողուցինք ի սկզբան բանիցս, մէջ բերելով մեր թագաւորաց առաջին դաշնագիրները՝ զոր կնքեցին Վենետկոյ դքսերուն հետ, անոնց՝ ազատ կամ գրեթէ ազատ՝ վաճառականութեան յամենայն սահմանս երկրին Հայոց. ուր՝ ինչպէս քիչ յառաջ յիշատակուած նոտարական գրուածնե-

րէն այլ տեսանք, ոչ սակաւ Վեննեաք՝ չէ թէ միայն վաճառականութեան, այլ նա և բնակութեան տուներ հաստատած էին, և շատերն նա և քաղաքացի գրուած Սսոյ և Այասոյ, և հօն մեռած և թաղուած ի Ս. Մարկոս Այասոյ, կամ յայլ քաղաքս, և իրենց ժառանգները թողած. կային ուրիշներ այլ որ կու պարապէին յարուեստս, ի հիւսուած և յոստայնանկութիւն ցփսեաց և դիպակաց, ի հիւսնութիւն, ի դարբնութիւն, ի վաճառ գինւոյ և այլոց պարենից, և այլն։



## Զ.

### ՅԱՐԸՆՉՈՒԹԻՒՆՔ ԱՐՔՈՒՆԵԱՑ ՍՍՈՅ ԸՆԴ ՀԱՍԱՐԱԿԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՎԵՆԵՏԿՈՅ

Նախընթաց գրածովս նշանակեցի՝ երկուցուն պետութեանցս յարաբերութեանց սկըզբնաւորութիւնը, յառաջին ժամանակաց թագաւորութեան մերոյս ի Կիլիկիա, մեծին Լեւոնի արդեամբք, և 1201 Թուականին իրմէ տրուած Պարգեւագրով, որ առաջնորդ և նախատիպ եղաւ ամենայն առընչութեանց Հայոց և Վենետաց, և կը կրկնուէր ու կը նորոգուէր, երբ մեծ հարկ մը կը պահանջէր, ինչպէս Հայոց նոր Թագաւորաց յաջորդելու ժամանակ։ Եւ հարկ էր որ այսպէս ըլլար՝ Լեւոնի մահուընէն և քանի մը տարի անհաստատ վարչութենէ ետքը, երբ յամի 1226 Թագաւորական իշխանութեան մէջ հաստատուեցաւ Հեթում Ա, իր հզօր և խորագէտ հօրն՝ Կոստանդնի՝ պայլութեան և իմաստուն ազդեցութեան տակ։ Սակայն Հեթմոյ մեզի ծանօթ առաջին Պարգեւագրին կը հանդիպինք

Թագաւորելէն քսան տարի ետքը, ինչպէս յառաջագոյն յիշեցինք, ի 1245, և միւս մ՚ալ ի 1261, տեսանք Նա և անոր յաջորդին և որդւոյն՝ Բ Լեւոնի՝ իր Թագաւորութեան տարւոյն մէջ (1271) Հայրենի շնորհքը կըրկին Հաստատելը, Նոր Պարգեւագրաւ մը. ցվերջ Թագաւորութեանն՝ Նորոգութիւն մը կամ ասոր կրկնութիւնը չենք գտներ, թէպէտ և կարելի էր ենթադրել, որ ինչպէս քիչ յառաջագոյն (28 դեկտ. 1288) Գենուացւոց Նոր Պարգեւագիր մը տուած էր, մի առ մի և մանրամասն Նշանակելով տեսակ տեսակ վաճառուց բաժը կամ տուրքը, Նմանօրինակ բան մ՚ալ Վենետաց համար տուած ըլլայ: Կը գտնուին միայն մանր ինչ յիշատակք յարաբերութեանց Հասարակապետութեանն ընդ արքունեաց Հայոց. ինչպէս, յամի 1284 Պայլն Աքքեայ կու վաճառէ Լեւոնի դարեթ (Նաւ) մի ի գին վեց հարիւր բիզանդ դրամոց, և Վենետաց մեծ Ատեանն կու հաւանի ընդ վաճառն: Քանի մը տարի ետքը (10 օգոստ. 1287) Ծերակոյտն հրաման կու ղրկէ Հայոց Պայլին՝ որ երթայ առ Թագաւորն՝ վասն կարեւոր ինչ խնդրոյ կամ գործոյ Յովհաննու ուրումն Գաբրոլի, որուն ինչ ըլլալն կամ որպիսի եւս ունենալն յայտնի չէ:

Լեւոն Բ կու մեռնի ի 6 փետր. 1289

ամին. և հարկ էր նորոգել կամ կրկին հաստատել զդաշինսն ընդ Հեթմոյ Բ յաջորդի նորա ։ Սա նորօրինակ իմն քաղաքավարեցաւ յաշխարհի, Թագաւորական իշխանութեանն հետ զուգելով նա և զմիանձնական կեանս ։ Իր հայրն չէր ուզեր արքունի թագ կրել ի գլուխը՝ ցորչափ կենդանի էր Հեթում Ա հրաժարեալն, և թագադրութեան հանդէսն ալ ուշացուց մինչեւ ցաւարտել սգոյն. իսկ սա չուզեց բնաւ և չդրաւ թագ՝ նա և յարքայաբար իշխելն յառաջին ամս յաջորդութեանն. և երբեմն երբեմն կենացը վերջի տարիներուն՝ Փրանկիսկեանց մենաստանէն ելնելով, (որոց խոնարհ և աղքատին սքեմն առեր և անունն ալ փոխելով Եղբայր Յովհաննէս կը կոչուէր), այն թաւարծի կապայիւ ու. ձեւով կենար ի տան արքունեաց, ու ի ստիպել հարկին՝ կ՚երթար ի պատերազմ՝ ուր որ պէտք կ՚ըլլար, վառեալ ու առաւելեալ ամենայն ոգւով և ձեւով խաչակրութեանց. որպէս և նկարուած կու տեսնուէր նոյն միանձանց յիտալիա ունեցած վանորէից և եկեղեցեաց մէջ, որք և իրենց Յայսմաւուրաց մէջ ի կարգս Երանելեաց դասելով զնա՝ տարուէ տարի անմոռաց կու նորոգեն իր յիշատակն ալ, ի 16 կամ յ՚17 Նոյեմբերի ։ Վենետկոյ ազգային այցելուաց մէջ գտնուին թերեւս ա-

կանատեսք յեկեղեցւոյ Նուիրելոյ Ս. Յովբայ (S. Giobbe), ուր երբեմն մեծ մենաստան մը կար Փրանկիսկեանց, որք սովոր են արտաքուստ իրենց սեննեկաց դրանց վրայ Սրբոյ մը պատկեր նկարել կամ դնել, յաճախ իրենց կարգէն և կրօնէն. այդ վանքին սեննեկաց միոյն վրայ նկարուած էր և Երանելւոյս պատկերն. վեշտասաներորդ կամ հնգետասան դարու գործ, կրօնաւորական սքեմաւ, այլ արքունի սամուրիւ, և Թագն ալ դրուած ի ստորեւ, այսու մակագրութեամբ.

## B. Joannes Rex Armeniae Seraphicon Habitum suscepit anno 1294

Կրօնաւորական միաբանութեանց բարձման վճռովը՝ այս մենաստանս այլ ուրիշ պիտոյից գործածուելով, և ընդարձակ պարտէզը փոխուելով ի բուսաբանական, ջնջուեցան և սեննեկաց պատկերք. զարմանալի իմն դիպուածով անեղծ մնացեր է միայն մեր Թագաւոր–միանձին Հեթմոյ պատկերն. որ գրաւելով տեղւոյն պահապանին աչքը, և յատուկ ջերմեռանդութիւն մը զգալով առ այն, կ՚աղաչէ և խնայել կու տայ այն ստուգապէս եռանդնաշարժ պատկերին, որոյ և գաղափար օրինակը առնել տուած ենք և մեք. և կու պահենք իբրև նուիրական և սիրելի յիշատակ

մը. ախորժելի է մեզ անձինձ թողուլ նա և պահապանին աւանդութիւնը, թէպէտ և ոչ այնչափ հաւանական, թէ ինքն Երանելին եկած ու բնակած ալ ըլլայ յայնմ սենեկի: Ներեն ընթերցողք մեր այս զարտուղութեան, եթէ զարտուղութիւն ալ համարուի այսպիսի խնդրոյ մը հետազօտութիւն, մինչ մեր գըլխաւոր նպատակն էր քննել՝ թէ այս նորահրաշ անձն, որ յիրաւի նշանաւոր եղաւ իր համացեղից մէջ, քաջութենէն զատ՝ որով իր ամէն յաղորդները գերազանցեց, ու ամենէն աւելի վեր՝ վարուց անարատութեամբ և գիտութեամբ, — որովհետեւ գրաւոր վաւերական մ՚ ալ ունի, — դրա՞ծ է ինքն ալ դաշինք ընդ Վենետաց: Թէպէտ ի դիւանս դեռ գտնուած չէ, այլ վճիռ մը նշոյլ կրնայ համարուիլ՝ թէ դաշն մը դրած ու պարգեւագիր ալ տուած ըլլայ, համանմա՞ն արդեօք՝ թէ նորաձեւ ի հայրենականացն: Գոյութիւնը կու յայտնէ Աւագանէն տրուած վճիռ մը (1310, ապրիլ 21), յորում կու հրամայուի հատուցանել զպահանջս ազնուազարմ Բագրատայ Պայլի, որ զայս պաշտօն վարած է ի Հայս ի 1289—90. և վճռոյն մէջ կը յիշուի անոր 300 դրամի ըրած ծախքը՝ ի թագաւորէն Հայոց նոր Պարգեւագիր մը ընդունելու համար. որով յայտնի կ՚ըլլայ թէ այս Պարգեւագիրս տը-

րուած է ի Հեթմոյ՝ յառաջնում ամի անթագ թագաւորութեանն (1289)․ կու յիշուի այլուր, թէ յամսեան օգոստոսի նոյն տարւոյն դեռ եւս ի Հայաստան էր Պայլն այն, և ի յաջորդ ամի ի 25 յուլիսի արձակեցաւ ի պաշտամանէ պայլութեանն ։

Կու հաստատէ զայս և պատմութիւն Գենուացոց, որ նոյն 1298 տարւոյն մէջ ընդունեցան նոր Պարգեւագիր մը ի ձեռն Բենեդ Ջաքարիայ իրենց դեսպանին, և կամ ի նախընթաց ամի՝ ի Լեւոն Թագաւորէ շնորհուածին հաստատութիւնը, և հիմայ անհետ եղած է Հեթմոյ այդ տուրքը, որպէս և շնորհեալն առ Կադալանս Սպանիոյ յամի 1293։

Հեթմոյ թագաւորութեան երրորդ տարին (1291) թէ՛ Կիպրոսի թագաւորին և թէ իրեն՝ նոր դեսպան մը ղրկուեցաւ, չեմ գիտեր ի՛նչ պատճառաւ. այլ հաւանական կու համարիմ թէ անշուշտ այն մեծ դիպուածին համար, որ հասաւ ի վերայ ամենայն քրիստոնէից և մանաւանդ արեւմտեայց հաստատելոց յարեւելս, իրենց ամուր ապաւինին՝ Աքքեայի գրաւմամբ ի թշնամեաց, որով և վերցաւ անկէ երեսփոխանն և մեծ Պայլն Վենետկոյ, և Եգիպտոսի սուլդանն սկսաւ այնուհետեւ սպառնալեօք խօսիլ և վարուիլ Հայոց և Կիպրացւոց հետ․ ուստի փութաց Հեթում գրել

առ Թագաւորս արեւմտեայց և առ Սրբազանն Հռովմայ, որ և նա կու գրէր առ Թագաւորս Անգղիոյ և Փռանկաց, որ օգնութեան հասնին. և այն վախճանաւ կու պատուիրէր և իր կողմանէ պատրաստել կու տար քան նաւ։ Մինչեւ որ անոնք շարժեցան, տխրուեցաւ Հայոց Թագաւորն՝ իր երկրին քանի մը հեռաւոր ու եգիպտական իշխանութեան գրացի սահմանները՝ Թողուլ սուլտանին, որ արդէն հասեր գրաւեր էր Հայոց կաթողիկոսութեան ամուր աթոռը՝ զՀռոմկլայ, և ըստ կարի յարդարելով ու կարգի դնելով իր աշխարհին և տանը գործերը, և Թագաւորութիւնը Թողլով Թորոսի, իրմէ ետքը աւագագունին յեղբարսն, ինքն Հեթում միանձնական ձեւ ըզգենլով՝ կ՚առանձնանայր ի վանս (1293)։ Նոյն տարւոյն մէջ հանդիպեցաւ Գենուաց ու Վենետաց նաւամարտն, և վերջնոցս վտանգիլն յԱյաս, ու ի յաջորդին (1294) վրէժխընդրութիւնը՝ գերելով իրենց հակառակորդաց նաւ մը ի Կոռիկոս. և յերրորդում ամի՝ (1295) մարսիլիացի նաւուն դէպքը, զոր յառաջ յիշատակեցինք։ Այս ամէն դիպուածներով խանգարեցան խաղաղական յարաբերութիւնք և տուրեւառք Վենետաց ընդ Հայս. ուստի և ստէպ խորհուրդք կու գու-

մարուէին և վճիռք կու տրուէին յատենի Վենետկոյ. ինչպէս յամին 1294 (Նոյեմբ. 24) կու սահմանէր, որ յետ արկածից պարտուԹեան Նաւամարտին ի Հայս, ազատած վաճառականք կարող ըլլան դառնալ ի Վենետիկ՝ որ և իցէ Նաւով. ու յաջորդ տարւոյն ապրիլի 25 վճռով՝ երեք քննիչք կու դրուէին՝ այն ազատուածներուն գործը տեսնելու, խիստ պատուիրանաւ և սպառնալեօք քսանուհինգ լիպրա տուգանաց, որպէս զի ի դքսէն և ի խորհրդականաց հրամայուածներուն անփոյԹ չըլլան: Նոյն կամ նման ու ընդարձակագոյն վճիռ մ'ալ կու կրկնուի միւս տարւոյն (1296) փետրուարի 15 Թուականաւ՝ ի ժողովոյ Քառասնից խորհրդականաց՝ երեք քննիչ ընտրելու: Ի սակաւատեւ իշխանուԹեանն՝ Թորոսի՝ որ Տէր կամ Պարոն Հայոց կ'անուանուէր և ոչ Թագաւոր, կ'երեւնայ Թէ արտօնագիր մը տուած է Վենետաց՝ ազատուԹեան ի Մսիս և ի Տարսոն, որպէս գուշակուի ի բանից որդւոյ Նորա Լեւոնի Դ՝ որ իրեն յաջորդեց[1]:

1296 Թուականին՝ միանձն – Թագաւորն ՀեԹում՝ որ վասն անձին զերկինս միայն կու խնդրէր, այլ հայրենեաց և իր արքունեաց

1. Cartulaire յ'էջ 177:

համար զամենայն՝ որ անոնց պատշաճական էր և փափաքելի, իր փոխանորդին Թորոսի հետ կ'երթար ի Կ. Պոլիս ի տես քեռն Ռիթա կայսրուհւոյ, որ Միքայէլ կայսեր ամուսինն էր, և հօն պատշաճ կու համարէր իբրու բարեկամ միջնորդ ըլլալ՝ երկու գըժտելոց մէջ, Վենետաց և Գենուացւոց՝ իրարու հետ հաշտութեան։ Այս մէկ անգամ չէր որ Հայոց ազգապետն Հասարակապետութեան այսպիսի պէտք մը կու գարմանէր. այլ կարեւորագոյն ու շատ աւելի բարձր ատեանի մ' ալ կու դիմէր, տասնուհինգ տարի ետքը (1310) սոյն այս Հեթմոյ եղբայր՝ Օշին թագաւորն Հայոց, աղերսելով առ քահանայապետն Հռովմայ՝ ներողամիտ լինել առ Վենետս և արձըկել ի բանադրանաց. զոր կու հաւաստէ մեզ պատասխանի հայրապետին առ թագաւորն մեր (1314, մարտ 4)։

Այս միջոցին, երեքտասաներորդ դարուն վերջին տարիները, չփոթք և ժխորք կու հանդիպէին յարքունիս Հայոց։ Լեւոն Բ թագաւորի եօթն որդւոց աւագագոյնք՝ Հեթում և Թորոս՝ յամելով յօտարութեան, եռանդուն եղբարց մէջ եռանդնագոյնն Սմբատ՝ ճարտարութեամբ համոզեց զաշխարհիկս և զեկեղեցականս, նա և Թաթարաց ղանն ալ՝ որոյ գերագոյն իշխանութիւնը կու ճանչնային

յայնժամ ամենայն տրուելք, ու հանդիսապէս թագաւոր օծուեցաւ. և երբ եղբարքն ետ դարձան, զԹորոս անգթութեամբ սպաննել հրամայեց, և աւագագոյնին Հեթմոյ աչքերը կուրացընել տուաւ, թէպէտ նա սքանչելեօք կրկին ստացաւ զլոյս աչացն։ Այս միջոցին հանդիպած է (1297–8), ինչպէս ուրիշ տեղ յիշեցինք, Սմբատայ ընդ Միքայելի Լոթաթարոյի ըրած առուտուրն ոսկեթել դիպակաց, զոր ընծայ ղրկեց առ սուլտանն Եգիպտոսի։

Բայց արդարախոհն Հեթում՝ աչացը նախախնամական լուսաւորութեամբ քաջալերուած, բռնաւոր եղբայրը կու վռընտէր յարքունի գահէն, ու Թաթարաց հետ դաշնակցելով, երեք տարի անընդհատ (1299–301) սուրը՝ աղօթամատենէն վեր ու բարձր բռնելով, զհետ Եգիպտացւոց կու պնդէր, կու վռընտէր մինչեւ ի հեռաւոր և յանծանօթ սահմանս, և դիւցազնաբար թուրը մխելով, նշան յաղթանակի կու թողուր զայն՝ իրենց բերդին երկաթի դրանց վրայ. ու կ' երթար յԵրուսաղէմ գոհանալ զամենայաղթ Փրկչէն, և արքունական գաւազանը նուէր կու թողուր տեղւոյն մեծ վանքին, ուր և ցայսօր կու պահուի առաջնորդ Պատրիարքին գանձատան մէջ։ Հեթում իր արքունեաց ընտանի աղ-

մուկը դադրեցընելու համար, Թագաւորե֊ցուց տարաբաղդիկ սպանելոյն Թորոսի մե֊տասանամեայ մանկիկը՝ Լեւոն Գ. որոյ հար֊սըն կը խօսէր զԱկնէս՝ դստրիկ քեռն իւրոյ Զապլոնի և Ամաւրեայ հաչականուն իշխա֊նին Տիւրոսի, որ բռնացած էր իր Ենրիկ եղբօրը և Կիպրոսի Թագաւորութեան վրայ. և ապա միւսանգամ մէկդի դնելով զէնքերը, կրկին կ'առանձնանար ի վանս ։

Նոյն տարւոյն մէջ խնդիր մ'ալ յուզուեցաւ, Թէպէտ չենք գիտեր որպիսի, Վենետաց հա֊հասարակապետութեան և պարոն Օշնի մէջ, որ հաւանօրէն Հեթմոյ եղբայրն էր, և Լեւոն երրորդէն ետքը Թագաւորեց. հասարակապե֊տութիւնն (1301 հոկտեմբ. 1) հրամանագրով կը պատուիրէր Սինիօլայ Պայլին՝ հատուցա֊նել ինչ որ պարտըկան էր առ Օշին, և պատ֊շաճական ոճով գրել և ծանուցանել առ նա. որով կ'ենթադրուի թէ կարեւոր էր խըն֊դիրն և խիթալի Վենետաց ։

Անշուշտ ավէ աւելի կարեւորագոյն խըն֊դիր մ'էր, շահու կամ վաճառականութեան, որոյ համար Վենետկոյ պետութիւնն կու յանձ֊նէր Թէոփիլ Մոչենիկոյի, Գենուաց տրա֊պիզքը կամ դրամատեղանները քանդողին յԱյաս, որ ի Հայաստան երթալով՝ Թագա֊ւորէն կամ Այասայ գլխաւոր վարչէն (ret-

tore) խնդրէ նորութիւններ չընել : Բայց քիչ ատենէն իրենք Վենետք մեծ և չարաչար նորութիւն մ՚ ըրին, Այասայ ցամաքաբերդին վրայ յարձակելով ու կողոպտելով, ինչպէս քիչ յառաջ յիշեցինք. և որոյ չփոթական արգասիք և հետեւանք տեւեցին երեք տարի, մինչեւ ցնոր դաշնադրութիւն և պարգեւագիր Լեւոնի Գ (1307, մարտ 20) : Այն յուզման եւ չփոթից երեքամեայ միջոցին՝ այլ և այլ խորհուրդք և հոգք յաճախեցին ի Վենետիկ. և շատ անգամ որոշուեցաւ. դեսպաններ զրկել՝ գործերը կարգի դնելու համար, սահմանելով նաև ուղեկիցքն և անոնց ծախքը, որ հաւասարաչափ պիտի ըլլային իրմէ յառաջ դեսպան գնացող Ռուկոլինոյի Ցուստինեան. և ընտրուեցաւ ի նոյն պաշտօն և ի գործ Ցակ. Կուիրինոյ : Բայց որովհետեւ սա հրաժարեցաւ և անով քսան փող կրօսից տուգանաց տակ ինկաւ, Միասն իրեն շնորհեցին : Դեսպանութեան ծախուց համար ալ կրկին սահմանեցին (1307, մարտ 29) փոխառութիւն մ՚ ընել հինգ փողոյ առ հարիւր շահով, եթէ կարելի չըլլայ լեցընել զայն յերկու և կէս առ հարիւր սակէ վաճառականաց ի Հայս, և ուր դեսպան զրկեցին զՏոլֆինոյ Տոլֆին. իսկ ի Վենետիկ՝ նոյն հայկական խնդրոց քննութեան համար ա-

ռանձին վճռով (1307, մարտ 18), հինգ սըն-
դիկոսք դրուեցան ։

Դեսպանին յանձնուած էր որ Վենետաց վնասը քննէ ու ձեռք ձգէ, ու հարկ տեսած տեղն կարող ըլլայ գիջանել (ի 20,000 դրամոց Մարին Սինիոլոյի և ի 4,500 դրամ պահանջից Վոլդերոն տէլլա Սըլակայի և այլոց)· Նոյնպէս չորս առ հարիւր բաժէն ազատութիւն ուզել, և ջանալ կրկին հաստատել առաջին պարգևագրութեանց պայմանները· և որովհետև Վենետք ալ պարտըկան էին առ Թագաւորն Հայոց, Նոր փոխառութիւն մ՚ ալ ընել կամ տուրք մ՚ ալ դնել հարկ համարուեցաւ, ու քանի որ այսպիսի անստոյգ և անորոշ վիճակի մը մէջ էին, արգելք դրուեցաւ Վենետաց, ու ամէն կողմ հրատարակուեցաւ, որ չկարենան երթալ ի Կիլիկիա ։

Դեսպանն Տոլֆին՝ արքունի պահանջից ու յԱյաս կողոպտելոց վնասը հատուցանելէն ետքը, յաջողեցաւ ձեռք ձգել ի պատանի Թագաւորէն Լեւոնէ Դ., ցանկացեալ Նոր Պարգևագիրը (1307, մայիս 20), որ փռանկ լեզուով և բովանդակութեամբն՝ մեծաւ մասամբ նման է իր հաւուն՝ Լեւոնի Բ ձեռքով տրուածին յամի 1276· միայն թէ քիչ մը ամփոփել կը թուի Վենետաց համարձակու-

թիւնը, պարտաւորելով որ երկրէն հեռացած տեններին ինքզինքնին ծանօթացընեն. Համարակապետութենէն ալ կու պահանջէ զհատուցումն մնասուց, եթէ Հայ ոք կամ օտարազգի՝ իրենց հպատակներէն զըրկանք մը կրէ։ Կու պահանջուի որ Պայլն հաւատարմութեան վկայութիւն տայ իրեններուն համար անոնց՝ որ ուզենան փոխառութիւն ընել, և Այասայ ծովապետն (capitano) գրով վաւերացընէ. և եթէ Այաս քաղքէն դուրս ուզենայ ոք զայս ընել, տեղւոյն տեսուչն յԱյաս զրկէ զնա առ Պայլն և կամ առ ծովապետն։

Մեծագոյն թերեւս կարեւորութիւն ունեցող պարգեւագիր մ'ալ կը գտնուի ի դիւանս, և որ արդէն հրատարակուած է, և կու թուի այս ժամանակէն վերաբերիլ. բայց որովհետեւ կու պակսի ի նմա թուականն, անուն տուողին և վերջն, իտալական լեզուն ալ որով գրուած է՝ անհարթ և դժուարիմաց ըլլալով, կարելի չէ հաստատել զժամանակն, ինչուան որ չգիտցուի՝ թէ ով էր Թոմաս Պոնտումիէր, որ հրեշտակութեամբ եկած էր այլեւայլ խնդրոց համար. որով հաւանական կ'երեւի մեզ թէ հնագոյն պէտք է ըլլայ խընդիրն և շնորհն, և ոչ յաւուրս Լեւոնի Գ., այլ երկրորդին. վասն զի նուիրակին կողմանէ եղած խնդիրներէն մէկն ալ է եկեղեցի մը ու-

մը. անխորժելի է մեզ անջինջ թողուլ նաև
պաշտպանին աւանդութիւնը, թէպէտ և ոչ
այնչափ հաւանական, թէ ինքն Երանելին
եկած ու բնակած ալ ըլլայ յայնմ սենեկի։
Ներեն ընթերցողք մեր այս զարտուղութեան,
եթէ զարտուղութիւն ալ համարուի այսպիսի
խնդրոյ մը հետազօտութիւն, մինչ մեր գըլ-
խաւոր նպատակն էր քննել՝ թէ այս նորահրաշ
անձն, որ յիրաւի նշանաւոր եղաւ իր համա-
ցեղից մէջ, քաջութենէն զատ՝ որով իր ամէն
յաջորդները գերազանցեց, ու ամենէն աւելի
վեր՝ վարուց անարատութեամբ և գիտու-
թեամբ, — որովհետեւ գրաւոր վաստակ մ՚ ալ
ունի, — դըրա՞ծ է ինքն ալ դաշինք ընդ Վե-
նետաց։ Թէպէտ ի դիւանս դեռ գտնուած
չէ, այլ վճիռ մը նշոյլ կրնայ համարուիլ՝
թէ դաշն մը դրած ու պարգեւագիր ալ տուած
ըլլայ, համանմա՞ն արդեօք՝ թէ նորանձեւ ի
հայրենականացն։ Գոյութիւնը կու յայտնէ Ա-
տեանէն տրուած վճիռ մը (1310, ապրիլ
21), յորում կու հրամայուի հատուցանել զպա-
հանջս ազնուազարմ Բագրատայ Պայլի, որ
զայս պաշտօն վարած է ի Հայս ի 1289—90.
և վճռոյն մէջ կը յիշուի անոր 300 դրամի
ըրած ծախքը՝ ի թագաւորէն Հայոց նոր
Պարգեւագիր մը ընդունելու համար. որով
յայտնի կ՚ըլլայ թէ այս Պարգեւագիրս տը-

րուած է ի Հեթմոյ՝ յառաջնում ամի անթագ թագաւորութեանն (1289)․ կու յիշուի այլուր, թէ յամսեան օգոստոսի նոյն տարւոյն դեսեւս ի Հայաստան էր Պայլն այն, և ի յաջորդ ամի ի 25 յուլիսի արձակեցաւ ի պաշտամանէ պայլութեանն ։

Կու հաստատէ զայս և պատմութիւն Գենուացոց, որ նոյն 1298 տարւոյն մէջ ընդունեցան նոր Պարգեւագիր մը ի ձեռն Բենեդ Զաքարիայ իրենց դեսպանին, և կամ ի նախընթաց ամի՝ ի Լեւոնէ Թագաւորէ շնորհուածին հաստատութիւնը, և հիմայ անհետ եղած է Հեթմոյ այդ տուրքը, որպէս և շնորհեալն առ Կադալանս Սպանիոյ յամի 1293։

Հեթմոյ թագաւորութեան երրորդ տարին (1291) թէ Կիպրոսի թագաւորին և թէ իրեն՝ նոր դեսպան մը ղրկուեցաւ, չեմ գիտեր ի՛նչ պատճառաւ․ այլ հաւանական կու համարիմ թէ անշուշտ այն մեծ դիպուածին համար, որ հասաւ ի վերայ ամենայն քրիստոնէից և մանաւանդ արեւմտեայց հաստատելոց յարեւելս, իրենց ամուր ապաւինին՝ Աքքեայի գրաւմամբ ի Թշնամեաց, որով և վերցաւ անկէ երեսփոխանն և մեծ Պայլն Վենետկոյ, և Եգիպտոսի սուլդանն սկսաւ այնուհետեւ ապառնալեօք խօսիլ և վարուիլ Հայոց և Կիպրացւոց հետ․ ուստի փութաց Հեթում գրել

առ թագաւորս արեւմտեայց և առ Սրբազանն Հռովմայ, որ և նա կու գրէր առ թագաւորս Անգղիոյ և Փռանկաց, որ օգնութեան հասնին. և այն վախճանաւ կու պատուիրէր և իր կողմանէ պատրաստել կու տար քանի նաւ։ Մինչեւ որ անոնք շարժեցան, ստիպուեցաւ Հայոց թագաւորն՝ իր երկրին քանի մը հեռաւոր ու եգիպտական իշխանութեան դրացի սահմանները՝ թողուլ սուլտանին, որ արդէն հասեր գրաւեր էր Հայոց կաթողիկոսութեան ամուր աթոռը՝ զՀռոմկլայ, և ըստ կարի յարդարելով ու կարգի դնելով իր աշխարհին և տանը գործերը, և թագաւորութիւնը թողլով Թորոսի, իրմէ ետքը աւագագունին յեղբարսն, ինքն Հեթում միանձնական ձեւ ըզգենլով՝ կ՚առանձնանայր ի վանս (1293)։ Նոյն տարւոյն մէջ հանդիպեցաւ Գենուաց ու Վենետաց նաւամարտն, և վերջնոցս վտանգիլն յԱյաս, ու ի յաջորդին (1294) վրէժխնդրութիւնը՝ գերելով իրենց հակառակորդաց նաւ մը ի Կոռիկոս. և յերրորդում ամի՝ (1295) մարսիլիացի նաւուն դէպքը, զոր յառաջ յիշատակեցինք։ Այս ամէն դիպուածներով խանգարեցան խաղաղական յարաբերութիւնք և տուրեւառք Վենետաց ընդ Հայս. ուստի և ստէպ խորհուրդք կու գու-

մարուէին և վճիռք կու տրուէին յատենի Վենետկոյ. ինչպէս յամին 1294 (Նոյեմբ. 24) կու սահմանէր, որ յետ արկածից պարտութեան նաւամարտին ի Հայս, ազատած վաճառականք կարող ըլլան դառնալ ի Վենետիկ՝ որ և իցէ նաւով. ու յաջորդ տարւոյն ապրիլի 25 վճռով՝ երեք քննիչք կու ղրուէին՝ այն ազատուածներուն գործը տեսնելու, խիստ պատուիրանաւ և սպառնալեօք քանուհինգ լիպրա տուգանաց, որպէս զի ի դքսէն և ի խորհրդականաց հրամայուածներուն անփոյթ չըլլան: Նոյն կամ նման ու ընդարձակագոյն վճիռ մ' ալ կու կրկնուի միւս տարւոյն (1296) փեբրուարի 15 թուականաւ՝ ի ժողովոյ Քառասնից խորհրդականաց՝ երեք քննիչ ընտրելու: Ի սակաւատեւ իշխանութեանն՝ Թորոս՝ որ Տէր կամ Պարոն Հայոց կ'անուանուէր և ոչ Թագաւոր, կ'երեւնայ թէ արտօնագիր մը տուած է Վենետաց՝ ազատութեան ի Սիս և ի Տարսոն, որպէս գուշակուի ի բանից որդւոյ նորա Լեւոնի Դ՝ որ իրեն յաջորդեց [1]:

1296 Թուականին՝ միանձն — Թագաւորն Հեթում՝ որ վասն անձին զերկինս միայն կու խնդրէր, այլ հայրենեաց և իր արքունեաց

1. Cartulaire յ'էջ 177 :

համար զամենայն՝ որ անոնց պատշաճական էր և փափաքելի, իր փոխանորդին Թորոսի հետ կ'երթար ի Կ. Պոլիս ի տես քեռն Ռիթա կայսրուհւոյ, որ Միքայէլ կայսեր ամուսինն էր, և հօն պատշաճ կու համարէր իբրու բարեկամ միջնորդ ըլլալ՝ երկու զըն-տելոց մէջ, Վենետաց և Գենուացոց՝ իրարու հետ հաշտութեան: Այս մէկ անգամ չէր որ Հայոց ազգապետն Հասարակապետութեան այսպիսի պէտք մը կու գարմանէր. այլ կարեւորագոյն ու շատ աւելի բարձր ատեանի մ' ալ կու դիմէր, տասնուհինգ տարի ետքը (1310) նոյն այս Հեթմոյ եղբայր՝ Օշին թագաւորն Հայոց, աղերսելով առ քահանայապետն Հռովմայ՝ ներողամիտ լինել առ Վենետս և արձըկել ի բանադրանաց. զոր կու հաւաստէ մեզ պատասխանի հայրապետին առ թագաւորն մեր (1314, մարտ 4):

Այս միջոցին, երեքտասաներորդ դարուն վերջին տարիները, շփոթք և ժխորք կու հանդիպէին յարքունիս Հայոց: Լեւոն Բ թագաւորի եօթն որդւոց աւագագոյնք՝ Հեթում և Թորոս՝ յամելով յոտարութեան, եռանդուն եղբարց մէջ եռանդնագոյնն Սմբատ՝ ճարտարութեամբ համոզեց զաշխարհիկս և զեկեղեցականս, նա և Թաթարաց ղանն ալ՝ որոյ գերագոյն իշխանութիւնը կու ճանչնային

յայնժամ ամենայն տրեւելք, ու հանդիսապէս թագաւոր օծուեցաւ. և երբ եղբարքն ետ դարձան, զԹորոս անգթութեամբ սպաննել հրամայեց, և աւագագունին Հեթմոյ աչքերը կուրացընել տուաւ, թէպէտ նա սքանչելեօք կրկին ստացաւ զլոյս աչացն։ Այս միջոցին հանդիպած է (1297–8), ինչպէս ուրիշ տեղ յիշեցինք, Սմբատայ ընդ Միքայելի Լոթաթարոյի ըրած առուտուրն ոսկեթել դիպակաց, զոր ընծայ ղրկեց առ սուլտանն Եգիպտոսի։

Բայց արդարախոհն Հեթում՝ աչացը նախախնամական լուսաւորութեամբ քաջալերուած, բռնաւոր եղբայրը կու վռընտէր յարքունի գահէն, ու Թաթարաց հետ դաշնակցելով, երեք տարի անընդհատ (1299–301) սուրը՝ աղօթամատենէն վեր ու բարձր բռնելով, զհետ Եգիպտացւոց կու պնդէր, կու վռընտէր մինչեւ ի հեռաւոր և յանծանօթ սահմանս, և դիւցազնաբար թուրը մխելով, նշան յաղթանակի կու թողուր զայն՝ իրենց բերդին երկաթի դրանց վրայ. ու կ՚ երթար յԵրուսաղէմ գոհանալ զամենայաղթ Փրկչէն, և արքունական զաւազանը նուէր կու թողուր տեղւոյն մեծ վանքին, ուր և ցայսօր կու պահուի առաջնորդ Պատրիարքին գանձատան մէջ։ Հեթում իր արքունեաց ընտանի աղ-

մուկը դադրեցընելու համար, Թագաւորեցուց տարաբաղդիկ սպանելոյն Թորոսի մետասանամեայ մանկիկը՝ Լեւոն Գ. որոյ հարսըն կը խօսէր զԱկնէս՝ դստրիկ քեռն իւրոյ Զապլունի և Ամաւրեայ հռչականուն իշխանին Տիւրոսի, որ բռնացած էր իր Ենրիկ եղբօրը և Կիպրոսի Թագաւորութեան վրայ. և ապա միւսանգամ մէկդի դնելով զէնքերը, կրկին կ'առանձնանար ի վանս:

Նոյն տարւոյն մէջ խնդիր մ'ալ յուզուեցաւ, թէպէտ չենք գիտեր որպիսի, Վենետաց հասարակապետութեան և պարոն Օշնի մէջ, որ հաւանօրէն Հեթմոյ եղբայրն էր, և Լեւոն երրորդէն ետքը Թագաւորեց. հասարակապետութիւնն (1301 հոկտեմբ. 1) հրամանագրով կը պատուիրէր Սինիոլոյ Պայլին՝ հատուցանել ինչ որ պարտըկան էր առ Օշին, և պատշաճական ոճով գրել և ծանուցանել առ նա. որով կ'ենթադրուի թէ կարեւոր էր խընդիրն և խիթալի Վենետաց:

Անշուշտ ասկէ աւելի կարեւորագոյն խընդիր մ'էր, շահու կամ վաճառականութեան, որոյ համար Վենետկոյ պետութիւնն կու յանձնէր Թէոփիլ Մոչենիկոյի, Գենուաց տրապիզքը կամ դրամասեղանները քանդողին յԱյաս, որ ի Հայաստան երթալով՝ Թագաւորէն կամ Այասայ գլխաւոր վարչէն (ret-

tore) խնդրէ նորութիւններ չընել ։ Բայց քիչ առենէն իրենք Վենետք մեծ և չարաչար նորութիւն մ՚ ըրին, Այասայ ցամաքաբերդին վրայ յարձակելով ու կողոպտելով, ինչպէս քիչ յառաջ յիշեցինք. և որոյ չփոթական արգասիք և հետեւանք տեւեցին երեք տարի, մինչեւ ցնոր դաշնադրութիւն և պարգեւագիր Լեւոնի Գ (1307, մարտ 20) ։ Այն յուզման եւ չփոթից երեքամեայ միջոցին՝ այլ և այլ խորհուրդք և հոգք յաճախեցին ի Վենետիկ. և շատ անգամ որոշուեցաւ. դեսպաններ ղրկել՝ գործերը կարգի դնելու համար, սահմանելով նա և ուղեկիցքն և անոնց ծախքը, որ հաւասարաչափ պիտի ըլլային իրմէ յառաջ դեսպան գնացող Ուկոլինոյի Ցուստինեան. և ընտրուեցաւ ի նոյն պաշտօն և ի գործ Ցակ. Կուիրինոյ ։ Բայց որովհետեւ սա հրաժարեցաւ և անով քսան փող կրօսից տուգանաց տակ ինկաւ, մնասն իրեն շնորհեցին ։ Դեսպանութեան ծախուց համար ալ կրկին սահմանեցին (1307, մարտ 29) փոխառութիւն մ՚ ընել հինգ փողոյ առ հարիւր շահով, եթէ կարելի չըլլայ լեցընել զայն յերկու և կէս առ հարիւր սակէ վաճառականաց ի Հայս, և ուր դեսպան ղրկեցին զՏոլֆինոյ Տոլֆին. իսկ ի Վենետիկ՝ նոյն հայկական խնդրոց քննութեան համար ա-

ռանձին վճռով (1307, մարտ 18), հինգ սըն-դիկոսք դրուեցան ։

Դեսպանին յանձնուած էր որ Վենետաց վնասը քննէ ու ձեռք ձգէ, ու հարկ տեսած ատեն կարող ըլլայ զիջանել (ի 20,000 դրամոց Մարին Սինիոլոյի և ի 4,500 դրամ պահանջից Վոլդէրոն տէլլա Սըլակայի և այլոց)․ Նոյնպէս չորս առ հարիւր բաժէն ազատութիւն ուզել, և ջանալ կրկին հաստատել առաջին պարգեւագրութեանց պայմանները․ և որովհետեւ Վենետք ալ պարտըկան էին առ Թագաւորն Հայոց, Նոր փոխառութիւն մ' ալ ընել կամ տուրք մ' ալ դնել հարկ համարուեցաւ, ու քանի որ այսպիսի անստոյգ և անորոշ վիճակի մը մէջ էին, արգելք դրուեցաւ Վենետաց, ու ամէն կողմ հրատարակուեցաւ, որ չկարենան երթալ ի Կիլիկիա ։

Դեսպանն Տոլֆին՝ արքունի պահանջից ու յԱյաս կողոպտելոց վնասը հատուցանելէն ետքը, յաջողեցաւ ձեռք ձգել ի պատանի Թագաւորէն Լեւոնէ Դ., ցանկացեալ Նոր Պարգեւագիրը (1307, մայիս 20), որ փռանկ լեզուով և բովանդակութեամբն՝ մեծաւ մասամբ նման է իր հաւուն՝ Լեւոնի Բ ձեռքով տրուածին յամի 1276․ միայն թէ քիչ մը ամփոփել կը Թուի Վենետաց համարձակու-

թիւնը, պարտաւորելով որ երկրէն հեռացած ատեններին ինքզինքնին ծանօթացընեն. Հասարակապետութենէն ալ կու պահանջէ զհատուցումն վնասուց, եթէ Հայ ոք կամ օտարազգի՝ իրենց հպատակներէն զըրկանք մը կրէ։ Կու պահանջուի որ Պայլն հաւատարմութեան վկայութիւն տայ իրեններուն համար անոնց՝ որ ուզենան փոխառութիւն ընել, և Այասայ ծովապետն (capitano) գրով վաւերացընէ. և եթէ Այաս քաղքէն դուրս ուզենայ ոք զայս ընել, տեղւոյն տէրուչն յԱյաս գրկէ զնա առ Պայլն և կամ առ ծովապետն։

Մեծագոյն թերեւս կարեւորութիւն ունեցող պարգեւագիր մ'ալ կը գտնուի ի դիւանս, և որ արդէն հրատարակուած է, և կու թուի այս ժամանակին վերաբերիլ. բայց որովհետեւ կու պակսի ի նմա թուականն, անուն տուողին և վերջն, իտալական լեզուն ալ՝ որով գրուած է՝ անհարթ և դժուարիմաց ըլլալով, կարելի չէ հաստատել զժամանակն, ինչուան որ չգիտցուի՝ թէ ով էր Թոմաս Պոնտումիէր, որ հրեշտակութեամբ եկած էր այլեւայլ խնդրոց համար. որով հաւանական կ'երեւի մեզ թէ հնագոյն պէտք է ըլլայ խընդիրն և շնորհն, և ոչ յաւուրս Լեւոնի Գ., այլ երկրորդին. վասն զի նուիրակին կողմանէ եղած խնդիրներէն մէկն ալ է եկեղեցի մը ու-

նենալ յԱյաս․ և պարգևագրողն կու խոստանայ որ երբ Գայլն գայ և հօն հաստատուի բնակութեամբ՝ եկեղեցւոյ մը շինութեան պատշաճական տեղը ցոյց կու տրուի ։ Ասոր նման խնդիրն և խոստումն փոխագրութեան տանն ի Սօղ յԱյաս, և միւս խնդիր մ'ալ, որ Անտիոքայ վիքարը կամ Մսսայ արքեպիսկոպոսն՝ կատարել տայ Վենետաց հոգևոր պէտքերը յԱյաս, ինչպէս, զմկրտութիւն, զհարսանիս, և այլն, ասոնք յայտնի նշանակներ են թէ այն ժամանակ չկար հօն ոչ եկեղեցի և ոչ քահանայ Վենետկեցի․ վասն զի առաջին թագաւորքն Լևոն Ա և Հեթում տուեր էին անոնց եկեղեցի ի Մսիս և ի Սիս․ և 1261 շնորհուած Հեթմոյ երկրորդ պարգևագրին մէջ (յորում նախ առաջին կու յիշուի Այաս), եկեղեցւոյ խօսք չկայ․ իսկ տասն տարի ետքը իր որդին Լևոն Բ (1271) յայտնապէս կու յիշատակէ Վենետաց եկեղեցւոյ ու քահանայի շնորհումը յԱյաս ։ Ուստի այս մասնաւոր Պարգևագիրս՝ որոյ վրայ է խօսքերնիս, և յորում տուողն կու յիշէ իր հայրը, թէպէտ առանց անուան, Լևոն Երկրորդէն տրուած է՝ ոչ ի թագաւորութեանն, այլ յիշխանութեան, այսինքն է ի միջոցի 28 հոկտ․ 1270 ամին և յանուարի 6ին յաջորդ 1271 տարւոյն ։

Նուիրակն կամ դեսպանն ուրիշ կարեւոր խնդիրք մ՚ ալ ունէր, այսինքն՝ տրոց և բաժից ազատութիւն, ինչպէս յԱյաս՝ նոյնպէս ի հնգեսին քաղաքսն, ի Սիս, Մսիս, Ատանա, Տարսոն և Կապեսղրա՝ (որ հաւանականաբար Կոպիտառ է), և գրով ալ հրամայել զայս ի քաղաքսն. որում և հաւանութիւն տրուեցաւ ի Հայոց: Բայց երբ դեսպանն առաջարկեց որ նոյնպիսի ազատութիւն շնորհուի նա և յաւանս (casali), Պարգեւագիրն կու զանազանէ, թէ կան այնպիսի աւանք՝ որոց կարելի է այդ շնորհքը ստանալ, բայց կան նա և սեպհականութիւնք պարոնայց և ասպետաց՝ որոց թագաւորն անգամ չէ կարող զայդ հրամայել: Ուրիշ մանր խնդիրներ ալ կային. օրինակ իմն, որ Հայք պատշաճական պատուով վարուին Վենետաց հետ՝ երբ յարքունիս կոչուին, կամ իրենց ընչից և ստացուածոց քննութիւն չըլլուի. որք յայտնի է թէ հաւանելի համարուեցան. բայց երբ կու պահանջեն որ իրենց արկեղք քննութեան չենթարկուին, Պարգեւագիրն՝ խոհեմութեամբ կ՚ըսէ՝ թէ զանոնք վայելչապէս քննելն ձեզի վնաս չէ, այլ մեզի օգուտ: Նոյնպէս ի խնդրելն՝ որ երբ Պայլն մէկու մը համար վկայէ թէ Վենետ է, այնպէս ընդունելի ըլլայ, կու հաւանի. բայց եթէ հակառակն

հաւաստուի, կամ թէ սուտ ամբաստանուի, ստողք իրենց պատուհասն ընդունին ։ Ուրիշ աննշան խնդիրք ալ կան, զորս զանց կ՚ընեմք յիշել. փափաքողք և հետամուտք կրնան գտնել և քննել ի բնագրին, որ արդէն հրատարակուած է [1] ։

[1] Cartulaire, յ'էջ 176.




Դրամ Եգէայ (Հին Այաս) քաղաքի.



## Է.

## ՆՈՐ ՅԱՐԸՆՉՈՒԹԻՒՆՔ ՀԱՅ-ՎԵՆԵՏԱՑ



Երբ Լեւոն Գ Նոր Պարգեւագրաւ՝ Հայոց ու Վենետաց մէջ հաշտութիւնն եւ մտերմութիւնը վերահաստատեց, իսկոյն Հասարակապետութիւնն որոշեց ընծաներ ղրկել առ թագաւորն եւ առ պարոն Օշին, որ յետ Հեթմոյ՝ Նախապատիւ համարուած էր արքային հօրեղբարց մէջ, մինչ Հեթում միանձնական կեանքով հրաժարած էր ի փառաց եւ յընծայից. վճիռն կու սահմանէր, որ եթէ ընծայից ծախքըն ձրիատուր չըլլայ, կէս առ հարիւր սակէն հայթհայթի. գէթ այսպէս կու հասկընամ վճռոյն խօսքը: Սակայն շուտով լուր հասաւ՝ Հայոց մատաղահասակ թագաւորին աղիտալի սպանման, իր մենտորին՝ աւագ հօրեղբօր Հեթմոյ Բի հետ, որոյ խոհական առաջնորդութեամբ եւ պաշտպանութեամբ կու յուսայր Սիսուան՝ զգօն եւ երջանիկ թագաւոր մ՚ունենալ. այլ այն պայծառ ծաղիկն իր բողբոջին մէջ կտրուեցաւ, մանաւանդ թէ անաս-

7

Նաբար ոտնակոխ եղաւ, Պիլարկու Թաթար զօրավարէն դաւաճանելով ի մահ (1307, նոյեմբ. 27). զոր՝ կարելի չըլլալով առանց արտասուաց յիշել, հարկ է լռել, և կամ ազնուական մխիթարութիւն համարիլ՝ սպանչին արժանաւոր պատուհասը՝ սպանմամբ, Թաթարաց մեծ ղանին հրամանաւ, ու Լեւոն Գ Թագաւորին Մնացած երկու հօրեղբարց, Հեթմոյ խեղեփ եղբարց, Օշնի և Ալինախայ, իրաւացի պահանջմամբ: Ասոնք՝ ըստ բնութեան արգանդակիցք՝ առաւել քան զընութիւն մեծ յարգ և սէր ունէին իրարու վրայ, մինչեւ իրարու առաջարկել արքունական Թագը, որուն՝ Թերեւս վայրկեանք ինչ ժամու միայն՝ ժառանգութեան իրաւանց վրայ խտիր ու զանազանութիւն կու դնէին. բայց կայտառ երիտասարդն Ալինախ՝ որ քանի մը վայրկեան յետնածին էր, ազնուապէս յարգելով եղբօրը իրաւունքը, Թողուց Օշնի զԹագն. ուստի մեծաշուք հանդիսիւ պսակեցին զնա, երբ Ալինախ՝ Թաթարաց մեծ ղանին հաւանութիւնն առնըլով՝ դարձաւ ի Հայաստան (1308): Վենետկոյ հասարակապետութիւնն ալ իր կողմանէ փութաց ի մեծարանս նորապսակ արքային, հարազատին և իշխանացն Հայոց. և Օշնի Թագաւորելէն քանի մը ամիս ետքը՝ սահմանեց

(1308, սեպտ. 5) Յովհան Ֆոսգարինի նոր դեսպանին ձեռքով ընծաներ ղրկել, տաս-նումէկ լիպրա կրասից արժէիւք. դեսպանին պիտոյից համար ալ՝ ինննեւտասն կրօս որոշ չեց: Եւ որովհետեւ Ֆոսգարինի, ինչպէս Թուի, ի Կորոն էր այն միջոցին, Պետրոս Կրատենիկոյ դուքսն գրեց առ նա (1308, սեպտ. 22) իր խորհրդակցացն ու հասարա-կապետութեան հաւանութեամբ, երթալ դես-պանութեան պաշտամամբ առ Թագաւորն Հայոց, իշխանութիւն ալ տալով փոխառու-Թիւն ընելու՝ յորոց և իցէ, ի Վենետաց և յօտարաց, խոստանալով անոնց ի Վենետիկ գալէն կամ պահանջելէն երկու ամիս ետքը հատուցանել: Նոյն օրը կու գրէր դուքսն և առ Օշին Թագաւոր՝ յանձնելով նմա զնոր դես-պանն. գրեց և առ Ախնախ, աղաչելով որ իր խնամքն անպակաս ընէ Ֆոսգարինեայ վրայ: Նոյն ոճով, միայն անուանց ու պաշ-տամանց փոփոխութեան զանազանութեամբ, գրեց և առ Հեթում տէր Կոռիկոսի, որ հետաքննական երկասիրութեամբն Պատմու-Թեան Արեւելից (Historia Orientalis) իբրու հայ Մարկոս-Պօղոս մը՝ ծանօթ է արեւ-մըտեայց, և իր համանուն հօրեղբօրորդւոյն նման (Հեթմոյ Բ.) յետոյ առանձնանալով ի վանս Պրեմոնստրատեանց, վերադասեց ըզ-

վարս կրօնաւորութեան քան զփառս արքու-նեաց։ Գրեց և առ Հեթում տէր Նղրոյ, որ և հազարապետ էր տէրութեան Հայոց (Capitano). և որ առաւել զարմանալի է, նա և առ Հեթում Բ, չգիտնալով թէ արդէն մեռած էր նա՝ իր եղբօրորդւոյն Լեւոն Գի հետ. եթէ գրուածն՝ օրինակողաց անմտա-դրութեամբ կրկնագիր պատճէն մը չէ առաջին նամակաց, ինչպէս հաւանական կ՚ե-րեւնայ։

Ցուգարինիի դեսպանութեան երթալն ու-շացաւ, կարծեմ նախ հիւանդանալուն պատ-ճառաւ, և ապա պատրաստութեանն ի չու, և մահուամբն բոլորովին խափանեցաւ. Թեր-եւս կերպով մը պատճառեցաւ Հայոց ընդ Կիպրացիս գժտուելէն, որոց երկուքին ալ բարեկամ էր Հասարակապետութիւնն, և որ երկու ազգաց նոյն ժամանակաց պատմու-թեան մէջ՝ մեծ և նշանաւոր դէպք մը կու համարուի, և այն պատճառաւ երկար գրու-թիւնք եղած են առ միմեանս, առ Պապն Հռովմայ, առ օտարս, և առ նոյն իսկ Հա-սարակապետութիւն Վենետկոյ. առ որս յե-տոյ կու գրէր և կ՚աղերսէր նա և Կիպրոսի Թագաւորին կին՝ դշխոյն Իզապէլ, ազատել իր ամուսինը (Ենրիկ Թագաւորը) արգելուածն յաշխարհին Հայոց (1310, օգոստ. 20)։ Օտար

ըլլալով մեր նպատակէն այս դիպուածոց և գրութեանց վրայ յերկարել, զհետաքննողն կու ղրկեմք առ Մասլադրի (Histoire de Chypre, II. 116). Տարի ու կէս վրան անցնելէն ետքը՝ փոխանակ Ֆոսգարինիի վախճանելոյ՝ պայլ և դեսպան ընտրուեցաւ Գրիգոր Տոլֆին, (որ երբեմն Գէորգ ալ կոչուած է), ի վերջ կոյս ապրիլի կամ ի սկիզբն մայիսի, սահմանելով նմա թողակ իբրու դեսպանի եւեթ։ Նա որովհետեւ առ թագաւորն Հայոց ղրկուելիք ընծաներն մնացեր էին ի Կորոն, կու գրէր դուքսն (1310, մայիս 12) առ բերդապահն (Castellan) Կորոնի և Մոթոնի, որ նոր դեսպանին յանձնէ զանոնք, յորս՝ կ'երեւնայ թէ կայր նաև վրան (tenda) մի. իսկ իր վախճանելոյն մնացած ինչը պահել, մինչեւ իմացընեն ինչ ընելիքը։ Երկրորդ օրը կու գրէր առ թագաւորն Օշին (1310, մայիս 13), յանձնելով նմա զՏոլֆին իբրու Պայլ. իսկ իբրեւ դեսպան՝ առանձինն կու գրէ աղաչելով մտիկ ընել քանի մը խնդրըուածոց՝ զոր բերանացի կամ գաղտ յանձնած էր նմա։ Ինչպէս յառաջնումն, այս անգամ ալ կու գրէ և առ այլ իշխանազունս երկրին, և մի և նոյն օրուան մէջ՝ նախ քան զամենեսին՝ առ Հեթում գունդստապլ, ոչ միայն յանձնելով նմա զՊայլն, այլ և ա-

տանձինն շնորհակալ ըլլալով որ մեծապէս խնամարկութիւն կ՚ընէ Վենետաց, ինչպէս պատմեր էին ազնուատոհմն Նիկողայոս Մորօզինի և այլք։ Այսպէս ողոքով կու գրէր և առ միւս Հեթում տէրն Նղրի, վասն զի երկուքն այլ հզօրք էին և մեծահարկիք ի պետութեան Հայոց։

Այս առթով և ի նմին աւուր կու գրէր դուքսն նա և առ Գայլն Նեկրոպանդի, այն խնդրոց համար՝ որ պիտի դիւրացընէին Հասարակապետութեան բարեկամութիւնն ընդ Հայս. և էր՝ ստիպել զՑովակիմ Սանուտոյ, որ երկու խալէիւք կողոպտեր էր զՀայս և զԿիպրացիս, և որք իրենց վրէժն առնելու համար բռներ էին զՎենետս, որպէս զի երեք ամսու միջոցի մէջ զայն առ դուքսն, հաշիւ տալու իր ըրած գործոյն, ապա թէ ոչ՝ յանցաւոր պիտի համարուի։ Թերևս այս և ուրիշ խնդրոց համար Օշին Թագաւորն ալ դեսպան ղրկեր էր ի Վենետիկ զզօրականն Գերարդ և զՆիկ. Մորոզինի, յորոց դուքսն լսեց զամենայն, և յանձնեց անոնց (1310, մայիս 14) բերանացի պատասխանել Թագաւորին. և որովհետև Օշին միջնորդութիւն ալ ըրեր էր առ Քահանայապետն ի նպաստ Վենետաց, քիչ յառաջ (1310, ապրիլ 7) շնորհակալու մտօք վճարեր էր Անտանն, որ ի

ժողովոյ Հնգետասանից քննուած Հայոց Թագաւորին խնդիրքն՝ ընդունելի ըլլան, իբրու վճռուած ի Մեծ Ատեանէն։ Ուրիշ վճիռ մ'ալ տրուած է նոյն օրերում (1310, ապրիլ 14), որպէս զի ի Կիլիկիա գացող դեսպանն վարձէ գարիթ մի տասնուհինգ կամ քսան նաւաստեօք և ոչ աւելի, առ ի տանել առ Թագաւորն զսահմանեալ ընծայս․ բայց որովհետեւ նա արդէն վարձած էր մեծ խալէ մը իբր երեսունուերեք կամ երեսունեւհինգ նաւաստեօք, ատեանն կու զիջանի (1310, մայիս 30) Թոյլ տալ նմա՝ եթէ հաւանին գունցք նաւազին (Consules marinariis)։ Քիչ օրէն (3 յունիս) կը շնորհուի նմա կէս առ հարիւր շահէն՝ առնուլ որչափ ինչ կարեւոր է ի կառուցումն մթերանոցաց, և Վենետաց հասարակապետութեան ի Հայս ունեցած ուրիշ կալուածոց, և եղած ծախքը ծանուցանել ի Վենետիկ։ Երկբայութիւն չկայ որ դեսպանին առաջին խնդիրն պիտի ըլլար Պարգեւագրին նորոգութիւնը, զոր և կատարեց Օշին, ինչպէս կու վկայէ իւր որդին (Լեւոն Դ) իր տուած Պարգեւագրին մէջ․ բայց որովհետեւ կորուսած է Օշնի պարգեւածին պատճէնն, ուստի և անյայտ մնայ գրութեան Թուականն։

Թագաւորին և իշխանազանց, առ որս

գրուեցան վերոյիշեալ Թուղթք, անուանք ու պատուոյ կոչումն նշանակուած են ի գիրն Դաշնագրութեանց (Patti) յ'էջս 79–81, ուրիշ ազգաց համապատիւ և համանման իշխանաց և կարդինալաց անուանց հետ, իբրու յատկապէս սահմանուած երեսագիրք կամ հացէք, և են հետեւեալքն։

Օշին Թագաւորին, HOISSINUS de Altitonanti genere Ruppinorum:

ALINAC filius quondam Regis Armenie, Dominus Lambri, Montis Livonis, Gogolaqui *, Tarsso. Կրկին գրուած կայ իր հացէն հետեւեալ կերպով. Alinach Regis frater et quondam Serenissimi Regis (Leoni II) filius.

FRATER JOHANNES Ordinis Fratrum Minorum, Primogenitus quondam Serenissimi Regis Armenorum. ուր գրիչն կը յաւելու, nunc mortuus (այժմ վախճանեալ). բայց ուրիշ մը կ'ընթեռնու monacus (այժմ կրօնաւորեալ), որ է Հեթում Բ.

Օշին Թագաւորին մահուընէն ետքը՝ յետագայ երեսագիրք կու գտնուին՝ ինչուան առ մեզ հասած.

* Այսինքն, Լամբրուն, Մոնլեւոն, Կուկլակ և Տարսոն. յետնոյս ուրիշ օրինակի մէջ գրուած է Caissi.

Leo (IV) Rex Armenie.

Aytonus Seneschalcus Regis Armeniae.

Aytonus de Negrino Camberlanus et Gubernator Regni Armenie.

Կրկին գրուած կան ասոնց անուանքն De Harmenia խորագրաւ։

Aytonus Dominus Nigrini, Capitanus Curie Regis Herminorum.

Aytonus Conestabilis Hermenie.

Ի գիրս և ի յիշատակարանս գտնուած այդ անուններէն յայտնապէս կ՚երևի, թէ Օշնի թագաւորութեան ատեն (1307–1320) յաճախ և սերտ էին փոփոխակի վերաբերութիւնք Հայոց ընդ Վենետաց, ինչպէս նաև յետոյ իր որդւոյն Դ. Լևոնի ժամանակ։ Վերը յիշուած Գրիգոր Տոլֆին դեսպանին ի Հայաստան երթալէն քանի մը տարի ետքը, նոր դեսպանի պատրաստութիւն կու տեսնուի, և թերևս նոր եկողի մը ի Հայոց. վասն զի նոյն տարւոյն (1310) սեպտեմբեր 24 ու հոկտեմբեր 10 թուականներով տրուած որոշմանց մէջ՝ Ատեանն կու վճռէ Հայոց թագաւորէն եկած ընծայ մետաքսեայն ու ոսկէդիպակը (drapis setae, drapis ad aurum) վաճառել, որ հաւանօրէն Դամասկոսի կամ ուրիշ արևելեան քաղաքի մը հիւսուածք էին, ու անոնց գնով նոր դեսպանին

յանձնել իրեն ղրկուելիք ընծաները. և որովհետեւ չվաճառուեցան, և կ'ենթադրէին թէ անոնց արժէքն ըլլայ իբր քսան լիպրա կրօսից, սահմանուեցաւ որ նոյնչափ արժէքիւք ընծայք գնուին ու ղրկուին առ Թագաւորն։ Որոշակի եւս կու յիշատակուի դեսպան Հայոց ի Վենետիկ 1311 Թուականին, յուլիս ամսոյն տասնին. և որում կը շնորհուի անմաքս ի ցամաք հանել 560 Թիակ ընդ մեծ և ընդ փոքր՝ ի կազմած երկու խալէից և միոյ նաւու։ Գրիգոր Տոլֆինի ալ՝ նոյն օրեր (յուլիս 17) հրաման եղաւ դառնալ Պեմպոյ Տարտիի խալէիւ, (որ ի Հայոց և ի Կիպրոսէ վաճառք վերցընելու հրամանն ընդունած էր, պայմանաւ՝ որ ձրի տանի Վենետկեցի դեսպանն ի Հայս և ի Կիպրոս). սահմանեցաւ դեսպան Նիկողայոս Մորոզինի, որոյ անունն կը յիշուի 1311 նոյեմբեր 10 Թուականաւ տրուած վճռոյն մէջ, ուր խօսք կ'ըլլայ նա և Լէոնա նաւուն կահից և կազմածոց վրայ։

1314 տարւոյն սկիզբը (27 փեբր.) կու յիշուի առ Թագաւորն Հայոց ղրկուած նոր դեսպան և ընծայ, որոց համար հարկաւոր ծախքն պիտի լեցուէր կէս առ հարիւր բաժէն. և որովհետեւ չբաւեց այն, յօտարաց փոխ առնուելով՝ սահմանեցաւ ի մտից Պող-

ռոճկէից ծովու (Officiales maris) հատուցանել պարտատեարց. իսկ նոյն պաշտօնէից ալ՝ յետոյ նոյն կէս առ հարիւր բաժիւ հատուցանել իրենց պահանջքը: Անկէ քանի մը ամիս ետքը (1314, յուլիս 21) դարձեալ կու հրամայուի ընծայ պատրաստել Հայոց Թագաւորին համար քսանուերկու լիպ. կրօսից արժէքով: Իսկ երկու տարիէն ետեւ (1316, սեպտ. 5 և 9) ճոխագոյն ընծայք պատրաստուեցան Հայոց Թագաւորին հարսանեաց համար, որ այրիացեալ՝ կ'անցնէր յերկրորդ ամուսնութիւն ընդ Յովհաննայ Եռինէի՝ դըստեր Փիլիպպոսի իշխանին Տարենտայ. և սահմանեցաւ գին ընծայից՝ երեսուն լիպրա կրօսից. և թէ զայդ դրամ հայթհայթելու համար՝ դուքսն և խորհրդականք կարենան փոխառութիւն մ'ընել, ուստի և յաջողին, նա և տոկոսեօք, ի հատուցումն այս և ուրիշ կանխաւ եղած փոխառութեանց:

Կորուսեալ գործոց (actes) համառօտ գլխակարգութեան մը մէջ կու նշանակուի վճիռ մ'ալ 1317 կամ յաջորդ տարւոյն մէջ՝ նոր դեսպան մը ղրկելու, որ առ ժամն կու խափանուի: Կու յիշուի դարձեալ ի դիմաց դքսին թղթոյ մը առաքումն առ Թագաւորն Հայոց, ոչ ի ձեռն դեսպանի՝ ինչպէս թուի, որովհետեւ Փր. Տանտոլոյ Նէկրոբոնդի Պայլն

զրկեց զայն, ինչպէս կու ծանուցանէ սա առ դուքն՝ Նամակաւն գրեալ ի 1318, յուն. 28, յորում նշանակէ և զգերիլ վաճառակիր խալէի Կրիմանեանց յԱյաս՝ ի Սրինոլայ դենուացւոյ։

Երկու տարի վրան անցնելէն ետքը՝ մեռաւ բարեկամն Վենետաց Օշին թագաւոր, (20 յուլիս, 1320), ժառանգ թողլով իր երկոտասանամեայ դեռահասակ որդին, Լեւոն Դ, և խնամակալ կարգելով նմա՝ վերը յիշուած երկու Հեթմեանքը, դքսին հետ թղթակցելու համար, և զՊաղտին մարաջախտ։ Նոյն ժամանակին հանդիպած արշաւանք Եգիպտացւոց ի Հայս, թագաւորին անչափահասութիւնն, Կոռիկոսոյ տեառն Օշին Պայլի ձեռներիցութիւնք, առ վայր մի վրդովեցին զԿիլիկիա, և որոյ տատանումն հասաւ մինչեւ ի Վենետիկ. վասն զի Օշնի մահուընէն ամիս ու կէս ետքը (8 սեպտ. 1320) ատեանն կու վճռէր որ ի Կիլիկիա երթալու պատրաստուած Պայլն Յովհաննէս Գարոզոյ՝ մնայ ի մայրաքաղաքին, և իրեն փոխանակ՝ արդէն սահմանուած դեսպանն ուղեւորի, որոշելով նա և իրեն թոշակին ու ծախուց չափը։ Այս դեսպանն էր Միքայէլ Յուստինեան, որուն մեծ խնամքով յանձնեցաւ, (թերեւս յառաջ քան զմահ Օշնի), դիւրացընել վենետացի վաճա-

ռականաց առեւտուրը , Հայոց Թագաւորէն խնդրելով որ վերցընէ արդէն սպրդած զեղծ-մունքը, ու կրկին հաստատէ նախկին բարե-կարգութիւնք ։ Մտադրութեան արժանաւոր վկայականներէն մէկն է՝ իր ձեռքն տրուած հրահանգը, որոյ պատճէնը պահուած է ի դի-ւանս. յորում՝ նախ, կու խնդրէ նորոգել հնա-ւանդ արտօնութիւնք. (Թագաւորն փութաց կատարել զայն՝ ի փռանկ լեզու գրուած վճռով մը, 1 մարտ, 1321), և յետոյ ուրիշ այլեւայլ առաջարկութիւններ կ'ընէ. յորս գլխաւորքն են, որ Վենետք առանց արգելից և դժուա-րութեան՝ կարող ըլլան իրենցմէ ի Հայս բերուած ոսկին ու արծաթը վաճառել ։ Թա-գաւորն թոյլտուութիւն ըրաւ ոսկւոյն, բայց արծաթոյն կէսը կ'ուզէր իր փողանոցին մէջ դնել, որպէս զի կարող ըլլայ Եգիպ-տոսի սուլտանին հարկի դրամը հայթհայթել ։ Կու պահանջէին դարձեալ Վենետք՝ որ Հայք իրենց փողանոցին կշիռքը փոխեն՝ իբր ան-ճիշտ. որոյ պատասխան տրուեցաւ ի մերոց, թէ կշիռք ճիշտ են, և խարդախութիւնն թերեւս կշռողին կողմանէ է ։ — Խնդրեցին դարձեալ և շնորհուեցաւ Վենետաց, որ կարե-նան գնել առանց մէկէնիմէկ փոխարէն վը-ճարքն ընելու, միայն հատուցանելով դաշ-նագրին մէջ նշանակուած տուրքը ։ — Տրուե-

ցաւ նոցա ազատութիւն գերտանեցից, Թոյլտուութիւն կապելոյ զնաւս յերկաթի անուրս ծովաբերդին Այասոյ, և ապահարկութիւն ի տովարական սակէ զնման մետաքսեայց և մորթեայց ի Սիս և այլուր։ — Եւ որովհետեւ նեղ էր նաւահանգիստն՝ շատ բեռ Թափելու անյարմար, իրենց խնդրանաց համաձայնելով հրաման շնորհուեցաւ, որ կարող ըլլան Թափել և ի ծովափն, բաց յարծաթոյ՝ զոր հարկ էր հանել ի նաւահանգիստն։ — Բաց յառանձնաշնորհութեանցս՝ Թագաւորին Հայոց մասնաւոր խնամոց կու յանձնուի տէր Նիկոլայոս ումն՝ սարկաւագապետ Տարսոնի. կու շնորհուի մԹերանոց մը (masen) գերեզմանատան մօտ։ — Մնացածն կրնան գտնել փափաքողք և հետամուտք՝ մեր իտալերէն գրածին մէջ[1]։

Այս ամէն խնդրուածոց գլուխները կընքուելով արքունական փոքր կնքով, կու յանձնուի հայցողին, և որ Թուի Թէ փուԹով ղրկեր կամ անձամբ բերեր է ի Վենետիկ, և Թերեւս յառաջ քան զՊարգեւագիրն Լեւոնի որ ի 1 մարտի, փռանկ լեզուաւ, համաձայն շնորհելումն ի հօրեղբօրորդւոյն իւրմէ ի Լեւոնէ Գ., հայ բնագրին հետ և լատին

1. L' Armeno-Veneto, II. p. N. 11.

թարգմանութեամբ և ոսկեղէն կնքօք. որոց համար հին Նօտարաց դիւանն կ՚ըսէ, թէ Պայլն Գարօզօյ բերեր էր ի Վենետիկ, և հրամանաւ դքսին դրեր էր ի տան Գործակալութեան դքսական ապարանից (Procuratia). և յետոյ միւսանգամ ղրկուեցաւ նա ի Հայս ի սկիզբն 1322 տարւոյն, ընդունելով տասնուչորս լիրայ կրօսից ի նորոգութիւն տանն յԱյաս, և հետը տանելով նա և զպատճէն խնդրոց և շնորհաց առ դեսպանն Միքայէլ Ցուստինեան, իբրու վաւերական և ապահովութիւն իր հայրենակցաց իրաւանցը, որ յետոյ տրուեցաւ նա և իր յաջորդին Պիանճիոյ Մալիբիէրիի, յամի 1326 յինն յուլիսի ։ Եւ որովհետև դեռ մանուկ կամ անչափահաս էր Թագաւորն, ինչպէս ըսինք, հաւանական է կարծել՝ թէ ոչ միայն քարտուղարն՝ Կոստանդին արքեպիսկոպոսն Դրազարկի, (յետոյ կաթողիկոս) այլ և պայլքն երկոքին Հեթմեանք դրին իրենց ստորագրութիւնը. ինչպէս կու տեսնուի ի համառօտ վաւերական Պարգևագրէն, որ հրամանաւ և հաւանութեամբ թագաւորին տրուեցաւ նոյն օրերում (16 մարտ, 1321) Մօնբլուզեցի (Մօնբելիէ) վաճառականաց, որուն կու ստորագրեն երկուքն ալ սօսկ իրենց անուամբն, Հեթում. Հեթում. յորոց մին էր Ջամբէռլայն և միւսն սէնէսկալ պետութեանն ։

Թէպէտ և անտարակուսելի, այլ չյաջողեցաւ ինձ գիւտ գումարին յիշեալ ընծայից զոր այս անգամ Հասարակապետութիւնն ղրկեց առ Լեւոն, և որ անշուշտ հարկ էր թէ մեծագին և մեծափառ ըլլար, թէ ի պատճառս շնորհացն զոր ընդունեցան ի ձեռն Մալիբիէրի դեսպանի, և թէ վասն հարսանեաց թագաւորին, որ ի նոյն ամս կատարեցաւ. վասն զի այն ժամանակաց սովորութեանն համեմատ կու փութային արքայազուն մանկունքը կանուխ պսակել, անոնց ապագայն ապահովելու, կամ յուսացողաց և հետամտից հնարքը կարճելու վախճանաւ: Իսկ այս անգամ մեծագոյն եւս էր փոյթ՝ խորագէտ և փառասէր իշխանին Կոռիկոսի՝ Օշնի, որդւոյ ծանօթ պատմչին Հեթմոյ, արքունական Պայլի պաշտման բարձրանալ: Սա հարսնացոյց թագաւորին իր դստրիկը՝ Ալիծ, և ինքն կին առաւ զմօրու նորա՝ զերկրորդ կին Օշնի, զՅովհաննա, և ոտն առ ոտն յառաջ երթալով, և ինչուան մահու չափ հարստահարելով ըզպարոնայս, արքունեաց պատկանող զանազան կալուածներ ալ նուաճեց: Թագաւորն զարգացեալ և սթափեալ, հաւանաբար նա և դրդեալ յայլոց, իբրև արքունի իրաց պարտաւոր (lése majesté) սպաննել տուաւ զՕշին

և զեղբայրն (1329)․ մանաւանդ զի յանդըգներ էր նա դատապարտել և սպաննել՝ իւր իսկ Թագաւորին հօրաքոյրը, զզուողն Զապլուն, զկին հաշակելոյն Ամաւրեայ իշխանին Տիւրոսի, եղբօր Կիպրոսի Ենրիկ Թագաւորին, որ Բ Լեւոնի վեշտասան որդւոց և դստերաց անդրանիկն էր, և միակ կենդանի մնացած։

Բայց Չորրորդս այս Լեւոն՝ իր բազմածուփ Թագաւորութեան քսանուերկու տարիներուն մէջ, — որ աղիտալի եղան Այասոյ կորստեամբ, այլ ուրիշ կողմանէ ոչ նուազ բարգաւաճ, յորոց այլեւայլ յիշատակք կան մնան ցայսօր, ինչպէս նա և մատեանք ընտիր գրչութեամբ, — ջանաց սերտ պահել Վենետկոյ հետ ունեցած յարաբերութիւնը, թէպէտ և ի հարկէ դիպաց և արկածից իր երկրին՝ բռնադատուելով երբեմն ամփոփել զայն, ըստ ոչ յօժարութեան և շահու Վենետաց։ Այս վերջիններս ոչ միայն դիւանագիտական (diplomatique) և վաճառականական յարաբերութիւններ պահեցին հետը, այլ և ուրիշ կերպով մ՚ ալ․ այսինքն առանձնականի մը գրուածներով և ջանիւք, ի պահպանութիւն Թագաւորութեան Հայոց։ Գրողն էր գերահռչակն Մարինոյ Սանուտոյ Պորչելլոյ, ծանօթն և համախոհ մերոյս Հեթմոյ—

Անտոնի Կոռիկոսեցւոյ, որ սիրով ազատութեան Սրբոյ Երկրին՝ ոգւով չափ վառուած, (առ որ օժանդակ մեծ կու համարէր զթագաւորութիւն Հայոց), կու թղթակցէր ընդ թագաւորին, ինչպէս քաջայայտ կ՚երեւնայ իր մէկ ծանօթ թղթէն՝ զոր գրած է իբր յամի 1326, յորում կարեւոր ծանօթութիւնք կան. և նախ, թէ Լեւոն գրեր էր յառաջագոյն առ Սանուտոյ. և երկրորդ, զի պատգամաւորութեամբ ղրկեր էր առ քահանայապետն Հռովմայ՝ զԵղ. Թադէոս արքեպիսկոպոս Կաֆայի, հանդերձ ընկերակցօք. և երրորդ, թէ և ինքն Սանուտոյ անձամբ և գրովք կու յորդորէր զՊապն և զծիրանաւորս, ինչպէս նա և զթագաւորս Փռանկաց և զԱնգղիոյ, անոնց պարոնայքը, զԿոմսն Հաննովէրի և զայլս յօգնութիւն Հայոց. — չորրորդ, թէ զայս ամենայն պիտի ծանուցանէ թագաւորին՝ Եղ. Հուգոյ ի կարգէ Քարոզողաց: Սանուտոյի ոչ միայն թուղթք՝ ամփոփեալք ի հաւաքմունս (Gesta Dei per Francos), այլ և իր հռչակաւոր ժամանակագրութիւնն լի են ծանօթութեամբք այն ժամանակին Հայոց թագաւորութեան վիճակին վրայ, և թելադրութեամբք ի նպաստ ատոնց: Նոյն վախճանաւ մեծ ջանք ցուցին քահանայապետքն Յովհաննէս ԻԲ և յա-

ջորդքն. բայց Փռանկաց և Անգղիոյ Թա-
գաւորաց իրարու հետ հակառակութիւնք,
արեւմտականաց գանգատութիւնք, անվախ-
ճան վէճք և քննութիւնք զՀաւատոց Հայոց,
անօգուտ ըրին Սանուտոյի և Հեթմոյ ջանքն՝
ի պահպանութիւն կիլիկեան իշխանութեան
Հայոց, որ նախամարտիկ էր քրիստոնէու-
թեան, ինչպէս նա և օգուտ և պարծանք
քրիստոնէից։

Դառնանք հիմայ յուղղակի յարաբերու-
թիւնս Հասարակապետութեանն, որ ի ժա-
մանակին կարեւոր խնդիր մ'ալ ունէր, զոր
առանց մեզ յայտնելոյ՝ 1326–7 ամաց վճիռք
կ'իմացընեն. և զոր քննելու վախճանաւ ըն-
տրեցան պետական գիտնականքն կամ Ի-
մաստունք (Savij)։ Նոյն առեններն ստէպ
գեսպանութիւնք կ'ըլլային Հայոց ընդ քա-
հանայապետական արքունեաց, և որք շատ
անգամ Վենետիկէն կ'անցնէին. երբ նոյն
պաշտամամբ՝ յամի 1327 Յակոբ Թարգման
եկաւ ընդ Բեմունդի, սա մնաց ի Վենետիկ,
ուր այլք ուղեւորեցան ի Հռովմ, Թերեւս
կարեւոր խնդրոյ մը համար, որպէս կարելի
է կարծել՝ հաշտութեանն Հայոց ընդ Կի-
պրացիս, Թէպէտ և արդէն հաստատուած էր
այն, և քահանայապետն Յովհաննէս ԻԲ
խնդակցութեան նամակ գրած առ Թագա-

ւորս երկուց ազգաց, բայց դեռ քանի մը պայմանք ի կախ մնացած էին, և առանձին խնդիրք կային. ուստի և Հասարակապետութիւնն կու յանձնէր Պայլին Հայոց՝ երթալ խօսիլ Կիպրացւոց հետ (1328). իսկ յերկրորդ ամին կու սահմանէր ընտրել դիտունս, և անոնց ձեռօք քննել զդէպս Հայոց և Կիպրացւոց: Նոյն ժամանակին դեսպան մ'ալ ղրկուած էր ի Հայս, և իրեն ծախուցն համար երկու առ հարիւր փող. և ինչպէս կ'երեւնայ, միւս այլ դեսպան կու պատրաստուէր երթալ, և սոր համար ալ դրամ կու սահմանուէր, որ թուի թէ ըլլայ հին ծանօթ դեսպանն Գր. Տոլֆին, և քիչ ետքը կ'որոշուէր պատգամաւորութիւնն և առ թագաւորն Հայոց ըսելիքն: Նոյն ատեններն ի Վենետիկ էր Նա և Հայոց դեսպանն, և որոշուեցաւ (19–21 յուլիս, 1329) ի հասից պետութեան ընծայ տալ նմա 4 լիպրա կրոսից. և մինչ ստէպ յանձնարարութիւնք կ'ըլլային ի Հայաստան երթալու խալէ և նաւեր չինելու, ամենայն խնամքով պատուէր կու տրուէր հօն պատահած անցից քննութեան, և ութ օր կու յերկարէր Իմաստնոց ժողովոյն քննութեան համար ժամանակն: Եւ որովհետեւ դարձեալ եկած հասած էին դեսպանք ի Հայոց (1331), կու հրամայուէր

ժողովականաց՝ խօսիլ անոնց հետ, և խնդրել որ յարմարցընեն ընդ Թագաւորին, որ վերցընէ իր և հօրը ատեն վաճառականաց վրայ դրուած հարկաց և բաժից ծանրութիւնը։ Այս պահանջից վրայ, ինչպէս կու յիշէ ընթերցողն, մանրամասն ծանօթութիւն տուեր էր Հասարակապետութեան՝ Պետրոս Պրակատին, և թէ պատճառք եղած էին Հայոց ընդ Եգիպտացիս պատերազմունքն, և վերջնոցա չարաչար զարնուելով Այասայ քով (1330), վրէժխնդիր յարձակմամբ տիրելն քաղաքին (1331). որով վաճառականաց վընաս հետեւելով և բաժից ծանրութիւն, կամայ ակամայ պիտի նեղուէին ի Հայոց. և հարկ կ'ըլլար դարձեալ կարգել քննիչս յիմաստնոց (20 յուլիս, 1332), ութ օր պայմանելով. միանգամայն փութոյ պնդութեամբ՝ ի վերանորոգութիւն դաշանց՝ դեսպան ղրկել առ Թագաւորն՝ զոմն ի վաճառականաց. ուստի կու յանձնուէր պաշտօնէից Աղի (Officiales Salis maris) ճանապարհի ծախքը հայթհայթել, որպէս զի ուղեւորի առաջին ճամբայ ելլող նաւով։ Մինչ այս պատրաստութեան վրայ էին, ստիպողական նամակք կու հասնէին ի Հայոց, յորոց ի քննութիւն՝ կու վճռէր ծերակոյտն (28 դեկտ. 1332), որ դուքսն և խորհրդականք ընտրեն երեք ի-

մատուռնս, որ պարտաւորին տասն փողոյ տուգանաց մինչեւ ցկէս յանուարի ծանուցանել գրով ինչ որ իրենց պատշաճական երեւնայ։ Ղրկուած դեսպանն էր Յակոբ Դրէվիղան, որ իմացուց գործոյն յարմարութեան դժուարութիւնը. որովհետեւ գրգռուած էին Հայք՝ Վենետոյ կողմանէ ցոյց տրուած քանի մի հակառակութեանց համար, եւ Գեորոսի Բիծալոյ՝ զրանտարկեալն Գոնդարինի ազատելուն, որով բանադատեցան պատուհասել զնա՝ ձեռուընները կարել տալով։ Այս ամէն բանին համար ծերակոյտն գումարելով ի խորհուրդ (17 յուլիս, 1333) սահմանեց որ դուքսն իր խորհրդականներովն եւ ժողովով Վաթանից՝ դեսպան կարգեն վաճառականներէն մէկը. որ ի Սիսուան երթալով՝ բերանացի խօսի ընդ Թագաւորին, պահանջելով իրմէ տրուած Պարգեւագրին գաչինքը պահպանել, յայտնելով նա եւ Յակոբայ Դրեվիղանի գրով բերած գանգատանաց գլուխները, եւ Պայլին Թուղթը՝ զոր Թագաւորին դիմացը դնէ, եթէ սա չգիտնալ ձեւացընէ։ Անկէ զատ, խնդրել որ այն կողմանց արծաթոյ նուազութեան համար՝ ի Վենետաց բերուած արծաթոյն գինը բարձրացընէ, եւ մէկ ոսկի տուկատը՝ քսանուչորս Թագաւորին դրամոց արժէք ունենայ,

և յառեւտուրս՝ առ պակասութեան արծաթոյ՝ վարուն համարուի նա և ոսկին։ — Եթէ թագաւորն՝ ժամանակին պիտոյից համար, (ինչպէս կու պնդէր նա և իր դեսպանն ի Վենետիկ) պահանջելու ըլլայ տուրս մէկ առ հարիւր, ըստ իրեն՝ թէ մերքն կամաւորապէս ի շնորհս նորա և ոչ ի պարտուց՝ կու վճարէին զայն, և թերեւս նորէն վճարեն։ — Թէ որ պահանջէ զբաժ վաճառուց, ջանայ ազատ ընել. իսկ թէ այդ անհնարին է, գէթ յարքունի տրոց ազատութեան շնորհքը ձեռք ձգէ։ — Եթէ ուզենայ յուզել զարկեղս՝ որպէս զի չըլլայ թէ գաղտուկ արծաթ ներս մտցընեն, խնդրէ խափանել զայնպիսի հետազօտութիւն. բայց ի ստիպելն՝ գէթ գոհ ըլլայ Պայլին դիմաց եղած երդմամբ։ — Եթէ ուրիշ դժուարութիւն կամ փոփոխութիւն ուզենայ ընել թագաւորն, դեսպանն խոհեմութեամբ ընդդիմանայ։ Եթէ որ այս եղած առաջարկութեանց թագաւորն չհաւանի, դեսպանն ծանուցանէ թէ Վենետք իր տէրութեան սահմաններէն դուրս պիտի ելլեն, և հրատարակէ զժամանակ ելիցն մինչեւ յառաջիկայ ապրիլ ամիս, և չմեկնողն՝ եթէ վաճառական է, հինգ հարիւր լիպրա կրօսից տուգանաց տակ ինկնայ. իսկ եթէ ոչ՝ յիսուն լիպրա. Որոնք երեք տարիէն աւելի

բնակած են ի Հայս և կ'ուզեն հօն մնալ՝ ազատ ըլլան. իսկ ուրիշ տուգանելոց ինչք կամ ձեռագործք չընդունուին, բայց եթէ յիսուն առ հարիւր տուգանօք. նոյն տուգանաց տակ ինկնան ապրիլ ամէն եռքը վաճառք տանողքն ի Հայս ։ Վենետկոյ մէջ ալ ծանուցուի, թէ որոնք տարւոյս դեկտեմբեր ամէն եռքը նաւելու ըլլան, նախ Կիպրոս երթալով տեղեկանան թէ թագաւորն՝ Վենետաց հետ իրաւախոհ եղա՞ծ է. ապա թէ ոչ չերթան ի Հայաստան. առանց ի Կիպրոս հանդիպելու հօն գնացողք՝ ետ դառնան. իսկ թէ ոչ՝ նոյն տուգանաց տակ ինկնան. և այս կարգաւորութիւնք և սահմանք ծանուցուին Վենետկոյ Ուղղիչ (Rector) պաշտօնակալաց, Կիպրոսի Պայլէն տեղեկանալով, և յանձնուին հանդիսաւոր դեսպանի, որոյ թոշակն ըլլայ որպէս Յակոբայ Դրէվիզանադոյի։ Առ այս պաշտօն ընտրեցաւ Պետրոս Պրակատին վաճառական. և իրեն տրուելիք թոշակը՝ պիտի հայթհայթէին Աղի և Ծովու պաշտօնեայք, շարունակելով հինգ առ հարիւր հարկը, զոր կ'առնուին Դրեվիզանադոյի համար. և դեսպանն հայագնաց խալէիւք պիտի ընէր ուղեւորութիւնը։

Ժողովոյն վճռոյն համեմատ՝ Իմաստունք պարապելով ի քննութիւն այսր ամենայնի,

ծանուցին դքսին (28 յուլիս, 1333), թէ, որովհետեւ դեռ հասած չէին ժողովոյն կողմանէ առ Թագաւորն գրուած ծանր թուղթք, ինչպէս նա և իր դեսպանէն ի Վենետկոյ առ նա ուղղեալքն, և Լեւոն բարեկամութեամբ էր ընդ Հասարակապետութեանն, պատշաճ կու թուի սպասել Պապին գալըստեան խալէիւքն ի Հայոց, հասկընալով Թագաւորին միտքը. և ժամանմանէն տասնուհինգ օր եաքը՝ կոչել զնա ի ժողով ծերակուտին, լսել և այնպէս առնել զարժանն։

Ինչպէս յուսալի էր՝ աղմուկն զիջաւ, ու զէթ առ ժամն խաղաղութիւն եղաւ. Լեւոն Դ Թագաւորն՝ Նոյեմբեր ամսոյն տասնին Նոր Պարգեւագիր մը տուաւ Ցակոբայ Դրեվիզանայոյի ձեռքով, որ դեսպանութեան պաշտամամբ վերադարձեր էր ի Հայս։ Այս Պարգեւագրին մէջ բաց ի կրկին հաստատութենէ առաջնոց առանձնաշնորհութեանց, կու շնորհուի, նախ. ցփսւոյ և ասուեղինաց արուեստագործաց ազատութիւն ի սահմանեալ սակէ. — երկրորդ. գինեվաճառք մէկ թագւորին դրամոյ տուրքէն ազատ ըլլան յեօթնեկի. իսկ եթէ խարդախեն ի կշիռս, տուգանաց տակ ինկնան. — երրորդ. քաղաքին մէջ գինւոյ կամ քացցուոյ վաճառականք՝ առ մէն մի չափ (vegete) տուրք կու վճարէին մէկ

նոր դրամ, իսկ քաղաքէն դուրս՝ երկու. կու չնորհուի իրենց՝ անկէ ետքը ազատ ըլլալ. — չորրորդ. մորթեաց, մուշտակաց և փայտից վաճառողք՝ ապրանքնին ազատաբար մտցընեն ու հանեն Տարսոնի նաւահանգստէն. — հին֊գերորդ. գնողք ասուի, ստեւոյ այծեայց և նմանեաց՝ նախատուեալ Պարգեւագրին հա֊մեմատ վարուին. — վեցերորդ. ազատ ըլ֊լան նա և ասուեղինաց չափողութեան տուր֊քէն. — եօթներորդ. բանադատութիւն չըլլայ Վենետաց՝ ցորեան և աղ գնելու. — ութե֊րորդ. Վենետացի գողք պատժուին յարքու֊նեաց. — իններորդ. Վենետաց պարտականք բանտուին՝ մինչեւ ի հատուցումն. — և տաս֊ներորդ. ամենայն Վենետք չանարգուին և չի նեղուին :

Այս Թուղթս՝ չէ յետինն զոր գրեց Լեւոն Թագաւոր առ դուքսն, այլ վերջին ծանօթ Պարգեւագիր, զոր ընդունելով Դրեվիզան դեսպան՝ պանծանօք և ուրախութեամբ կու բերէր. բայց ի ծովային ճանապարհորդու֊թեանն՝ կողոպտեցաւ ի Գենուաց, ինչպէս յառաջ ալ յիշատակեցինք. սակայն Պար֊գեւագիրն անվնաս հասաւ առ դուքսն, և զօրեց քանի մը տարի եւս՝ ցորչափ կու տեւէր Հայոց իշխանութիւնն ի վերայ ցանկալւոյն Այասայ. իսկ անկէ ետքը (1337) ալ կարօ֊

տութիւն չկայր Նոր Պարգեւագրի մը, երբ շահաստանն այն կուրացաւ կամ խափանեցաւ ի վերահաս բռնութենէ Թշնամեաց. և Թէպէտ առ վայր մի զերծաւ, այլ ոչ բաւելով դառնալ կրկին ի զօրութիւն, ի սպառ աւերեցաւ անչքացաւ, և իւր ամէն փառքն և մեծութիւն՝ սուզան ի խորս ծովածոցին և ի ներքոյ դերբկացն :

Եղած հաշտութեան և դրուած դաշանց պահպանութեանն համար, ետեւէ եղաւ Հասարակապետութիւնն իր կողմանէ ապահովութիւն տալ Թագաւորին պայմանաց ամենէն աւելի ծանրագունին համար, պատուիրելով Պայլին (1334, օգոստ. 13) որ ի Հայաստան արծաթ բերողաց ծանուցանէ՝ արծաթոյն կէսը դնել յարքունի փողանոցի. որուն եթէ դրժեն՝ պատժուին : Այս կերպով խաղաղութեամբ անցան առեւտրոյ և շահուց վերջին տարիներն յԱյաս և ի Հայս. ափսոս, որ խիստ կարճատեւ եղաւ այն ժամանակն, և յոր չկըրցան դաշնագիրքն վայելել ընդ երկար, Լեւոն Թագաւոր և Տանտոլոյ դուքս. վասն զի նոյն ատեն արդէն սկսած էին խըլըրտմունք և աղխտաբեր ասպատակք Թշնամի այլազգեաց՝ յերից կողմանց. ի հարաւոյ՝ Եգիպտոսի սուլտանն, յարեւելից՝ Հալպայ սուլտանն, և ի հիւսիսոյ՝ Գարամանք: Թա-

զաւօրն մէկմէկու ետեւէ դեսպաններ կու ղրկէր առ քահանայապետն Հռովմայ, առ Թագաւորն Անգղիոյ և Փռանկաց. Պապին յորդորանօք կու միաբանէին Փռանկաց, Նաւարրայ, Արագոնի և Պոհեմիոյ Թագաւորք՝ յօգնութիւն Հայոց. բայց ինչպէս յաճախ հանդիպած է՝ թէ յառաջ և թէ ետքը, ոչ մէկն շարժեցաւ. գոհ եղան միայն դրամական նպաստ մը ղրկելով, մինչ ապստամբքն՝ Կիլիկիոյ հարստութիւնը կու գերփէին. և Թէպէտ Հայք զայրացած՝ վերջին ճգամբք և ատելութեամբ յԱյաս գտնուող բոլոր այլազգիքը կոտորեցին (1336), բայց վրան տարի մը անցնելէն ետքը՝ ստիպուեցան թողուլ զայն ի կամս և ի ղոհ իրենց հզօր հակառակորդին, սուլտանին Եգիպտոսի։ Այլազգեաց այն կոտորածին ատեն՝ կային և շատք պարտատեարք Վենետաց. ուստի փութաց ծերակոյտն գրել առ Պայլն Կիպրոսի (1337, սեպտ. 3), որպէս զի ամէն մէկ պարտաւորաց ծանուցանէ՝ նշանակել թէ որչափ ինչ կու պարտին Սառակինոսաց, և պարտուց հատուցման գրաւ տալ, որ ղրկելով ի Վենետիկ՝ պահեստի դրուին ի պաշտօնարանն Ցորենոյ (Ufficio de’ Frumenti), մինչեւ ստուգուին իրաւացի պահանջողք, և իրենց արդար և պատշաճական հատուցումն ընդունին։ Ասկէ

տուաղ ալ (20 օգոստ.) գրեր էր դարձեալ Ծերակոյտն առ Նոյն Պապ, որ Նաւատորմիղը ի Կիպրոս հասած տեեն՝ խորհրդակցի տորմըղապետին հետ, և որոշեն թէ արժա՞ն է երթալ ի Հայս՝ թէ ոչ. եթէ երթն պատշաճ դատուի, Նաւապետն կարող ըլլայ քանուերկու օր՝ մնալ հօն, իսկ եթէ ոչ՝ տասնեւութ օր ի Կիպրոս։

Քանի մը տարիէն ետքը՝ աստ նման պարտք մ՚ունեցան Վենետք առ Սառակինոս, որոյ նկատմամբ կու ծանուցանէ թագաւորն Լեւոն 1341 մարտ 1 թուականաւ նամակովը, որ իր վերջին գիրն է, ինչպէս նա և վերջին թուղթ մինչեւ առ մեզ հասած Սիսուանայ թագաւորաց առ Հասարակապետութիւնն Վենետկոյ։ Երկրին խաղաղութեանն ու անդորրութեան համար՝ Լեւոն հեռացուցեր էր անտի զամենայն Սառակինոս. և որովհետեւ անոնցմէ ոմանք պահանջ ունէին ի բնակչացն, Եգիպտոսէ դեսպան գալով սպառնալեօք կ՚ուզէր որ հատուցուին։ Այդպիսի անհամբոյր պատգամաւորութիւն մը արգիլելու համար, փութաց Լեւոն իր կողմանէ հատուցանել Վենետաց պարտքերն ալ, ու անդորրագիր առնելով՝ պահանջողը ետ դարձընել. և ծանոյց առ դուքսն Բարթ. Կրատենիկոյ, որ մնացորդ

պարտքն ալ վճարէ, որպէս զի չի ստիպուի բանադատութեամբ առնուլ ի Վենետաց. և մի առ մի կու նշանակէր հայկական կշռոց՝ զչափ բամբակին, զոր վաճառականք Վենետոց գներ էին յայլազգեաց. և որոյ գումարն՝ ըստ նշանագրութեան ի հաշուեմատեանս բաժնոյն Այասոյ՝ կու հանէր ի 24,107 դրամ Թագւորին. բայց Սառակինոք 2,890 Թագւորին գումար մ՚ ալ կու պահանջէին, որով հարկ եղաւ վճարել ամէնը մէկտեղ 27,000 Թագւորին: Պարտական եղողներէն երեքն՝ որովհետեւ տեարք էին ընչից ի Հայս, 11,000 Թագւորին անոնցմէ առին, և 16,000 մնաց Վենետաց կամ Հասարակապետութեան պարտքն: Վաճառականական իրաց հետամուտ, նիւթոց արժէից ըստ որոշեալ կշռոյ, և անոնց բաժի յարքունիս՝ մեծապէս հետաքննական է Հայոց և Վենետաց տուրեւառական յարաբերութեանց այս վերջին վաւերականն: [1]

Դիւանաց մէջ ասկէ երեք տարի յառաջ յիշատակ մ՚ալ կայ Լեւոնի (1338, 29 յուն.), յորմէ կու գուշակուի թէ կամ գրով և կամ դեսպանի ձեռքով խնդիր ըրած էր, և Հասարակապետութիւնն կու պատուիրէր յղել

1. Տես ի L'Armeno-Veneto, II p. 240.

առ նա՝ քսանտախտեայ հին նաւ մի, ըստ գնոյն զոր պատշաճ համարին պաշտօնեայք նաւարանին :

Երիտասարդական երեսունուիրեք կամ ե- րեսունեւչորս տարուան հասակին՝ մեռաւ Լեւոն (1342, օգոստ. 28), և դժբաղդաբար՝ ինչպէս կ'երեւնայ, ոչ բնական և անդորր մա- հուամբ, այլ զոհ մ'ըլլալով իր սերտ մտեր- մութեանն ընդ Լատինաց և մանաւանդ ընդ քահանայապետական Դրան : Կրնանք ըսել թէ իրեն հետ վերջացաւ և թագաւորական տոհմ և պանծալի զարմն Ռուբինեանց, և Հեթմեանց. վասն զի անտարակոյս է, թէ իրմէ յառաջ վախճաներ էր Հեթում՝ իր դեռաբոյս որդեակն, որով սպառեցաւ յա- ռաջնոյն Հեթմոյ սերեալ զարմն, տեւելով տասուերկու ազգ, երեք հարիւր տարի. և հարկ եղաւ փնտռել խնդրել մերձաւոր ժա- ռանգ մի ի սերընդոց իգական սեռի. որոց չէր ինկնար ըստ սալեան օրինաց՝ թագաւորա- կան աթոռ և իշխանութիւն ի վերայ Հայոց. ուստի և թագաւոր ընտրեցաւ մերձաւոր ազ- գականն (cousin) Լեւոնի Դ ի մօրէ. այսինքն որդին իր Զապլոն հօրաքեռ և շատ անգամ յիշուած Ամաւրեայ՝ եղբօր թագաւորին Կի- պրոսի, Կի կամ Գուիտոն. որով փոխանակ Ռուբինեանց՝ Հայոց թագաւորութեան ցեղն

եղաւ Լիւզինեան, որ բաղդաւոր տոհմ մը չեղաւ. վասն զի երկու տարի վրան անցնելէն ետքը (1344) սպաննուեցան Գուիտոն և իր Պեմունդ եղբայրն, և Թորոս յանձնուեցաւ այս վերջնոյս փեսային, Կոստանդնի Բ, որդւոյ քաջին Պաղտին մարաջախտի: Սա իբր քսան տարի թագաւորեց, յորս կամաց կամաց կու նուազէր նշոյլ փառաց, զօրութիւն և հաստատութիւն Սիսուանայ երկրին և թագաւորութեան Ռուբինեանց. զի այս անուամբ կու կոչուէր մինչեւ ի վերջ տէրութիւնն Հայոց ի Կիլիկիա:

Ուրիշ տեղ յիշեցինք Կոստանդին Բ Թագաւորի դեսպանն ի Վենետիկ (1346, սեպտ. 3), ընծայիւք ցփսեաց և ոսկեդիպակաց՝ երթալով առ քահանայապետն, որոց բաժն ազատ շնորհեցաւ: Երկրորդ տարին ( 1347 ) ղրկեց դեսպանս առ Դուքսն և առ Պապն, զկորուսեալն Այաս վերստին ձեռք ձգելու համար՝ անոնցմէ օգնութիւն խնդրելով. Կղեմէս Զ քահանայապետ գրեց (25 սեպտ.) յորդոր առ դուքսն, որուն առաւել քան այլոց՝ հարկ էր որ ցանկալի ըլլար՝ Հայոց ծովուն դշխոյին վերստին կանգնումն՝ դաշնակցի դըշխոյին Ադրիականի: Յաջողեցան Հայք անգամ մի եւս օգնութեամբ Ասպետաց Նորէն ազատել զԱյաս յեգիպտական բռնութենէ.

որ կարծես թէ բաղդին բերմամբ՝ Ջրասոյզ լինելու դատապարտուած՝ միւսանգամ կու վերցընէր յալեաց իր բրգապսակ գլուխը, ապա ի սպառ խորասոյզ ըլլալով. այնուհետեւ ոչ ոք յիշեց Սիսուանայ ճոխութեան բանալին, և զհամաշխարհական հրապարակն այն վաճառականութեան։ Շարժեցա՞ւ արդեօք գոռոզ դշխոյն ադրիական՝ ձեռք կարկառել իր կըրտսեր քրոջ՝ յայնպիսի կարեւորագոյն պահու, թէ՝ ըստ ցուրտ հաշուոց քաղաքագիտութեան կամ շահասիրութեան՝ անփոյթ եղաւ. — Թերեւս լաւագոյն ըլլայ իր լռութիւնն կամ մեր տգիտութիւնն՝ յայսմ մասին։ Չկայ, կամ ինձ ծանօթ չէ, ուրիշ յարաբերութիւն մի Կոստանդին Թագաւորիս ընդ Վենետաց. բայց իր ժամանակ կու յիշուին, օրինակ իմն, Հայք Կաֆայի, որոց համար կու գրէր Պէրտի պէյ (1358, սեպտ. 26) առ Գութլու Թիմուր կուսակալ Սուլղաթի, պահանջել ի Վենետաց՝ ինչ որ իրենց նաւաստորմն կողոպտեր էր իր հպատակ Հայոց վաճառականներէն։

Տարուէ տարի կու մօտենար վախճան սերտ հաղորդակցութեան Ռուբինեան Թագաւորութեան և արեւելեան քրիստոնէից՝ ընդ արեւմըտեայս. տկար ներկայացուցիչն Կոստանդ՝ իր ամէն ջանքովն և ստէպ դեսպանութեամբ

առ Թագաւորս քրիստոնեայս և առ գլուխ նոցա քահանայապետն Հռովմայ, կու տագնապէր, չկարենալով պահպանել և պնդել ի ձեռին՝ երբեմն բաւական ընդարձակ երկիրն և բարգաւաճ քաղաքները, որ մի առ մի նուաճեցան յԵգիպտացւոց, յԻշխողաց Հալպայ և ի Գարամանաց, մանաւանդ ծովայիններն, որ դիւրագոյն ճանապարհք էին հաղորդակցութեան ընդ արեւմուտս, սկսեալ յԱյասոյ, ի գեղեցիկ ափանց Միջերկրականի և Փոքուն Ասիոյ, մինչեւ ի Տարսոն, ի ծովային մայրաքաղաք Կիլիկիոյ, և ընկան ի ձեռս Թշնամեաց (1360) ։ Կու մնայր միայն Կոռիկոս՝ ամուրն և զարմանալին, որ լաւագոյն խորհրդով կամ յուսահատութեամբ՝ հետեւեալ տարին (1361) անձնատուր եղաւ ի Պետրոս Ա՝ Թագաւոր Կիպրոսի ։ Քաղաքաց հետ՝ հարկաւ և անպատրուպար դաշտակողմն Սիսուանայ ոտնակոխ կ'ըլլար յայլազգեաց, Հայոց Թագաւորին ապաստան մնալով միայն լեռնակողմն և հօն գտնուած բերդերն, որոց գլուխ էր մայրաքաղաքն և ամրագոյնն, մանաւանդ թէ Թագաւորն բերդից՝ Սիս, գեղեցիկ և հզօր ծնունդ հանճարեղին և հզօրի Լեւոնի Առաջնոյ, հիմնադրի Թագաւորութեանն Հայոց ։ Իշխանութեան սահմանաց ամփոփուելով՝ կ'ամփոփուէր և սիրտ Կոստանդնի, ու կու մեռնէր 1363

թուականին՝ չթողլով ժառանգ արու. վասն զի իր երկու որդեակքն, Օշին և Լեւոն, ապագայ մատաղ յոյսք Հայոց, հօրերնուն աչքին առջեւ մեռած էին ։

Հարկ էր գտանալ ի Լիւզինեան պայազատս, յորս աւագագոյն էր Պեմունդ՝ որդի Ճիւանի եղբօր Կի Թագաւորի ։ Սա իր իրաւունքն ու իշխանութիւնը զօրացընելու դիտմամբ՝ փութաց դիմել անձամբ առ քահանայապետն Հռովմայ, և անոր նախաձեռնութեամբ ընդունել զթագն առաջարկեալ ։ Անհանճար խորհուրդ մի չէր այս, թէպէտ և ոչ ամենայն Հայոց երկրին հաճոյ ։ Երիտասարդ էր Պեմունդ, ու ի Հռովմ երթալու ատեն՝ ըստ պատահման կամ մասնաւոր դիտմամբ Վենետկէն անցաւ, կամելով թերեւս աթոռոյն հաստատութեան առաջին կապերը կցորդել ։ Այլ բաղդ՝ կամ գերագոյն կամք՝ այլազգ տնօրինեցին. վասն զի ի նոյն 1363 տարին՝ մեռաւ ի Վենետիկ, ինչպէս կ՚ աւանդէ նաբագիտ ժամանակագիրն փռանկ՝ Տարտել ։ Թէ ինչպէս և ո՛ւր թաղուեցաւ, — գուցէ յայտնէ մեզ դեռ եւս անծանօթ դիւան մի կամ Վենետկոյ Տարեգիրք մի, և որոց քննութիւնը կու յանձնենք հետամտից ։

Երկու տարուան ծփանքէ ու բանաբարութիւններէ ետքը՝ (1365) թագաւորեց ուրիշ

(Գ) կոստանդին մի, որդի Հեթմոյ Ջամբըռլայի, որ մի էր ի պայլից Լեւոնի Դ., մինչ Ուրբանոս Ե քահանայապետ կ'առաջարկէր, – ինչպէս պատշաճագոյն էր, – Թագաւորեցուցանել զեղբայր տարաժամ վախճանելոյն Պետրոսի՝ զԼեւոն Ե. ասոր ծագեցաւ երկպառակութիւն, որ չարագոյն հարուածն է ազգաց, մանաւանդ ի տկարութեան իւրեանց։ Խաւարաբորբ թատեր վրայ խորհրդապէս իմն վեր երեւեցաւ օգաւոր կին մը այրի, ու երբեմն Թագուհի. և ուզեց փորձել զյետին յարաբերութիւն տիրական հայութեան ընդ Վենետկոյ։ Այդ կինն՝ էր Մարիամ դշխոյ, ամուսնացեալն Կոստանդին Բի և դուստր Օշին Պայլի և Յովհաննայ՝ երբեմն դշխոյի Օշնի Թագաւորի, դստեր Փիլիպպոսի իշխանին Տարենտայ։ Փութաց սա դեպան ղրկել՝ առ հին դաշնակից և շահակից Հայոց, Հասարակապետութիւնն Վենետկոյ. բայց թէ զո՛ ղրկեց, ի՞նչ գրեց կամ խօսել տուաւ, յանուանէ ու ի վաւերական գրութեանց բան մի ձեռուընիս հասած չէ։ Սակայն դքսին կողմանէ տրուած պատասխանն, որ բարեբաղդաբար կու պահուի ի դիւանս ծերակուտին, 1368 հոկտեմբեր 11 թուականաւ, կու ծանուցանէ մեզ, թէ Հասարակապետութիւնն անմոռաց պահելով ըզ-

նախնի մտերմութիւնն և զհաճութիւն օգտի Հայոց տէրութեան, կարեկից կ'ըլլայ վտանգին, և ինչպէս յառաջագոյն՝ ասանկ ալ հիմայ ձեռքէն ամէն եկածը պիտի ընէ (quo commodo possumus)․ Թէ, արդէն դաշնակցած է դուքսն իր եղբօր՝ Գենուացոց դքսին հետ, որ նաւատորմ կազմեն պատրաստեն։ և եթէ Եգիպտոսի սուլտանն դրժէ խաղաղութեան դաշանց և իրենց պատուոյն, պիտի գինուորին ի վնաս նորա. և պատուէր ղրկած են առ տորմղապետն՝ Գենուացւոց հետ դաշնակցութիւնը պնդել, և սուլտանին հետ հաշտութեան պայմաններուն մէջ մտցընել նա և զՀայս: Եւ որովհետեւ դեսպանք Հայոց կ'ըսէին թէ Հռովմայ քահանայապետն խաչակրութիւն հրատարակեր է, պատասխանեցին, թէ կարելի չէր գործադրել ի ժամանակին, արեւմտեայց իրարու հետ ունեցած պատերազմաց պատճառաւ. իսկ երբ յաջողելու ըլլայ անցքն (passaggio) յարեւելս, իրենք ալ իբրեւ դաշնակիցք՝ պիտի ընեն զարժանն և զհաճոյն Աստուծոյ: Գենուայի դուքսն ալ գրած ըլլալով առ տոժն՝ հաշտութեան պայմաններու մէջ փակել և զՀայաստան, շնորհակալութիւն գրուի իրեն և ծանուցուի դեսպանաց թէ հաճոյ է և մեզ այս:

Ցիրաւի գրուած և կնքուած էին դաշինք

ի մէջ երկոցուն հասարակապետութեանց, որ
երբեմն իրարու հակառակորդ վիճողք էին
ի վերայ ծովու, ինչպէս յայտնի է՝ ի յեր-
կար գրուածոց որ կայ պահուին ի դիւանս
Վենետկոյ. ուր կան և պատճէնք Թղթոց
քահանայապետին առ Նոսա, առ Յովհաննէս
խնուանեալն Բրինձ Անտիոքայ, առ Ա-
պետս, և այլն. և անոնց յայտնի խորհուրդն՝
արշաւելու յԱղեքսանդրիա, ի 1370. բայց
այն գրութեանց մէջ Հայաստանի անուան
յիշատակութիւն չկայ, այլ միայն Կիպրոսի.
որով յայտնի կ'ըլլայ, թէ ըստ գրութեան
ծերակուտին՝ այն ամենայն սահմանուած
էր յառաջ քան զդիմել դեսպանաց Թագուհ-
ւոյս Հայոց՝ առ Թագուհին ծովու:

Նոյն ժամանակին և խաչակրաց պատ-
մութիւնք կ'իմացընեն թէ ինչպէս անօգուտ
եղան այն ամենայն պատրաստութիւնք, թեր-
ուղիղ յօժարութիւնք և խոստմունք, Փռան-
կաց և Անգղիոյ իրարու հետ ունեցած ան-
ողոք և ընդդիմամարտ հակառակութեանց
պատճառաւ, ինչպէս նաև այլ փոքրագոյն
պետութեանց յողդողդութեան և տկարու-
թեան. և որոց խիղճ եղաւ այն առթով ան-
օգնական ձգելնին Հայոց տէրութիւնը, և պատ-
ճառ անոր կորստեան, որ քրիստոնէութեան
մերձագոյն ամուր ապաւէն մ'էր ընդդէմ

այլադենից. առաքելական արիութեամբ չփութացին ի սպաս և յօգնականութիւն յետին թագուհւոյն Հայոց, որ տակաւին ոչ յուսահատ՝ երեք տարիէն ետքը (1371) կու ղրկէր զարքեպիսկոպոսն Տարօնի և զՄանուէլ ասպետ՝ հայ ազգաւ, բայց ծնած ի Գենուա և բնակութեամբն հաստատուած ի Նէապոլիս, յորդորելով իր մօրը Յովհաննա թագուհւոյն ազգականները, որ փութան յօգնութիւն տատանեալ տանն Հայոց, որ մերձ էր ի կործանումն և յաւեր: Վասն զի յետին թագաւորն Կոստանդին (1363–72) բռնաւոր մը համարուած էր և ոչ օրինաւոր թագաւոր, ուստի և բռնաւորի և կողոպտողի մահուամբ մեռաւ. և քանի որ ուրիշ ժառանգ երևցած չէր՝ նոյն Մարիամ դշխոյ միւսանգամ ներկայանալով, թագապահ կու դրուէր յողջախոհից. և Գրիգոր քահանայապետ կու գրէր (1372, յանուար 22) առ մայրենի ազգական նորա Փիլիպպոս իշխան Տարենտայ, որ պսակել տալով. զնա ընդ Ոթոնի դքսին Պրունզուիքայ՝ թագաւորեցընէ ի վերայ Հայոց, մինչ տակաւին կենդանի էր, ինչպէս թուի, Կոստանդին բռնաւորն, և որոյ բռնական մահուան կերպն քաջայայտ չէ: Բայց Լիւզինեան ցեղէն կար ժառանգն թագաւորութեան Հայոց. ի Վենետիկ մեռնող Պեմունդի

եղբայրն, որդին Ճիւանի և Թոռն Ջապլոնի և Ամաւրեայ, Լեւոն Ե, կամ Լեւոն վերջին՝ ի Թագաւորս Սիսուանայ և Ռուբինեանց. որ տասն տարի առաջ ետեւէ էր նոյն Թագին, և հիմայ՝ Հայոց պետութեան մահամերձ եզնա-ժամուն՝ անոնց հաւատարմաց փափաքանօք, և ի նոյն իսկ ի Մարիամայ դշխոյէ՝ հրաւիրուեցաւ ։

Սա ի սակաւատեւ ժամանակի իր Թագաւորութեանն՝ գիտցաւ գէթ արժանապէս ու փառօք պաշտպանել զյետին ապաստան և զգահ տէրութեանն՝ զՍիս, և սակաւաձեռն հաւատարմօք դիւցազնաբար կռուիլ ընդ բիւրաւորաց Եգիպտացւոց և Բերիացւոց. իմաստութեամբ անձնապահ ըլլալ յուրացողաց և ի մատնչաց. արիաբար կրել սով և վէրք. և վերջապէս խոհականութեամբ և վսեմութեամբ անձնատուր ըլլալ. Թագաւորական սրտով և բարձրագլուխ կրել զշղթայս, երթալ ի բանտ յԵգիպտոս, հաճոյանալ յաչս զոռոզ սուլդանին, կալ արձակօրէն ի դիպահօջ, և արեւմտեան Թագաւորաց մտադրութիւնը շարժել իր վրայ, գլխաւորաւն Քահանայապետիւ Ցետոյ Կաստիլիոյ Թագաւորին բարեխօսութեամբ՝ եօթնամեայ գերութենէն ազատեցաւ (1382). և համարձակ Թագաւորի անուամբ նաւարկելով, ողջունեց ի Հռոդոս զՊապել

քեռդուստր իւր, զհարսն Կիի Գէ, ուստի անցաւ ի Վենետիկ, իբրեւ յորինաւոր հրաժեշտ ազգի և թագաւորութեան Հայոց՝ յերկդարեան դաշնակցէն՝ ի հասարակապետութենէն Վենետկոյ: Որպիսի՞ օրինակաւ արդեօք տուաւ և սա Կիլիկեցւոց ժառանգին, յորոց այնչափ պարգեւագրեր ընդուներ էր, և մանաւանդ այնքան շահ և այնչափ ոսկի՝ ի փոխարէն արծաթոյն, զոր կու բռնադատուէր դնել ի փողանոցն արքունի. — զայս պէտք է ուսանիլ իր դիւաններէն ու դեռ չյայտնուած պատմագրաց յիշատակարաններէն:

Բայց ի մեկնել Լեւոնի երթալ առ քահանայապետն Հռովմայ և ապա առ թագաւորս Փռանկաց և Անգղիոյ, ոչ միայն մեծարանք և եղբայրաբար գահակցութիւն ընդունեցաւ անոնցմէ, այլ և գանձ՝ աւելի քան ի կարճատեւ թագաւորութեանն, որոյ ծանրագնի ոսկեղէն թագերը յաւուրս գերութեանն ստիպուեր էր յանձնել գերողին:

Ի՞նչ եղաւ նախայիշեալ թագուհին այն, մանաւանդ թէ երկու թագուհիք, որ Լեւոնի հետ գերեցան. մին՝ Լեւոնի կինն Մարգարիտ, ի Սուասոնեան տոհմէ, միւսն՝ վերը յիշուած Մարիամն: Առաջինն՝ էրկանը գերութեան ժամանակ վախճանեցաւ, Եգիպտոսի սուլտանաց մայրաքաղաքին մէջ ի Գահիրէ. և

այս տողերը գրած ատեններս, հինգ հարիւր և աւելի տարիներէ վերջը՝ փնտռուեցան իր ոսկերքն ի յատակս տաճարին ուր կու կարծուէր թէ թաղուած ըլլայ, և չգտնուեցան։ Իսկ Նախորդ թագուհին, Կոռիկոսեան պարոնայց արիւն՝ խառնեալ ընդ իշխանացն Տարենտեայ, Վենետկոյ յետին թղթակիցն, թէպէտ և առաջնոյն հետ գնաց ի գերութիւն, բայց յետոյ ազատութիւն տրուեցաւ իրեն՝ ուզած տեղն երթալու։ Սակայն մեծահոգին այն կին՝ որ գիտցաւ պատուով պահպանել զթագն ու հրաժարել՝ յօգուտ մերձաւոր ժառանգին, իր երկրին ու ժամանակին պարոնայց շատէն աւելի՝ հայրենասիրի պարտքը հատուցանելով, այնուհետեւ չուզեց նայիլ՝ ոչ թէ ի ճաճանչս թագի, այլ և ոչ յորպիսի և է չուք և փառս աշխարհի. և թէպէտ կըրնար Լեւոնի նման մեծամեծար պատիւ և ընդունելութիւն գտնել ի մայրենիս իւր՝ ի Տարենտոն, և ըստ փափուկ սեռին՝ առաւել եւս խանդաղատանօք և գգուանօք մեծարիլ. այլ սիրեց Կոփրետեան թագը, մանաւանդ թէ զՔրիստոսին. հետեւելով վեհագոյնի թագաւորաց թագաւորի, երթալ յԵրուսաղէմ. ուր հաւատաւորի սքեմաւ սքօղելով զանձն յաշխարհէ և զաշխարհ յինքենէ, քիչ ատենէն փոխադրեցաւ յանմահ թագաւորութիւնն (1377), մինչ Լեւոն՝ Հայոց

տէրութեան թագը միւսանգամ ձեռք ձգելու յուսով, — որոյ փոխարէն Մատրիտի թագաւոր կ'անուանէր, — ատլանդական ծովու վրայ կու յածէր ստէպ, Անգղիոյ և Փռանկաց թագաւորները իրարու հետ հաշտեցընելու նպատակաւ, յորում յաջողելովը կու կարծէր փափաքին հասնիլ. և գուցէ նոյն յուսով հանգեաւ ի գերեզմանս թագաւորաց Փռանկաց, ի Ս. Դիոնեսիոս Բարիզու (1393, նոյեմբ. 29)։

Այսպիսի եղաւ կատարած դիւանագիտական և վաճառականական յարաբերութեանց Հայոց ընդ Վենետաց, յառաջնում յեղանակի ծանօթութեան իւրեանց, յերեքտասան և չորեքտասան դարս բազմադիմակ ժամանակի միջին դարուց։

## Ը.

### ՎԵՐՋԻՆ ՅԻՇԱՏԱԿՔ ՀԱՅ — ՎԵՆԵՏԱՅ ՅԱՌԱՋԻՆ ՅԵՂԱՆԱԿԻՆ

Հայոց թագաւորութեան տեւելուն մինչեւ վերջի տարիները՝ դեռ եւս կու գտնուին Ծերակուտի վճիռք՝ նաւուց երթի կամ չերթալուն ի Հայս. ինչպէս յամս 1363, նոյեմբ. 22.-1373, յուլիս 1.-1374, մայիս 25 և դեկտ. 8. որ է նախընթաց տարի բարձման թագաւորութեանն և գերութեան Լեւոնի Ե, և յորում կու դադարին երթեւեկք։ Այսով յայտնի կ՚ըլլայ, թէ Վենետաց Միջերկրական, ծովային վաճառականութիւնն այլ խզուեր, կուրացեր և դադրած էր այնուհետեւ. թէպէտ կարելի է կարծել թէ վաճառականք տակաւին շարունակած ըլլան ի խնդիր շահաբերնիւթոց. զոր երկու հարիւր տարիներէ ի վեր կու հանէին ի բարեբեր դաշտաց Կիլիկիոյ. ուր՝ երբեմն թագաւորանիստ և յետոյ երկրին գլխաւոր քաղաքին Սսոյ Եգիպտոսի կուսակալն, ի 1415 ամի, կու հրաւիրէր զՎենետս

գալ յառեւտուր ։ Յայտնի է ի պատմական աւանդից, որ կէս դար ետքը (1473—4) Վենետք ետեւէ եղան տիրել Կիլիկիոյ քանի մի ծովափանց՝ դաշնակցութեամբ ընդ Գարամանս և ընդ Պարսից Ուզուն Հասանայ, ընդդէմ Նոր և հզօրացեալ օսմանեան տէրութեան. բայց թէ ի ժամանակին ունեցա՞ն թէ ոչ գործակցութիւն ընդ Հայոց, մեզի նպատակ դրած յարաբերութեանց յեղանակէն դուրս կու մնայ պատմութեան այս մասն ։ Բայց այդ արգելք մը չէր Վենետաց, մանաւանդ թէ պատկառելի ու նուիրական հրապոյր մը պէտք էր ըլլալ, յամայացեալն Սիսուան փնտռել գտնել, եթէ ոչ այն հրապարակներն ուր սփռեցին և ժողվեցին մթերս ոսկւոյ և արծաթոյ, այլ գէթ անոնց խորքը՝ ուր կու հանգչին ոսկերք՝ ո՛ գիտէ քանի հարիւրաւոր իրենց հայրենակցաց. և բերելով թերեւս քիչ մը գհող՝ այնքան բազմակոխ գետնոյն ի հարց իւրեանց, յերեւան հանել Ատանայի Սուրբ Մարկոս եկեղեցւոյն և ժողովատեղւոյն (loggia) աւերակաց տակ՝ արձանագրեալ քարեր, կրելով վրանին այնպիսի ընտանեաց անուններ՝ որ հիմայ սպառեր անցեր են. և թէ ցայսօր կու լսուին դեռ ի Վենետկեան հրապարակի, ոչ անկորուստ ի նախկին տեղւոյն, այլ այն ատենուան ճոխու-

թենէն կապտեալ. վասն զի քաղդին սայրասուր թեւերն գծեցին և Ադրիոյ պատկառելի դշխոյին դէմքը ։ Թողլով զհետս Վենետաց ի Հայս՝ յայնմ յեղանակի, դառնանք ի Վենետիկ յուզել զհետս Հայոց յայն վերջին միջոց ժամանակի ։

Արդէն յաճախ յիշատակեցինք Հայոց դեսպանաց երթեւեկը յիշխանանիստս այս շահաստան, բայց ոչ զհաստատուն բնակութիւն Հայոց այս տեղ կամ զգործ ։ Սակայն և լռութիւնն բաւական չէ կարծեցընել՝ թէ Հայք եղած կամ թողած չըլլան իրենց յիշատակներն ի Վենետիկ, մինչ նոյն ԺԳ և ԺԴ դարուց միջոցին՝ աւելի քան յերեսուն քաղաքս Իտալիոյ թողեր են եկեղեցեաց կամ ուրիշ իրաց հետք, ուր նուազ քան ի Վենետիկ էր իրենց շահն և առընչութիւնն. յայսմ մասին՝ Վենետիկ իրենց համար առաջին քաղաքն էր յԻտալիա, ինչպէս Հռովմ՝ ուրիշ տեսակէտով. և եթէ այդ պատճառաւ կանխած ալ ըլլայ Հայոց երթեւեկն ի Հռովմ, հաւանական է որ հօն երթալու առեննին՝ յաճախ Վենետիկէն կ՚ըլլար իրենց անցքն, նա և յառաջ քան զսկզբնաւորութիւն երեքտասաներորդ դարու և զՄեծն Լեւոն. և թէպէտ դեռ յայտնուած չըլլան՝ բայց անտարակուսելի է որ ասոր տասնևինն տարուան

թագաւորութեան ատենն և անկէ առաջ և ետքը՝ եղած են երթեւեկք դեսպանաց, եւս առաւել վաճառականաց ու նա և սոսկական մարդկան, որ և իցէ պատճառաւ ։

Ի սկզբան մեր այս գրութեան՝ մէջ բերինք Հասարակապետութեան պաշտօնէից բերնէն լսուած աւանդութիւն մի, թէ երկոտասաներորդ դարէն ի վեր եղած էր Հայոց մուտքն և այցելութիւն ի Վենետիկ, և թէ յաջորդ երեքտասաներորդին առաջին կիսուն, այն է յաւուրս Լեւոնի Ա. և Հեթմոյ Ա., անոնց ի քաղաքս յաճախելուն պատճառաւ՝ Մարկոս Ծիանի կտակաւ թողուց իրենց՝ Սրբոյն Ցուլիանոսի կոչուած թաղին մէջ՝ ունեցած տուներէն մէկը. և որ յայնմ հետէ՝ վեց հարիւր յիսուն տարիներէ ի վեր՝ Հայոց տուն (Casa degli Armeni) կու կոչուի, ինչպէս նա և փողոցն իրենց անուամբ՝ Calle degli Armeni, և մերձաւոր կամուրջն՝ հիմայ Dei Ferali ըսուածն՝ գրոց մէջ Կամուրջ Հայոց (Pons Armeniorum seu Feralium) կոչուած կու գըտնուի ։ Վենետաց վաճառականութեան վրայ խօսող գրեթէ ամենայն մատենագիրք, և մանաւանդ հմտագոյնքն՝ կու յիշեն Հայոց գալըստեան սկզբնաւորութիւնը և Ծիանիի կտակը. մենք անոնցմէ մէկուն միայն՝ Սանուտի՝ խօսքը առաջ բերենք. «Վենետկոյ վաճառականու-

*թեան մէջ համբաւաւոր է, ինչպէս նաև անցեալ դարուց մէջ Հայոց ազգն, որ արժանի համարուեցաւ ընդունելութեան, բնակութեան և պաշտպանութեան ի Վենետիկ: Ամենահին են իրենց յարաբերութիւնք ընդ Վենետկեցիս, որով և իրենց բնակութեան վայրն ի մայրաքաղաքին:* 1253 *թուականէն ի վեր՝ և հետեւեալ տարւոյն մէջ՝ հաստատուած կտակաւ մը Մ. Ծիանիի՝ եղբօրորդւոյ հանգուցեալ Սեբաստիան դքսին, որ Վենետ ժամանակագրաց վկայութեան համեմատ՝ մեծահարուստ ճոխութեամբ համբաւեալ ընտանիք մ՚էր, և գութ ունենալով այդ ազգին վրայ, ու վաճառականութեան պատճառաւ երկար ատեն բնակած ըլլալով ի Հայաստան, Վենետկոյ Ներքին գործակալաց կտակեց տուն մի»*[1]: *Հին ժամանակագիրն*

1. Conta in aspetto di commercio veneziano e contò ne' decorsi secoli, la *nazione degli Armeni,* che meritò accoglimento, abitazione e protezione in Venezia. *Antichissima* è la corrispondenza loro con li Veneziani, e quindi il loro alloggio nella Capitale. Sin dall' anno 1253 per testamento riconfermato nell'anno susseguente, M. Ziani nipote del fu Doge Sebastiano, famiglia che per li Veneti cronisti si afferma splendidissima in ricchezza, reso *ben affetto* a quella Nazione, *dalla lunga sua dimora,* per oggetto

Մուա՛ցցոյ՝ որոյ խօսքն ի մէջ բերէ Ֆիլիա՛զի, չփոթելով թերեւս զՄարկոս ընդ հօրեղբօրն, և կ՚ըսէ. «Սեբաստիանոս Ծիա՛նի որ յետոյ դուքս ընտրեցաւ. շատ ատեն բնակեցաւ ի Հայաստան, և յետոյ թողուց տուն մի ի Ս. Ցուլիանոս թաղի, ի Վենետիկ եկող Հայոց համար. և զայս ըրաւ՝ անոնց կողմերում գտած լաւ ընկերութեանն համար»[1]։

Մեր ազգայինք որ յայլ և այլ դարս պէտք ունեցան խնդրոց ի Ծերակուտէն, կու յիշատակեն միշտ իրենց ազգակցաց ի նպաստ եղած այս շնորհքը. և եթէ չեն օխալիր, կու ծանուցանեն կանխելով զթուական թողլոյ Մարկոսի զտունն, իբրեւ յառաջագոյն գըրուած կտակաւ մի յամի 1235, ի մայիսի 25. յորում կու նշանակուէր յիշեալ թաղին մէջ տալ տուն մի ի բնակութիւն Հայոց ոչ ճոխից, իբրու հիւրանոց (ospizio). որով տուչութեան թուականն կու կանխէ քան զամենայն ծանօթ բնակութիւնս Հայոց յայլ

mercantile nell' Armenia... legò alla Procuratia veneta di Citra, una casa.

1. Sebastiano Ziani che fù poi Doge, *dimorò assai* in Armenia, e lasciò poi una casa in contrada di S. Giuliano per gli Armeni che venissero a Venezia. E ciò fece per *la buona compagnia* avuta in quelle parti.

քաղաքս Իտալիոյ, նաև ի Հռոմ, ուր՝ ինձ ծանօթ Թուական հաստատուն բնակութեան կամ եկեղեցւոյ՝ (որ և նշանակ է բնակութեան) է 1239 տարին. Թէպէտ հաւանաբար այլ աւելի առաջուց պէտք է ըլլայ։ Իսկ ի վերջին և ի ծանօթագոյն կտակին՝ որ ի 5 յունիսի, 1253, այսպէս գրուած կու գտնենք. «Տունն՝ ուր կենան Հայք, (ըսել է թէ արդէն բնակած էին այն տեղ), կ'ուզենք որ մշտնջենաւորաբար իրենց բընակատեղի ըլլայ. և ինչ որ հարկաւոր համարուի տեղւոյն նորոգութեան, ի մեր ստացուածոց ըլլայ այդ ծախքն... Մեր այս կամքին յանձնակատար կու սահմանենք՝ կենդանի մնացող ժառանգաց հետ, դատաւոր գործակալս եկեղեցւոյ Սրբոյն Մարկոսի»[1]։

Մարկոս Տիանի առաջնորդ և կամ մանաւանդ հետեւող եղաւ Հայոց ասպնջական բարերարութեան գործոյն. վասն զի նոյն պատմիչք որ կու յիշեն զայդ, կու ծանու-

1. Domun in qua *manent* Armenii, volumus, ut in perpetuo ipsi in ea stare debeant: et quandocumque fuerit opportunum eamdem conciare, de nostris benis debeat conciare... Constituimus nostros Commissarios una cum reliquis superviventibus Dominos Procuratores Operis Ecclesiae S. Marci.

ցանեն միանգամայն թէ ծերունի և հարուստ հայազգի մի՝ բնակեալ և վախճանեալ ի Վենետիկ, այս կարգաւորութիւնն ըրած էր, ըստ Սանտեայ, Մ. Ծիանիէ քիչ յառաջ կամ ետքը (o poco prima o dappoi di M. Ziani)։ Բայց հնագոյն գրիչ մի կ՚ըսէ. «Ջերմեռանդն ու ծերունի հայ մի իր կտակաւ գումար մի դրամոց թողած էր, յառաջագոյն իսկ քան զՄ. Ծիանի, որպէս զի տուն մի գնուի ու եկեղեցեակ մի շինուի ի փողոցին Լապտերաց... ի դիւրութիւն՝ և նպաստ ազգակցացն, որ Պարսկաստանի հեռաւոր կողմերէն կու գան»[1]։ Այս խօսքերէն կու գուշակուի, թէ հայ ծերունին չէր ի Կիլիկիոյ, այլ ի Մեծ Հայոց, որ ի ժամանակին՝ Սելջուքեան Թուրքաց իշխանութեան կու հպատակէր, և քիչ յետոյ Մողոլ Թաթարաց։ Աւելորդ կու համարիմ քննել թէ ինչպէս տոցա երկոցուն, ծերոյս և Մ. Ծիանեայ ի միում վայրի նշանակեալքն Calle delle Lan-

1. Un *vecchio Armeno* lasciasse con suo testamento certa somma di denari, *prima ancora* di M. Ziani, acciocchè fosse comperata *una Casa*, e fabbricata *una Chiesetta* nella calle delle Lanterne... per comodo ed utilità de' suoi nazionali provenienti da quelle lontane parti della Persia.

terne կամ Ferali, կրնան պատշաճիլ, և իրենց տուրքն կու միանան. բայց հաւանական կ'երեւնայ որ ծերունին դրամոյ գումար մի թողած էր, իսկ Ծիանի ձրի բնակութեան տուն. բնակողաց կամ աղքատաց ծախքն կու հայթհայթուէին ի տրոց ծերունւոյն։ Փափաքելի է գիւտ այս վերջնոյս կտակին, որ մեզմէ չորս դար առաջ՝ ի 1496՝ ծանօթ էր Հայոց, և ցուցեր էին ուր որ հարկ և պատշաճ էր, ինչպէս կ'ակնարկեն նոյն գրչին հետեւեալ խօսքերն. «Ծերունի Հայոյն ըրած կտակին զօրութեամբ, յաւուրս առաջնոյ Ծիանի տոժի, (ուրեմն անդստին ի 1171–9 թուականէ, որ է ժամանակամիջոց իշխանութեան Սեբաստիան Ծիանիի), նոյն Գործակալք ի հանգուցելոյն թողուած դրամովք գնեցին տուն մի ու եկեղեցեակ մի ի փողոցն Լապտերաց, ի դիւրութիւն Հայոց՝ որ գային բնակելու ի Վենետիկ»[1]։

1. Il testamento fatto dal vecchio Armeno al tempo *del primo Doge Ziani*, in forza di cui essi Procuratori aveano co' denari del defonto, comperata una Casa e fabbricata una Chiesetta nella calle delle Lanterne a comodo degli Armeni che venissero ad abitare in Venezia. Կույինէ ղայս և Կամմէշշիոնէ, (Բ, 275). Mentre il Zen (Caterino) era nella sua ambasciata (յամի 1473) edificossi una piccola Chiesa loro.

Շատ անգամ խնդիր եղած է յատենի ծերակուտին Վենետկոյ՝ Հայոց եկեղեցւոյն շինութեան սկըզբնաւորութեան համար, և չեն կրցած ստոյգ թուականը գտնել. զի յայտնի վկայութիւն մը չկայ առ այն, ինչպէս հիւրանոցին՝ զոր տեսանք. բայց տունէն աւելի կարեւոր էր մեզ գիւտ եկեղեցւոյն, վասն զի կեդրոն կամ միութեան կէտ մ՚է այն ազգին՝ որոյ համար կու կանգնուի. և ի միւս կողմանէ՝ հաւաստեաւ գիտեմք, որ Հայք չէին հանդուրժեր, թէպէտ և սակաւաւորք թուով, տեղ մը բնակութիւն հաստատել առանց ազգային եկեղեցւոյ. և այս պատճառաւ իրենց համար մասնաւոր եկեղեցիք կառուցած են մինչեւ ի Սիկիլիա կղզւոյ. և որովհետեւ ի Վենետիկ յաճախագոյն էին թուով, հաւանական է թէ վաղագոյն ձեռք զարկած ըլլան եկեղեցւոյ մը կամ գէթ մատրան հաստատութեան։ Կու տեսնեմք դարձեալ, որ ի Հռովմ, ի Փլորենտիա, յԱնգոնա, ի Ռիմինի, և այլն, երեքտասաներորդ դարու կիսուն, կամ անկէ այլ յառաջ, և ի սկիզբն հետեւեալ չորեքտասաներորդին ի Պոլոնիա, Ֆերրարա, Ճենովա, Պատուա, ոչ միայն եկեղեցի՝ այլ և վանք կ՚անուանին հոգետունք Հայոց, որ կու նշանակէ զբազմութիւն կամ զմիաբան բնակութիւն եկեղեցականաց, կամ

գէթ եղբայրաբար միաբանակեցից. որով հարկ կ՚ըլլայ ենթադրել, թէ առաւելագոյն կերպով նոյնպէս եղած ըլլայ և ի Վենետիկ։

Ասով հանդերձ՝ զարմանալի է, որ մինչ այդ քաղաքաց պատմագիրք և յիշատակագիրք ճիշդ՝ կամ մերձաւորապէս կու յիշեն Հայոց եկեղեցեաց շինութեան, կամ անոնց Բարսեղեան միանձանց գալըստեան ժամանակը, Վենետկոյ տարեգիրք այդպիսի յիշատակութիւն մը չեն ըներ, բաց ի յառաջ մեզմէ յիշուած Ծիանիի բարերարական կտակէն, որ չէ նման այլոց, այլ աւելի հիւրանոց կամ բնակարան մի։ Խօսքերնիս չերկարելու համար՝ փութանք ըսել, թէ հարկ էր որ ի Ս. Յուլիան թաղի գտնուած Հայոց տանը մէջ՝ ըլլար գոնէ ձեւացեալ մատուռ մի, ինչպէս շատեր կարծեն, և կամ ուրիշ տեղ Հայոց վանատուն մի կար։ Եթէ նոյն թաղին մէջ կայր այդպիսի մատուռն, ինչպէս ինձ ալ հաւանական թուի, այլ հաւանականագոյն եւս՝ թէ փոքր ու անշուք շինութիւն մ'էր, որ երկիցս և երիցս ընդարձակուելով (ի 1494, 1510–20, 1689), տակաւին և այժմ փոքրիկ եկեղեցեակ մ'է, թէպէտ և չքնաղ գոհար մի. ուստի, ինչպէս յայլ քաղաքս Իտալիոյ կու գտնենք, պէտք է երգմնեցու-

ցանելով ամէն դիւան և յիշատակարան՝ փնտռել և ի Վենետիկ մեծագոյն եկեղեցի մի և Հայ միաբանք։ Մի կամ երկու նշոյլք միայն կու ծագեն ինձ՝ առհաւատչեայ այլոց. որոց փափաքելի գիւտին յաջողութիւնն մնայ քան զիս բաղդաւոր և քննասէր հետամտից։ Մի ի նշուլից է՝ քանի մը խօսք Ծաննինի տի Ագալա անունով մէկու մը կտակին, ի 1348, յունիս 26, Ռիալդոյի Ս. Յովհաննէս եկեղեցւոյ Օնեիպէն Թաղերիցու գործոց (atti) մէջ, որ ուրիշ բարերարական տուրքերէ զատ կու պատուիրէ տալ Հայ Եղբարց Արքայն Յովհաննու Մկրտչի՝ հինգ տուկատ, իրենց ապրուստի համար[1]։ Կային ուրեմն Հայ Եղբարք միաբանակեացք ի Վենետիկ ԺԴ դարու կիսէն ալ յառաջ. բայց ո՞ւր էր այդ Ս. Յովհաննու Մկրտչի անուան ու պաշտաման նուիրուած եկեղեցին. արդեօք իրենց համար յատո՞ւկ եկեղեցի մ՚ էր, ինչպէս կարծեմ, (որովհետեւ շատ սիրող են Հայք այն Սրբոյն), թէ լատին եկեղեցեաց մէկն, յորում թաղի գտնուէր և հոգետունն և եկեղեցի Հայոց. զայս ամենայն պիտի ցուցընեն անշուշտ ապագայ դիւանական գիւտք և յայտնութիւնք։

1. Ai Frati Armeni di S. Giov. Battista, Dti cinque per so viver.

— Ս. Յուլիանոսի թաղին մէջ եղող Հայոց եկեղեցւոյն վրայ, որ դէթ յառաջ քան ըզկէս ԺԵ դարու, յամի 1434, կու յիշուի պաշտեալ և պատարագօք, և միշտ Ս. Խաչ կու կոչի և պաշտի մինչեւ ցայժմ, քիչ ետքը նորէն պիտի դառնանք խօսելու։

Յիշենք այս տեղ թէ յեկեղեցւոյ անանջատ է և հաւատացելոց յետին հանգստարանն. չենք ըսեր շինուածքի կցորդութեամբ, թէպէտ և յաճախ այնպէս ալ է, — այլ սեպհական հոգեւոր առընչութեամբ. վասն զի առանձին ազգային եկեղեցի մի ունենալ փափաքողք՝ առանձին գերեզմանատուն ալ կ՚ուզեն։ Բազումք ի Հայոց՝ Սուրբ Խաչ եկեղեցւոյ վերջին շինութենէն ետքը՝ հօն ալ թաղուած են, և կու վկայեն իրենց մահարձանք. շատք ալ ԺԵ-ԺԸ դարուց միջոց թաղուած են յայլեւայլ եկեղեցիս քաղաքին. ինչպէս յայտնի է թաղպետական եկեղեցեաց մահաբանութեանց գրքերէն, տեղ տեղ ալ յարձանագրութեանց՝ որ դրուած են իրենց գերեզմանաց վրայ։ Բայց աւելի առաջին դարուց մէջ, երբ Հայք աւելի պնդութեամբ կու պահէին իրենց ազգային ծէսերը, հարկ էր որ առանձին գերեզմանատուն մ՚ալ ունենային. և էր ի Սուրբ Գէորգ կղզւոյն, քաղաքին մօտ։ Մեծ վիճի մը առթով՝ զոր ունեցեր

են Հայք՝ Սրբոյն Գէորգեայ Բենեդիկտեան մենաստանին կրօնաւորաց հետ, յամի իբր 1675, կու պնդէին մերքն՝ թէ չորս հարիւր տարուընէ ի վեր շնորհուած էր իրենց հօն ազգային հանգստարան մը ունենալու իրաւունք. և անժխտելի գրաւոր յիշատակ մի, որոյ վրայ քիչ ետքը պիտի խօսինք, կու վկայէ 1343 թուականին՝ որ ի հնուց հօն էր Հայոց գերեզմանատունը ։

Ո՞ւր են ապա քարինքն և արձանք՝ որ իրապէս վկայեն այս կարծեաց ստուգութեան ։ — Հարկ է խնդրել զանոնք կամ ի հիմունս գեղեցիկ Զանգակատան Ս. Գէորգայ, զորով կու շրջապատէին գերեզմանքն ու բակն ու ջրհորն՝ որ Հայոց անուամբ կու կոչուէին, և որ անցեալ (ԺԸ) դարուն կործանելով, ջարդեց խորտակեց քարինքը, ու նոր զանգակատան հիմնարկութեան ծառայեցուց, միայն քանի մը քարինք զերծան, ոչ շատ հինք, այլ ԺԶ–ԺԸ դարուց, որոց վրայի արձանագրերը ընդօրինակեցին Հարք Ուխտիս. երբ սովոր էին Հայք՝ Վենետկոյ զանազան եկեղեցեաց մէջ թաղուիլ. և այն սակաւաթիւ մնացած մահարձանք եւս՝ առաջնոց բաղդը կամ կորուստը ժառանգեցին, Սրբոյն Գէորգայ եկեղեցւոյն սալայատակին նորոգմանը ատեն ։ Ասանկով Հայոց կենդանու-

թեան կամ մեռելութեան հետքն ալ չմնաց ի կղզւոյն, բաց ի վերը յիշատակուած քանի մի արձանագրութիւններէն ։ Մաղթելով վայրիկ մի հանգիստ՝ հանգուցելոցն ի վաղուց, դառնանք միւսանգամ՝ առ կենդանիս ։

*
* *

Վենետիկ եկող յանուանէ ծանօթ Հայոց մէջ, բաց ի յոյժ հնագունից՝ որոց վրայ խօսեցանք ի սկիզբն այս մեր գրուածոյս, առաջին կու յիշուի Մանուէլ դեսպան Սմբատայ Թագաւորի ի վերջ կոյս երեքտասաներորդ դարու (1297–8), որ բաց յայլոց իրաց եկեր էր. և ի խնդիր դիպակաց, ինչպէս յառաջագոյն ալ ըսինք ։ Իրմէ յառաջ, ինչպէս ետքն ալ եկողաց շատերուն անուանք չեն յիշատակուիր. և զորս գանց կ'ընենք մէջ բերել, ինչպէս ի դիմաց դքսին անոնց շնորհուած պարգեւներն այլ զոր դեսպանաց ձեռքով կու ղրկէին առ Թագաւորս Հայոց ։

Ի սկիզբն չորեքտասաներորդ դարու (1302, սեպտեմբեր. 23) թոյլ կու տայ ծերակոյտն՝ վենետկեան նաւերով քանի մի վաճառականաց՝ գալ այսր. ատոնց մէջ կու յիշուին Լեւոն, Սիմոն և Գէորգ հայ ։— 1331 թուականին կու յիշուի Հեթում անունով յանցաւոր

մի ի Վենետիկ, որոյ շնորհուեցաւ ազատութիւն ի դատէ. այլ թէ ինչ յանցանքի համար, պարտաւորուած էր, յայտնի չէ։— Նոյն միջոցներուն տեսանք, ինչպէս ի վեր անդր, զԱստգ Գօղլամօղլի թարգման և կարաւանապետ մի ի Վենետիկ։ Անկէ ետքն է թագաւորազանց և թագաւորականաց ոմանց գալուստն ի Վենետիկ. ինչպէս Լիւզինեան Պեմոնդի, որ և մեռած (1364) կ՚ըսուի հօս. — քսան տարի անցնելէն ետքը՝ իր եղբօրն՝ Լեւոնի՝ թագէն զրկուած և ի խնդիր թագի՝ ստուերակերպ անցքն ընդ Վենետիկ (1383)։

Այս վերջին Լեւոնի Վենետիկ եկած տարին՝ հոն կու բնակէր Եղբայր Օգոստինոս ոմն Երզիրումցի հայ դոմինիկեան կրօնաւոր, յառաջն Աւետիք կոչուած. ուր և կ՚ընդօրինակէր զՆախադրութիւնս հայերէն Ս. Գրոց, աւելցընելով յիւրմէ պէսպէս կրօնական բանս արձակ և ոտանաւոր, և որոյ գրչագիրն ի ձեռուընիս է։ Աս գրուածքին մէջ նշանակութեան արժանաւոր կէտ մի և կարեւոր մեր առաջարկութեան այն է, որ կ՚ըսէ թէ գրած կամ աւարտած է զայն ի 29 փետր. նահանջ ամի ի Վընէժոյ եկեղեցէն։ Ո՞ր եկեղեցի է՝ զոր կ՚ուզէ ակնարկել գրիչն. եթէ զմի ի լատին եկեղեցեաց, առանց տարակու-

ռելու՝ Նուիրական տաճար Սրբոյն Մարկոսին է. սակայն Հայոց մէջ այնքան հռչակուած էր անոր անունն (San Marco), որ եթէ գրիչն զայն ակնարկել ուզէր՝ յանուանէ այլ կու գրէր. ուստի պատշաճ թուի կարծել՝ թէ կամ ի վեր անդր՝ (1348ին) յիշուած եկեղեցին կ'իմանար, ուր Հայ Եղբարք կու բնակէին, — մանաւանդ զի ինքն ալ կրօնաւոր էր և դոմինիկեան, և կիսով դարու յառաջ հաստատուած էր Սրբոյն Դոմինիկոսի կանոններով Հայոց Ունիթորաց միաբանութիւն մի, և տարադէպ չէ կարծել թէ անոնցմէ ոմանք կանխած եկած ըլլան հոս և ի քաղաքս, ինչպէս այլք ալ արդէն անցել էին ի Կաֆա. և կամ պէտք է համարել զեկեղեցի Ս. Խաչի, եթէ այս անուամբ ալ կոչուած և թէ ոչ, այն որ մերձ է Հօգետան և փողոցի Հայոց, ի Թաղերիցութեան Ս. Յուլիանոսի, առ որ միւսանգամ դառնանք և կնքենք խօսքերնիս:

*
* *

Սրբոյն Յովհաննու Հայ Եղբարց յիշատակութենէն քանի մի տարի յառաջ (1344, հոկտ. 2) Ս. Յուլիանոս եկեղեցւոյ Յակոբ Մարքէզինի քահանայի ձեռքով գրուած կտակ

մի կայ Հայ տան (Ca' Armena) մէջ բնակող կնոջ մի, Armina կոչուած, և Մարիամ անունով. և որ ինքզինքը կու կոչէ ի կտակին Massaria domus Armenorum, որ ոչ Թուի ինձ սոսկ աղախին, որպիսի նշանակութիւն ունի արդի գաւառական լեզուի մէջ այդ massera բառն, այլ իբրև տանտեսուհի (massaja կամ aja) տանն Հայոց. և այս առաջին անգամն է, գէթ ինձ ծանօթ յիշատակագրաց մէջ, Հայոց տան յիշատակութիւնն Ծիանիի կտակէն ետքը: Վանզի հայ ազգայնոց դեռ առաջին և միակ հին կտակն է՝ զոր յաջողեր ենք գտնել ի դիւանս Նոտարաց. բայց բաւական նշան մ՚է թէ անկէ յառաջ ու ետքն այլ գրուած պէտք էին ըլլալ այդպիսի վաւերականք, և որոց գիւտն փափաքելի է. զի թէպէտ կտակք են և մահու յիշատակաւ առթեալ, այլ կրնան ընծայել մեզ շատ կարևոր և անտխուր տեղեկութիւն. և այս՝ որոյ խօսքը կ՚ընենք, ըստ բազում գլխոց պատուական է և հմտացուցիչ: Կտակողն Մարիամ՝ ազգէն զատ չի յիշեր ոչ զծնողս և ոչ զազգականս. և ըրած մանրմունր մէկուն կամ մէկալին թողած դրամք կու գումարուին հարիւր տուկատ և երկու ֆիորին, անշուշտ ոսկի դրամով, որով կրնայ ենթադրուիլ՝ թէ հասարակ աղախնէ մի բարձր վիճակ ունէր, և աւե-

ըլի բարեկեցիկ։ Կու գրուի եղեր ի դարման տեսակ տեսակ հաւուց, և այն միջոցով կու հայթհայթէր անշուշտ իրեն պարէնը և կե֊նաց դիւրութիւն։ Իր կտակին առթիւ թո֊ղած կարեւոր գիտելիքն՝ Հայոց տան մէջ և թերեւս անկէ դուրս բնակողաց ութ կամ տասն ազգայնոց անուանք են. այրք, կանայք և Եղբարք և յորոց իրեն կտակակատար կու սահմանէ, և են. Եղբայր Միքայել Հայ.— Տիկին Բարթողիմէ հայազգի (Domina Bar֊tholomia Armina), և որոյ ֆլորին մի յի֊շատակ կու թողու. իսկ առաջնոյն՝ երկու ֆլորին և սեաւ պատմուճան մի.— Յակոբ կտա֊կակատարին՝ չորս տուկատ և արժէն իր քով եղած գրաւականը.— Նոտարին՝ ֆլորին մի։ Կու յիշէ ուրիշ հայ Եղբարք, Գուլիելմ (Viel֊mo) և Եփնէլ, չի նշանակելով անոնց բնա֊կութիւնն ի տան Հայոց, և կու թողու ա֊ռաջնոյն չորս ֆլ., իսկ միւսոյն երկու։ Ի կա֊նանց՝ բաց ի Բարթուղիմէէ, զոր յիշեցինք, կ'անուանէ զՋողել, որ Հայոց Միաբանեայց մէջ յաճախեալ անուն մ'էր ի ժամանակին, մանաւանդ առ ազնուականս. և բնակութիւն սորա էր ի Հայ տան. որուն կու կտակէ իր կրկնոցը և սպիտակ պատմուճանը (mantello, tunica alba) և տուկատ մի դրամ։ Նոյն֊պէս ի Հայտան բնակող Գուլէ կնոջ մի կու

Թողու իր զգեստները (i suoi panni) և տասնուվեց փոքր դրամ (soldi)։ Յիշենք անցողաբար, որ այս ատեններու կտակաց մէջ յաճախ կու տեսնուի բառդ Գուլֆ, և կարծեմ թէ սուրբ-Լ–կանայ կու նշանակէ ։ Ֆրանչիսկա (Francisca) հայ կնոջ մ'ալ կու թողու ֆլորին մի. սա չէր ի բնակչաց Հայոտան, այլ ի Ս. Վլասա (Sancti Blasii), ոչ գիտեմ յաշխարհական տան թէ ի մենաստանի ։

Ամէն բանէ առաջ իբր բարի քրիստոնեայ՝ իր ընչից տասանորդը կու տայ (In primis omnium rectam dimitto decimam). և վերոյգրեալ քահանայից և Հայ Եղբարց Թողածէն զատ, կու կտակէ Ս. Յուլիանոս եկեղեցւոյ քահանային՝ երկու տուկատ վասն մատուցման պատարագաց, նոյնպէս Սրբոյն Մարկոսի քահանային երկու տուկատ. տուկատ մ'ալ կուսանաց Սրբոյն Զաքարիայ, որ Բիւզանդիոնի հայ կայսեր մի գանձով կառուցուած եկեղեցի է, ու վերջին դարուց մէջ դեռ եւս կային հօն և հայազգի կուսանք, և թերեւս կտակող Մարիամայ ժամանակն ալ։ Հայոց տանն այլ՝ ուր կու բնակէր, կու թողու թ ֆլորին, որպէս զի պէտք եղած նորոգութիւնն ընեն, որով կ'երեւնայ կարօտ ըլլալն, և անշուշտ Ծխանեայ տուրքն չէր բաւեր ծախքը գոցելու ։ Զի մոռնար Մարիամ և այլ

ազգային տուններն, եկեղեցիք և վանորայք որ յայլևայլ քաղաքս Իտալիոյ, բարեպաշտութեան հետ անշէջ պահելով նա և զոգին ազգային. և կու կտակէ Հայոց տանց որ ի Պոլոնիա, Բերուճիա, Սիենա և Գենուա՝ երկու երկու տուկատ կամ ֆլ., իսկ հոգետանն որ ի Ձիվիդավեգգիա (Urbe veteris) մէկ տուկատ :

Իրմէ բարերարելոց մէջ նշանաւոր է Աէր-եղխոկոան Հայոց, ճոխամասն կտակաւ. ասոր կու թողու արդէն փոխ տուած երեսուն տուկատը, ու իրմէ առած գրաւականն, աւելցնելով ասոնց վրայ տասն ֆլորին ես : Ափսոս որ յանուանէ չի յիշատակեր զնա. բայց լոկ Հայոց արքեպիսկոպոս կոչումն ալ նշանական է. և իրաւամբ ենթադրել կու տայ, թէ Վենետկոյ՝ կամ յաւէտ Իտալիոյ Հայք՝ եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս մի ունէին, և որոյ աթոռն էր այն քաղաքաց մէկուն մէջ՝ յորս Հայոց հոգետունք կամ վանորայք կու գտնուէին : Ուրիշ թէ ազգային և թէ օտար յիշատակարաններէ գիտեմք, թէ այն ատեններն Թովմաս անուանով հայ եպիսկոպոս մի կայր, որ Եղխոկոս Իդուլխոյ կու գրէ և կու կոչէ զանձն. կոչումն պանծալի, որով հաւանաբար կրնայ կարծուիլ թէ յիշեալ քաղաքաց մէջ, նա և ի

Հռովմ գտնուող գաղթական Հայոց վերադիտող մ'էր . իր ի Վենետիկ ըլլալուն վկայութիւն մի կայ. զի ասկէ մագաղաթ (գրուած կամ անգիր), կու ղրկէր առ Կոստանդին կաթողիկոս (1374–81)։ Վախճանած և թաղուած է Թովմաս ի Բերուճիա (1385), ինչպէս կու տեսնուի ի տապանագրէն ի Սուրբ Մատթէոս եկեղեցւոյ քաղաքին։ Եւ որովհետև քառասունևհինգ տարուան միջոց կայ ընդ մահ Թովմայի և Մարեմայ, մարթ է կարծել թէ ուրիշ մ'ըլլայ ասոր յիշած եպիսկոպոսն, թերևս նախորդն Թովմայի. մանաւանդ զի յայնմ դարու յաճախ կու հանդիպէին այցելութիւնք եպիսկոպոսաց Հայոց ի Հռովմ, ի Պոլոնիա, ի Փլորենտիա և ի Վենետիկ. և կտակիս գրուելուն ժամանակ եպիսկոպոսին ի Վենետիկ գտնուելուն նշանակ մ'այլ՝ ոչ միայն փոխառութիւնն և գրաւական տալն է, այլ և կտակողին կողմանէ ձգուած ուրիշ պարգեւ մի եւս, երեք սիրամարգ. ինչպէս և մէկմէկ սիրամարգ. Յակոբ քահանայի, և Սրբոյն Մարկոսի եկեղեցւոյ պահապան Փրանկիսկոս քահանայի. ուրիշ մ'այլ իր հոգւոյն. որպէս զի Միացած հաւեղէններով զոր կու թողուր, հոգեհաց ուրախութիւն մի՝ ընեն. (de omnibus meis galinis fiat unam charitas) իր մահուան օրը։

Տասն տուկատ ալ կու սահմանէ, որպէս զի այն գումարով ողորմութիւն ընեն ի նպաստ հոգւոյն, (volo fiet unam charitatem), կտակակատարաց որոշմանն համեմատ, որոց և կու յանձնէ իր ամէն շարժուն և անշարժ ընչից մնացածը բաշխել վասն իր հոգւոյն. տեղ կ'իմացուի թէ ըստ մարմնոյ ժառանգ չունենալուն՝ կու ժառանգեցընէր իր հոգին։

Սակայն հարկ էր մարմնոյն համար այլ հանգստարան մի ցուցընել. զոր և կու նշանակէ ի կտակին, և անով կու հաստատէր մեր յառաջագոյն ըսածը, թէ երեքտասաներորդ դարէն ի վեր Սրբոյն Գէորգայ կղզւոյն մէջ էր Հայոց հանգստարանն, ուր և ինքն Մարիամ ուզեց թաղուիլ. ու տեղւոյն վանականաց երկու տուկատ պատարագիք թողլէն զատ, կու կտակէր մեծ կրկնաջահ մի (doppiere) ի պատիւ Սրբութեան սրբոց մոմեղէն վառելու, և ուրիշ մ'այլ Սրբոյն Յուլիանու եկեղեցւոյն։ Ճրագարանաց այս տեղի յիշատակք, ի Ս. Գէորգ Թաղուածի, լատին այլևայլ եկեղեցեաց պատարագիք, երկբայելի կ'ընեն Հայոց տան մէջ մատուռն կամ պատարագատեղի մի ըլլալը. բայց հաւանական յոյժ՝ մանաւանդ թէ անժխտելի՝ որ կային հայ եպիսկոպոս մի և հայազգի Եղբարք Ս. Յովհաննու։

Գուցէ քահանայք էին և յիշեալքն ի կտա-
կին՝ Գուլիելմ և Եղեկիէլ Եղբարք, ուր էր
և իւրեանց բնակութիւնն ։ Եւ թէպէտ յայտնի
է յազգային յիշատակարանաց որ, այս կտա-
կէն գրեթէ հարիւր տարի առաջ (1434) պա-
տարագ կու մատչէր ի տան Հայոց, բայց
չենք կրնար որոշ բան մի գրուցել թէ պա-
տարագի մատուցման տեղին արդեօք ի յա-
տակի տա՞նն էր, թէ ուրիշ սենեկի մի մէջ ի
ստորին յարկի. և տեղւոյն անձկութեան
պատճառաւ կարելի չէր թաղել հօն զմե-
ռեալս, որպէս սովոր էին ընել ի ժամանակին՝
յայլ եկեղեցիս քաղաքին, ինչպէս նա և ի
Ս. Խաչ՝ յետ նորաշինութեանն ։ Թող որ յա-
ռաջ քան զհաստատութիւն տանն Հայոց ի
Ծիաննեայ, յաւուրս ծերունի Հայոյն և յա-
ռաջ իսկ քան զնա՝ եղեր են ազգայինք մեր
ի Վենետիկ. և փափաքելի է գիւտ վճռոյ
ծերակուտին կամ եպիսկոպոսին Վենետկոյ,
որով կու շնորհուէր Հայոց գերեզմանատեղի
ի Ս. Գէորգ. ուր ընդ համազգեացն ցան-
կացաւ ննջել զանհրաժարելի քունն՝ և ա-
ղուաբարոյ Մարիամս այս, ընդ կանխեալսն
անյայտս և ընդ հետեւեալսն՝ յապնջական
և ի հիւրամեծար յայսմ քաղաքի, որ ի
գիրկս աղուտ հողոյն ամփոփեալ շտեմարանէ
ոչ սակաւ նշխարս հայութեան. յորոց հա-

թեան կամ մեռելութեան հետքն ալ չմնաց ի կղզւոյն, բաց ի վերը յիշատակուած քանի մի արձանագրութիւններէն ։ Մաղթելով վայրկի մի հանգիստ՝ հանգուցելոցն ի վաղուց, դառնանք միւսանգամ առ կենդանիս ։

* * *

Վենետիկ եկող յանուանէ ծանօթ Հայոց մէջ, բաց ի յոյժ հնագունից՝ որոց վրայ խօսեցանք ի սկիզբն այս մեր գրուածոյս, առաջին կու յիշուի Մանուէլ դեսպան Սմբատայ թագաւորի ի վերջ կոյս երեքտասաներորդ դարու (1297–8), որ բաց յայլոց իրաց եկեր էր և ի խնդիր դիպակաց, ինչպէս յառաջագոյն ալ ըսինք ։ Իրմէ յառաջ, ինչպէս ետքն ալ եկողաց շատերուն անուանք չեն յիշատակուիր. և զորս գանց կ՚ընենք մէջ բերել, ինչպէս ի դիմաց դքսին անոնց շնորհուած պարգեւներն այլ զոր դեսպանաց ձեռքով կու ղրկէին առ թագաւորս Հայոց ։

Ի սկիզբն չորեքտասաներորդ դարու (1302, սեպտեմբեր. 23) թոյլ կու տայ ծերակոյտն՝ վենետկեան նաւերով քանի մի վաճառականաց՝ գալ այսր. սոնց մէջ կու յիշուին Լեւոն, Սիմոն և Գէորգ հայ ։ — 1331 թուականին կու յիշուի Հեթում անունով յանցաւոր

մի ի Վենետիկ, որոյ շնորհուեցաւ ազատութիւն ի դատէ. այլ թէ ինչ յանցանքի համար, պարտաւորուած էր, յայտնի չէ։— Նոյն միջոցներուն տեսանք, ինչպէս ի վեր անդր, զԱնտոն Գոլամանչի թարգման և կառաւանապետ մի ի Վենետիկ։ Անկէ ետքն է Թագաւորազանց և Թագաւորականաց ոմանց գալուստն ի Վենետիկ. ինչպէս Լուզինեան Պեմանդրի, որ և մեռած (1364) կ'ըսուի հօս. — քանի տարի անցնելէն ետքը՝ իր եղբօրն՝ Լեւոնի՝ թագէն զրկուած և ի խնդիր թագի՝ ստուերակերպ անցքն ընդ Վենետիկ (1383)։

Այս վերջին Լեւոնի Վենետիկ եկած տարին՝ հոն կու բնակէր Եղբայր Օգոստինոս ոմն Էրզիրումցի հայ դոմինիկեան կրօնաւոր, յառաջն Աւետիք կոչուած. ուր և կ'ընդօրինակէր զՆախադրութիւնս հայերէն Ս. Գրոց, աւելցընելով յիւրմէ պէսպէս կրօնական բանս արձակ և ոտանաւոր, և որոյ գրչագիրն ի ձեռուընիս է։ Աս գրուածքին մէջ նշանակութեան արժանաւոր կէտ մի և կարեւոր մեր առաջարկութեան այն է, որ կ'ըսէ թէ գրած կամ աւարտած է զայն ի 29 փետր. Նահանջ ամի է Վընէժոյ Եկեղեցին։ Ո՞ր եկեղեցի է՝ զոր կ'ուզէ ակնարկել գրիչն. եթէ զմի ի լատին եկեղեցեաց, առանց տարակու-

ռելու՝ Նուիրական տաճար Սրբոյն Մարկոսին է․ սակայն Հայոց մէջ այնքան հռչակուած էր անոր անունն (San Marco), որ եթէ գրիչն զայն ակնարկել ուզէր՝ յանուանէ այլ կու գրէր․ ուստի պատշաճ թուի կարծել՝ թէ կամ ի վեր անդր՝ (1348ին) յիշուած եկեղեցին կ'իմանար, ուր Հայ Եղբարք կու բնակէին, — մանաւանդ զի ինքն ալ կրօնաւոր էր և դոմինիկեան, և կիսով դարու յառաջ հաստատուած էր Սրբոյն Դոմինիկոսի կանոններով Հայոց Ունիթորաց միաբանութիւն մի, և տարակոյս չէ կարծել թէ անոնցմէ ոմանք կանխած եկած ըլլան նա և ի քաղաքս, ինչպէս այլք ալ արդէն անցել էին ի Կաֆա․ և կամ պէտք է համարել զեկեղեցի Ս․ Խաչի, եթէ այս անուամբ ալ կոչուած և թէ ոչ, այն որ մերձ է Հոգետան և փողոցի Հայոց, ի թաղերիցութեան Ս․ Յուլիանոսի, առ որ միւսանգամ դառնանք և կնքենք խօսքերնիս ։

* * *

Սրբոյն Յովհաննու Հայ Եղբարց յիշատակութենէն քանի մի տարի յառաջ (1344, հոկտ․ 2) Ս․ Յուլիանոս եկեղեցւոյ Յակոբ Մարքէզինի քահանայի ձեռքով գրուած կտակ

մի կայ Հայ տան (Ca' Armena) մէջ բնակող կնոջ մի, Armina կոչուած, և Մարիամ անունով. և որ ինքզինքը կու կոչէ ի կտակին Massaria domus Armenorum, որ ոչ թուի ինձ սոսկ աղախին, որպիսի նշանակութիւն ունի արդի գաւառական լեզուի մէջ այդ massera բառն, այլ իբրև տանտեսուհի (massaja կամ aja) տանն Հայոց. և այս առաջին անգամն է, զէթ ինձ ծանօթ յիշատակագրաց մէջ, Հայոց տան յիշատակութիւնն Ծիանիի կտակէն ետքը։ Վանզի հայ ազգայնոց դեռ առաջին և միակ հին կտակն է՝ զոր յաջողեր ենք գտնել ի դիւանս Նոտարաց. բայց բաւական նշան մ՚ է թէ անկէ յառաջ ու ետքն այլ գրուած պէտք էին ըլլալ այդպիսի վաւերականք, և որոց գիւտն փափաքելի է. զի թէպէտ կտակք են և մահու յիշատակաւ առթեալ, այլ կրնան ընծայել մեզ շատ կարեւոր և անտխուր տեղեկութիւն. և այս՝ որոյ խօսքը կ՚ընենք, ըստ բազում գլխոց պատուական է և հմտացուցիչ։ Կտակողն Մարիամ՝ ազգէն զատ չի յիշեր ոչ զծնողս և ոչ զազգականս. և ըրած մանրմունր մէկուն կամ մէկալին թողած դրամք կու գումարուին հարիւր տուկատ և երկու ֆիորին, անշուշտ ոսկի դրամով, որով կրնայ ենթադրուիլ՝ թէ հասարակ աղախնէ մի բարձր վիճակ ունէր, և աւե-

մի բարեկեցիկ։ Կու գրաղի եղեր ի դարման տեսակ տեսակ հիւրոց, և այն միջոցով կու հայթհայթէր անշուշտ իրեն պարէնը և կենաց դիւրութիւն։ Իր կտակին տաթիւ թողած կարեւոր գիտելին՝ Հայոց տան մէջ և թերեւս անկէ դուրս բնակողաց ութ կամ տասն ազգայնոց անուանք են. արք, կանայք և Եղբարք և յորոց իրեն կտակակատար կու սահմանէ, և են. Եղբայր Միքայէլ Հայ.— Տիկին Բարթողոմէէ հայազգի (Domina Bartholomia Armina), և որոյ ֆլորին մի յիշատակ կու թողու. իսկ առաջնոյն՝ երկու ֆլորին և սեաւ պատմուճան մի.— Յակոբ կտակակատարին՝ չորս տուկատ և արդէն իր քով եղած գրաւականը.— Նոտարին՝ ֆլորին մի։ Կու յիշէ ուրիշ հայ Եղբարք, Գուլիէլմ (Vielmo) և Եփինէլ, չի նշանակելով անոնց բնակութիւնն ի տան Հայոց, և կու թողու առաջնոյն չորս ֆլ., իսկ միւսոյն երկու։ Ի կանանց՝ բաց ի Բարթուղիմէէ, զոր յիշեցինք, կ'անուանէ զՋուղէլ, որ Հայոց Միսուանեայց մէջ յաճախեալ անուն մ'էր ի ժամանակին, մանաւանդ առ ազնուականս. և բնակութիւն սորա էր ի Հայ տան. որուն կու կտակէ իր կրկնոցը և սպիտակ պատմուճանը (mantello, tunica alba) և տուկատ մի դրամ։ Նոյնպէս ի Հայտան բնակող Գուլլէ կնոջ մի կու

Թողու իր զգեստները (i suoi panni) և տաս_նուվեց փոքր դրամ (soldi)։ Ցիշենք ան_ցողաբար, որ այս տոմսներու կտակաց մէջ յաճախ կու տեսնուի բառդ Գոլֆ, և կարծեմ Թէ սորբուկ-կանոյք կու նշանակէ. Ֆրանչիսկա (Francisca) հայ կնոջ մ'ալ կու Թողու ֆլո_րին մի. սա չէր ի բնակչաց Հայտան, այլ ի Ս. Վլասա (Sancti Blasii), ոչ գիտեմ յաշ_խարհական տան Թէ ի մենաստանի։

Ամէն բանէ առաջ իբր բարի քրիստոնեայ՝ իր ընչից տասանորդը կու տայ (In primis omnium rectam dimitto decimam). և վե_րոյգրեալ քահանայից և Հայ Եղբարց Թո_ղածէն զատ, կու կտակէ Ս. Ցուլիանոս ե_կեղեցւոյ քահանային՝ երկու տուկատ վասն մատուցման պատարագաց, նոյնպէս Սրբոյն Մարկոսի քահանային երկու տուկատ. տու_կատ մ'ալ կուսանաց Սրբոյն Զաքարիայ, որ Բիւզանդիոնի հայ կայսեր մի գանձով կա_ռուցուած եկեղեցի է, ու վերջին դարուց մէջ դեռ եւս կային հօն և հայազգի կուսանք, և Թերեւս կտակող Մարիամայ ժամանակն ալ։ Հայոց տանն այլ՝ ուր կու բնակէր, կու Թողու ութ ֆլորին, որպէս զի պէտք եղած նորո_գութիւնն ընեն, որով կ'երեւնայ կարօտ ըլ_լալն, և անշուշտ Ծիանեայ տուրքն չէր բաւեր ծախքը գոցելու։ Զի մոռնար Մարիամ և այլ

ազգային տաճարն, եկեղեցիք և վանորայք որ յայլևայլ քաղաքս Իտալիոյ, բարեպաշտութեան հետ անշէջ պահելով նա և զոգին ազգային. և կու կտակէ Հայոց տանց որ ի Պոլոնիա, Բերուճիա, Միենա և Գենուա՝ երկու երկու տուկատ կամ ֆլ., իսկ հոգետանն որ ի Զիվիդավեգգիա (Urbe veteris) մէկ տուկատ ։

Իրմէ բարերարելոց մէջ նշանաւոր է Ազ-գաժողովոյն Հայոց, ճախամաման կտակաւ. աոոր կու թողու արդէն փոխ տուած երեսուն տու-կատը, ու իրմէ առած գրաւականն, աւել-ցընելով ատոնց վրայ տասն ֆլորին եւս ։ Ափսո՛ս որ յանուանէ չի յիշատակեր զնա. բայց լոկ Հայոց արքեպիսկոպոս կոչումն ալ նշանական է. և իրաւամբ ենթադրել կու տայ, թէ Վենետկոյ՝ կամ յաւէտ Իտալիոյ Հայք՝ եպիսկոպոս կամ արքեպիսկոպոս մի ունէին, և որոյ աթոռն էր այն քաղաքաց մէկուն մէջ՝ յորս Հայոց հոգետունք կամ վանորայք կու գտնուէին ։ Ուրիշ թէ՛ ազ-գային և թէ օտար յիշատակարաններէ գի-տեմք, թէ այն ատեններն Թովմաս անունով հայ եպիսկոպոս մի կայր, որ Ազգաժողովոյ Իտա-լիոյ կու գրէ և կու կոչէ զանձն. կոչումն պանծալի, որով հաւանաբար կրնայ կար-ծուիլ թէ յիշեալ քաղաքաց մէջ, նա և ի

Հռովմ գտնուող գաղթական Հայոց վերադիտող մ'էր . իր ի Վենետիկ ըլլալուն վկայութիւն մի կայ . զի ասկէ մագաղաթ (գրուած կամ անգիր), կու ղրկէր առ Կոստանդին կաթողիկոս (1374–81)։ Վախճանած և թաղուած է Թովմաս ի Բերուճիա (1385), ինչպէս կու տեսնուի ի տապանագրէն ի Սուրբ Մատթէոս եկեղեցւոյ քաղաքին։ Եւ որովհետեւ քառասունեւհինգ տարուան միջոց կայ ընդ մահ Թովմայի և Մարեմայ, մարթ է կարծել թէ ուրիշ մ'ըլլայ ասոր յիշած եպիսկոպոսն, թերեւս նախորդն Թովմայի . մանաւանդ զի յայնմ դարու յաճախ կու հանդիպէին այցելութիւնք եպիսկոպոսաց Հայոց ի Հռովմ, ի Պոլոնիա, ի Փլորենտիա և ի Վենետիկ. և կտակիս գրուելուն ժամանակ եպիսկոպոսին ի Վենետիկ գտնուելուն նշանակ մ'այլ՝ ոչ միայն փոխառութիւնն և գրաւական տալն է, այլ և կտակողին կողմանէ ձգուած ուրիշ պարգեւ մի եւս, երեք սիրամարգ . ինչպէս և մէկմէկ սիրամարգ. Յակոբ քահանայի, և Սրբոյն Մարկոսի եկեղեցւոյ պահապան Փրանկիսկոս քահանայի . ուրիշ մ'այլ իր հոգւոյն . որպէս զի Միացած հաւեղէններով զոր կու թողուր, հոգեհաց ուրախութիւն մի՝ ընեն . (de omnibus meis galinis fiat unam charitas) իր մահուան օրը։

Տան տուկատ ալ կու տահմանէ, որպէս զի այն զումարով ողորմութիւն ընեն ի Նպաստ հոգւոյն, (volo fiet unam charitatem), կտակակատարաց որոշմանն համեմատ, որոց և կու յանձնէ իր ամէն շարժուն և անշարժ ընչից մնացածը բաշխել վասն իր հոգւոյն. ասով կ՚իմացուի թէ ըստ մարմնոյ ժառանգ չունենալուն՝ կու ժառանգեցընէր իր հոգին:

Սակայն հարկ էր մարմնոյն համար այլ հանգստարան մի ցուցընել. զոր և կու նշանակէ ի կտակին, և անով կու հաստատէր մեր յառաջագոյն ըսածը, թէ երեքտասաներորդ դարէն ի վեր Սրբոյն Գէորգայ կղզւոյն մէջ էր Հայոց հանգստարանն, ուր և ինքն Մարիամ ուզեց թաղուիլ. ու տեղւոյն վանականաց երկու տուկատ պատարագիք թողլէն զատ, կու կտակէր մեծ կրկնաջահ մի (doppiere) ի պատիւ Սրբութեան որբոց մոմեղէն վառելու, և ուրիշ մ՚ այլ Սրբոյն Յուլիանու եկեղեցւոյն: Ճրագարանաց այս եւքի յիշատակք, ի Ս. Գէորգ թաղումն, լատին այլեւայլ եկեղեցեաց պատարագիք, երկբայելի կ՚ընեն Հայոց տան մէջ մատուռն կամ պատարագատեղի մի ըլլալը. բայց հաւանական յոյժ՝ մանաւանդ թէ անժխտելի՝ որ կային հայ եպիսկոպոս մի և հայազգի Եղբարք Ս. Յովհաննու:

Գուցէ քահանայք էին և յիշեալքն ի կտակին՝ Գուլիելմ և Եղեկիէլ Եղբարք, ուր էր և իրենց բնակութիւնն ։ Նա թէպէտ յայտնի է յազգային յիշատակարանաց որ, այս կտակէն գրեթէ հարիւր տարի ետքը (1434) պատարագ կու մատչէր ի տան Հայոց, բայց չենք կրնար որոշ բան մի գրուցել թէ պատարագի մատուցման տեղին արդեօք ի յատակի տա՞նն էր, թէ ուրիշ սենեկի մի մէջ ի ստորին յարկի. և տեղւոյն անձկութեան պատճառաւ կարելի չէր թաղել հօն զմեռեալս, որպէս սովոր էին ընել ի ժամանակին՝ յայլ եկեղեցիս քաղաքին, ինչպէս նա և ի Ս. Խաչ՝ յետ Նորաշինութեանն ։ Թող որ յառաջ քան զհաստատութիւն տանն Հայոց ի Ծիաննեայ, յաւուրս ծերունի Հայոյն և յառաջ իսկ քան զնա՝ եղեր են ազգայինք մեր ի Վենետիկ. և փափաքելի է գիւտ վճռոյ ծերակուտին կամ եպիսկոպոսին Վենետկոյ, որով կու շնորհուէր Հայոց գերեզմանատեղի ի Ս. Գէորգ. ուր ընդ համազգեացն ցանկացաւ ննջել զանհրաժարելի քունն՝ և աղուաբարոյ Մարիամս այս, ընդ կանխեալսն անյայտս և ընդ հետեւեալսն՝ յասպնջական և ի հիւրամեծար յայսմ քաղաքի, որ ի գիրկս աղուտ հողոյն ամփոփեալ շտեմարանէ ոչ սակաւ Նշխարս հայութեան. յորոց հա-

զարքն առաւելի անուանց հանդիպեր եմք եկե֊
ղեցեաց մահացուցակ օրագրութեանց մէջ, թէ՛
ի բուն քաղաքին, և թէ ի կղզիս և ի մեր֊
ձակայ ափունս. որոց ամենեցուն մաղթեմք
հանգիստ, ի խաղաղաւէտ ժողովարանն հաւ֊
ասարակաց, յաշխարհն իրական և յանփո֊
փոխելի ։



# ՀԱՅ — ՎԵՆԵՏ



## Բ· ՅԵՂԱՆԱԿ

## ՀԱՅՔ Ի ՎԷՆԵՏԻԿ Ի ԺԵ ԵՒ ԺԶ ԴԱՐՍ

# ՀԱՅ – ՎԵՆԵՏ

## Բ. ՑԵՂԱՆԱԿ

## ՀԱՅՔ Ի ՎԵՆԵՏԻԿ Ի ԺԵ ԵՒ ԺԶ ԴԱՐՍ

### Ա.

Ա. ԳԻՐՔ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ ՎԵՆԵՏԿՈՑ ՏԷՐՈՒԹԵԱՆ. — Բ. ՆԱԽԱՐԿՈՂ ԵՒ ՆԱԽԱՏԷՐ ՀԱՅՔ. — ՀԱՅՔ ՂՐԻՄՈՒ. — Գ. ԽՆԴԻՐ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ Ի ԿՐԵՏԷ։



ՎԵՆԵՏԿՈՑ անցեալ Հասարակապետութեան անսպառ Դիւանաց մէջ գլխաւոր և փառաւոր հաւաքմանց մէկն են 30 մեծ հատոր Յիշատակարանքն (Memoriali), այլեւայլ ազգաց և պետութեանց հետ յարաբերութեանց, դաշնակցութեանց, և պէսպէս խնդրոց և կարգաւորութեանց՝ անոնց և իրեն նկատմամբ։ Շատ ցանկալի և խնդալի է այն ազգայնոց՝ որոց նախնիքն ունեցեր են այդպիսի հաղորդակցութիւններ՝ փնտռել անոնց մէջ և գըտ-

նել իրենց հայրենեաց յիշատակները ԺԲ դարէն սկսեալ։ Այսպիսի բաղդի և խնդութեան հաղորդ են և մեր ազգայինք. և արդէն տեսանք ԺԳ և ԺԴ դարուց մէջ Հայոց և Վենետաց յարընչութիւնները, զոր և Ա Ցեղանակ անուանեցինք՝ ըստ կարգի ժամանակին։ Շատ աւելի ծանօթութիւններ պիտի ունենայինք, եթէ դժբաղդաբար այդ պատուական հատորոց հնագոյնքն՝ 12 կամ 13՝ կրակի ճարակ եղած չըլլային, մանաւանդ որ անոնց մէջ պիտի գտուէին յիշատակք մեր Ռուբինեանց Հարստութեան, որոց ոմանց՝ պարզ ցանկի կամ վերնագրի պէս՝ տողաչափ ակնարկութիւն մի մնայ. որ և կերպով մի կորսուածին յայտարար ըլլալով՝ միշտ պատուական է և գիւտ մի համարելի։ Մեծագոյն դժբաղդութիւնն այն է՝ երբ յիշատակաց նշան մ՚ այլ չերեւիր։ Այդ հատորներուն երեսաց վերնագիրք՝ զանազան պետութեանց անունները կու կրեն, որոց վերաբերեալքն այլ նշանակուած են նոյն երեսաց մէջ. այդ վերնագրաց մէկն ալ է Armenia:

Ի՛նչ եռանդեամբ և յօժարութեամբ կու դարձընէ Հայ բանասէրն՝ այն մագաղաթները և թուղթերը, և կու հետազօտէ իր նախնեաց (գոնէ մէկ ցեղին կամ իշխանութեան) յիշատակները, աւելորդ է բացատրել. բայց

չեմ գիտեր՝ ուրախալի՞ն աւելի է՝ եթէ տխրալին, երբ հետզհետէ շրջելով թուղթերը, կու տեսնես դեռ քու ազգանունդ ի վերնագրին, բայց ներքեւը տեղեկութիւնք կու նուազին, իբր հատ ու կտոր կու նշմարուին... կարծես թէ յիշատակքն ժամանակին ալեաց վրայ շուտ սահող նաւու մէջ ծածկուած՝ երթալով կու հեռանան։ Քանի մի թուղթ ալ շրջէ, վերը՝ միայն քու հայրենեացդ անունն կայ, բայց թղթին երեսն անգիր անգիծ դատարկ մնայ։ Շրջէ՛ քանի մի թուղթ այլ, և ոչ վերնագիր կ՚երեւի. աւա՜ղ, Armenia անունն խափանուեր է... նաեւ բոլորովին հեռացեր ծածկուեր է հորիզոնէն անդին։... Դադրեր են այն Ադրիական ծովածոցէն և Փոքր Ասիոյ հարաւային արեւելեան քեզի ծանօթ ծովածոցէն՝ իրարու դիմող ողջունաբեր և արգասաբեր նաւերն. մանաւանդ թէ դեռ այն կողմէն երբեմն կու գան քանի մի նաւք, բայց անոնց դիմաւորող չկայ. ոչ եւս ձեռն ի ձեռն Հայք և Վենետք։

Պատմութիւն կամ դէպք ազգաց՝ շատ զարմանալի և խրատելի օրինակներ կամ տեսարաններ ցուցած են և կու ցուցընեն, ինչպէս յիշեցինք ի սկզբան. այն ցուցմանց մէջ զարմանալի երեւոյթ մ՚ալ էր՝ ԺԳ-ԺԴ դարուց միջոց յիշեալ Փոքր Ասիոյ ծովեզերքը կենդա-

նայընող և արեւմտեան ազգաց հետ՝ մանա-
ւանդ Իտալացւոց և աւելի եւս Վենետաց հետ՝
հաղորդակից ազգն և պետութիւնն, որ իբրեւ
համազգային քերդողական վիպասանութեան
մէջ առանձնակ կամ մասնական դրուագ մի
է միջինդարեան պատմութեան. իսկ բուն
վիպասանութիւն՝ երկարատեւ (զի չըսենք մըշ-
տատեւ) պետութիւնքն են. որոց մէջ իբրեւ
զարմանալի երկար դրուագ մ՚այլ էր Վենեա-
կեան հազարամեայ հասարակապետութիւնն։
— Բայց ո՞ւր է հիմայ և նա։ — Չորս դար
յետոյ քան զդիպուած իր հայ վաճառակցին՝
ինքն ալ դադրեցաւ. քաղաքականօրէն ինքն
ալ թաղուած է իր միշտաչարժ ովկէկոհակ
ծովածոցին մէջ.... Ս. Մարկոսի գոռոզա-
ձայն առիւծու մռնչիւնն եւս այլ չի լսուիր։

Սակայն միայն իշխանութեամբ և հրա-
մանատուութեամբ չի վերջանար ազգի մի
անունն և փառք. Վենետիկ փառաւոր կեանք
մի ունեցաւ, թողուց և փառաւոր յիշա-
տակ. թող իր հին դաշնակցին կեանքն և
յիշատակն այլ չի մնայ անփառունակ։ —
Եթէ այն միջինդարեան Հայ-Վենետաց յիշա-
տակաց նաւն ծածկուած է, եթէ և խորտա-
կուած, դեռ խորտակեալ նաւու թափա-
ռական բեկորներ կ՚երեւին ալեաց վրայ և
ի յետին դարս. դարձեալ ըստ ընթացից

ժամանակի՝ կըրնայ շարունակ ըսուիլ, թէ ոչ Վենետաց երևոյթն ի Հայս, այլ Հայոց երևոյթն և բնակութիւնն ի Վենետիկ։ Այս երևոյթս արդարև նուազ է իբրև երկու դար (ԺԵ, ԺԶ), յորում օտարոտի և անհաստատ տիրապետութեանց բռնաբարութեամբ կու տատանէր մեր և մեր դրացի ազգաց վիճակն. իսկ երբ աւելի կանոնաւոր և զօրաւոր տէրութիւնք հաստատուեցան յարևմըտեան Ասիա, մերազգիք այլ սկսան դարձեալ յաճախել ի Վենետիկ, և նոր օրինակ վաճառակցութիւն մի հաստատել. և ասով նոր Եղանակ մ'այլ սկսաւ Հայ-Վենետաց, զոր Գ. կ'անուանեմք. իսկ ասոր և առաջնոյն միջոցն՝ Բ, որ է այն կցկտուր յարաբերութեանց կամ երևութից Հայոց ընդ Վենետս, ի վերջոյ ԺԴ դարու մինչև ի վերջկոյս ԺԶ դարու։ Ահա այս Բ Եղանակիս միջոց հանդիպած քանի մի երևոյթները կ'ուզեմ յայտնել յառաջիկայս, որոց արժէքը կըրնան դատել ընթերցողք, թերևս և յարգել մէկ քանին։

Ա. Արդէն յիշեցինք մէկ երկու դէպք կամ Հայ անձինք ի Վենետիկ, յետ դադրելու Ռուբինեանց դաշնակցութեան, ԺԴ դարուն վերջերը. նոյն դարուն ետքի տարիներում (1395) յայտնուած է ոմն Անտոն որդի Բարսղէ

(de Baseo կամ Baseis), որ կարճ կտակ մի ըրած է 6 փետր. 1394–5), յորում կ'իմացուի Հայ ըլլալն, De Armenia), այլ գաւառն կամ քաղաքն՝ ոչ. արուեստիւ ալ՝ Նաւաստի (Marinarius). ի Վենետիկ բնակութեան տեղն է Ս. Մարտիալէս թաղն, որոյ քահանայից մէկն է կտակը գրող նոտարն (Joh. Campio). իսկ կինն Մարգիտ դուստր Թէոդորէ ծննդեամբ ի Դուրացցոյ (Durazzo) Ռումելիոյ. ասոր կու թողու Անտոն անոր բերած օժիտը, երեք Լիրայ Գրոշից, որոց արժէքը յիշած եմք (տ. երես 60):

Զարմանք չէ, մանաւանդ թէ բնական իսկ է, որ ի Վենետիկ՝ այն դարուց նաւարկութեան առաջին քաղաքում բնակող Հայ մի՝ հետեւի անոր ամենէն նշանաւոր արուեստին. մեծ կամ փոքր նաւարկութեան։ Նոյն դարու առջի կիսուն մէջ այլ յիշուին Հայ Նաւապետք, թէ՛ ի Սեւ ծովու և թէ Իտալիոյ կողմերու ջրոց մէջ. բայց աւելի կու ծանօթանան Գ. Ցեղանակին մէջ, թէ՛ նաւապետ և թէ նաւատէր Հայք, և թէ գործաւորք Վենետկոյ հռչակաւոր Նաւարանին։ Այս տեղւոյս Թաղական եկեղեցւոյն (Ս. Պետրոս) դիւանաց մէջ՝ ԺԶ դարուն վերջեր և ԺԷին սկիզբները կու յիշուին Եղիա Հայու մի որդիք, գրեթէ ամէնքն ալ (Գէորգ, Յով-

հան, Մկրտիչ, Նիկողոս) բանուորք կամ հիւսունք (Marangon) ի Նաւարանին. իսկ մէկն այլ (Պետրոս) Նաւապետ (Capitan), որ ի Ռուսկուզա առեր է կին Ֆրանչեսկինա անուամբ։ Այսոնցմէ առաջ և ժամանակակից է՝ յատուկ մականուամբ Հայ կոչուած Անտոն, և իր որդին և Թոռն, որ դար մի կու յիշուին նաւարանի կամ նաւական գործոց մէջ, և մեծ ճարտարութեան յիշատակներ թողած է, զոր թողումք ի կարգի ժամանակին ծանուցանել, որպէս և ուրիշ նաւապետներ ԺԸ դարուն կիսուն, Capitan կոչուածք. (Մկրտիչ Ռոստոմ † յամի 1753, Պետրոս Բողոսեան, Յակոբ Աճեմեան), եւ այլն. եւ քինս կ'անուանի երբեմն Կալերա նաւու գլխաւոր, Capo di Galera, երբեմն Ռմբաձիգ նաւու գլխաւոր, Capitano Bombardier։

Այլ այս մեր հիմայ քննելի Բ Ցեղանակի մէջ՝ Հայոց նաւարկութեան կամ ծովային երթեւեկութեան գլխաւոր տեղ մ'այլ պէտք էր ըլլալ Սեւ ծովու նշանաւոր թերակղզւոյն քաջանշան քաղաքն Կաֆա, որոյ Հայ գաղթականութեան պատմութիւնն արդէն հրատարակուեցաւ (1), որք և աւելի ճենովայի

1. Պատմութիւն գաղթականութեան Ղրիմու Հայոց, գրեաց Հ. Քերովբէ Վ. Քուշներեան. Վենետիկ, Ս. Ղազար, 1895։

հետ յարաբերութիւն ունեցեր են՝ քան Վենետկոյ։ Բայց մեր նախայիշեալ Բարտղի որդի Անտոնի կտակագրած տարին, կաֆացի Յովհաննէս Հայ մ'ալ ի Վենետիկ՝ նոտարական գրուածով (6 յունիսի, 1395) իր Մուրֆոշէտ անուամբ կինը իրեն փոխանորդ կամ գործակալ հաստատած է, որ կարող ըլլայ պահանջելու իր առնելիքները՝ որ և է անձէ կամ տեղէ, և գլխաւորապէս զինավառութեան պաշտօնարանէն կամ Սենեկէն, (Camera Armamenti։ Յովհաննէս՝ ի Ս. Առաքելոց եկեղեցւոյն թաղը բնակեր է. որոյ աւագերէցն և քահանայք և կղերիկոս մ'այլ իբրև վկայք ձեռք դրած են այս գրուածիս. որոյ իմաստէն գուշակուի որ Յովհաննէս պիտի մեկնէր ի Վենետկոյ, հաւանօրէն վաճառականութեան համար, գուցէ և ինքն իսկ նաւու վրայ իշխանութիւն կամ պաշտօն մ'ունէր՝ որովհետև իրեն պարտական Սենեակն՝ կրնայ նշանակել և նաւեր զինելու և պատրաստելու տեղ։ Յայտ է որ Յովհան սոսկ եկող գացող վաճառական մի չէր, այլ հաստատ բնակող ի Վենետիկ, ինչպէս կ'ըսէ (habitator Venetiis), որոյ յայտնագոյն եւս նշանն է (ինչպէս և նախագրեալ Անտոնին) կին ունենալն. և զայն իրեն գործակալ կամ փոխանորդ դնելն կու ցուցընէ՝ որ նա այլ ծանօթ էր ի քաղաքին։

Այս երկու անձանց այլ (Յովհան և Անտոն) կանամբի ըլլալն՝ աւելի կարեւոր յայտնութիւն մի է, ԺԴ դարու մէջ ի Վենետիկ Հայ ընտանեաց կամ տանուտիրաց գտնըւելուն, թէ և ատոնց կանայքն Հայազգի չըլլան. սակայն եթէ անոնք ոչ՝ անհաւանական չէ որ կային և Հայ կանայք արամբիք կամ ամուրիք, ինչպէս այն Հայոց տան հոգացող և կռակող Մարիամն՝ նոյն դարուն կիսէն այլ առաջ, (եր. 157)։ Այս բանս ոչ միայն աւելի յայտնի կ՚ըլլար, այլ թերեւս շատ ազգայինք մեր՝ և անոնց զաւակքն և վիճակն կու յայտնուէին, եթէ այն ժամանակներ այլ սովորութիւն ըլլար եկեղեցական և քաղաքական դիւանաց մէջ՝ հանդիպած օրին նշանակել պսակները, ծնունդները և մահերը, կամ թէ կորսուած չըլլային (եթէ եղած են) դիւանքն, ինչպէս որ հիմայ թէ քաղքիս (Վենետկոյ) ամենայն թաղական եկեղեցեաց մէջկան և կուպահուին այսպիսի դիւանք. Վենետկոյ մէջ ԺԶ դարէն հին կամ առաջ չեն գտուիր. իսկ այս դարուս կիսէն ետեւ շատ եկեղեցեաց դիւանաց մէջ նշանակուած են, որչափ որ ինձ ծանօթ են, և առաւելապէս մահք Հայոց (իբրեւ 1200), Ծնունդք (800), Պսակք (250). այս ետքի վիճակէս գտած եմ նշանակուած 120 Հայ մարդ ընդ Վենետուհիս կամ Իտալացի

կանայս, հարիւրիւ չափ Հայ կանայս ընդ Իտալացի արանց, 40 զոյգ այր և կին Հայ ամուսինք։ Առաջին պսակ և ծնունդ Հայու (գտածս) է ԺԶ դարու կիսում՝ (1569), այլ անտարակոյս է անկէ առաջ այլ ըլլալն։

Բ. ԺԵ դարուն սկիզբները (1414) Նոր և կարեւոր խնդիր մի, թերեւս և դէպք, եղած է Հայոց ընդ Վենետաց յարակցութեան, թէ և յայտնի չէ խնդրոյն կամ գործոյն ինչպէս վճարիլն։ Շատոնց Վենետկոյ քաղաքացի համարուած Հայ մի, որ կամ ազնուականութեամբ կամ հարստութեամբ նշանաւոր եղած պիտի ըլլայ, հաւանօրէն Աբրահամ Անտէրան կոչուած (Abraynus Anteron գրուած լատիներէն), որ երբեմն ի Տրապիզոն Վենետաց ամրոցի մէջ է բնակեր, (in castro nostro Trapesunde), տէրութեան Ծերակուտին խնդիր կու մատուցանէ (յայտ է թէ գրով, բայց առաջուց խօսած և հաւանութիւն առած ըլլալով), որ Հայոց գաղթականութիւն մի հաստատէ՝ այն ատեն Վենետաց իշխանութեան տակ եղած Կրետէ և Նեկրոպոնտ (Էյրիպօզ) կղզեաց մէջ. աւելի քան 80 Հայ ընտանիք Տրապիզոնի և Սեբաստիոյ կողմերէն յօժարեր են գալու այս ծովային կողմերը և իրենց առաջնորդին (Անտէրունի) բերնով կու խնդրեն պաշտպանութիւն, դիւրութիւն և

մաքսի թեթեւութիւն ։ — Ծերակոյտն վերոյիշեալ տարւոյն փեբրուարի 10 ին, կու քննէ խնդիրը, և միաբան կամօք 93 ժողովելոց և քուէից՝ հաւանութեան վճիռ կու տայ, խոստանալով ամեն դիւրութիւն ինչ որ տէրութեան ուրիշ հպատակաց կու տրուէր. և կու հրամայէ գրել այն կղզեաց կառավարչին, որ ըստ այսմ վճռի գործէ և կատարէ ։ Վճռոյն օրինակն կու պահուի ծերակուտին Դիւանաց մէջ. խնդրողին աղերսագիրն չկայ, կամ չէ յայտնուած. անյայտ է ինձ և կարեւորագոյն գիտելին. այսինքն, թէ կատարուած է գաղթականութիւնն. այնքան Հայ ընտանիք, ոմանք Պոնտոսի եզերքէն, ոմանք Փոքր Ասիոյ գրեթէ կենդրոնէն, թողլով իրենց տունը տեղը՝ եկեր են ինչուան Եգէական ծովածոցի մէջ բոյն դնելու, և նոր կերպով վաճառականութեան պարապելու ։ Չէ անհաւանելի. նկատելով որ այն ատեն Տրապիզոն առանձին Յունաց կայսրութեան մի մայրաքաղաք էր, ուր կու յաճախէին Վենետք և Գենուացիք՝ հին դաշնակիցք Հայոց. Օսմանեանց տէրութիւնն այլ դեռ հաստատուած չէր Փոքր Ասիոյ ամեն կողմերում, և դեռ ծովու վրայ զօրութիւն չունէր. ընդ հակառակն, Վենետաց նաւային զօրութեան ամենէն յաջող ժամանակն էր.

ասոնց պաշտպանութեան ներքեւ կըրնային Հայք գալ, բնակել և վաճառակցել յիշեալ կղզեաց մէջ ։ Արդէն Հայք Կիլիկիոյ իրենց տէրութեան վերջի տարիներում սկսեր էին սփռուիլ ինչուան ի Յունաստան և ի կղզիս Ծովամիջոցի Փոքր Ասիոյ, և ոմանք ի Մետիլինէ գալով՝ կու խնդրէին Հռոդոսի ասպետներէն և կ՚ընդունէին Կով (Լանկոյ) կղզւոյ մէջ երկիր, եկեղեցի և մշակութեան եզներ, և այլն, յամի 1366 ։ Բայց արդեօք կու յիշէ՞ն, մանաւանդ յԵւբիա (Նեկրոպոնտ) եկողք կամ գալ փափագողքն՝ իրենց 1500 տարի առաջ աշխարհակալ Արտաշէս Թագաւորին այն կողմերը նուաճելը, և իրեն ալ հօն մահուամբ կամ սպանմամբ նուաճուիլը ։ — Եթէ այս ցամաքի դրացի երկայնաձեւ կղզւոյ մէջ Հայոց բնակութիւնն այնքան ծանօթ չէ, անտարակոյս է Կրետէի մէջ, որոյ ՃԳ դարուն սկիզբէն (1204) Վենետք տէրէին ։ Ապրոյեանց ազնուական ազգաբանութենէն՝ որ բաւական ծանօթ է ազգայնոց՝ յայտնի է, որ այն հռչակաւոր Ապրոյ Չելեպին կարեւոր գործ մ՚ունեցած է Օսմանեանց բանակին մէջ՝ Կրետէի երկար պաշարման և առման ատեն՝ ի ձեռաց Վենետաց (1669), և նոյն բանակին մէջ և դուրս գըտուող Հայերէն՝ հարիւրաւորներ բնակեցու-

ցեր է ի Գանտիա, եկեղեցի մ՝ այլ նորոգելով զարդարեր և Ս. Կարապետ անուանել տուած է։ Բայց անկէց առաջ այլ այն տեղ Հայոց գտուելուն մեծ հաւաստիք է Գ. Աբրահամ կաթողիկոսին հօն ծնանիլն և այն ատեն երախայ ըլլալն. Ան պաշարման կամ պատերազմի տարիներուն մէջ էր, որ (յամի 1657), Խաչատուր կաթողիկոս Սսոյ՝ ըստ ժամանակագրի միոյ, «Առաջի Ֆրանչեսգոյ Մորոզինի՝ որ եղեւ դուքս Վենետկոյ, և Մարքէզին Վիլլայ՝ պատարագեց ի Կրետէ հանդիսապէս, և պարգեւեց Մարքէզի Վիլլային՝ զաջ Սրբոյն Նիկողայոսի ի Քառասնիցն» (Մանկանց Սեբաստիոյ), և այլն.

# Բ.

Ա. ՊԱՐՈՆ ԳՈՐԳ ԵՒ ՊՐ. ՅԱԿՈԲ ՀԱՅՔ Ի ՎԵՆԵՏԻԿ (1434). — Բ. ՕՍՄԱՆԵԱՆՑ ԵՒ ԳՕՅԹԻՆԼԱՒ ԹՈՒՐՔԱՑ ԶՕՐԱՆԱԼՆ ԵՒ ՀԱԿԱՌԱԿԵԼՆ. — Գ. ՄԻՐԱՏ ԿԱՄ ՄԻՐԱՔ ՀԱՅ ԴԵՍՊԱՆ Ի ՎԵՆԵՏԻԿ. — Դ. ԿԻՊՐԱՑԻ ՀԱՅՔ ։

Ա. Անտէրունի կամ Կրետեայ Հայ գաղթականութեան յիշատակէն 20 տարի վերջ, առաջին անգամ յիշատակ կ'ըլլայ ի Վենետիկ մարդան՝ Հայոց տան մէջ, կամ որպիսի և է պատարագելու տեղւոյ ։ Այս բանս նշանակուած է լատինէ թարգմանուած հայերէն պատարագամատուցի մի մէջ և գրուած (յամի 1381) ի Բոլոնիա քաղաքի Իտալիոյ, այն տեղի Հայոց վանատան կամ հոգետան մէջ. գիրքն հիմայ Բարիզու մեծ գրատան մէջ կու պահուի. բայց ատեն մի կ'երևի բերուած ի Վենետիկ. վասն զի վերջի թղթին վրայ գրեր է Գորճ կամ Գէորգ անուն մէկն՝ յամի 1434, անվարժ ձեռքով՝ բայց տիրաբար, իբրև այն ատեն ծանօթ և նշանաւոր անձ մի, ուրիշ պատուաւոր Հայազգի մ'այլ յիշելով. « ՌՆԼԴ և ՊՁԳ Հայոց (1434). « Ես Գորգս կու տամ Պարոն Յակոբին և

« իր որդւոյն՝ զայս Միսալս, որ է Պատարա-
« գատետր. ով որ գայ ի Վենէժս, որ կա-
« մի պատարագ առնել, նա առնու և պա-
տարագ առնէ ի Հայ տուն » . . . Երկու տող ալ կ'աւելցընէ կիսատ բառերով, որով կ'երեւի պահանջել որ գիրքն ապահով պահեն Պարոն Յակոբն ու իր որդին ։ — Ինչպէս Գորգի՝ այսպէս Յակոբայ այլ ո՛վ և ուստի գալն՝ յայտնի չէ (1). կըրնայ կարծուիլ թէ Ղրիմու կողմէն ըլլայ, գոնէ ժամանակ մի ի Վենետիկ բնակելու կամք ունենալով. ուր, խօսքէն կ'երեւի, որ արդէն կու բնակէր Գորգ ի Տան Հայոց, և ուր երբեմն հանդիպէին և պատարագէին Հայ կարգաւորք ։ Իսկ պատարագատեղին կ'երեւի թէ սենեկի մէջ խորան կամ սեղան մի էր. և դեռ հաստատուն պատարագիչ կամ մատրանապետ քահանայ չկար. Թողունք ուրեմն որ ժամանակն առաջ երթալով՝ նորէն յերեւան հանէ Հայոց եկեղեցւոյ խնդիրն ի Վենետիկ ։

1. Թերեւս դիպուած ըլլայ, բայց ստոյգ է որ ԺԶ դարու մէջ նա և ցկէս ԺԷին, Հայոց տան գլխաւոր բնակչաց և պահապանաց շատերն Գէորգ և Յակոբ կոչուէին, և շատ հեղ յիշուին այլեւայլ գործերով՝ Գէորգ որդի Յակոբայ, Յակոբ որդի Գէորգայ, և թուի թէ ոմանք նոյն ցեղէ էին որդւէ որդի. ասոնցմէ երեք չորսն՝ հարիւր տարեկան մեռած նշանակուած են ։

Բ. Հիմայ աչք մի տանք յարեւելս, ուր շատ մեծ քաղաքական փոփոխութիւններ կ՚ըլլան, որոյ նմանք հազիւ երբէք հանդիպած են ի պատմութեան. և թէպէտ մեր նպատակէն դուրս է զանոնք քննել կամ յիշել, այլ որովհետեւ Վեննետաց հետ այլ յարաբերութիւն ունին, ատոնցմով Հայոց հետ այլ եղած է. հարկ է գոնէ մէկ խօսքով միայն ներկայացընել Ասիոյ և Եւրոպիոյ կցորդութեան գեղեցիկ, զարմանալի և բաղդատական կայուն ու անկայուն կապն ու միջոցը, Վոսփորի Ծովագետն. որոյ արեւելքէն՝ յարեւմուտս անցնելով Օսմանեանք, ոչ միայն Կոստանդնեան հազարամեայ կայսրութիւնը վերուցին, այլ և նոր տեսարան բացին պատմութեան և աշխարհավարութեան, ընդարձակելով զարեւելականութիւն և ամփոփելով զարեւմտականն։ Այն ամենամեծ յեղափոխութեան ժամանակ, ամեն ազգէ և ամեն աշխարհէ մարդիկ գտնուէին հոն (ի Կ. Պօլիս), ոչ այնքան քաղաքական գործոց և դաշնակցութեանց համար, որքան վաճառականութեան։ Այս նկատմամբ՝ յայտ է որ ամենէն գործունեայք և շահավաստակք յԵւրոպացւոց՝ էին Ճենովացիք և Վենետք. (երկուքն ալ երբեմն գլխաւորք արեւմտեան վաճառակցաց Հայոց). առաջինքն՝ Ցունաց

օգնական ըլլալով՝ անոնց ճգնաժամ պատերազմին և կայսերական քաղքին նուաճման ատեն, չէին կրնար համարձակիլ յաղթող սուլտանին առջև. իսկ երկրորդքն (Վենետք) իրենց խորագէտ քաղաքավարութեամբ, միանգամայն և հակառակութեամբ ընդ Ճենովացիս, աւելի համարձակ էին. որով՝ այն մեծ և բազմազգի քաղքին մէջ արեւելեան ժողովրդոց պաշտպան կեցան. սոնք էին զատ ի Յունաց՝ Հայք և Հրեայք. յաղթող նոր տէրութիւնն ալ հաւանեցաւ. և այսպէս հեռու և օտար՝ այլ մեծ կենդրոնի մի վրայ՝ նոր կապ մի եղաւ Հայ—Վենետաց ։

Ոչ ոք կարծեմ տարակուսի՝ որ արդէն բաւական բազմութիւն մի Հայոց կար ի Կ. Պոլիս, և թէպէտ նոր գաղթականներով աւելի բազմացուց զանոնք սուլտանն, այլ առաջնոց շատութեան վկայ է իրենց յատուկ եպիսկոպոս ունենալն, որ կու յիշուի ԺԴ դարուն սկիզբէն իսկ (1307) ։ Քանի որ Վենետք շարունակեցին իրենց պայլերը ([1]), նաւարկութիւնը և վաճառականութիւնը ի նորափոխեալ հին քաղաքին, աներկբայ է և Հայոց ոչ միայն իրենց հետ գործ տեսնելն,

1. Ասոնց ապարանքն՝ ինչուան հիմայ Պաչէօղ կոչմամբ յիշուի և լսուի ի Կ. Պոլիս ։

այլ և անոնց նաւերով երթալ գալն ի Վենետիկ։

Այս մեծ յեղափոխութեան ատեն՝ թէ և ոչ շատ նշանաւոր՝ այլ և ոչ աննշան կ՚ըլլար Հայոց ազգին համար իրենց բուն երկիրն, և այն այլ նոր յարաբերութեանց և ծանօթութեանց առիթ Հայ-Վենետաց։ Մինչդեռ Օսմանեանք ի ԺԴ և ԺԵ դարս Փոքր Ասիոյ մէջ դէպ յարեւմուտս և ի հարաւ յառաջ կ՚անցնէին՝ մինչեւ ուր որ տեսանք, Հայաստան և իր դրակից Ասորւոց երկիրն՝ անոնց ոչ հեռաւոր տոհմակից երկու Թուրք ցեղերու տիրապետաց կամ բռնաւորաց բարբարական իշխանութեան տակ ընկած էր. ծանօթ են Սեւ և Ճերմակ Խոյ կոչուած տոհմքն (Գարաքոյունլու, Աքքոյունլու), որք երբեմն իրարու հետ հաշտ և երբեմն անհաշտ՝ անկանոն տէրութեամբ կու նեղէին թէ զիրար և թէ զժողովուրդն։ Իսկ այն ժամանակ որ Օսմանեանք զօրանալով՝ հաստատեցան Կ. Պօլսի գահուն վրայ, այս ասիական կողմերս ալ զօրացան Սպիտակախոյք և նուաճեցին զՍեւախոյս. և ոչ միայն զօրացան՝ այլ և քաղաքականութեան ճաշակ առին և արեւմտեայց հետ ծանօթութիւն և յարաբերութիւն հաստատեցին. այս բանիս մէջ ալ Վենետաց և Հայոց քիչ շատ գործ կայ. Այն Սպիտակ

տոհմին (Թէ և սեւանուն՝ Գարա Օսման կամ Գարա Եօլուք) նահապետն՝ որդէն Տրապիզոնի Կոմնենեան Յունաց կայսրութեան հետ ըն-տանեցեր էր, Ալեքս կայսեր դուստրը կին առնըլով. հիմայ իր թոռն՝ անուանին Ուզուն Հասան կամ Հասան Բէկ՝ առաւ Յովհաննէս կայսեր դուստրը (զոր ժամանակակից գրիչք մեր՝ Դեսբինա խաթուն կոչեն, փոխանակ ըսելու Դեսպոտինա)։ Այս ոչինչ նուազ քան ըզ-սուլտանն (Մէհէմմէտ) յաղթող ինքնագլուխ Բէկն, որ Հայոց, Պարսից և Ասորւոց տի-րող երեք գլուխներն ալ վերցընելով միա-պետէր այնքան ընդարձակ աշխարհաց, բնա-կանապէս սահմանակից կ'ունենար զՕսմա-նեանս։ Երկու մեծ և հզօր անկախ տէրու-թիւնք ձեւացան, աշխարհակալելով. և հարկ էր որ այդ ոճով իրարու բարեկամ չըլլային, և քիչ ուշ կամ շուտ իրարու զարնուէին։ Ասոնց խորհուրդն և գործն՝ մեր նպատակէն դուրս է. միայն հարկաւոր ըսելիքն այս է, որ Ուզուն Հասան՝ ոչ միայն հզօր այլ եւ հեռատես քան իր նախորդքը, կշռելով իր ոյժը իրեն հակառակորդ ըլլալու Օսմանեան տէրութեան հետ, և անոր զինուց և հրա-զինուց առաւելութիւնը, կարեւոր համարեց աւելի կիրթ և վարժ օգնական մ'ունենալ. և աչքը դարձուց դէպ ի Վենետիկ, որոյ

վաճառականք և Պայլք վաղուց ի վեր՝ կ՚երթեւեկէին և Նաւէին ի Դաւրէժ։ Մեր աւելի հեռատես և խորագէտ ծովաքաղաքացիք այլ՝ որչափ որ Օսմանեանց հետ դաշնակցութեամբ և հաշտութեամբ վարուէին Կ. Պօլսոյ տիրափոխութեան ատեն, լաւ կը զգային որ չէր կրնար երկար ատեն տեւել բանի բարեկամութիւն. Օսմանեանք ուշ կամ շուտ ընդ ծով և ընդ ցամաք պիտի շարունակէին իրենց յառաջադիմութիւնը. և եթէ ոչ ի ցամաքի՝ այլ ի ծովու մեծ վտանգ կար Վենետաց, իրենց ծովերու մէջ սփռուած հարուստ կղզեաց կորստեան, և իրենց ծովային զօրութեան՝ ահարկու հակառակորդի։ Ապա իրենք ալ աչուըննին դարձուցին առ Հասան Բէկ, ճանչնալով անոր ոյժը, արթնութիւնը, և իրեն նախնեաց աննման քաղաքավարութիւնը. և յառաջ քան իրօք և գրօք՝ ծածուկ կամ համակրական ընտանութիւն մի ըրին, որ քիչ քիչ փոխեցաւ և ի դաշնակցութիւն։ Վենետաց դքսին Պայլքն՝ ի դեսպանս փոխեցան, որոց եօթն կամ ութ մէկմէկու ետեւէ եկած են առ Բէկն՝ նոյնքան քիչ տարիներու միջոց (1470–78). ետքի Թուականիս (1478) մեռած է Հասան։

Սա գրգռուած իր նոր դաշնակիցներէն՝ որք սկսան վախցընել, թէ Օսմանեանք կու

պատրաստութիւն իր երկիրները կոխելու, ուզեց կանոնաւոր և հաստատ բարեկամութիւն և օգնականութիւն հաստատել, և սկսաւ իր կողմէն ալ դեսպան խաւրել ի Վենետիկ (1464–8), Նախ մէկ երկու Պարսիկ, յետոյ աւելի յաջողելու համար ուզեց Հռովմայ Ս. Քահանայապետին ալ խաւրել. և այս բանիս յարմարագոյն համարեց քրիստոնեայ մի, Հայ մի ։

Գ. Այս երկու դեսպանութեանց միանգամայն կատարող Հայն՝ կոչուէր Միրաթ, (ըստ իտալական թարգմանութեան Թղթոյ Բէկին ի պարսկերէնէ), իր հաւատարիմ սպասաւոր կամ պաշտօնեայն. Mando alla presenza vostra questo Nontio e fedel servidor nostro, il qual si chiama *Mirat, de nazion Armeno.* Dateli piena fede di quello che a bocca vi riferirà in nome nostro. Թուղթն գրուած է ի Սուլտանիա, ուր էր այն ատեն արքայական աթոռ Բէկին, յ՚ 2 օգոստ., 1469 տարւոյ ։ Միրատայ անունն կըրնար Մուրատ ըլլալ, բայց հաւանագոյն է որ ըլլայ Միրաթ, ինչպէս պիտի յիշեմք յետոյ ։ Սա՛ թէ յառաջ կամ վերջը գացե՞ր է և ի Հռովմ առ Պապն Պօղոս Բ. չեմ գիտեր. այլ ի Վենետիկ հասաւ փետրուար ամսու մէջ, 1470ին, և մարտի եօթին ներկայացուց

իր տէրոջ Թուղթը հանդերձ իտալերէն Թարգմանութեամբ. յորում կու յիշեցընէր Բէկն իր յաղթութիւնները, և երեք տիրապետները վերցընելը. կու Յար չորրորդը՝ զոր կ՚անուանէր Օսմանի որդի Մէհէմմէտ Բէկ (սուլտանն), զոր և յուսար Վենետաց նաւազօրուն օգնութեամբ, և իր ցամաքային բանակաւ՝ քշել հանել թէ յԵւրոպիոյ և թէ յԱսիոյ. (բայց պատերազմի բաղդն այլ ինչուան վերջ օգնական չեղաւ իրեն)։ Խորագէտ և երբեմն խորամանկ ծերակոյտն չորս ամիս ուշացուց պատասխան տալ Միրաքայ, զոր պատուով պահէր ի Վենետիկ. վասն զի այն ատեն Սուլտանին հետ ալ դաշնադրութիւն ունէր, և կու սպասէր իր պատգամաւորաց լուրերուն. և երբ Դրան հետ խօսակցութիւնն յերկարեցաւ, Միրաքայ իմացուց՝ որ իրեն փոխարէն Դուքսն ալ դեսպան կու խաւրէ (զԿատերինոյ Ծենոյ), և անոր բերնով ամեն բան կու ծանուցանէ. բայց վախնալով ալ որ ճամբան փորձանաց չհանդիպի, պարսկերէն պատասխան մ՚ այլ գրել տուաւ և յանձնեց առ Միրաք՝ որ տանի տիրոջը։ Գրուածն՝ շնորհակալութիւն մ՚էր բարեկամական, միանգամայն և յորդոր աղէկ պատրաստութեան ընդդէմ Օսմանեանց, որոց դէմ թէ և Հասան իր որդւոյն առաջնոր-

դութեամբ խաւրած էր 40,000 զօրք ի Գարամանիա (Կիլիկիոյ կողմերը), բայց բաւական չէր համարուեր: Երկու դեսպանքն իրենց սպասաւորներով և ընկերներով միատեղ պիտի ճամբուէին, յայտ է թէ, ըստ սովորութեան՝ ընծաներ այլ տանելով. բայց դարձեալ դէպք ստիպեցին որ Կատերինոյ ուշանայ ի Վենետիկ մինչեւ ի սեպտեմբեր ամիս. իսկ Միրաք ալ սպասե՞ց արդեօք եթէ մինակ գնաց, և ի՞նչ ընդունելութիւն ունեցաւ ի Հասանայ, յայտնի չէ. որովհետեւ Ծենոյի յատուկ գրած դեսպանութեան պատմութիւնն կորած է: Բայց յետոյ կ'երեւի թէ Միրաք անակնկալ վախճան մ'ունեցեր է, (համարելով միշտ որ նոյն են Միրաքն և Միրատն): — Հասանայ մահուանէն տասն տարի վերջ (1488) կու գրէ ժամանակակից ազգային մի, թէ Դաւրիժու «ղատին Թաթար էր, և հալածէր » զքրիստոնեայս:... (և) Տաճիկ ոմն Մէհթի » ազան զխօճայ Միրաքն, վասն ի Քրիստոս » հաւատոց. որ և յիշատակն օրհնութեամբ » եղիցի »: Այս յիշատակը Ցայսմաւուրք կ'աւանդեն երկարօրէն, ի 21 Մարտի, որ օր (աւագ ուրբաթուն) նահատակեցաւ. Վենետկեցի ականատեսք ալ պատմեցին իրենց Ցովսափատ Պարպարոյ դեսպանին, (որ յետ Կատերինոյ եկած էր), ինքն ալ կու յիշէ իր գրած տեղեկութեանց մէջ:

Դ. Միրաքայ դեսպանութենէն քանի մի տարի վերջ՝ երկու հեռաւոր դաշնակիցքն Վենետք և Պարսք՝ իրենց կողմը ձգելով զԳարամանն (Կիլիկիոյ մասին իշխողն), քանի մի ծովեզերեայ բերդեր գրաւեցին, Կոռիկոս, Սելեւկիա, Սիկոյ բերդ, և այլն). իսկ ցամաքի վրայ՝ Հասան տաւիլ յաջողելով՝ վերջը ձախողելով ի Դերջան մեծ պատերազմի մէջ, յետ քաշուեցաւ, Վենետք ալ կարճ ժամանակ մի ողջունելով իրենց հարց ծանօթ հին դաշնակցաց (Հայոց) ծովափունքը՝ նաւերնին և զէնքերնին յետ դարձուցին, ոչ անցաւ աչօք դիտելով իրենց այլ անոնց այլ անբաւ հարստութիւն բղխող Այասոյ կիսաւեր բերդերն ու ամայացեալ նաւահանգիստը։ Անկէ հեռանալու ատեն կու հանդիպէին ի Կիպրոս, ուր՝ ճիշդ դար մի յառաջ Հայոց իշխանութեան դադրած տարին, մասն մի ժողովրդեան՝ անցեր էր յայս դրացի կղզին, իրենց Լուզինեան թագաւորաց ազգականաց քով, և ոմանք անոնց արքունեաց մէջ պաշտօնեայ եղած էին, ոմանք ալ գետիններ գնած տեղացի դարձեր. որոց սերունդքէն դեռ գտուին մինչեւ այսօր։ Բայց այս յիշեալ ժամանակս (1475) Կիպրոսի Լուզինեան թագաւորաց ցեղն այլ նուազեր էր, և թագաւորութիւնն ընկած վերջի թագաւորին կնոջ,



Գոռնարոյ Կատարինէ թագուհի.

գեղեցկութեամբ և պէսպէս բաղդով հռչա-կեալ վենետկեցի Կատարինէ Գոռնարոյ դըշ-խոյի, որ վերջինն եղաւ Կիպրոսի և Երու-սաղեմի հետ՝ Հայոց Թագուհի անուանուելու, և զնոյն դրոշմելու իր շիրմին վրայ՝ ի Վե-նետիկ. ուր՝ ճարտարութեամբ կամ խաբէու-թեամբ փոխադրեցին զինքը՝ իր հայրենակիցք Վենետքն, և մինչեւ ի մահն օրինաւոր թա-գուհւոյ պատուով և անուամբ մեծարեցին. որոց փոխարէն՝ այն մեծ և պտղաբեր գի-նեբեր Կիպրոս կղզին՝ իրենց հասարակապե-տութեան ժառանգութիւն ըրին, յամին 1489։ Բայց չմոռցան և զՀայս. և երբ կղզւոյն ա-ռաջին կուսակալ հոգցող կարգեցին (զՕգոս-տինոս Պարպարիկոյ), յատկապէս պատուի-րեց ծերակոյտն (ի 27 օգոստ., 1489), որ Հայոց այլ սահմանեալ թոշակները տայ իւ-րաքանչիւր արդեանց համեմատ. բայց երբ անոնք հեռանան կամ մեռնին՝ անոնց տեղ ուրիշ անձ չի դնէ, առանց ծերակուտին հարցընելու (1)։

Ցայտ է ասով՝ որ Լուզինեանց պայազա-

1. Armeniis dari facies pro eorum merito statuto stipendium suum consuetum. Loco autem eorum qui pro tempore deficiunt, non surrogabis aliquem, absque expressa licentia et ordine nostro.

տաց՝ վերջին Գ. Կոստանդեանց և Լեւոնեանց ազնուական Հայ պաշտօնէից սերունդքն՝ դեռ աւելի քան դդար մի և մինչեւ ի վերջ ԺԵ դարու՝ կերպով մի կու յաջորդէին իրենց նախնեաց՝ ի Կիպրոս, նա և ընդ իշխանութեամբ Վենետաց. որոց ոչ սակաւ օգտակար ծանօթութիւն և ծառայութիւն ալ ըրին՝ թէ՛ այս թէ՛ յաջորդ դարուն մէջ, քանի որ անոնք կու ջանային Պարսից ձեռօք իրենք զիրենք ապահովել յՕսմանեանց, ինչպէս պիտի տեսնեմք այս ետքի դարուս (ԺԶ) սկիզբները, յետ յիշելու քանի մի Հայոց երեւոյթ կամ յիշատակ ի բուն Վենետիկ, նախորդ (ԺԵ) յետին տասնամեակին միջոց։

---

## Գ.

**Ա. ՄԱՐՏԻՐՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԽԶԸՆԿԱՑ. — Բ. ՀԱՅԱՑ ՏԹԻՆ ԵՒ ՏՆՊԱՀՔ. — Գ. ՇԱՀ ԻՍՄԱՅԷԼ ՆՈՐ ՏԻՐԱՊԵՏ ՊԱՐՍԻՑ ԵՒ ՀԱՅՈՑ. ՏԵՂԵԿԱՏՈՒՔ՝ ՄՈՒՐԱՏ ԱՆԿԻՒՐԱՑԻ, ԴԱՒԻԹ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԿԻՊՐՈՍԻ.**

---

Ա. Հայոց երթեւեկն թէ ի Վենետիկ և թէ Իտալիոյ ուրիշ քաղաքներ՝ ի միջին և վերջին եւս դարս, գլխաւոր երկու բանի համար էր. վաճառականութեան և կրօնից: Այս ետքինիս վկայ են իրենց շատ անգամ յիշեալ Հոֆեփոանդ, կամ Վանք և Եկեղեցիք՝ յայլեւայլ քաղաքս, ո՛ր և է պատճառաւ եկած և բնակած ալ ըլլան: Ոմանց դիտումն պարզապէս բարեպաշտական եղած է, ուխտաւորութեամբ, այսինքն սրբազան և ուխտի տեղեաց զալ տեսնել, աղօթել: Գլխաւոր տեղին՝ յայտ է թէ ի Հռովմ էր, Ս. Առաքելապետաց եկեղեցիքն: Ուխտից հետ՝ զգօն կամ հետաքննին անձինք միացընէին աշխարհատեսութեան փափագն. այս այլ յատուկ բնաւորութիւն մ՚է և պէտք էր ըլլալ՝ մեր ազգայնոց, որ ի մէջ ազգաց՝ թէ ոչ առաջին աշխարհաշրջիկ կամ աշխարհաքաղաքացի

կրնան ըսուիլ, այլ ոչ և երկրորդ ։ Այս երկու դիտմունքն յորդորեր է Բարձր Հայոց արդէն ուխտաշատ Եզընկայ գաւառին մէկ ուխտատեղւոյ առաջնորդ եպիսկոպոսն, Մորդեխոս, երկար ժամանակ և երկար համբորդութիւն ընել յԵւրոպա, 1491–7 տարիներու միջոց ։

Ա. — Այս թուականներէն շատ տարիներ առաջ (Թերևս 25 կամ 30), կու յիշուի նա՛ նոյնպէս եպիսկոպոս կոչմամբ և « Սպասաւոր Ս. Լուսաւորչին Ս. Գերեզմանին ». երբ այն կողմերուն կ' ասպատակէր Ճիհան – շահ՝ Սևախոյ Թուրքմանաց իշխողն, (զոր յետոյ սպաննեց Ուզուն Հասան և միաբանեց), կողոպտելով ու գերելով զԴերջան. և զատ յայլոց՝ Աճէէբէզ անուամբ մէկու մ'այլ երկու դստերքը գերի ըրաւ իր հեծելոց ։ Այս խեղճ հօր՝ գթալով Եզընկայ վանորէից առաջնորդք և եպիսկոպոսք, վկայական գիր տուին, որ շրջի ողորմութիւն ժողովելու և փրկանք տալու զաւակացը. վկայագրողաց մէկն այլ էր Մարտիրոս, որ զուցէ այն ատենէն կու փափագէր յաջողագոյն դիտմամբ՝ համբորդելու. և կատարեց փափագը՝ վայելչապէս ։ Ըսել կ'ուզեմ՝ լաւ և ստոյգ դիտողութեամբք, և ոչ չափազանցօրէն կամ ի հարևանցի, ինչպէս ոմանք ըրած են, և ի մասնաւորի Վենետիկը

տեսողք և գրողք. որոյ և կամրջաց և եկե-
ղեցեաց կանթեղաց և սպասուց բազմութեան
վրայ զարմացած՝ քանի մի հազար կ՛ըսեն,
փոխանակ հարիւրոց։

Լսենք սա ինչ կ՛ըսէ կամ գրէ. «Ես Մար-
» տիրոս, միայն անուամբ եպիսկոպոս Երզըն-
» կայի, ի Ս. Կիրակոսու յանապատէն, ի
» Նորգիւղա գեղէն ([1]), ի վաղուց հետէ
» փափագէի ի Ս. գլխաւոր Առաքելոցն գե-
» րեզմանին տեսանելոյ. և յորժամ հասեալ
» ինձ անարժանս արժանաւորել տեսլեան
» նոցա, և հանապազ սիրտս փափագէր, բայց
» ումեք ոչ կարէի յայտնել զխորհուրդ սրտի
» իմում։ ԹՃԼԸ (1490) հոկտ. ԻԹ, յելայ
» ես իմ վանացն, և եկայ մեղ(մ)աբար՞
» հասի ի յՍտամպօլ. և Աստուծոյ յաջողու-
» թեամբ գտեալ նաւ մի և մտի անդ, Վըր-
» թանէս սարկաւագովն։ Թվ. ՋԼԹ (1491),
» յուլիսի ԺԱ ի յՍտամպօլու ելաք, մտաք
» ի նաւ մի ֆրանգի. և հոկտ. Ա ելաք ի
» Վենէժ քաղաքն, որ է Վենետիք. մեծ և
» փառաւոր քաղաք. և ինքն է ի մէջ ծովու
» շինած. ՀԴՌ (74,000) տուն է. և խիստ
» փառաւոր և հարուստ քաղաք է. և մեծ

1. Նորգիւղ էր ժամ և կէս հեռու է ի քաղաքէն, յարեւելակողմն. իսկ Ս. Կիրակոս Անապատն՝ աւելի քան երկու ժամ, յարեւմուտս հարաւակողման։

» եկեղեցի կայ ի մէջ քաղաքին, որ ԺՌ
» (10,000) մարդ կու մտնէ ի մէջն. խիստ
» զարդարած է ոսկով։ Ս. Մարկոս յաւե-
» տարանչին եկեղեցին է. և երկու երգեհոն
» կայ ի մէջն. և երկու Թեւաւոր առիւծ է շինած
» ի մէջն. և այլ շատ եկեղեցիք կայ ի քաղաքն,
» շատ վանորայք կայ ի բոլոր քաղաքին. ա-
» մէն՝ մէջ ծով է շինած։ Եւ մեծ մոյդան (մէյ-
» տան, հրապարակ) մի կայ առաջեւ եկե-
» ղեցին Ս. Մարկոսի. ի դրանն շատ ի վեր
» չորս դեղին պղնձէ ձի մի շինած և կանգ-
» նեցուցած մեծ մեծ, և ղմէկ ոտքին ի վեր
» են կալեալ (1)։ Եւ ի հարաւային կողմ
» ծովու դեհն՝ հանց ծախողներն է (փոքր
» հրապարակին մէջ). և երկու մեծ սիւն է
» կանգնեցուցած. մէկին վրայ Թեւաւոր ա-
» ռիւծ մի, մէկալին Ս. Գէորգ է կանգնել
» (ըստ այլոց Թէոդորոս)։ Եւ Թագաւո-
» րին դարպասին պարիսպն ամէնն յոսկ-
» ւով զարդարած։ Եւ այլ ազգի ազգի շատ
» բաներ. ո՞վ կարէ պատմել զքաղաքին զա-
» ղէկութիւն։ Եւ կեցաք ԻԹ (29) օր։ Եւ
» մտաք ի նաւն, և գնացաք ի ԺԳ (13) օրն
» յԱնգոնիայ. և անտի հասաք ի Ը (8) օրն

1. Ըստ աւանդութեան՝ Տիրիթ կամ Տրդատ Թագաւոր Հայոց բերած էր այս ձիանքն ի Հռոմէ։ Տես Բազմ. ԻԸ, երես 312։

» աստուածապահ մեծն ի Հռոմ », և այլն։ Զորս տարի թէ՛ ծովով թէ ցամաքով Եւրոպիոյ ամէն կողմերը և Ափրիկէի եզերքն այլ պըտըտելով՝ նորէն կու դառնայ Մարտիրոս ի Հռովմ, և դարձեալ ի նաւ մտնելով՝ կ՚աւարտէ գրուածը, յայտ է թէ ոչ և իր բազմաշրջիկ և հետաքննական ընթացքը։

Բ. Նշանելի է որ Մարտիրոս չի յիշեր ի Վենետիկ՝ Հայոց տունը և եկեղեցին. առաջինն աւելի պանդխտաց և աղքատաց համար ըլլալով՝ հաւանօրէն ինքն հօն չէր իջեւանած. իսկ երկրորդն՝ ինչպէս առաջ յիշեցինք, հազիւ թէ մատրան նմանութիւն մ՚ունէր այն ատեն, և յիշուելու արժէք չունէր։ Բայց գրեթէ Մարտիրոսի եկած տարին կամ աւելի առաջ, Հայոց տան մէջ բնակող ազգային քահանայ մի կար Գրիգոր անուամբ, որու՝ իր հայրենիքը դառնալու առթիւ, Հայոց տան վերատեսուչ տէրութեան Հոգաբարձուք՝ չորս կրոս թօշակ տուէր են (1) իբրեւ ողորմութիւն (21 օգոստ. 1490)։ Նոյնպէս այլ ըրած են անշուշտ ուրիշներու. ինչպէս եր-

1. Dedimus Presbitero *Gregorio* Armeno ituro domum suam, pro sua subventione, amore Dei, Grossos 4. Եթէ չեմ սխալիր, այս կրոշն այն ատեն ոսկի դուկատի կէսն էր, որով ըստ նիւթոյն կ՚արժէր իբր 6 ֆրանգ, ըստ յարգին՝ շատ աւելի։

կրորդ տարին (1491), Ռոմէր (այլայլած անուամբ Romerio) աղքատի մի 6 կրոս տուեր են. քանի մի տարի վերջը (1498, օգոստ. 9) Ցովէփ անուամբ Հայու մ՚ այլ իր երկիրը դառնալու ատեն՝ 2 կրոս: — Ոչ միայն այս անձանց յիշատակք կու յայտնեն՝ Հայոց երբեմն աւելի երբեմն պակաս թուով, բայց գրեթէ միշտ գտնուիլն իրենց կտակուած տան մէջ, այլ և այդ տան քիչ շատ նորոգութիւն, կամ մանր շէնք ու կարկատանք. որք՝ 50 տարիներուն միջոց (1443–94) 15 կամ 20 անգամ նշանակուած են առանձին հաշուէգրոց մէջ, ամէն անգամ եղած ծախուց թիւերով. հարկ է որ անկէ առաջ երկու դարուց միջոց այլ նոյնպիսի ծախքեր և շէնքեր եղած ըլլան. բայց հաշուէգիրքն կորած են: — Ծախուց ստակն կամ դրամագլուխն՝ Ծիաննեայ թողած գումար մ՚ էր, որ կէսն Հայոց համար, կէսն այլ Փրանկիսկեան կրօնաւորաց, Վենետկոյ Այգի կոչուած թաղին մէջ (alla Vigna). երկուքին այլ մատակարարք կամ կտակակատարք էին քաղքին ներքին երեք Հոգցողքն (Procuratori de Citra), որ և պետութեան ամենէն մեծ պաշտօնէից կարգէն են. որք և ամենայն հաւատարմութեամբ կատարած են Ծիաննեայ իրենց յանձնած հոգը Հայոց տան համար: Զաս եր-

բեմն Տուն կ՚անուանեն և կու գրեն, երբեմն Հիւրատուն կամ Հոգետուն, իրենց լեզուով (Hospizio, Hospital, կամ Domus Armenorum կամ De Armenis, Ospidal di Arminj.) տան մօտ եղած կամուրջն այլ՝ Կամուրջ Հայոց (Pons Armenorum, որ և Pons Feralis կամ Ponte dei Ferali).

Աւելի խղճմտութեամբ միանգամայն և ապահովութեամբ հոգալու համար՝ իրենց կողմէն գործակալ և պահապան մի կարգէին ի Տանն, զոր սովորաբար Տնպահ կոչեն Castaldus, Castaldionus, բայց երբեմն այլ Prior կամ Proto, իբրև գլխաւոր կամ առաջնորդ. յետոյ երբեմն Պահապան, Custode, Guardiano, Vardian. ինչուան ԺԶ դարուն կէս՝ միշտ իտալացիք՝ այսինքն բնիկ Վենետք եղած են Տնպահքն. անկէ ետև, ինչպէս որ կու վայլէր, երբեմն Հայ՝ երբեմն իտալացի, մինչև մօտ ի վերջ ԺԷ դարու և ի Նոր շինութիւն Ս. Խաչ եկեղեցւոյ. ուսկից վերջը բոլորովին Հայոց անցաւ թէ՛ տան թէ եկեղեցւոյ հոգը և շէնքը. պետութեան երեք հոգացողքն միայն ծանր խնդրոց կամ վիճից մէջ՝ իրենց հեղինակութիւնը կու բանեցընէին։ Երբեմն իրենց և Հայոց մէջ այլ վէճ եղած է, որ մերոց կողմանէ մեծ յանդգնութեան գործ է։ 1476 Թուականէն մինչև ի կէս

ԺԷ դարու, 25 Տնպահից անուանք յայտ-նուած են, զոր յիշել աւելորդ համարիմ, բայց եթէ դէպք պահանջեն, միայն զՀայս յիշեմ, որչափ որ ծանօթ են՝ իրենց ժամա-նակովն ։

| | |
|---|---|
| Աղեքսանդր | 1508 |
| Սիմոն | 1555–1577 |
| Գէորգ որդի Յովհաննու | 1577–588 |
| Մկրտիչ Պարսկահայ | 1595–1608 |
| Ղազար Պարսկահայ | 1617 |
| Գէորգ Գոքիլլոյ | 1643–50 |
| Պետրոս Ոսկան | 1650–58 |

Իրաց ժամանակագրական կարգն զատոնք կու ներկայացնէ ի հարկին ։ — Իսկ հիմայ ԺԵ դարուն վերջի տարիներուն (1493–6) նոր շարժմունք մի կ՚երեւի Հայոց ի Վենե-տիկ. եկող գացողներն կ՚աւելնան. որոց համար հարկ կ՚ըլլայ Հոգաբարձուաց՝ այն մանր նորոգութիւններու տեղ բոլորովին նո-րոգել կամ վերաշինել Հայոց տունը (1), որոյ համար բաւական ծախք ըրին, իրենց գոր-ծակալ Գասպար Ամադի (Gasparo Amadi) Տնպահին ձեռօք ։ Վենետաց հռչակաւոր և ծիրանաւոր (կարտինալ) Պեմպոյ պատմչին գե-

1. Pro fabrica fienda in Domo de nova fabricando, կու գրեն ի հաշուէգիրս, ի 23 սեպ-տեմ. 1494 ։

ղեցիկ գրուածէն այլ կ՚երեւի, որ այն օրեր
քանի մի Նշանաւոր և խօսքի տէր Հայք եկած
էին, և գտնելով կամ գիտնալով ԺԳ դարու
մէջ իրենց ծեր ազգակցին թողած կտակը և
ստակը՝ Հայոց տան և եկեղեցւոյ մի շինու֊
թեան համար, ստիպեցին զՀոգաբարձուս՝ որ
տունը՝ բնակութեան, և Հայոց բնակութեան՝
պատշաճ վիճակի մէջ դնեն. անոնք այլ կա֊
տարեցին խնդիրը ։ Բայց կ՚երեւի թէ Հայք
իրենց քմաց համեմատ այս կամ այն կեր֊
պով շինուածք կ՚ուզէին. որոց համար աւելի
եղած ծախքն այլ խոստացան և քիչ քիչ վճա֊
րեցին. և երբ ամէն բան յարմարեցաւ,
մտան Հայք իրենց սեփականեալ տունը, յամի
1497։ Որոց համար այսպէս կ՚ըսէ պատմիչ
և քերդող հեղինակն այն (Պեմպոյ). «Հայք,
» այդ հեռաւոր ժողովուրդն, քաղաքավա֊
» րութեամբ ընդունուած (ի Վենետաց), բա֊
» րեկամական տեսարան մ՚ընծայեցին քաղ֊
» քին» (1)։ — Փափագելի էր այս Հայոց

1. Alcuni Armeni venuti a Venezia mostrarono a Procuratori di S. Marco il Testamento fatto da un Armeno; per lo quale astretti erano di comperare una casa nella città co' denari del morto; la qual casa abitasser quelli Armeni che a Venezia venissero. E quella casa di poi era stata comperata insieme con una chie-

տան բնակութեան Նորոգողաց կամ Նոր եկողաց անուանց և որպիսութեան վրայ աւելի ծանօթութիւն ունենալ, և մեծ պատմչին վկայութիւնն աւելի բացատրել. բայց գտած տեղեկութիւննիս այսչափ է ։

Այն տունն եկող գացող Հայոց միայն մէկու մի յիշատակ կայ 1495-96 տարւոյ հոկտեմբեր ամսու 5ին. որոյ անունն կամ սխալ կամ իտալացեալ գրուած է, (Uno Donado Armeno sudito del Signor Turco). Գոնադոյ, թուի թէ տուր բարդութեամբ անուն մ՚էր (Տիրատուր, Խաչատուր, Աստուածատուր, ևն)։ Ադրիական ծովու մէջ նաւելու ատեն, Ալպանիայի Դուլչինիոյ քաղաքին վենետկեցի ծովապետն՝ կեցուց նաւը և քննեց. և այս Թուրքաց հպատակ Հայուն ապրանքը, (որ կամ դիպակ, կամ չուխայ էին, Panni), փախըստեայ համարելով, նաւովը հանդերձ խաւրեց ի Վենետիկ. այս

setta a S. Giuliano, nel Calle delle Lanterne, e i Procuratori tuttavia la locavano. Essi dunque che detta casa fosse loro restituita, dimandarono. La qual richiesta intesa fu da' Procuratori, la Casa agli Armeni renduta, e ad abitare incominciata: ed essi cortesemente e liberalmente ricevuti, amichevole spettacolo alla Città diedero. — Bembo LIB. IV.

տեղ Հայն արդարացուց զինքը, ապրանաց մէկ մասը նոյն այս քաղքիս մէջ գնած ըլլալով, մէկ մասն ալ Բեզարոյ քաղաքին տօնավաճառէն գներ էր։ Շահասէր և ճարպիկ Հայու աչքէն ոչ միայն մեծ շահաստանն Վենետիկ, այլ Իտալիոյ որ և է շահու և առեւտրի բանուկ նաւահանգիստ կամ հրապարակ՝ չէր ծածկուեր ։

Գ. — Ի սկիզբն ԺԶ դարուն Նոր շարժում մ'եղաւ քաղաքական կամ վարչական, մեր և դրացի աշխարհաց մէջ, որ նորէն դրդեց Վենետկոյ հասարակապետութիւնը՝ դիտելու և տուգելու եղածը կամ ըլլալիքը. ինչ որ ըրաւ Ուզուն՝ Հասանի տիրապետութեան ատեն, նոյնը և Շահ Իսմայէլի երեւնալուն, որ գրէթէ իր (մօր կողմանէ) պապուն պէս, և գուցէ աւելի քաղաքագիտութեամբ և զինուորական կրթութեամբ՝ բարեկարգ և տեւող տէրութիւն մի հաստատեց, որ կոչեցաւ Շահ-Սէֆեանց Պարսից Թագաւորութիւն, իբրեւ երկու դար նոյն ցեղի յաջորդութեամբ։ Իսմայէլ ի մանկութեան մեծ վտանգի մէջ ընկած և գրեթէ Հայոց ձեռքով կամ անոնց ամուր ապաստանով մի (Աղթամար կղզւոյ) ապրած է. և ինչպէս կ՚աւանդէ Իտալացի ժամանակակից ճամբորդ մի, հօն երեք Հայ վարդապետաց խնա-

մօք դաստիարակուած, թէ երախտապարտ և թէ ծանօթ էր Հայոց. ուստի, երբ յաջողեցաւ Հասանայ որդւոց և Թոռանց բաժանեալ տէրութիւնը ձեռք ձգել (1499), և միացընելով զօրանալ, և ընդդէմ Օսմանեանց շարժիլ, Վենետք սրեցին աչուընին և ականջնին. իրենց պաշտօնէին և վաճառականաց միջոցով լուր առնուլ բաւական չեղաւ, հարցուցին և Հայոց, թէ ի Վենետիկ եկողաց և թէ ուրիշ կողմեր գտնուողաց, մանաւանդ ի Կիպրոս, ուր կու յաճախէին Հայք, ինչպէս վերը յիշեցինք։ Ասոնց մէկն Մուրատ Անկիւրացի՝ Դաւրիժէն գալով հօն (ի 26 օգոստ. 1503), պատմեց այն քաղքին քով Հասանայ Մուրատխան Թոռան և Իսմայելի մեծ պատերազմը, ուր երկու կողմէն 60 կամ 70,000 մարդ ջարդուեցան. Նախ յաղթեց Մուրատխան՝ Վրացի գնդի մ՚օգնութեամբ. բայց յետոյ բաղդն յաջողեց Իսմայելի։ Իսկ մեր Անկիւրացի Մուրատն յԱմիդ հանդիպեցաւ Ուզուն Հասանայ մէկ աղջըկան, որ քրիստոնեայ էր և յԵրուսաղէմ յուխտ կ՚երթար 500 ընկերօք, և մէկտեղ եկան ինչուան ի Հալէպ։(1)

1. Վենետոյ և գրեթէ ամենայն Եւրոպիոյ գերահըռչակ ժամանակագիրն կամ Օրագրողն՝ Մարինոս Սանուդոյ, նշանակէ զայս իր յիսնահատոր գրոց Ե ին մէջ, ի

Յաջորդ տարին (1504) յունիս ամսոյ մէջ քանի մի Հայք ի Վենետիկ գալով՝ հարցուեցան և պատմեցին, թէ եօթն ամիս. է որ Շահ Իսմայէլ յաղթեց և Մուրատխանի տիրած երկիրները նուաճեց, անուանէ յի-շելով Դարբէժ, Սուլտանիա, Շրուան, Խո-րասան, և այլն. և վերջերը կու պաշարէր կամ մօտեցեր էր Resugella? կոչուած բեր-դին. որ՝ եթէ արգելք չըլլար իր արշաւա-նացը՝ ինչուան հիմայ ի Հայաստան այլ մտած կ՚ըլլար։ — Տասն տարի վերջը Դուքին Ե-պիսկոպոս Կիպրոսի կու գրէ (23 մարտի, 1515), երբեմն ի Կիպրոս խորհրդական եղող Դո-նատոյ Լեծէ (Donato Leze կամ Lege) ազ-նուականի՝ ի Վենետիկ, (ուր, իր (Դաւթի) եղբայրն այլ գտուէր), Շահ Իսմայելի և Սուլդան Սէլիմի պատերազմը, Խոյ քաղքին մօտերը, կամ ի Չալտըրան, ուր առաջինն յաղթուեցաւ, հրազէնք չունենալուն համար։ Երկրորդ երկար թղթով մի (23 կամ 25 ա-պրիլի) Դաւիթ կ՚իմացընէ նոյն բարեկամին, որ Իսմայելի իշխանութեան երկրէն Chi-chincagia? (Չմշկածա՞գ), տեղէ կամ քաղ-

22 Նոյմ. 1503 տարւոյ, վերնագրելով. Depositione de Morati Anguriato de Tauris, in Cypro, a dì 26 de Agosto, 1503, dei progressi del Signor Sophis; dicente ut in frà. etc.

քէ՝ Հայ եպիսկոպոս մ՚ եկաւ իրեն քով երկու ամիս կեցաւ (ի Կիպրոս), (1) և շատ տեղեկութիւններ տուաւ Սուլտան Սէլիմի արշաւանաց վրայօք. որ թէ և հետաքրքրական են, այլ մեր նպատակէն դուրս են. և այն արիւնահեղ պատերազմներէն աւելի (որ քանի մի հարիւր հազար մարդ ծածկեցին մեր հայրենի հողոց մէջ), անտարակոյս փափագելի են խաղաղական յիշատակներն անկէ պանդխտածներուն՝ յայս ապահով ծոց Ադրիականի։

1. Վերոյիշեալ Օրագրողն Սանուտոյ իր Ի (քսաներորդ) հատորին մէջ (Թղ. 144 և 161) այս Դաւթի նամակներն այլ իտալերէն բառ առ բառ օրինակած է, վերագրելով, Ա. « Copia ad litteram de una Lettera di Cypro scrita per il vescovo di Armenïa nominato *Davil*, a Ser Donado da Leze,.. arrivata qui a di 31 marzo, 1515.

Բ. Copia d'una lettera de Cypro scripta per lo Episcopo de Armenia, data a dì 23 Aprile, 1515, drizata a Ser Donado da Leze, lo Consier in Cypro, et recevuta quì a dì 4 Zugno. Nara de Sophi e Turco. — Այս Բ թղթոյ ստորագրած է (Դաւիթ) առանց անուան. Io el umilissimo Episcopo Armeniorum. հանրական կերպով՝ Եպիսկոպոս Հայոց. արդ կարծեցընել տայ թէ ըլլայ Թադէոսն կամ Դաւիթ, որ կաթողիկոս Հայոց նշանակուի 1499-1503 տարիներու միջոց։

Դ.

Ա. ՍԿԻԶԲՆ ՀԱՅԵՐԷՆ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ Ի ՎԵՆԵՏԻԿ։ ՅԱԿՈՎԲ ՏՊԱԳՐՈՂ. ԱԲԳԱՐ ԹՈԽԱԹՑԻ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՐԶՆՑԻ։ — Բ. ՀԱՅ ԹԱՐԳՄԱՆՉՔ. ԳԷՈՐԳ ԴԱՄԱՍԿԱՑԻ, ԵՒ ՈՐԴԻՆ ՄԱՐԿՈՍ։




Ա. – *Այս յիշատակաց մէջ առաջին և պանծալի գրելու է Հայերէն Տպագրութեան սկզբնաւորութիւնն ի Վենետիկ, որոյ վրայօք շատ անգամ գրուած է, և դեռ նոր և ստուգագոյն ծանօթութեամբք՝ Բազմավէպ օրագրին* (1890) *տարուան սկիզբներում՝* (*երես* 99–104)։ *Որչափ որ հաւանական և գրեթէ*

անտարակոյս կ'երեւէր Պատարագատետրի, Աղթարաց, Հէքիմարանի, և այլ գրոց, շատ տարի յառաջ տպագրուիլն քան զԱբգարու տպագրեալ Սաղմոսը՝ ի Վենետիկ, բայց յայտնի վկայութիւն մի չկար. մինչեւ յայտնեց մեզ զայս մեծայարգ և բանասէր անձ մի, Սահակ Եպիսկոպոս Գապայեան միաբան Երուսաղէմի Ս. Յակոբեան վանաց, որու երախտապարտ և շնորհակալ կ'ըլլամք. գտած գրքոյկն է Պատարագատետր մի, այս համառօտ յիշատակարանաւ. « Տպագրեցաւ » սուրբ տառս ի ՋԿԲ (1513–4) ի աստուածապահ քաղաքս ի Վէնէժ, որ է Վենետիկ, » Ֆռանկաստեան. ձեռամբ մեղապարտ Յոկոբին. որք կարդայք՝ մեղաց թողութիւն » խնդրեցէք Աստուծոյ »: Յակովբ՝ առաջի տարին այլ ՋԿԱ (1512–3) տպագրած է վերոյիշեալ Աղթարքը: Քաղաքն յայտնուեցաւ, բայց տպագրատունն դեռ ոչ. կրնար կարծուիլ որ նոյն իսկ Հայոց տան մէջ ըլլայ, ինչպէս ուրիշ տպագրեալ հին գիրք մի կ'ըսէ: Այս՝ Հայ տպագրութեան կարեւոր խնդրոյն ծանօթութեան՝ մեծ լոյս մ'է, բայց դեռ ոչ բաւական. կու մնայ փափագելի գտնել այս մեղապարտ Յակոբէն առաջ բարեպաշտ և բարեբաղդ Հայ տպագրող մի. կամ, եթէ նոյն իսկ Յակոբն է առաջին տպա-

գրողն, ինչ կերպով հնարեր է հայերէն տառերը։ Նոյնպէս, ոչ միայն մեզ այլ և օտարազգի գիտնոց շատ հետաքրքրական է ճանչնալ գրոց բուն Վենետկեան տպագրատունն այլ, որոյ նշանն (տես յէջ 207) դրուած է այդ յակոբատիպ գրոց վերջի երեսը. բայց դեռ չէ ստուգուած տպագրատան տէրն, այլ հաւանօրէն է Zuan Andrea հոչակաւոր տպագրողն և փորագրող։ Յակոբէն 40 և աւելի տարի վերջ (1566), երբեմն առաջին տպագիր կարծուող Աբգարն Թօխաթեցի՝ իր ըրածը կու պատմէ, միանգամայն և յայտնելով կամ կոչելով ՙՆոր՚ իր տպագրութիւնը, ուսկից հարկ էր գուշակել որ իրմէ առաջ կամ աւելի հին հայ տպագրութիւն եղած էր։ Այս բանիս վկայութիւն մ'ալ ըլլայ (որ չէ յիշուած ի Բազմավիպի կամ ուրիշ տեղ), Լորենցոյ տ' Անանիա հեղինակի մի Տիեզերագրութեան (Cosmografia) գրոց մէջ յիշածը, թէ ինքն աչօք տեսեր է յամին 1562 Վենետիկէն բերուած հայերէն տպագիր մի, որ՝ ըսածէն կ'երեւի՝ թէ ըլլայ կամ այբբենարան կամ քերական (1)։ Դիտելի է նա և ըսածն՝ թէ

1. Il cui alfabeto costa, siccome io ho veduto, con una breve *metodo* del loro idioma, di 29 lettere, di che già ne hanno la *stampa*, havendola riportata da Venetia l' anno del *sessantadue.*

Հայոց այբուբենք 29 են, անշուշտ միայն բա-
ղաձայնները համրելով և ոչ գձայնաւորս, և
ոչ Օ և Ֆ տառերը։

Առաջին տպագրութենէն 20 կամ 22
տարի վերջը (1587) Նոր տպագրութեան ձեռք
զարկեր է ի Վենետիկ, և Նոր տառերով,
աշխարհիկ երեց մի, Տէրզնցի Տէր Յովհաննէս,
և տպագրեր է Սաղմոս մի ի տպագրատան
Յովհ. Ալպերտի (Alberti). իր և իր գոր-
ծակից Խաչատուր որդւոյն պատկերքն այլ փո-
րագրել տալով և վրան գրելով. «Տէր Յով-
» հաննէս Տէրզնցի եւ Խաչատուրն ծառայք
» Աստուծոյ եւ յիշողացս։ ՌԼԶ.»։ Իրեն
օգնական և ձեռնտու եղեր են իր հոգեւոր
որդին Ստեփանոս, և այլ Ջուղայեցի վաճա-
ռականք, որոց գլխաւորը կ՚անուանէ Շահօղլի.
այլ աւելի երախտաւոր՝ «զԿարապետ Բա-
» ղիշեցին (կ՚ըսէ) յիշեցէք ի Քրիստոս, որ
» բազում օգնութիւն հասոյց մեզ»։ Անոր
և կիսատ (Թուի գրոց օրինակին պակասու-
թեամբ) ոտանաւոր մ՚ այլ կ՚իմացընէ գլխուն
եկած փորձանքները, և ամբաստանուելով
(ի՞նչ բանի համար) ի բանտ ձգուիլը, միան-
գամայն և ի Հռոմ գնացած ըլլալը, ինչպէս
յետոյ և ի Մարսիլիա։ Այս քիչ շատ յիշա-
տակարաններէն կ՚իմացուի իր բաւական

բանքարակ այլ և բանագտակ և լեզուագէտ ըլլալն ։ Այս գրածն.

« Այս է տաղ և յիշատակարան ի վերայ անուան.

Լամ ես գերեաս՝ ձեր ոտաց կոխան, ունկն դնել այսուիկ բանին,
Որ ես պատմեմ փոքր մի զանցս իմ զեղեալս իմ ի գոյն տաղի ։
Երբ որ եղէ այրի գերիս՝ ի Համիթ մայրաքաղաքին,
Մնաց երկու աղջկունս և տղայ մի եօթն ամի.
Նախճան–են ատեցեալն (?) տարակուսիլ ես իմ անձին.
Եհան զիս յիմ որբերացն, ած ի Հռոմ յերկիրն Լատին ։
Յորժամ կամեցայ յետ դառնալ, զի վերջ արի զիմ առաջին (?),
Քսան աւուր ճանապարհք չոքա միամիտ յիմ ճանապարհին.
Որոյ վկայ է Տէր Աստուած՝ որ ծածկատես ամէն գաղտնին.
Ջի՞ Չ՚ասս ինչ ոչ գործեցի՝ զի արժանի լինի բանտին.
Վասն իմ մեղացն որ յառաջ կայր՝ որ ինչ գործեալ յիմ երկրին,

Փութանակի աստի հասան մի ըստ միով կա....

Որդ երբոր այն պատահեցաւ լեցին (?), ի Հռոմայ Թուղտ առաքեցին ի քաղաքին... ասեն... »

Նոյն տպագրութեան տարին (1587–8) ի Վենետիկ գալէն առաջ կամ (հաւանօրէն) վերջը, Տերզնցին իր որդւոք ի Մարսիլիա գնացեր է, և հօն փռանկաց անուանի հին վիպասանութիւնը Գեղեցիկն Փարէզու, (Le Chevalier Paris et la belle Vienne) թարգմաներ է հայերէն ոտանաւոր չափով. որ եթէ ուրիշ լեզուագիտի օգնութեամբ այլ եղած ըլլայ, դարձեալ արդիւնաւոր է Յովհաննէս, մանաւանդ եթէ նկատուի այն վիպասանութեան դժուարին հին փռանկ լեզուն և ոճը: Թարգմանութեան վերջը նոյնպէս ոտանաւոր յիշատակ մ՚ այլ գրած է, որոյ տողից առաջին տառերն կազմեն այս բանս. «Զտէր Յովանեսի Տէրզնցոյ ասաց յաս»?, փոխանակ ասացեալ կապելու: Գրածն՝ թէպէտ զմեզ ի Վենետկոյ դուրս կու հանէ, բայց իր այս տեղ ըրած գլխաւոր գործն (տպագրութիւնն) ներելի ընէ, զնոյն օրինակել և կարդալ, որովհետեւ շատ սակաւագիւտ է գիրքն.

« Յիշատակ Թարգմանչի տառիս.
Զարիւք պինտ լի երես որ կայ՝
Տրորեալ մածիմ ոտացդ վերայ.

Յիշա զմէզ տր յորժամ գյաս արքայու
թեամբ քո և ողորմեամ եզ ·



Յիշատակարանէ աւսիկ
առ քամէնասր երյսէ Թէ հօրև

Ծղրայր, լեզուով մի յիս գըթայ,
Բամեալ հոգւոյս ողորմի տայ.
Ցորդ արտասուօք զոչեմ ահա,

Ողորմեցէք որպէս Յօվբայ․
Վկայն իմ Տէրն է, կրկին վկայ․
Աղաղակեմ, ձայնըս կու գայ․
Նա որ ասէ մի Տէր ողորմեա՝
Եղկելոյն այն որ կու կենայ,
Ի յա(ն)դեննին տանու և խնդայ ։
Տրամադրեալ սա ի Ֆրանցայ
Էր ի քաղաքն Մառշիլիայ․
Բամել Թուխս միրոյս Հայկայ
Զերդ և հազար և երեսուն կայ,
Նայ աւելի եւս վեցամեայ,
Յվերջ ամսուն յամաց սոցայ․
Որ և երկրիս այս մեծ արքայ
Յինրիքոս (Ենրիկոս Գ) կոչեն ըզնա ։
Այլ ես յորդովք քաղաքս ուղղայ․
Սիրտս իմ կամի որ միշտ երթայ․
Այլ ճանապարհս երկրի սորայ՝
Ցամաքն և ծովն կապեալ մնայ ։
Յաւտարութիւնս մաշեցայ,
Որ ի երկիրըն Ֆռանցայ․
Այս ինչ ցաւ է, կայ և մնայ ։
Կատարեցաւ բանս » ։

Անցողաբար․ յիշեմք որ Տէրզնցին ի Հռովմ եղած ատեն (1583), Հայոց Փըռանկոյ կամ իշխան անուանեալ Սուլդանշահի (Աբգար տըպագրի որդւոյն) և ուրիշ գլխաւորաց կող-

մանէ՝ երկայն նամակ մի գրած է, արձակ և ոտանաւոր (իր ոճով) առ Դաւիթ պատրիարք Երուսաղեմի, հրաւիրելով որ գայ ընծաներով ի Հռովմ, և տեսնէ Գրիգոր ԺԳ Պապուն ըրածները, մանաւանդ Նոր տօմարի հաստատութիւնը, զոր և յաջորդ տարին (1584) Թարգմանեց ինքն Տէրզնցին և տպագրեց ի Հռովմ։

Բ. Տպագրութիւնն ի հարկէ պահանջէր նախընթացաբար՝ որ և է գրագիտութիւն մի կամ գրաւոր ճաշակ. այս ճաշակին գործին՝ որ է լեզուն, կրնայ յատուկ ըսուիլ կամ դիւրագիւտ Հայոց. ամէն ատեն ծանուցուած է մերայոց յաջողութիւնն օտար լեզուներ սովրելու, խօսելու և թարգմանելու, նախ բանիւ՝ ապա և գրով։ Ռուբինեանց տէրութեան ատեն վայելչապէս ծաղկած էր թէ լեզուագիտութիւնն թէ՛ թարգմանութիւնն։ Թողլով զընդհանրութիւնն և գալով ի մասնաւորն՝ յիտալականն, և առանձինն ի վերաբերեալն ընդ Վենետաց, տեսանք արդէն ԺԴ դարուն կիսէն առաջ Աւագ կարաւանապետին թարգմանի գործ կատարելն երբեմն ի Վենետիկ եկած ատեն, և իր ծառայութեան վարձը խնդրելն։ — Գրեթէ 200 տարի վերջը (1519) Դամասկացի մ՚ ալ նոյնպէս կու գայ ի Վենետիկ իր թարգմանօրէն

ծառայութեան վարձը հաստատել տալու ։ Գիտնալու է՝ որ Վենետիք մեծ առեւտուր ունէին յԱսորիս, ուր իրենց գլխաւոր գործատեղին և պաշտօնեայն, զոր՝ քօնսօլ (console) կ՚անուանէին, կու նստէր ի հին մեծ և բարգաւաճ քաղաքն Դամասկոս, ուստի յետոյ փոխադրեցաւ ի Բերիա (Հալէպ)։ Յայտնի է որ այդ քաղաքաց բնակչաց հասարակ լեզուն արաբերէնն էր, տեղացի Հայք այլ իրենց բնիկ լեզուէն զատ խօսէին զայս և զԹուրքարէն. ուստի թէ Վենետաց և թէ ուրիշ արեւմտեայց կըրնային ըլլալ և կ՚ըլլային թարգմանք. Ասորւոց երկրին և Վենետկոյ փոխադարձ վաճառաց տուրքերի համար՝ բանուկ մաքսատուն կամ բաժտուն մի հաստատուած էր այդ մեծ քաղքին մէջ. անուած բաժը՝ Վենետիք՝ կօտտիմօ (Cottimo) կ՚անուանէին, և ժողոված ու հաշիւն անվրէպ կու խաւրէին ի Վենետիկ ։ Այս բաժտան թարգման էր Գէորգ տեղացի Հայն. ԺԵ դարուն վերջի տարիներէն սկսեալ, կ՚ընդունէր տարեկան վարձք 216 դուկատ, որ ըստ նիւթական արժէից 500 ֆրանգէն աւելի է, ըստ իրականին՝ այժմեան արժէից՝ թերեւս եռապատիկ աւելի ։ Ինչպէս վաճառականութիւնն՝ այսպէս անոր վերաբերեալ ամենայն հաշիւք ալ փոփոխական են, աւելի

կամ Նուազ. 1518ին առեւտուրն շատ յաջող չըլլալով՝ Դամասկեան բաժից մեծ պաշտօնեայքն ի Վենետիկ՝ ուզեցին իրենց բաժտուն ծառայողներն և անոնց վարձն այլ նուազեցընել, և գլխաւոր Թարգմանին տալ՝ 150 դուկատ միայն ։ Գէորգ լաւ գիտնալով իր արժէքն՝ վստահութեամբ եկաւ ի Վենետիկ, և խնդրեց ի տէրութենէ՝ որ քննեն իր 20 տարի ըրած հաւատարիմ ծառայութիւնը և չի զրկեն զինքն իր Թոշակէն ։ Վենետոյ կամ տէրութիւնն շատ խիստ էր այսպիսի խնդրոց և վարձատրութեանց մէջ. քննել տուաւ Գէորգայ ըրածը. Դամասկոսէ ելած եկած գունցք միաբերան վկայեցին, որ ոչ միայն Թարգմանութեամբ՝ այլ և շատ ուրիշ գործերով օգտակար եղեր էր Գէորգ իրենց և տէրութեանն. Ծերակոյտն ալ հաւանութեամբ վճռեց (31 մայիսի, 1519) որ կենաց չափ տրուի Գէորգայ 200 դուկատ տարեկան, և դարձեալ ուրախութեամբ ծառայէ Հասարակապետութեան ։

Այնպէս ալ կ՚ընէ Գէորգ դեռ շատ տարիներ. և երբ կու վախճանի 1536–7 Թուին, Դամասկոսի գունցն և խորհրդականք Թարգման կ՚ընտրեն իր որդին Մարկոս, որ մականուամբ Ֆոփոլլոն կոչուէր. Թոշակ տալով 50 դուկատ, 50 դուկատ այլ հօրը առնելիք-

*նորուն համար. Վենետկոյ պաշտօնեայք այլ կու հաստատեն զայս (ի 4 մարտի, 1541) ի շնորհս իր հօր «հաւատարմութեան, ժրութեան, լաւութեան և յաջողակութեան».* **(attenta la fede, solertia, bontà et sufficientia del quondam Turzimano del nostro Cottimo, et li meriti suoi,** *և այլն)։ Երկու տարի վերջը* (17 *օգոս.* 1543) *ոչ միայն հօրը գովեստը կու կրկնեն պաշտօնեայք հասարակապետութեան՝ այլ և Մարկոսի՝ թէ լեզուագիտութեան համար (արաբ, թուրք, փռանկ), և թէ մանաւանդ իր գործօնութեան, ոչ միայն ի Դամասկոս այլ և ի Դալմատիա, ուր ղրկած էին, կու վճռեն որ տրուի իրեն ինչ որ հօրը կու տրուէր, այսինքն* 200 *դուկատ տարեկան,* (1) *այս պայմանաւ՝ որ միայն*

1. Sono stati si laudabili et virtuose le operazioni del q.m fidelissimo del stato nostro *Zorzi* fù terzimano deli Consuli et natione nostra in Damasco, molto ben note a cadauno, et meritamente se die abbrazzar la posterita sua et il suo figliuolo *Marco*, chiamato in lingua araba *Fadella*; del quale se ne a savuto generalmente dali Consuli et mercadanti nostri de Soria, optimo attestatum della fede et sufficientia sua, dimostrata in Damasco et dove a bisognato in li servitij nostri, ed a benefitio de nostri subditi, etc. — *Cottimo di Damasco*, Libro I, c. 56:

Մարկոս ըլլայ Թարգման ի Դամասկոս, և ուրիշի բան չի տրուի ։ — Մարկոսի լեզուագիտական յաջողութեան պանծալի յիշատակ մ՚ այլ կայ ի Վենետիկ, այլ և ի բժշկական գրագիտութեան, վերայիշեալ Թուականին մօտ։ Երբ այս քաղաքիս մէջ մեծանուն Նիկողոս Մասսա բժիշկն, թէ վարպետութեամբ և թէ հեղինակութեամբ, ուզեց տպագրել արդէն ի լատին լեզու Թարգմանուած արաբացի գերահռչակ Իպնու Սինայի գործերը, (զոր Եւրոպացիք Աւիչեննա կ՚անուանեն, մեր հին ազգային բժշկապետն Մխիթար Հերացի և այլք՝ Սէնայէ որդէ), ուզեց սա և աւելցընել անոր վարքն այլ, զոր գրած էր անոր աշակերտն (Ջօրզան ? Էլ Կիւզկանի)․ և ահա այս եռքի գրուածին Թարգման գտաւ մեր Մարկոսը, որուն բառ առ բառ իտալերէն Թարգմանել տալով ինքն դարձուց ի լատին․ ([1]) և յետոյ տպագրել տալով յամի 1544, ընծայեց առ Սուրբն Կարոլոս հաչակաւոր արքեպիսկոպոսն Միլանու ։ Մասսա՝ իր գրոց յառաջաբանին

1. Cum invenissem Marcum Fadellam damascenum, Venetorum mercatorum Interpretem, atque operam dedissem, ut is verba Sorsani vulgari Sermone exponeret, latinis ea mandare decrevi.

մէջ կու վկայէ զայս։ Վիւստէնֆէլտ գերմանացին՝ որ Արաբացի բժշկաց պատմութիւն գրած է՝ նա և անոնց գրոց Թարգմանութեանց, և չէր կրնար Վենետկոյ Դիւանաց ծանօթութիւն ունենալ, կարծեմք կ՚ըսէ, թէ զուցէ Ֆատըլ–ալլահ բուն արաբացի եղած ըլլայ և յետոյ քրիստոնեայ ըլլալով Մարկոս անունն առած։

Վենետք այնքան ընդարձակ և զանազան տեղեր յարեւելս առուտուր ունենալով՝ ի հարկէ և Թարգմանաց կարօտ էին, թերեւս ոչ այնքան այն օտար երկիրներու և կղզիներու մէջ, որքան բուն իրենց մայրաքաղաքին, որ կեդրոն կամ ժողովարան էր ամենայն ազգէ վաճառականաց. ի դիւանս՝ յիշեալ կամ հանդիպեալ Թարգմանաց հնագոյնք՝ մեր վերոյիշեալ Դամասկացիքն են. անոնցմէ վերջ նոյն (ԺԶ) դարու մէջ կու յիշուին քանի մի Ցոյնք կղզեցիք և Կիպրացիք, որպիսի էր Նորէս Ցակոբ (1587–1620) հմուտ արաբ, թուրք և պարսիկ լեզուաց. անկէ առաջ Միքայէլ Մոմբրէ, և այլք. յաջորդ դարուն (ԺԷ) մէջ կու յիշուին և հայազգէտ իտալացիք. ինչպէս Ֆրանչիսկոս Սկարամելլի (Scaramelli, 1630), Ֆորդէս և Պոմէս ի կէս դարուն. այլ և Հայք, Գէորգ որդի Ցակոբայ, որ

և սէնաար էր (1631), Մուրտէրա Լորենցոյ որդի Պետրոսէ (1630–40), Պօղոս (1652)․ Նոյն ժամանակ և մէկ Մկրտիչ Ռէնոզո, որ Հա՞յ է թէ իտալացի՝ երկբայելի է, բայց կըրնայ ըլլալ Մկրտիչ մի Վարդանայ որդի։

Փութանըկլի ատտի հասան մի ըստ միով կա....

Որդ երբոր այն պատահեցաւ լեցին (?),
Ի Հռոմայ Թուղտ առաքեցին ի քաղաքին... ասեն...»

Նոյն տպագրութեան տարին (1587–8) ի Վենետիկ գալէն առաջ կամ (հաւանօրէն) վերջը, Տերզնցին իր որդւոք ի Մարսիլիա գնացեր է, և հօն Փռանկաց անուանի հին վիպասանութիւնը Գեղեցիկն Փարիզ, (Le Chevalier Paris et la belle Vienne) Թարգմաներ է հայերէն ոտանաւոր չափով. որ եթէ ուրիշ լեզուագիտի օգնութեամբ այլ եղած ըլլայ, դարձեալ արդիւնաւոր է Յովհաննէս, մանաւանդ եթէ նկատուի այն վիպասանութեան դժուարին հին փռանկ լեզուն և ոճը։ Թարգմանութեան վերջը նոյնպէս ոտանաւոր յիշատակ մ՚այլ գրած է, որոյ տողից առաջին տառերն կազմեն այս բանս. «Զտէր Յովաննեսի Տէրզնցոյ ասաց յաս»?, փոխանակ ասացեալ կապելու։ Գրածն՝ թէպէտ զմեզ ի Վենետկոյ դուրս կու հանէ, բայց իր այս տեղ ըրած գլխաւոր գործն (տպագրութիւնն) ներելի ընէ, զնոյն օրինակել և կարդալ, որովհետև շատ սակաւագիւտ է գիրքն.

« Յիշատակ Թարգմանչի տառիս.

Զարիւք պինտ լի երես որ կայ՝
Տրորեալ մածիմ ոտացդ վերայ.




Եղբայր, լեզուով մի յիս գըթայ,
Բամեալ հոգուս ողորմի տայ.
Յորդ արտասուօք գոչեմ ահա,

Ողորմեցէք որպէս Յովբայ.
Վկայն իմ Տէրն է, կրկին վկայ.
Աղաղակեմ, ձայնըս կու գայ.
Նա որ ասէ մի Տէր ողորմեա՛
Եղկելոյն այն որ կու կենայ,
Ի յա(ն)դենին առնու և խնդայ։
Տրամադրեալ սա ի Ֆրանցայ
Էր ի քաղաքն Մառչիլիայ.
Բամել Թուխս մերոյս Հայկայ
Զերդ և հազար և երեսուն կայ,
Նայ աւելի եւս վեցամեայ,
Յվերջ ամսուն յամաց սոցայ.
Որ և երկրիս այս մեծ արքայ
Ցինրիքոս (Ենրիկոս Գ) կոչեն ըզնա։
Այլ ես յորդորք քաղաքս ուղղայ.
Սիրտս իմ կամի որ միշտ երթայ.
Այլ ճանապարհս երկրի սորայ՝
Ցամաքն և ծովն կապեալ մնայ։
Ցաւտարութիւնըս մաշեցայ,
Որ ի երկիրըն Ֆռանցայ.
Այս ինչ ցաւ է, կայ և մնայ։
Կատարեցաւ բանս »։

Անցողաբար. յիշեմք որ Տէրզնցին ի Հռովմ եղած ատեն (1583), Հայոց վերակացու կամ էշխան անուանեալ Սուլդանշահի (Աբգար տըպագրի որդւոյն) և ուրիշ գլխաւորաց կող-

մանէ՝ երկայն նամակ մի գրած է, արձակ և ոտանաւոր (իր ոճով) առ Դաւիթ պատրիարքն Երուսաղեմի, հրաւիրելով որ գայ ընծաներով ի Հռոմ, և տեսնէ Գրիգոր ԺԳ Պապուն ըրածները, մանաւանդ Նոր տոմարի հաստատութիւնը, զոր և յաջորդ տարին (1584) Թարգմանեց ինքն Տէրզնցին և տպագրեց ի Հռոմ:

Բ. Տպագրութիւնն ի հարկէ պահանջէր նախընթացաբար՝ որ և է գրագիտութիւն մի կամ գրաւոր ճաշակ. այս ճաշակին գործին՝ որ է լեզուն, կրնայ յատուկ ըսուիլ կամ դիւրագիւտ Հայոց. ամէն ատեն ծանուցուած է մերայոց յաջողութիւնն օտար լեզուներ սորվելու, խօսելու և Թարգմանելու, նախ բանիւ՝ ապա և գրով: Ռուբինեանց տէրութեան ատեն վայելչապէս ծաղկած էր Թէ լեզուագիտութիւնն Թէ՛ Թարգմանութիւնն: Թողլով զընդհանրութիւնն և գալով ի մասնաւորն՝ յիտալականն, և առանձինն ի վերաբերեալն ընդ Վենետաց, տեսանք արդէն ԺԴ դարուն կիսէն առաջ Աւագ կարաւանապետին Թարգմանի գործ կատարելն երբեմն ի Վենետիկ եկած ատեն, և իր ծառայութեան վարձը խնդրելն: — Գրեթէ 200 տարի վերջը (1519) Դամասկացի մ՚ ալ Նոյնպէս կու գայ ի Վենետիկ իր Թարգմանօրէն

ծառայութեան վարձը հատատանել տալու։ Գիտնալու է՝ որ Վենետք մեծ առուտուր ունէին յԱսորիս, ուր իրենց գլխաւոր գործատեղին և պաշտօնեայն, զոր՝ քոնսոլ (console) կ՝անուանէին, կու նստէր ի հին մեծ և բարգաւած քաղաքն Դամասկոս, ուստի յետոյ փոխադրեցաւ ի Բերիա (Հալէպ)։ Յայտնի է որ այդ քաղաքաց բնակչաց հասարակ լեզուն արաբերէնն էր, տեղացի Հայք այլ իրենց բնիկ լեզուէն զատ խօսէին զայս և զԹուրքարէն. ուստի թէ Վենետաց և թէ ուրիշ արեւմտեայց կըրնային ըլլալ և կ՝ըլլային Թարգմանք. Ասորւոց երկրին և Վենետկոյ փոխադարձ վաճառաց տարուբերի համար՝ բանուկ մաքսատուն կամ բաժտուն մի հաստատուած էր այդ մեծ քաղքին մէջ. անուանեալ բաժը՝ Վենետք՝ կոթթիմօ (Cottimo) կ՝անուանէին, և ժողոված ու հաշիւն անմիջապ կու խաւրէին ի Վենետիկ։ Այս բաժտան Թարգման էր Գէորգ տեղացի Հայն. ԺԵ դարուն վերջի տարիներէն սկսեալ, կ՝ընդունէր տարեկան վարձք 216 դուկատ, որ ըստ նիւթական արժէից 500 ֆրանգէն աւելի է, ըստ իրականին՝ այժմեան արժէից՝ թերեւս եռապատիկ աւելի։ Ինչպէս վաճառականութիւնն՝ այսպէս անոր վերաբերեալ ամենայն հաշիւք ալ փոփոխական են, աւելի

կամ Նուազ. 1518ին առեւտուրն շատ յաջող չըլլալով Դամասկեան բաժից մեծ պաշտօնեայքն ի Վենետիկ՝ ուզեցին իրենց բաժտան ծառայողներն և անոնց վարձն այլ նուազեցընել, և գլխաւոր Թարգմանին տալ՝ 150 դուկատ միայն։ Գէորգ լաւ գիտնալով իր արժէքն՝ վստահութեամբ եկաւ ի Վենետիկ, և խնդրեց ի տէրութենէ՝ որ քննեն իր 20 տարի ըրած հաւատարիմ ծառայութիւնը և չի զրկեն զինքն իր թոշակէն։ Վենետք կամ տէրութիւնն շատ խիստ էր այսպիսի խնդրոց և վարձատրութեանց մէջ. քննել տուաւ Գէորգայ ըրածը. Դամասկոսէ եկած եկած գունցք միաբերան վկայեցին, որ ոչ միայն թարգմանութեամբ՝ այլ և շատ ուրիշ գործերով օգտակար եղեր էր Գէորգ իրենց և տէրութեանն. Ծերակոյտն ալ հաւանութեամբ վճռեց (31 մայիսի, 1519) որ կենաք չափ տրուի Գէորգայ 200 դուկատ տարեկան, և դարձեալ ուրախութեամբ ծառայէ Հասարակապետութեան։

Այնպէս ալ կ՚ընէ Գէորգ դեռ շատ տարիներ. և երբ կու վախճանի 1536–7 թուին, Դամասկոսի գունցն և խորհրդականք թարգման կ՚ընտրեն իր որդին Մարկոս, որ մականուամբ Ցափուղլաճ կոչուէր. Թոշակ տալով 50 դուկատ, 50 դուկատ այլ հօրը առնելիք-

ներուն համար. Վենետկոյ պաշտօնեայք այլ կու հաստատեն զայս (ի 4 մարտի, 1541) ի շնորհս իր հօր «հաւատարմութեան, ժրութեան, լաւութեան և յաջողակութեան». (attenta la fede, solertia, bontà et sufficientia del quondam Turzimano del nostro Cottimo, et li meriti suoi, և այլն)։ Երկու տարի վերջը (17 օգոս. 1543) ոչ միայն հօրը գովեստը կու կրկնեն պաշտօնեայք հասարակապետութեան՝ այլ և Մարկոսի՝ թէ լեզուագիտութեան համար (արաբ, թուրք, փռանկ), և թէ մանաւանդ իր գործօնութեան, ոչ միայն ի Դամասկոս այլ և ի Դալմատիա, ուր ղրկած էին, կու վճռեն որ տրուի իրեն ինչ որ հօրը կու տրուէր, այսինքն 200 դուկատ տարեկան, (1) այս պայմանաւ՝ որ միայն

1. Sono stati si laudabili et virtuose le operazioni del q.m fidelissimo del stato nostro *Zorzi* fù terzimano deli Consuli et natione nostra in Damasco, molto ben note a cadauno, et meritamente se die abbrazzar la posterita sua et il suo figliuolo *Marco*, chiamato in lingua araba *Fadella*; del quale se ne a savuto generalmente dali Consuli et mercadanti nostri de Soria, optimo attestatum della fede et sufficientia sua, dimostrata in Damasco et dove a bisognato in li servitij nostri, ed a benefitio de nostri subditi, etc. — *Cottimo di Damasco*, Libro I, c. 56:

Մարկոս ըլլայ Թարգման ի Դամասկոս, և ուրիշի բան չի տրուի ։ — Մարկոսի լեզուագիտական յաջողութեան պանծալի յիշատակ մ՚ այլ կայ ի Վենետիկ, այլ և ի բժշկական գրագիտութեան, վերոյիշեալ Թուականին մօտ։ Երբ այս քաղաքիս մէջ մեծանուն Նիկողոս Մասսա բժիշկն, թէ վարպետութեամբ և թէ հեղինակութեամբ, ուզեց տպագրել արդէն ի լատին լեզու թարգմանուած արաբացի գերահռչակ Էպու Սինայի գործերը, (զոր Եւրոպացիք Ավիչեննա կ՚անուանեն, մեր հին ազգային բժշկապետն Մխիթար Հերացի և այլք՝ Սէնայէ որդէ), ուզեց սա և աւելցնել անոր վարքն այլ, զոր գրած էր անոր աշակերտն (Ջօրզան ? Էլ Կիւզկանի). և ահա այս եռքի գրուածին Թարգման գտաւ մեր Մարկոսը, որուն բառ առ բառ իտալերէն Թարգմանել տալով՝ ինքն դարձուց ի լատին. ([1]) և յետոյ տպագրել տալով յամի 1544, ընծայեց առ Սուրբն Կարոլոս հռչակաւոր արքեպիսկոպոսն Միլանու։ Մասսա՝ իր գրոց յառաջաբանին

1. Cum invenissem Marcum Fadellam damascenum, Venetorum mercatorum Interpretem, atque operam dedissem, ut is verba Sorsani vulgari Sermone exponeret, latinis ea mandare decrevi.

մէջ կու վկայէ զայս։ Վիւսդէնֆէլտ գերմա֊նացին՝ որ Արաբացի բժշկաց պատմութիւն գրած է՝ նա և անոնց գրոց Թարգմանու֊թեանց, և չէր կրնար Վենետկոյ Դիւանաց ծանօթութիւն ունենալ, կարծեմք կ՚ըսէ, թէ գուցէ Ֆատլ—ալլահ բուն արաբացի եղած ըլլայ և յետոյ քրիստոնեայ ըլլալով Մարկոս անունն առած ։

Վենետք այնքան ընդարձակ և զանազան տեղեր յարեւելս առուտուր ունենալով՝ ի հարկէ և Թարգմանաց կարօտ էին, թերեւս ոչ այնքան այն օտար երկիրներու և կղզի֊ներու մէջ, որքան բուն իրենց մայրաքաղա֊քին, որ կեդրոն կամ ժողովարան էր ամենայն ազգէ վաճառականաց. ի դիւանս՝ յիշեալ կամ հանդիպեալ Թարգմանաց հնագոյնք՝ մեր վե֊րոյիշեալ Դամասկացիքն են. անոնցմէ վերջ նոյն (ԺԶ) դարու մէջ կու յիշուին քանի մի Յոյնք կղզեցիք և Կիպրացիք, որպիսի էր Նորէս Յակոբ (1587–1620) հմուտ արաբ, թուրք և պարսիկ լեզուաց. անկէ առաջ Միքայէլ Մոմբրէ, և այլք. յաջորդ դարուն (ԺԷ) մէջ կու յիշուին և հայազգէ իտալացիք. ինչ֊պէս Ֆրանչիսկոս Սկարամելլի (Scaramel-li, 1630), Ֆորդէս և Պոմէս ի կէս դա֊րուն. այլ և Հայք, Գէորգ որդի Յակոբայ, որ

և սէնատր էր (1631), Մուրտէրոս Լուբէնցոյ որդի Պետրոսէ (1630–40), Պօղոս (1652). Նոյն ժամանակ և մէկ Մնէրտէն Ռուխոա, որ Հա՞յ է թէ իտալացի՝ երկբայելի է, բայց կըրնայ ըլլալ Մկրտիչ մի Վարդանայ որդի։

# Ե.

## Ա. ԽԱՉԱՏՈՒՐ ԴԱՒՐԻԺԵՑԻ, ԵՒ ԻՐ ԹԱՐԳՄԱՆԱԾ ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆՆ. — Բ. ԽԱՉԱՏՈՒՐ ԵԹՈՎՊԱՑԻ, ԵՒ ԻՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ՎԵՆԵՏԿՈՑ։



Ա. *Այս ատեն և վերջը Հայք աւելի բազմացեալ և հաստատ բնակելով ի Վենետիկ՝ այնքան կարօտութիւն չկար թարգմանչաց, ոչ իրենց համար և ոչ պետութեանն, և ոչ այլ մեծ յարգ մի լեզուաւ թարգմանութեան՝ որպէս գրով։ Այս ետքի մասամբ՝ Մարկոսի պէս և աւելի այլ նշանաւոր եղած է մերազգին Խաչատուր Դաւրիժեցի, պարսիկ լեզուէ լաւ իտալերէն թարգմանելով հետաքրքրական գրքոյկ մի. որ է վիպասանութիւն մի Պանդխտութեան կամ ուղեւորութեան Սերենդիպպոյ* (1) *կղզւոյն թագաւորին երեք որդւոց. վերնագիրն է,* Peregrinaggio di tre giovani figliuoli del Re di Serendippo: Per opera di M. *Christoforo Armeno*, dalla persiana nell'italiana lingua rapportato.

1. *Ըստ ոմանց է Սումատրա կղզին, կամ ուրիշ մեծ կղզի մի յՈվկիանոս Հնդկաց։*

Նախ տպագրուած է յամի 1557, յետոյ այլ
և այլ անգամ․ մեր ձեռքը գտուածն է 1584ի
տպագրութիւնն, ի Վենետիկ, փոքրիկ, ու֊
թածալ, 83 թուղթ։ Ինչ պատճառաւ թարգմա֊
նուած և տպագրուած ըլլալը՝ լսենք Խաչատրոյ
արևելեանոճով յառաջաբանէն, իր իտալերէ֊
նէն թարգմանելով ի հայ. «Միշտ գովու֊
» թիւն Տեառն Աստուծոյ, ստեղծողին եօթն
» երկնից և չորս տարերաց, և այլ ամեն
» իրաց՝ որ կ'երևին ի վերայ երկրի, և ա֊
» րարչին մարդոյ՝ որ գերազանց է քան զա֊
» մենայն կենդանիս. որուն՝ ոչ միայն միտք
» ընծայեց՝ իր աստուածութիւնը ճանչնալու
» համար, այլ և լեզու՝ իրմէ ընդունած բա֊
» րեաց շնորհակալ ըլլալու։ Ես խեղճ մե֊
» ղաւորս Խաչատուր (Christoforo) Հայ, իմ
» երկիրս՝ Դաւրէժ քաղքին մէջ գտուած ա֊
» տեն, շատ անգամ և շատերէն կու լսէի
» որ Ֆռանկաց կողմերը շատ ազնուական և
» մեծահանճար մարդիկ կան, զոր և դիւրին
» էր հասկընալ անոնց քով գտուած գեղեցիկ
» և զարմանալի բաներէն։ Անկէ մեծ փա֊
» փագ մտաւ ի սիրտս՝ այդ երկիրը տես֊
» նելու, մանաւանդ որ քրիստոնէից իշխա֊
» նութեան ներքեւ էր, ուր Քրիստոսի կրօնից
» ծէսերն և իշխանաց սովորութիւնները կըր֊
« նայի ճանչնալ, ես ալ քրիստոնեայ ըլլա֊

» լովս՝ այլ աւելի կու փափագէի ։ Արդ օգ-
» նութեամբ Տեառն Աստուծոյ՝ ճամբայ ել-
» նելով ի Փռանկաստան երթալու, իմ առա-
» ջին հանդիպած տեղն եղաւ Վենետիկ. որ
» որովհետեւ բոլոր աշխարհիս մէջ իր նմանը
» չունի, կըրնայ ըսուիլ թէ Աստուծոյ և ոչ
» ուրիշի ձեռօք նախ շինուած ըլլայ ։ Ծովու
» մէջ զետեղուած է, և թէ՛ ջրով թէ՛ ցամաքով՝
» մարդ ամէն կողմը կըրնայ երթալ գալ.
» վասն զի միշտ կու գտուին տեսակ մի ծած-
» կուած նաւակք, կոնտոլա ըսուած, որ՝ ուր
» որ մարդ ուզէ՝ կու տանին ։ Պալատաց և
» տանց մեծ մասն երկու դուռ ունի, մէկն
» ջըրի վրայ, ուր ինչ որ պէտք է ընտա-
» նեաց՝ նաւակներով կու բերուի, մէկայլն
» փողոցի վրայ է, ուսկից ամէն մարդ ու-
» ղածին պէս կ՚ելնէ կու մտնէ ։ Այս քաղ-
» քիս մէջ ուրիշ կենդանի չերեւնար, բայց
» միայն մարդիկ և գեղեցիկ ու վայելչահա-
» սակ կանայք. մինչդեռ մեր քաղաքաց մէջ՝
» էշերն և ուղտերն անդադար անցնելով՝
» անտանելի նեղութիւն կու տան մեզի ։
» Ճամբաներն ամենամաքուր և աղիւսայա-
» տակ են. շատ և մեծաշէն պալատք և ե-
» կեղեցիք կ՚երեւան. կան և շատ հոգե-
» տունք (կամ հիւանդանոցք, hospitali), ուր
» արք և կանայք առանձին կու բնակին, և

» շատ լաւ ծառայողներ ունին. ճերմակեղէն
» հագուստնին շատ մաքուր. բժշկնին միշտ կու
» հոգան զանոնք, և անոնց ամէն պէտքն կու
» տրուի: Այս տեղ ճիշտ արդարութիւն կ'ըլ-
» լայ. ամենեւին չի թողուիր որ մէկն ուրիշի
» անիրաւութիւն ընէ. ամէն մարդ կու ջա-
» նայ կրցածին չափ Աստուծոյ պատուիրանք-
» ները պահել. օրինօք կ'ապրին. և պաշ-
» տօնեայք արդարութեան ամենքն այլ շատ
» գիտուն և շատ բարեսէր անձինք են: Ա-
» սոնցմէ զատ կան նաև շատ սենեակներ,
» ուր աղքատ օտարականք՝ առանց վարձք
» տալու կու բնակին: Այս բանիս կըրնամ
» ես համարձակ վկայել. որ երեք տարի է
» իմ վիճակիս պատշաճ սենեկի մի մէջ բնա-
» կած եմ առանց բան մի վճարելու. չեմ
» յիշեր թէ հանդիպած ըլլամ ուրիշ քաղքի
» մի՝ որ ասկէ աւելի ողորմած և աղքատաց
» կարեկից ըլլայ: — Արդ ես այսպիսի գե-
» ղեցիկ բարուց և սովորութեանց սիրահա-
» րուած, իմ հայրենիքս բոլորովին մոռնա-
» լով, եթէ և երբեմն ի միտքս ընկնայ նորէն
» դառնալ, կարծես թէ բաղձանքս մոռցընել
» կու տայ զայն: Այս տեղ ամէն արուեստի
» պարապող մարդիկ շատ մտադիր տեսնե-
» լով իրենց բանին գործին, այս քաղքիս մէջ
» իրենց ինծի ըրած շատ և շատ մարդավարու-

» թեանց փոխարէն, իրենց զուարճութեան
» համար ուզեցի իմ մէկ սիրելի բարեկամիս
» օգնութեամբ՝ իմ լեզուէս յիտալական լեզու
» թարգմանել Պանդխտութիւն մի՝ Երեք ե–
» րիտասարդ որդւոց Սերենդիպպոյի թագա–
» ւորին. որ ըստ իմ կարծեացս՝ իր գեղեց–
» կութեանն համար ընթերցողաց շատ հաճոյ
» պիտի ըլլայ, որով կու յուսամ՝ իրենց շնոր–
» հակալութեան արժանի ըլլալ »:

Խաչատուր այս յառաջաբանէն զատ Նամակ մ'ալ գրած է առ ազնուականն Մարկոս — Անտոն Ճիւստինիանոյ, անոր ընծայելով գիրքը. մէկ մի՝ անոր իրեն ըրած շատ բարերարութեանց համար, մէկ մ'այլ՝ ուզելով անոր մեծ և պատկառելի անուամբ՝ բամբասողաց կամ չհաւանողաց բերանը գոցել, ինչպէս որ մեր ազգին մէջ ալ կու գտուին, կ'ըսէ. ասկէ զատ, ամառուան տաք օրերուն մէջ զբաղելու յարմար առիթ մի համարեր է այս գրաւոր աշխատութիւնը. Նամակն ալ գրած է օգոստոսի առաջին օրը (1557). — Որչափ որ աւելորդ համարիմ այդ վիպասանութեան (եօթն պատմութեանց) վրայ խօսիլ, ի գովեստ հեղինակին և Խաչատրոյ, (թերևս երկուքն ալ մի են), պէտք է ըսել՝ որ Նախ իտալական լեզուին յատակութիւնն գովուած է, և 7 կամ 8 անգամ տպագրուած. (տղէկ

բարեկամ գտած և ընտրած է Խաչատուր)։ Երկրորդ, գրուածն այլ՝ կամ արեւելեան ճաշակին համար, կամ վայելուչ ոճոյն համար՝ Թարգմանուեր է ի փռանկերէն, անգլիերէն, գերմաներէն, հոլանդերէն և դանիերէն. հիմայ բաւական հազուագիւտ և Թանկագին են ասոնք։ Այս ամենուն արդիւնքն վերաբերի առ խեղճուկ մեղաւոր Հայ Խաչատուրն այն. որոյ նման Հայ մ'այլ գտնելու համար, որոյ գրաւոր գործն այսքան լեզուներ Թարգմանուած և տպագրուած ըլլայ, Թերեւս հարկ է մեր ԺԳ դարու՝ Կոռիկոսի տէր՝ Հեթում Պատմչին մօտ երթալ։

Դ. Միայն Դաւրիժեցի Խաչատուրն չէ որ Վենետիկոյ վրայ զմայլած և գրած ըլլայ. ուրիշ Խաչատուր երէց մ'այլ կայ, աւելի հեռու տեղւոյ մի մականուամբ, Ենոքղացի. ծննընդեամբ, Թէ ուրիշ պատճառաւ այսպէս կոչուած, չեմ գիտեր։ Սա աւելի երկար և մանր և սուր դիտողուԹիւն ըրած և ոտանաւոր բանիւ գրած է իր «Ցարմարէալ Պատմութիւն » Վենետիկոյ, փոքր ի շատէ... ականատես և » ոչ. ականջալուր լեալ»։ Զայս արդէն իբր կէս դար առաջ հրատարակած եմք ի Բազմավէպ օրագրի (Ե, 172–77). և կրկնել այն իբր 280 երկայն տողերը՝ ծանր է, Թէ և ոչ անարժան գրուած, մանաւանդ անծանօԹի

մի, նա և բնիկ Վենետ բանասիրի. ինչպէս որ փափագած են այսպիսիք այլ թարգմանել։ Մեր առջի անգամ հրատարակած ատեն, ինչպէս որ յայտնած եմք, օրինակին մէջ 20 տողի չափ պակաս կար. յետոյ ուրիշ օրինակ մի ունեցանք անպակաս, քիչ մ'աւելի նոր գրուած, 1656ին. բայց ոչ ասկէ և ոչ առջինէն՝ որոշ չիմացուիր հեղինակին ժամանակը, որ իր գրութեան ամսուն օրը նշանակելով՝ տարին մոռցեր է։ Կ'երևի թէ Դաւրիժեցիէն քիչ ետք ըլլայ. և քան զնա աւելի անաչառ դիտող և գրող. ստորագրած բաներն ճիշդ են, բաց ի Վենետկոյ 10,000 կամուրջներէն, և անոր ծագման կամ շինութեան սկզբնաւորութեան աւանդութենէ. իբր թէ Հնդկաստանէ եկողէ մի, կամ այն աշխարհին թագաւորաց փախստեայ գանձերով շինուած ըլլայ։ Քաղքին նեղուածք ըլլալն՝ ջրի մէջ ամփոփուելով, և ընդարձակելու համար՝ կամ ծանծաղ տեղուանք ցիցեր տնկելով և անոնց վրայ շէնք շինելն, կամ տուներու վրայէ վրայ յարկեր բարձրացընելը՝ լաւ կու ստորագրէ խաչատուր, ըսելով.

« Պաղ և պաղչայ յաւել չունին, և զոր ունին՝ տան մէջն է նայ.

Հանց գեղեցիկ են զարդարեր, նման դրախ-
տին ծաղկեր է նայ.
Մէջ քաղաքին կովկիթ չունին, և զոր ունին՝
գիւղօրէքն է.
Գրաստու զերեսըն չեն տեսնուր. տեսողացըն
մեծ զարմանք է.
Նեղուց քաղաք և մարդըն շատ. տունն ի
վերայ տան շինեալ է.
Հինգ և վեց ղաթ տուն են շիներ, ներքինըն
զվերինըն չի գիտէ.
Տան հազար կարմունճ ունի, ի քաղաքին
մէջ երթևեկն է.
Լանուց մէկ տեղ մի հէշ չըկայ. ներքևն
խանութ՝ վըրան տուն է։
Ծովէն բացուած ցածուն տեղուանք, քարով
խիճով բարձրացընեն,
Քսան երսուն տարի դատին, հազիւ տեղ մի
ցամքեցընեն։
Սան Մարքոյին մալըն շատ է, խարճեն և
սարայներ շինեն.
Կամ կու ծախեն, կամ վարձու տան, հըսա-
պով ղդրամն աւելցընեն։
Քանի մի մեծ տօլապ շինած՝ ծովուն զա-
տակըն կու քերեն,
Տանին ի յայն տեղըն լընուն՝ յոր տեղ որ
սարայ կու շինեն »։

Խաչատուր՝ Թէ այս լեզուով գրուածէն, Թուրք բառեր խառնելով, և Թէ հետեւեալ տողերովս,

« Զերկրին հողըն հլուն չինեն, մարգարտի պէս ծախեն զնայ,

Զ[illegible] [illegible] [illegible] խաբեն, մէկ մ՚ալ ես որ խիստ խաբեցայ »

կու յայտնէ՝ իր Թուրքիոյ կամ արեւմտեան Հայոց կողմերէն գալը. ամենեւին չի յիշեր ազգայնոց ի Վենետիկ գտնուիլը կամ անոնց տունն և եկեղեցին. միայն ի յիշելն Ս. Մարկոս մայր եկեղեցւոյ հարստութիւնը՝ կ՚ըսէ.

« Այլասեռից վաճառականք ի տեսութիւն
մտնեն ի նայ,
Զգըլխնին շարժեն նոքա, շատ ոք զաւան-
դըն մոռանայ ».

այդ [illegible] վաճառականաց մէջ անշուշտ կ՚իմացընէ և զՀայս. իսկ [illegible] մոռնալը Թուի Թէ անոնց ապշած նայելու ատեն՝ քովերնին ունեցածին մոռնալը, և Թերեւս գողցընելը կու յայտնէ: Այս յանցանքը յայտնի չըսէր Խաչատուր. բայց յետ արժանապէս գովելու զքաղաքն և զքաղաքացիս, արդարութիւն համարի նա և ասոնց անիրաւ կամ անվայել քանի մի գործն այլ յիշել. և Թերեւս ոչ ոք ի մերազգի տեսողաց այս զարմանալի քաղաքը՝ ասոր նման արդարադատ

չէ եղած. համարձակ կ՚ըսէ յետ գովասանութեանը.

« Այս հերիք է զոր գովեցի. պահ մի բամբաս առնեմ գնոսա....

Զվայելչութիւնն աղէկ ունին, բայց այս քանի բանս անարգ է »:

Այս անարգ բաներուն գլխաւոր համարի զգեստուց շռայլութիւնն և անպատշաճ բացուածքը, կանանց նազանքով քայլուածքը, արանց փաղաքշութիւնը. մանր թռչուններ, ծովային և ցամաքային ժժմունքներ ու միջատներ ուտելնին. շուները գրկել և գգուել և ինչուան մէկտեղ յեկեղեցի մտցընելը. կերակրոյ ատեն՝ իրենց բերնի պատառը շանց տալը, և այլն: — Խաչատուր կ՚երևի թէ ինչպէս սուր աչք՝ այսպէս այլ սուր յիշողութիւն ունի եղեր, կամ տեսածը իր յիշատակաց գրքուկին մէջ կունշանէ եղեր. վասն զի Վենետկէ ելնելէն վերջը և դէպ ի Քորֆու կղզի նաւելու ատեն՝ շարադրով գրեր է, « ի մէջ նեղութեան ծովուն, (երբ և) ջուր մեր պակասեալ էր ». այսպէս կու սկսի. իսկ վերջն ալ կրկնէ.

« Այս հերիք է զոր գրեցի, աճըղեցայ. ձեզ
ի՞նչ գաղտնի.
Ծովուն թասան գիս առեր, ամենեւին աչք
չերեւի.

Ի բազում լիմանըլըխէ և ի կտմու որ չատ լինի՝
Զի ժաժցընէր տակմա քամի. յոյս մեր այն
է (որ) Քորֆէզ հասնի »։

Կ՚երեւի թէ գրութեան վերջերը յիրաւի յօգնած, և ծովուն Թասան՝ այսինքն հոգն՝ մէկ մի առանց յաջող հովու Յնալն, մէկ մ՚այլ սաստիկ հովով ալէկոծիլն, իր գլուխն այլ ժաժեցրեր է. վասն զի հակառակ ի սկզբան ըսածներուն Վենետկոյ համար՝ թէ Նմանը չկայ, և թէ « տեսնողքն ամէն ապուշ Յնայ », վերջը վերջը կ՚ըսէ.

« Յորժամ զբաններըս գրէի, և առ ընկերըս
չխօսէի,
Ծիծաղէի ես իմ վրայ՝ թէ Վանատիկ ա՞չք
երեւի։
Արի՛, գնա՛ ԸՍպանիոյ քաղաք՝ որ գեղորայքն
է իբրեւ զՎանատիկ ».

Եւ կարգաւ յիշելով Անապօլի (Նաբոլի), Ալիկուռնա, Ֆլորենցա, Մեսսենա, Բալերմոյ, Մարչիլիա, Ճինիվիզ, դարձեալ կրկնէ. « գեղն է Նման Վանատիկոյ »! Թերեւս յիշելով Վենետկոյ Նեղուց ըլլալը. իսկ միւս յիշեալ քաղաքաց միջի և դրսի ընդարձակութիւնը, իրեն այլ սրտնեղութեան տեղն՝ այսպէս ըսել տուեր է։ Բայց լաւ է որ գոհութեամբ կ՚աւարտէ գրուածը.

« Փառք չինողին (յ)օրինողին, պակաս չընէր գնաֆաղանին.

Ամենեքեան բարով վայելեն, օրհնեն ըզտուողըն պարգեւաց ».

Եւ կրկին փառատրութեամբ կու կնքէ. «Փառք Աստուծոյ, յամենայն ժամ» ։

Կըրնանք և մենք փառաբանակից ըլլալ առ Տուողն պարգեւաց, որ այնպիսի մութ և խուլ դարու մէջ (ԺԶ), տաանկ սուր՝ թէ և անհարթ կամ անօգնական՝ հանճարներ պարգեւեր է մեր Խաչատուրներուն. որ է ըսել, թէ մեր անծանօթ հանճարեղ ազգայնոց մէկ քանիին յայտներ է, իրենց հայրենի երկրէն շատ հեռու և անկարծելի կողմեր։ Կարծեմ այս վերոյիշեալներէն և անոնց ժամանակակից շատ աւելի հանճարեղ և հնարագէտ քան զՎենետն, մեծագոյն փօլաղ շինող և ծովուն յատակը քերող Հայ մ' այլ պիտի ճանչցուի, որ երեւի թէ նոյն իսկ իրեն բազմահնար յաջողութեան համար՝ հանրածանօթ ըլլալով այն ժամանակ, ի Վենետիկ յատկաբար Հայն կոչուեր է, L'Armeno, ինչպէս յաճախ կու գրուի քաղքին Դիւանաց մէջ։

## Զ.

### ՀՆԱՐԱԳԷՏ ՀԱՅՆ ԱՆՏՈՆ ՍՈՒՐԵԱՆ

ԺԶ դարուն կիսուն կամ քիչ մի վերջ, ի Վենետիկ գտնուած դեռ ոչ բազմաթիւ Հայոց մէջ՝ ամենէն նշանաւորն եղած է սա, և երեսուն տարիէ աւելի զանազան դիպուածոց և պիտոյից մէջ ցուցեր է մեծ հանճարը, մեծ գործօնէութեամբ և յաջողութեամբ։ Իր յատուկ կամ մկրտութեան անունն է Անտոն, մականունն Սուրեան, որ կամ նոյնպէս յատուկ անուն է, և կամ թերևս հայրենեաց՝ Միջագետաց և Ասորւոց կողմէն ըլլալով՝ այսպէս կոչուած ըլլայ Իտալացւոց, որք Սիրիա կամ Սուրիա կ'անուանեն այն կողմերը. արդ դիւանաց մէջ կու գրուի սա Antonio Suriano detto l'Armeno (Անտոն Սուրիան՝ կոչեցեալն Հայ)։ Իր Հօր անունն ալ ծանօթ է, Յովսէփ (1)։ Ե՞րբ կամ ո՞ր

1. Այսպէս կոչուի հայրն նոտարական գրուածի մի մէջ, որոյ և մականուն այլ կ'աւելցուի՝ Բժշկեան, de Medici. իսկ պաշտօնական գրուածի մէջ (յամի 1609) Մէտոյեղ կոչուի հայրն, որ գուցէ պապն ըլլայ։

տարի ի Վենետիկ եկած ըլլալն՝ յայտնի չէ, այլ երիտասարդ կամ մանկահասակ եկած պիտի ըլլայ, իր բոլոր կենաց տարիքէն չափելով, որ է 58 տարի. իսկ իր անունն և գործքն 32 տարիներու մէջ կու յիշուին (1559–1591)։ Բայց իր առաջին գործէն կամ գործոյ առաջարկութենէն զուշակուի՝ որ 1559 թուականէն այլ առաջ ծանօթ եղած է. կու վկայէ իր որդին՝ որ հայրն 40 տարի ծառայած է տէրութեան. ըսել է 18 տարեկան սկսած. ուստի և յայտ կ՚ըլլայ որ ի Վենետաց առած է իրեն անուսին, և իրեն գլխաւոր գործոյ կամ արուեստին՝ յաջորդ թողած է զաւակն Ցովհէփ անուամբ, ծնած իբր ի 1576. (վասն զի † է 54 տարուան ի 1630). մէկ որդին այլ յիշուի հօրմէն քանի մ՚օր առաջ մեռած՝ 11 տարուան, Մարկոս–Անտոն (Marc' Antonio) անուամբ, որ Վենետաց սիրելի (երբեմն ալ ծաղրելի) անուն մ՚է, և անով յայտնուի իր կնոջն այլ վենետկեցի ըլլալն, բայց այդ կնոջ անունն և ընտանիքը չեմ գտած ։

Առաջին անգամ Հայ Անտոնի անունը՝ կու գտնեմք իրմէ յիշուած իր մէկ աղերսագրին մէջ՝ առ Դուքսն Վենետկոյ և առ ծերակոյտն, (ի 24 յունիսի, 1561), երկու տարի առաջ ըրած գործոյն համար ։ Ցամնեան հոկտեմ–

բերի, 1559 տարւոյն, առաջին աղերսագիր մի տուեր է մեծ և դժուարին ձեռնարկութեան մի, որ որքան իրեն պատիւ կըրնար բերել, գուցէ ոչ շատ պակաս՝ ամօթ Վենետաց, որք այնքան ճարտարք էին ի նաւաշինութեան, ի նաւարկութեան և ի նաւամարտի. բայց՝ կամ երբեմն զգաստութիւննին կու պակսէր, կամ ծովն անոր ալ կու յաղթէր. և կամ չէր բաւեր իրենց հնարքն՝ նաւահանգիստը ապահովցընելու յամենայն վըտանգաց: Իրն այս է, որ իրենց մէկ մեծ և զինեալ նաւ մի՝ Կոլեոնէ, որ համարակ Կոլեա, ըստ հայոց Խոլէ՝ ըսուած նաւերէն մեծ է, զէնքերով, հրետներով (թօփ), և ուրիշ ամէն կազմածով և բեռամբք ընկղմեր խորասուզեր էր նաւահանգստին մէջ, և հանելու ճար կամ ճարող մի չէր գտուած, թէ և փորձեր և քննութիւններ եղած էին. այլ յուսահատեալ թողեր էին: Հաւանական է որ մեր Հայն ալ Վենետկոյ հռչակեալ նաւարանին մէջ արուեստաւոր մ'ըլլալով, տեսեր էր ոչ միայն անոնց փորձերը և աչօք քններ էր նաւուն ընկղմած տեղը և դիրքը, այլ և անոնց փորձերուն կամ գործեաց պակասութիւնը: Ինքն այն ատեն 26 տարուան երիտասարդ մ'էր. մտածեց, վստահացաւ մտածութեանը, և աւելի ծածուկ քան յայտ-



Խալէ (Բերդաձեւ) Մարկոս-Պօղոսի վենետացւոյ։

նի՝ նաւը հանելու գործիքի կամ չէնքի մի գաղափար մի կամ փոքրիկը շինեց, և վերոյիշեալ Թուականին (1559, հոկտ.) աղերսագրով ներկայացուց տէրութեան գերագոյն ատենին։ Ատեանն կամ դուքսն՝ թէ և անյարմար չտեսաւ գործիքը, բայց առջի փորձողներուն անյաջողութենէն չվստահանալով, խնդիրը չմերժեց, բայց չուզեց այլ օգնել անոր՝ դրամով կամ ուրիշ նիւթերով, այլ թողուց որ նա իր ծախքովը գործը տեսնէ. իսկ Անտոն որ այնքան մեծ գործոյ դրամական կարողութիւն չունէր, հարկաւ կու ստիպուէր յետ կենալ։ Երեւի թէ իր առաջարկութիւնն նորէն արթընցուց ուրիշները. Բարդուղիմէ անուն նաւապետ մի յանձն առաւ իր ծախուք գործել և հանել նաւը կամ նաւուն մէջի եղածները. մեծ արկղաձեւ (Casson) գործիք մի շինեց և սկսաւ փորձել. այլ գործիքն ալ ընկղմեցաւ. նորէն մէկ մ՚այլ շինեց. այն ալ առջինին պէս ընկղմած կալէոնին ընկեր եղաւ. Բարդուղիմէ անճըրկած՝ սկսաւ իր կորուստը հոգալ. բայց ոչ ինքն և ոչ ուրիշ անձինք իր շինածներն ալ կըրցան հանել։ — Այն ատեն Անտոն նորէն ոտք ելաւ, առաջարկեց տէրութեան պաշտօնէից, որ հրաման տան իրեն իր ծախքով հանել այն երկու արկղաձեւներուն մէկը, (որով-

հետեւ մէկայլն ծովուն ծփանքէն քայքայուած փճացած էր)։ Հաւանեցան պաշտօնեայք, բայց պարտաւորեցին զնա (7 մայիսի, 1561) որ ութ օր չանցած՝ ձեռք զարնէ գործոյն. և քանի մի շաբաթ վերջը իրենց պաշտօնարանին գլխաւոր գործատեաններէն մէկը (Capitano dell' Officio) խաւրեցին՝ որ տեսնէ թէ ինչ է ըրած Հայն։ Գնաց քննեց նա, և (յունիսի 11ին) լուր բերաւ, թէ Անտոն ոչ միայն հաներ է զարկղակերտն, այլ և քշեր տարեր է ինչուան Ս. Գէորգ կղզւոյն քով, քանի մ' այլ խոշոր նաւակներ (burchelle) բերեր է հօն, որ արկղին մէջ լցուած տիղմն ու աւազը հանեն մաքրեն։ Այս գործոյ և գործեաց համար Անտոն 1000 դուկատէն աւելի ծախք ըրած էր։

Հիմայ պարզ երեսով համարձակ գնաց յատեան Դքսին (24 յունիսի, 1561), և նորէն գրով հրաման խնդրեց կալէոնն այլ հանելու, իր ծախքով. և իրաւացի պարծանօք կ'ըսէր. «Տեսնելով՝ որ ուրիշներն ոչ միայն
» դժար՝ այլ և անկարելի համարէին այն
» արկղակերտները հանելու, մտածեցի որ ա-
» նով ո՛րչափ վնաս պիտի ըլլայ ձեր նաւա-
» մուտքին, միանգամայն և իմ առ Ձեր
» Պայծառութիւնն (Sua Serenità) ունեցած
» սէր ու գորովս, և Աստուծոյ ինձ տուած

» հանճարն, յորդորեցին որ ջանամ հնարք
» գտնել և հանել ընկղմածներուն մէկը...
» գտայ և առաջարկեցի. հաւնեցաք, և յանձ-
» նեցիք ինձ հանելու. և ես օգնութեամբ Աս-
» տուծոյ հանեցի, իմ ծախքովս, և շատ դիւ-
» րութեամբ. որուն վրայ ամենքն այլ զարմա-
» ցան: Արդ հիմայ որ իմ կարողութեանս
» ցոյց մի տուի Ձեր Պայծառութեան, կար-
» ծեմ թէ քիչ մի համարմունք գտայ ձեր
» առջեւ, և թէ պիտի կարենամ յաջողել
» ուրիշ աւելի դիւրին ձեռնարկութեան մի
» եւս՝ ինչպէս կարծեմ. որ է, (եթէ շնորհէք
» ինձ չորս ամիս ժամանակ), հանել՝ իմ
» ծախքովս՝ կալէոնին մէջ եղած հրազէնքը
» (artelleria), փայտերը և այլ ինչ որ կայ.
» բայց այս պայմանով՝ որ հանածներս՝ իմս
» ըլլան, և ես ծախեմ Նաւարանին՝ ինչ
» պատշաճ գնով որ ուզեն: Ասկէ զատ
» խնդրեմ, որ տրուի ինձ առանձնաշնոր-
» հութիւն, որ մինչեւ 30 տարի ոչ ոք ինձմէ
» զատ կարենայ այս իմ ըրած գործոցս ձեռք
» զարնել, ոչ մեծ և ոչ փոքր մեքենայ շինել՝
» առանց իմ հաւանութեանս, բոլոր տէրու-
» թեանդ մէջ՝ ուր ալ որ ըլլայ. և եթէ մէկն
» հակառակ գործէ՝ պարտական ըլլայ թէ
» շինածը կորուսանելու և թէ տուժելու
» 300 դուկատ, զոր երեքի բաժնելով մէկ

» մասն առնու այս բանիս գործադիր պաշ-
» տօնարանն, մէկ մասը՝ Նաւարանն, եր-
» րորդն ալ ես աղերսողս, որ խոնարհաբար
» Ձեր Պայծառութեան կու նուիրեմ և կու
» յանձնեմ զիս »։

Նոյն օր (24 յունիս) չորս աւագ ատենակալք՝ Դիքսին կողմանէ պատուիրեցին Նաւարանի հոգցողաց, որ քննեն այս խնդիրը և իմացընեն իրենց կարծիքը։ Երեք օր վերջը (27 յուն.) հոգցողքն գրով ծանուցին Դիքսին, որ հաւանելի է Հայոյն առաջարկութիւնն, վասն զի արկղակերտը հանելով՝ յայտնի ըրաւ իր հանճարեղ մարդ ըլլալը, (ha dimostrato di esser persona d'ingegno). կու վայլէ որ հրաման տրուի իրեն՝ գործը կատարելու իր մեքենաներով. իսկ 30 տարուան առանձնաշնորհութիւնը՝ կու թողունք Դիքսին կամքին։ Երկրորդ օրը (28 յունիս) և դարձեալ յուլիս 7ին՝ Ծերակուտին առջեւ կրկին կարդացուեցան հոգցողաց գրուածքն, և քանի մ' օր վերջ (17 յուլ.), Ծերակոյտն՝ (ուր 147 անձինք էին) 145 քուէիւք վճռեցին՝ որ կատարուին Անտոնի խնդրածներն, ինքն իր ծախուք և գործեօք հանէ հանելիքը, և պատշաճ գնով ծախէ Նաւարանին ։ Դարձեալ իր խընդրոյն համեմատ՝ 30 տարի միայն ինքն շինէ այնպիսի մեքենաներ, և առանց իր հաւանու-

թեան շինողն՝ պատժուի և տուժէ։ Այս վճիռը հետեւեալ օրը (18 յուլ.) երեք վաւերական թղթովք տուին Անտոնի։

Անտոնի խնդրած պայմանաժամն՝ այս վըճռին օրէն սկսած՝ կու վերջանար Նոյեմբերի կիսուն. բայց այն միջոցին այլեւայլ դէպք արգելք եղան իրեն, որ յայտնի էին ուրիշներու այլ. ուստի նոյն ամսոյն 10ին նորէն աղերսեց Ծերակուտին՝ որ իրեն տարի մ' այլ ժամանակ շնորհեն, որ ձմեռն անցնի, և կարենայ նորոգել իր խնդրած և ընդունած նաւակը (Varca), զոր իր պէտքին յարմարցուցեր էր։ Նոյն օր հաւանեցաւ Ծերակոյտն (122 քուէով, ընդդէմ 2 միայն մերժողի)։ Նոյն վճիռն դարձեալ տարի մի վերջը (6 հոկտ. 1562) կրկնեցաւ, նորէն տարի մ'այլ ժամանակ շնորհուեցաւ իրեն։ Դիւանական գրուածոց մէջ՝ որ և է խնդրոց ամէն դիպուածքն չեն պատմուիր, որով չեմք կըրնար գիտնալ կամ գուշակել, թէ ինչ պատճառաւ ուշացաւ Անտոնի գործողութիւնն. կ'երեւի թէ դժարութիւնն ոչ այնքան իրմէ էր՝ որքան հակառակորդներէ կամ նախանձողներէ, որք թերեւս իր կենաց ալ կու սպառնային. և զայս գուշակեմ Տասանց Ատենի (որ տէրութեան ամենէն ահաւոր ատեանն էր) տուած վճռէն, յ'13 մարտի, 1562, ըստ

խնդրոյ Անտոնի, որ կարենայ ի Վենետիկ թէ ինքն վրան զէնք կրել և թէ իր երկու մորդիկն՝ որոց անուանքը կ՚ուզէին իմանալ։ Նոյն վճռին մէջ կու վկայեն այլ՝ որ այն ատեն Անտոն կ՚աշխատէր Կոլէոնը հանելու, (il qual attende cavar il Galeon)։ Եթէ ամբողջ հանե՞ց կալէոնը և ե՞րբ, որոշ չըստուիր, այլ անհաւան չերեւիր. որովհետեւ անկէ ետեւ ուրիշ շատ ընկղմած նաւեր ալ հանած է։ Իսկ այն կալէոնը կամ մէջի եղածները հանելու համար՝ մեծ գործիաւոր նաւակ մի շիներ էր, կամ մեծ գործիք մի նաւաձեւ, որ իր յատուկ Հայ անուան պէս՝ յատկապէս Նաւոն կոչեցաւ, Վարտօ կամ Պարտօ, (զոր և իր ազգակից Խաչատուրի լեզուով կըրնայինք Տօլաղ (1) անուանել), 3,500 դուկատէն աւելի ծախքով։ Թէ՛ վերոյիշեալ Տասանց հրամանագրէն և թէ Յովսեփայ (Անտոնի որդւոյն) ըստածէն՝ յայտ է որ 1562–8 տարիներուն միջոց՝ հանած էր այն մեծ նաւէն շատ հրազէնք, խարիսխներ, փայտեր, առագաստակալներ և ուրիշ նիւթեր, որոյ վրայ դարձեալ ամենքն զարմացան։

Անտոնի գլխաւոր ճարտարութիւնն և գործն եղաւ ընկղմեալ նաւուց կամ անոնց մէջի

1. Տես երես 229։

նիւթոց հանուածն ի ծովէ. միանգամայն և վենետկոյ հաչակաւոր Նաւարանին (Arsenale) մէջ պաշտօնեայ մի ճանչուեցաւ, Ճարտարապետ (Ingeniere) կոչմամբ։ Ինչուան 1580 Թուականն կու յիշուին իր խնդիրքն այլեւայլ նաւահանութեանց, բայց աւելի շատ առանց Թուականի յիշուած են. հաւանօրէն կան ևւս որ յիշուած չեն կամ մեզ անծանօթ. իսկ իր գործունէութիւնն և խնամքն իր հնարած և սիրելի Վարքային համար՝ մինչեւ ի 1588–9 տարին, որ է իբր երկու կամ երեք տարի միայն յառաջ քան զմահն։ Այն Վարքայն ոչ միայն իր ճարտարութեան պարծանք էր, այլ և անհրաժեշտ գործիք արուեստին և ապրուստին։ Վերոյիշեալ աղերսագրէն և վճիռներէն կ'երեւի, որ տէրութիւնն թէ և կու հաւնէր, զարմանար, կ'օգնէր Անտոնի, բայց թերեւս ոչ առատապէս և ոչ ըստ արժանեաց նորա. և Անտոն ստիպուելով իր ծախուք շինել այնպիսի մեծ մեքենաւոր Վարքայ մի, և դարձեալ իր ծախուք ուրիշ գործիներ, և վարձել իրեն աշխատակիցներ, ոչ միայն ծախքն կու ծանրանար՝ այլ և կու ճնշէր զնա, այսինքն պարտուց տակ կու մնար (1)։ Շատ հեղ Նաւա֊

1. Իր Վարքային համար ծախսած գումարն 3,500 դուկատ, ատակին նիւթական արժէքով 10,700 Ֆրանք

*բանէն փոխ կ՚առնուր այլ եւ այլ նիւթեր. բայց երբ ատենին չէր կրնար վճարել անոնց գինը կամ պարտքը, Նաւարանին գլխաւորք իր Վարքայն ի գրաւ կ՚առնուին. մանաւանդ թէ իբրեւ գերի բռնէին, և կերպով մի ճարտարին ձեռքը կապէին. որով հասարակաց կամ ընկղմելոց այլ վնաս կ՚ըլլար։ Այսպէս կ՚երեւի թէ նոյն այն տարին,* 1568, *որ երեւելի նաւապետի կամ ծովապետի մի, ազնուական Հերոնիմոսի* (Magnifico Girolamo Contarini) *ընկղմած խալէին* (galea) *միջէն երեք հատ մեծ հրանօթներն հաներ էր, (Վենետկոյ մասն համարուած երկայնաձեւ Ծոնեկո ըսուած կղզւոյն դիմաց), որք* 800 *դուկատ կ՚արժէին, և Նաւարանին ընծայեր էր ձրի. Վարքայն գրաւեցաւ ի նոյն Նաւարանէն, ուսկից առած էր ճօպաններ (հաստ չուաններ) այսպիսի գործոց համար, և պարտքն էր* 882 *դուկատ։*

Ի *գարնան յաջորդ տարւոյն՝ երբ աշխատութեան յաջող եղանակն եկաւ, Անտոն երկար աղերսագիր մի տուաւ Դքսին* (22 *ապրիլ,* 1569) *իր Վարքայն ազատելու, մի առ մի յիշելով թէ ըրած աշխատանքը, այն-*

*կ՚ընէ. բայց այն ատենուան յարգով գուցէ կրկին՝ կամ գոնէ կէս մ՚այլ աւելի կ՚արժէր, այսինքն* 20 *կամ* 15,000 *Ֆր.։*

քան նաւուց կտորները և հրանօթները հանելը, և իր գործաւորաց վարձքը և պարտքերնին ձրի վճարելը ձմեռ ատեն, երբ աշխատանք դադրած էին. մինչ անոնցմէ ոմանք պարտքերնէն ազատելով՝ քովէն փախան. իսկ ինքն իր պարտուց փոխան՝ իր ծախուք նաւահանգստին բերանը մաքրեր էր՝ այնքան քարանց, խարըսխաց և նաւուց կտորներէն, որ 500 տարիէ վեր խրուած մնացեր և նաւարկութեան արգելք էին. իսկ այն փոխ առած կամ գնած ճոպանները՝ որովք իր գործը կու կատարէր, շատ հեղ ընկղմած նիւթերը վեր քաշելու ատեն, չարաճճիկ գործաւորք ի թշնամեաց դրդեալ՝ կու կտրէին ջրին մէջ, և կրկին վնաս կ'ընէին, թէ աշխատանքն ալ կրկնել տալով և թէ ճոպանաց գինն ի զուր տուժել տալով։ Նաւահանգիստը մաքրելէն զատ, անոր մէջ նաւապետաց չի սխալելու համար դրուած նշաններն ալ (signali) հինցած և փտած ըլլալով, ինքն հաներ և նոր դրեր էր, ամէն մէկուն համար (որ 18 էին) քսանական դուկատ ծախք ընելով։ Կու յիշեցընէ նա և նոյն ատենները վտանգուած խալէ մի, որ ջուր առնուլով ընկղմելու վրայ էր, և ուրիշներն աշխատելով չէին կըրնար յաջողիլ, իսկ ինքն իր ճարտարութեամբ ազատեց։ — Դուքան՝

ըստ սովորութեան՝ պատուիրեց Նաւարանին գլխաւորաց, որ Անտոնի աղերսին պատասխան տան. սակայն քանի մ' ամիս վերջ (19 օգոստ. 1569) խոստովանեցան, որ իրաւ Անտոն պարտական էր իրենց վերոյիշեալ գումարը (882 դուկատ, 500ն իրենցմէ առած նաւակի և գործեաց համար, 382 ալ իր Վարքային համար). սակայն շատ այլ արդիւնք ունէր, թէ՛ ընկղմած բաները հանելուն համար, և թէ իր քսակէն աշխատաւորաց վարձքը վճարելուն համար, որով ինքն աղքատացաւ. արդ «այսպիսի հանճարեղ և արդիւնաւոր մարդ» (Person d' iugegno e di valore) արժանի է շնորհաց, և յետ դարձընելու իրեն իր Վարքայն: Ծերակոյտն վճռեց (ի 12 Նոյեմբ.), որ Վարքայն և գործիները դարձընեն տան առ Անտոն. և սա իր պարտքը վճարէ՝ թէ՛ Կալէոնէն և թէ ուրիշ նաւերէ հանած բաներով. բայց նախ իր ծախքը հանէ, յետոյ այն հանած նիւթերուն երրորդ մասովը վճարէ (1):

1. Վճիռ Ծերակուտին. 12 Նոյեմբ. 1569. Che a supplicatione del *fedel* e *benemerito nostro Antonio Suriano Armeno* sia commesso alli Proveditori et Patroni all' Arsenal, che debbano farli restituire la sua Barca, che hanno fatto mettere nella casa; restituendoli appresso tutte le

Այս վճռով ստացաւ Անտոն իր գործիքն և գործունէութիւնը։ Նորէն հանած նաւերէն կու յիշուին՝ մէկ մի Տելլա Վեգգիա Անտոն կոչուած նաւապետինը (Antonio della Vecchia). մէկ Շկլաւոնցի կամ Շկլաւոնիա ըսուած նաւ մի. մէկ մ՚այլ Մարչիլեան մի (Marciliana, այսպէս կոչուէին Ադրիական ծովու մէջ բանող նաւք), որ մարմարիոն քարերով ծանրաբեռնեալ էր. մէկ մեծ նաւակ մ՚այլ (burchio) կապարով լցուած և ընկղմած էր ի Նոր բերդ (Castel–novo) կոչուած ծովեզերքին։ Ասոնց երբ և ի՛նչ կերպով կամ խնդրով հանուելուն վրայ յատուկ տեղեկութիւն ծանօթ չէ, ինչպէս ուրիշ երկու նաւուց։ Ասոնց մէկն էր Կիպրացի նաւ մի, ի սկիզբն 1573 տարւոյ, որոյ մէկ մասին տէր էր Պետրոս Մինա անուամբ մէկն, և կու խոստանար իր պարտքը վճարելու՝ երբ նաւն

robbe pertinenti alla ditta Barca, che siano di ragion del predetto Antonio; secondo che consigliano detti Proveditori et Patroni; dovendo detto Antonio satisfar il debito de D.ti ottocento ottanta doi, che l'ha in detta Casa, con un terzo della utilità, che l' caverà, così nel recuperar alcuna cosa del Galione, come altre robbe de navilij de particolari; detratte per prima le spese che 'l farà per ditta recuperatione.

հանուի, իսկ թէ ոչ՝ խնդրէր պարտքէն ազատ մնալ։ Անտոն՝ ըստ սովորութեանն խնդրեց ի Ծերակուտէն, որ Նաւարանն շընորհէ իրեն հարկաւոր նիւթեր և ինքն հանէ զնաւն, և յետ դարձընէ առած նիւթերը։ Հաւանեցաւ ատեանն և պատուիրեց Նաւարանի գլխաւորաց՝ որ հաշուեն Անտոնի հարկաւոր եղած հին և նոր նիւթոց գինը. անոնք հաշուեցին մէկիկ մէկիկ նշանակելով և գումարեցին 1280 դուկատ. որոց 400 զուտ ստակ էր. զոր և վճռեց Ծերակոյտն (17 յունիս) տալ Հայ կոչուած հաւատարիմ Սուրեան Անտոնի (1)։ Բայց խնդիր մ՚եղաւ, թէ արդեօք պէ՞տք է տալ զասոնք՝ առանց գրաւ մի առնելու ուզողէն. յետ երկար վիճման՝ որոշուեցաւ վճիռը հաստատ պահել, որովհետեւ օրէնքն որոշ բան մի չէր սահմանած։ Կ՚երեւի թէ Նաւարանի պաշտօնեայք կու դժուարէին այս գումարը տալու. անոր համար Ծերակոյտն փեբրուարի 10ին հրամայեց որ նիւթերը տան, իսկ 400 դուկատն տրուի տէրութեան գանձէն, փոխարէն Անտոնի ինչուան հիմայ ըրած և ասկէ ետեւ ընելու ծախուց և աշխատութեանց՝ նաւը հանելու համար։ Բաւական ժամանակ պէտք եղած

1. Al fedel Suriano Antonio detto Armeno.

է այս գործս կատարելու. և դեռ չէր վեր֊ջացած, երբ նոյն տարուան հոկտեմբեր ամ֊սոյն (3ին) վճռեց ատեանն՝ որ ընդունուի Գետրոս Մինայի պայմանական խնդիրը։

Երկրորդ նաւն Կիրանտա (Ghiranda) կամ Կիրարտա կոչուէր, և 1579ին մայիս ամսոյ կամ յունիսի սկիզբը՝ խրուած էր նաւա֊հանգստին մէջ. Թէպէտ և ապահովագրուած էր, բայց ապահովագրողք չուզեցին հանե֊լը յանձն առնուլ։ Այս գործս ալ կու վայլէր արթուն և պատրաստ Անտոնի, որ ի 5 յու֊նիսի աղերս և ցանկ մ'այլ տուաւ իրեն հարկաւոր նիւթոց և 400 ալ դուկատի, զայն հանելու համար 15 օրուան մէջ, եթէ ալէ֊կոծութիւն չըլլայ։ Ծերակոյտն նաւահանգըս֊տին արգելքը վերցընելու համար՝ վճռեց որ շուտով տրուի Անտոնի ուզածը. և երբ հանէ նաւը, միջի եղածն ապրանքներով գնահատուի, և գինն յանձնուի տէրութեան, որպէս զի ա֊պահովագրողք և ընչից տէարք մաս մ'առնուն, մաս մ'այլ գործողութեան ծախուց համար ըլլայ, բաժին մ'այլ Անտոնի տրուի. իսկ նաւապետն և գործակիցքն քննուին, և ով որ յանցաւոր է պատժուի։ Անտոն այս նաւու մեծամեծ կտորներէն զատ՝ միջէն հինգ խա֊րիսխ և շատ նիւթեր հանեց։

Դեռ շատ տարիներ այլ աշխատեր է Հոյն

թէ նաւահանգիստը մաքրելու՝ յօգուտ տէրութեան, և թէ առանձնականաց նաւերը և ապրանքը հանելու ի ծովէ. բայց Թուականով և մի առ մի չեն յիշուիր գործերն. այլ այս յայտնի է՝ որ աշխատանքն և ջանքն իր կարողութենէ և հասարակաց երախտագիտութենէն վեր էր. անոր համար յետ այնքան աշխատանաց և յաջողութեանց՝ կու ստիպուէր շահածէն աւելի ծախսել և պարտքի տակ մնալ։ Այսպէս Կիրանտա նաւուն հանելէն գրեթէ տասն տարի վերջը, Նոր աղերսագրով մի (22 յունիսի, 1588) կ'իմացընէ, որ իր Վարքայն ոչ միայն դարձեալ գրաւուած էր ի Նաւարանին, այլ և պաշտօնեայքն չարաչար գործածեր էին, ինչուան «ծովակին » յատակը փորելու և տիղմ հանելու հա- » մար, որով գրեթէ փճացուցեր էին զայն»։ Այս բանս զիս կու տանջէ, կ'ըսէր. վասն զի ես անով տէրութեան նաւահանգիստը մաքուր կամ ազատ կու պահէի (Io teneva netto il Porto di V. Serenità), ինչպէս որ շատ վկայագրերով կրնամ ցուցընել։ Արդ կու խնդրէ՝ որ Վարքայն տեսող բանիբուն մարդիկ՝ գնահատեն զայն, նոյնպէս այն նիւթերն որ ինքն հաներ և Նաւարանին մէջ թողեր էր, վրանին A գիրը նշանելով, իր Armeno (Հայ) կոչման առաջին տառը. և

անոնց գնոյն երրորդ մասով վճարուի իր պարտքն, և մնացածովն խեղճն կարենայ քիչ մի «հանգիստ շունչ առնուլ (1), յետ այն-
» քան աշխատանաց, հոգոց և վշտաց, և
» նորէն տէրութեան օգտակարագոյն բան մի ճարել »:

Ծերակոյտն ինչպէս որ կու վայլէր՝ պատուիրեց Նաւարանի հոգցողաց և գլխաւորաց, որ արդարապէս քննեն Անտոնի աղերսը, և իրենց ստորագրութեամբ և երդմամբ ծանօթութիւն տան։ Այսպէս ըրին, և (յուլիսի 9ին) գրով ծանուցին որ Նաւարանի գրոց մէջ նշանակուած են Անտոնի պարտքն, այլ ամեն պահանջքն որոշ չեն իմացուիր. վասն զի վերջերս Նաւարանն իրեն տուեր էր երկու տրոկլ (որ է խալէի միջուկը, առանց կազմածի,) և իրեն հարկաւոր եղած նիւթեր. Անտոն զատոնք տարաւ ի Նաւահանգիստ, հօն հիւանդացաւ և դարձաւ իր տունը, հոգցողք ալ արսիլները ի Նաւարան դարձուցին, որոց մէջ զատ այլ նիւթերէ՝ կային Անտոնի յատուկ ինչք այլ.

1. Affinchè io infelice dopo tante fatiche, affanni et calamità possi respirar, et haver commodità di far alcuna provisione utilissima a V. Serenità.

բայց առնցմէ իրեն տրուածն և պահուածն որոշ նշանակուած չեն. այսպէս ալ Լեռոյէն (ծովեզերքի երկայն կղզիաձեւ աւազատեղի), բերուած հրետներ և այլ նիւթեր, որոց մաս մի՝ նա իր տունը տարեր էր. կան նիւթեր այլ որոց վրայ A տառն նշանակուած է, բայց ուրիշ վկայութիւն չկայ թէ իր հանածներն են. որով՝ այս նիւթերէն ոմանց ստոյգ իրեն ըլլալն յայտնի են, ոմանք այլ քիչ մի կարծեօք: Վարքայն՝ իրաւ որ այլեւայլ բանի գործածուելով՝ փճացած է, և իրաւունք ունի Անտոն որ վճարուի իրեն՝ երբ ծախու հանուի: Միով բանիւ, խնդիրս բոլորովին պարզ չէ. որովհետեւ այս մարդս (Անտոն) «որ շատ բան ըրած է յօգուտ հասարակաց», լեզուի և առեւտրի անվարժութեամբ և հիւանդութեան պատճառաւ՝ չէ կրցած հարկաւոր եղած խնամքով գործել. որով երկու կողմն այլ իրաւացի կ'երեւի, թէ՛ իր պարտքը պահանջելն և թէ իրեն շնորհք ընելն: Իբրեւ կարեւոր խնդիր՝ Դուքսն յանձնեց զայս քըննելու Գիտունք կոչուած բարձրագոյն ատենից, և յետ երկու ամսոյ (17 սեպտեմբ.) վճռեց որ Նաւարանի վեց գլխաւորքն արդարութեամբ և 4 քուէով (ի վեցէն) Անտոնի պահանջքը վճարին. բայց և ծախուած կամ գնահատուած իրաց հաշիւը ցուցընեն

Տերակուտին, որ վերջնական վճիռը տայ։ Այս վերջին վճիռը և գործոյն ինչպէս աւարտիլը՝ չեմ գտած ի դիւանս. այլ թէ Հոգցողաց գրածէն և թէ Տերակուտին դիտմունքէն՝ անտարակոյս է որ չափաւորապէս գոհացուցած են զԱնտոն։ — Ասկէ ետեւ, որ իր կենաց վերջի տարիներն է, նաւահանութեան խնդիր կամ ծանօթութիւն չկայ։

Սակայն մեր Հայն ոչ միայն ճարտար էր նաւահանութեան կամ ծովուն յափշտակածը իր խոր ծոցէն դուրս հանելու, և անոր յատակը փորելու, (որոյ համար գործիքներ ալ չիներ էր), այլ ուրիշ և աննման բաներու մէջ այլ ցուցած է իր հարուստ հանճարը. թէ և կենաց և գործոց մեծագոյն մասն՝ նաւու և ծովու վրայ և ծովու խորը եղած է. այլ և ի վերայ օտար ծովու, և շատ մեծ ու նշանաւոր և ահաւոր տեղւոյ և գործոյ մէջ՝ հեռու ի Վենետկոյ։ Գործ՝ որ այն դարուն (ԺԶ) այլ և ընդհանուր պատմութեան մէջ ամենէն երեւելի դիպուածոց մէկն է. և որոյ վրայ երկարել մեզի չի վայլեր. այլ պատմագէտն և պատմաւէրն կըրնայ յիշել և երեւակայել յամին 1571 հոկտեմբերի 7ին հանդիպածն ի ծովածոցին Կորընթոսի. ուր եթէ անծանօթ բան մի կայ՝ այս է, որ այն օր (որ իրաց մեծութեանն համար Վենետկոյ դի-

ւանաց և գրուածոց մէջ, նա և ուրիշ ազգաց մէջ, յատկապէս այն Օրն կամ Լծ օրն կ'ըսուի, առանց ուրիշ Թուականի), այն օր և այն ահեղ իրարանցման և հրաձգութեանց մէջ գտուեր է մեր Անտոն Հայն այլ. Թէ ոչ իբրև նաւապետ կամ զօրապետ, այլ իբրև զինուց յարմարցընող և նաւուց հոգացող, ինչ հոգ և պէտք որ կըրնայ ըլլալ այն առթին։ Նախ Վենետաց մեծամեծ խալէից կողերուն վրայ՝ այնպէս պատշաճ և ճարտարութեամբ կու շարէ հրետները՝ որ ամէնքն կու զարմանան. և երբ նաւամարտին սաստիկ ընդհարման ատեն՝ խալէից մէկն մեծ պատառուածք մի կ'առնու և ընկըղմելու վտանգի մէջ կ'ընկնի, Անտոն կու կարկատէ, կ'ապրեցընէ նաւն այլ՝ նաւաստիքն այլ։ Եթէ միայն մեր Հայն էր՝ այն կենաց և մահու ճգնաժամին՝ այսպիսի գործեր ընող, իբրև Վենետաց յաջողութեան մասնակից՝ կրնային իրմով պարծիլ ուրիշ Հայք այլ. իսկ եթէ ուրիշներ այլ կային (հաւանօրէն) Անտոնի գործակից, անով իր արդիւնքն և ճարտարութիւնն չի նուազիր. մանաւանդ որ յայտնի չէ, գոնէ մեզի, ուրիշներու ըրածն. իսկ Անտոնին այս ըրածն՝ իբր 40 տարի վերջը՝ իր որդին համարձակ գրով հրատարակած է Դուքսին և Ծերակուտին առջև, ուր անստոյգ և անծանօթ բան

*մի չէր կրնար հռչակուիլ։ Եթէ Անտոն Հայ չըլլար՝ գուցէ Վենետք իրենց հայրենակցի մի այսպիսի գործն այլ կու հռչակէին. իսկ եթէ չեն հռչակած Վենետկեցւոց մ' այնպիսի գործ, իրենց լռութիւնն իսկ վկայութիւն մի է հայրասէր որդւոյն վկայութեան, որ կու համարձակի ընելու Հասարակապետութեան առջեւ, թէ Անտոնի այն ինչուան այն ատեն չտեսնուած գործն՝ բերաւ շարժանալի օգուտը, որ յայտնի եղաւ այն հրաշալի դիմամարտութեան մէջ* (1)։

1. Nella Giornata felicissima mostrò l' accomodar l' arteglierie alle bande delle Galere grosse, non più vedute, che apportò il *mirabil beneficio* ch' è stato palese in quel miracoloso conflitto. Et nel medesimo tempo della Giornata espeditamente stagnò una falla d' una delle *grosse galere*, che senz' altro s' affondava.

Արեւմտեայց և մանաւանդ Իտալացւոց մէջ այնքան պանծալի է այն օրն, որ և յետ երեք դարուց՝ ինչուան այս վերջի տարիներս, այլեւայլ քաղաքաց հայրենասէրք իրենց դիւանաց մէջ որոնելով՝ կու հրատարակեն այն աւուր նաւամարտին մէջ գտուող իրենց հասարակ քաղաքակցաց անուանները։ Բայց անոնցմէ ո՞վ կարծէր՝ թէ ծովով և ցամաքով հեռաւոր և բազում իրաց անծանօթ Հայ ազգն այլ՝ ունէր իր այն Օրուան յիշելիք Հայը։

Այս գործոյս կարեւորութիւնը քիչ մ'աւելի բացատրելու համար, պէտք է ճանչընել յիշեալ նաւուց

Բայց Անտոնի ճարտարութիւնն միայն հրետները յարմարապէս շարելու մէջ չէր, այլ վստահ էր նա և յարմարագոյն կամ հզօ-

րպխութիւնն, և հրանօթոց շարուածքի վկայութիւն մ'այլ: Քրիստոնէից տորմիղն 210 նաւ էր, գրեթէ ամէնքն այլ Խոլե, galea. որք երեք թեւ կամ եղջիւր (corno) բաժնուեցան կռուին առնն. աջ ու ձախ 50ական խալէ, մէջն 60, վերջապահ խումբ 26: Ասոնցմէ զատ կային միայն վեց Գէճ Խոլիէ, Galere grosse կոչուածք, զորս մեր նախնեաց բառիւ յարմարապէս կոչենք Բերգանտա: Նոյն նաւամարտին իսկ տարին տպագրող նշանաւոր ծովագէտ հեղինակ մի (Թուխ Թէ և ականատես), վկայէ, որ այս վեց Բերգանտաներն երկու երկու իւրաքանչիւր նաւախմբից առաջապահ կարգեցան, և բոլոր առտմիղին և թեւերուն պատսպարան և ոյժ առնք էին. A ciascuna delle schiere furono mandate innanzi due Galere grosse ; in tal maniera disposte, che queste sei sole abbracciavano in difesa tutta l' armata christiana. Կ'աւելցընէ անմիջապէս հրանօթոց շարուածքին յաջողութիւն այլ, Perciocchè queste erano in *tal maniera fornite d' artiglierie* di bronzo, et di numero di combattenti, che facilmente erano riputate un saldo bastione a tutta l' armata christiana. Մեծ բանիւ նաւամարտին զինական կամ գործիական ոյժն և յաջողութիւն այդ վեց բերգանտաւքն էին, որոց մին պղատեցաւ կամ ապրեցաւ և ապրեցոյց՝ մեր աչալուրջ և արագահաս Անտոնի ճարտարութեամբ:— Թող հիմայ հանճարապատումը զինքն և իր գործն այլ դատաւորին՝ ուր արժան և իրաւացի է:

րագոյն հրետներ շինել. և ճիշդ տարի մի յառաջ քան զմեծ Օրն, երբ հաւանօրէն անոր համար պատրաստութիւնք կ՚ըլլային, ինքն առաջարկեց, Վենետաց և թերևս ուրիշներուն ունեցած հրետներէն՝ կիսով չափ աւելի հեռաձիգ հրետներ շինել։ Տասանց գաղտնապահ բարձրագոյն ատեանն շատ յօժարութեամբ և իբր յարմար առիթ՝ ընդունեցաւ առաջարկը, և պատուիրեց (6 սեպտ. 1570) Նաւարանի հոգցողաց և գլխաւորաց, որ տան Անտոնի մետաղ և ուրիշ պէտք եղածը, որպէս զի շուտով փորձի համար հատ մի շինէ, և ըստ այնմ վճիռ տայ ատեանն (1)։ Բայց ամիս մի վերջը (13 հոկտեմբ.) Նոր

1. Վճիռ Տասանց Ատենին ի 6 սեպտ. 1570. Havendo offerto il fedel Antonio Armeno nel Collegio nostro di far una sorte de Artegliaria, che tirerà la metà più lontano di quella che si fà et usa al presente; non si deve mancare di vederne l'esperienza quanto prima. Pero, L'anderà Parte che sia commesso ai Proveditori sopra l'Artegliaria et Patroni all'Arsenal, che dar debbano il metallo, et il modo dell'altre cose nell'Arsenal nostro ad esso Antonio Armeno; acciochè possa quanto prima far gittar esso pezzo: del qual subito se ne habbi a veder la riuscita; acciochè poi si possa deliberare a questo Consiglio. — *Consiglio de* X, *Comune.* Lib. XXIX c. 170. t.°

հրամանով պատուիրեց՝ որ ի կախ թողուն առաջի հրամանը, ծանօթ պատճառաց համար, որ մեզ անծանօթ են, մինչեւ առ նոր հրաման. ըսել է՝ որ չէին արգելած Անտոնի գործը, այլ առ ժամն յետ թողեր էին (1). Իսկ յետոյ ի՞նչ եղաւ, յայտնի չէ. հաւանօրէն տէրութիւնն մեծ հոգով եւ վախով պատրաստուելով ի նաւազինութիւն իր դաշնակից պետութեանց հետ, նոր փորձի ժամանակ չունէր. եւ երբ յաջողութեամբ վճարեցաւ Օրուան գործն, այլ եւս փոյթ չըրաւ իր հրետները մեծցընելու, եւ անկէ 300 տարի առաջ կանխելով հայ Քրուպ մի ընծայելու, արիսեան եւ պիսիդոնեան անհաշտ դաշտաց վրայ:

Յիշենք այս տեղ անցողաբար, որ այս հրետաշինութեան արուեստին մէջ Անտոնէն 40 տարի յառաջ (1510ին), Հայ երիտասարդ մի՝ իր ազգին բարեկամ, եւ մեր արդէն յիշեալ (էջ 205) Շահ Իսմայէլի պատերազմաց ժամանակ ընդդէմ խոյանչան Թուրքմանաց, Հընտքէյֆի պաշարման եւ ռմբակոծութեան ատեն, միաձոյլ մեծ հրետ մի շիներ էր, բերանն հինգ թիզ լայնութեամբ. ինչպէս վկայէ նոյն դարուն վենետկեցի ճամբորդ պատմիչ մի:

1. Sia sospesa ... sin ad altro ordine.

Անտոն՝ որ այսպէս երբեմն (ծովուն) ջրոց մէջ կու ցուցընէր իր հնարագիտութիւնը, երբեմն հրոյ գործեաց և գործոց մէջ, երբեմն այլ այս երկու տարերաց իրարու հետ կռուոյ մէջ մտաւ, և մէկով մէկալին յաղթեց։ Միայն յարեւելս չէ որ հրդեհք պատահին, այլ շատ հեղ և յարեւմուտս․ Անտոնի ժամանակ ի Վենետիկ քանի մ՚ անգամ պատահեցաւ․ մէկ մի ի Նաւարանին, 1569ին (սեպտ․ 13), որոյ ատեն ինքն եղաւ առաջիններէն մէկն՝ վտանգաւ անձին՝ կրակը մարելու գործոց ձեռք զարնելու․ Նոյնպէս ըրաւ քանի մի տարի վերջը՝ Դքսին պալատան մէջ հանդիպած կրակին, հաւանօրէն ի 11 մարտի, 1574ի, կամ զուցէ անկէ առաջ (1572․ փեբր․ 24), և անկէ վերջ (1577), և ուրիշ անգամներ այլ։ Ասոնք իբրեւ նշանաւոր դէպք կամ հրդեհք նշանակուած են ի Վենետկեան տարեգիրս։

Ջրոյ և հրոյ հասուցած վնասներէն աւելի մեծ և ահաւոր վտանգ և հարուած մի կայ մարդկան․ որ, ինչպէս աւելի ուղղակի կրնանք ըսել Թագաւոր մարգարէին (Դաւթի) հետ, թէ Աստուծմէ կու գայ, այսպէս ճարն ալ յԱստուծմէ է․ բայց մարդկան հնարագիտութիւնն այլ կ՚օգնէ, և շատ կամ քիչ կ՚ազատէ․ այն հարուածն է Սրածութիւնն,

այսինքն ժանտախտն. որ քանի մ'անգամ՝ ինչպէս Եւրոպայի ուրիշ կողմերում՝ ի Վենետիկ այլ հանդիպած է, և մինչեւ քաղաքին բնակչաց երրորդ մասը ջարդած է. (հիմայ այս քաղաքս 140,000ի չափ բնակիչ ունի, Հասարակապետութեան ժամանակ՝ 200,000 այլ եղած է). Անտոնի ատեն այլ ահաւոր սրածութիւն մ'եղաւ, սկսեալ ի 21 յուլիսի 1575 տարւոյ, և իբրեւ հրաշքով դադարեալ համարուի ի 21 յուլիս 1577ին. այն օր ուխտիւք և Թափօրով բոլոր քաղաքն և պետութիւնն առ Աստուած դիմեց, խոստանալով, և յետոյ կանգնելով Ս. Ազատիչ (Redentore) կոչուած մեծ և աննման եկեղեցին, գերահռչակ Պալլադիոնի ճարտարապետութեամբ, որ և յանձնուեցաւ և մինչեւ հիմայ կայ ի խնամս Վեղարաւոր (Գաբուչին) միաբանից, որք այն հոյակապ տաճարին մօտ գձուձ վանաց մէջ բնակին: Այս ահաւոր մարդածախ ժանտախտի ատեն ցուցուց Անտոն՝ թերեւս իր ամենէն օգտակար ճարտարութիւնը. ոչ մեծամեծ մեքենաներով ծովու ալեաց և անդնդոց դէմ կռուելով, այլ փոքրիկ և անծանօթ նիւթով մի ընդդէմ սրածութեան. հնարեց դեղ մի, որոյ գաղտնիքն իրեն պահեց, այլ անով « շատ վիրաւորեալներ բժշկեց և շատ ազնուական ընտանիք ապրե-

ցուց »․ (Liberò tanti feriti, et risanò tante famiglie di Nobili)․ Տէրութիւնն յանձնեց իրեն յատկապէս քաղքին մէկ Թաղին (d' Osso duro, կարծր ոսկր) հիւանդները հոգալու, որոնց համար՝ Անտոն իր դեղի հետ ուրիշ դեղոց ծախքն այլ վճարեց, և աղքատաց կարօտութիւնը լըցուց իր ստակով՝ ձրիապէս, աւելի քան զճարտար՝ ըլլալով Բարերար։

Տէրութիւնն թէ և շատ անգամ համարմունք ցուցած էր Անտոնի և հաւանած անոր խնդրոց, բայց՝ ինչպէս առաջ ալ յիշեցինք, ոչ առատապէս վարձատրած, կամ ինչպէս պաշտօնեայք ցուցին (1588), Անտոն որքան որ սրամտութիւն ունէր հասարակաց օգտի գործոց համար, իրեն ապրուստին ապագայն չէր ապահովցընէր, և յուսով կամ բարեմտութեամբ՝ նոյն հասարակաց համար իր քովէն շատ ծախքեր ընելով (¹), և փոխարէն չգտնելով՝ ի նեղ ընկաւ ի տնտեսութեանն, մանաւանդ վերջերը հիւանդութեանց այլ պատճառաւ։ Իր կենաց վերջի յիշատակն ի դիւանս՝ նոտարական գրուած մ'է (1591,

1. Fece infinite spese del suo particolare, senza havere alcuna reintegratione. Այսպէս գրէր իր որդին տռ. Դուքան, աղերսելով։

ապրիլի 5ին)․ ուստից կ՚իմանամք որ այն ատեն կու բնակէր քաղքին Ս․ Մարտինոս կոչուած Թաղի մէջ, (որ Նաւարանէն հեռու չէ), Խոտոր կոչուած կամրջին քով (Ponte Storto), ազնուականի մի (Բեռնարդ Տրեվիզան, Trevisan) տան մաս մի վարձած, 60 դուկատի․ ուստից 36 դուկատ պարտք ունէր տանտիրոջ, որ՝ անոր ուրիշ տեղ գրաւ դրած 20 դուկատը՝ իրեն գրաւ առաւ․ իսկ յիշեալ Թուականին (5 ապրիլ, Յիկոլին անուն) Նոտարի առջեւ պարտատէր և պարտական՝ իրաւախոհ եղան, որ Անտոն ինչուան ամսոյն 21 իր պարտքը վճարէ, Բեռնարդ այլ գրաւը յետ դարձընէ, և Թողու որ իր վարձուորը դարձեալ բնակի իր տան մէջ, մինչեւ տարւոյն վերջը՝ 34 դուկատ վճարելով։

Բայց տարւոյն վերջին չհասաւ մեր Հայն․ այլ այդ դաշնադրութենէ քանի մ՚ ամիս ետքը, ի 22 օգոստոսի, վախճանեցաւ նոյն տան մէջ, տասն օր Թանչ–ախտով հիւանդացած, 58 տարուան, ինչպէս կ՚իմացընէ մեռելագիրքն (1)․ Թողլով այրի կնկան հետ՝ վեց զաւակ․ ուստից կ՚իմացուի որ աղքա-

1. Messer Antonio Armeno d' anni 58, amalato da Fluxo, gia giorni 10. Sta zò del Ponte Storto, nelle Case di Cha Trevisan. Licentiato.

տապէս թաղուած է Նոյն թաղի եկեղեցւոյն մէջ կամ քով։ Եթէ Անտոն իր ժամանակակից կամ աւելի վերջ եկող ազգային վաճառականաց շահասիրութիւնն ունենար, անտարակոյս շատ հարուստ կըրնար ըլլալ, այնքան ճարտար և մեծամեծ գործերովը. սակայն ինքն աւելի ուրիշի օգուտ քան առանձին շահը մտածելով քիչով շատացեր է, 40 տարի գրեթէ անդադար աշխատելով, և միշտ գովելի, արդար և ճարպիկ վկայուեր է. վկայութիւն՝ որ շատ աւելի փառաւոր է՝ քան մեր վաճառականաց ի Վենետիկ մեծապէս շահածն և կորուսածն։ Ինքն իսկ Անտոն այսպէս մտածէր ըստ վկայութեան իր որդւոյն՝ վերջին աղերսագրին մէջ. թէ, փառաւոր մահ կու համարէր իր աշխատութեանն ժառանգ և երախտաւոր թողուլ իր զաւակները. (Si riputò di morir glorioso con lasciarme con cinque altri miei fratelli, heredi et benemeriti delle sue fatiche. Միայն թէ կու վայլէր որ այսպիսի Հայ մի, որուն արդիւնքը կըրնան. դատել ընթերցողք, ինչպէս իր կենդանութեան ատեն, անկէ վերջ այլ ծանօթ և զարմանալի ըլլար այն քաղաքացեաց, որոց՝ Նախ օտարական՝ յետոյ քաղաքակից ըլլալով՝ այնչափ երախտաւոր և բարերար եղաւ։ Բայց եթէ Վենետք՝ միայն իրենց մո-

ռացեալ Դիւանաց մէջ կու պահեն Անտոնի յիշատակը, ասոր ազգայինք 300 տարի վերջը՝ իբրեւ յարութիւն տալով և եռադարեան յոբելեան համարելով իր մահուան թուականին (1591-1891), վայել է որ աւանդեն զայն իրենց հայրեններաց, իբրեւ յանկարծագիւտ և անմոռանալի յիշատակ մի եւս, ի միջի իրենց ծանօթ և անծանօթ յիշատակաց։



## Է.

### ՀԱՅ ԱՆՏՈՆԻ ՈՐԴԻՔՆ ԵՒ ԹՈՌՆ

*Անտոնի մտաւորական կամ բարոյական յիշատակներէն վերջը՝ արժան է յիշել և բնական կամ կենդանական թողած յիշատակն, որ է Ցովսէփ որդին, իր հօրն մականուամբ կոչուած, և հաւանօրէն անդրանիկն։ Սա եւս հօրը մահուանէն վերջը* 40 *տարի յիշուի. և նոյն արուեստանոցին մէջ, այսինքն Նաւարանին, գործաւոր եղած է, իբրեւ հիւսն* (marangon), *և յետոյ գլխաւոր կամ գործապետ հիւսանց* (Capo-Opera de' marangoni)*. և եթէ հօրը բոլոր ճարտարութիւնը չէ ունեցեր, սակայն բաւական այլ ունեցեր է, հանդերձ անոր գովելի բարքով և պատուով. ինչպէս յայտնուի նոյն Նաւարանին և այլոց պաշտօնէից վկայութեամբք և Դքսին տուած շնորհքներով։ Իսկ մեզի համար աւելի գովելի և երախտաւոր է՝ իր աղերսագրաց մէջ հօրն ըրած արդիւնաւոր գործերը համարձակ յիշեցընել*

տալովն, նախ Վենետկոյ տէրութեան գլուխ-
ներուն, և ապա մեզի: Իր տարիքը յիշե-
ցինք ի սկզբան. հօրը վախճանած ատեն
իբրեւ 15 տարուան պատանի մ'էր. և հա-
ւանօրէն անոր ձեռաց տակ մտած է ի Նա-
ւարան և սկսած վարժիլ հիւսնութեան. թէ
տարիքի անկատարութեան, թէ հօրը կեր-
պով մի տարաժամ մեռնելուն (քիչ օրուան
հիւանդութեամբ) չէ կրցած ժառանգել ա-
նոր հնարագիտութիւնը և գաղտնիքները:
Դիւանաց մէջ առաջին անգամ 1607ին կու
գտնեմ Յովսեփայ յիշատակը, իր 30ամեայ
հասակին, ուսկից կ'իմացուի, որ Տիմոյ
Կանցոյ անուամբ Կորկիւրացւոյ մի (Գորֆու)
աղջիկը՝ Գիարա կամ Գիարէդդա (Պայծառ,
Պայծառիկ) կին առեր է, զուցէ ազգաւ յոյն
կամ վենետայոյն. և բաւական տարի առաջ
կարգուած պիտի ըլլան, որովհետեւ 1609ին
չորս զաւակ ունէին: Հարսն իբրեւ օժիտ տը-
ւած է Յովսեփայ 50 դուկատ արժէքով տան
կահ կարասիք. անկէ զատ իր հայրենական
և մայրենական ժառանգութեամբ երկիր և
ստացուածք ի կղզին (Գորֆու), և բոլորն այլ
յանձնէր է իր փեսային, որ ինչպէս ուզէ՝
տնտեսէ կամ ծախէ, և բոլորն իր օժիտն
համարուի. բայց ըստ օրինաց Վենետկոյ՝
պարտական ըլլայ Յովսէփ՝ ի հարկին՝ դար-

ձրնել անոնց գինը առ կինն: Այս բանս Նօտարի առջեւ երկուքն ալ հաստատեր են (13 փեբր. 1607), և վկայ եղած են երկու Կորկիւրացիք: Տարի մի վերջը (4 յունիսի, 1608) Յովսէփ Նորէն Նօտարին առջեւ վկայէ որ իր կնոջմէ առած է 150 դուկատ արժէից ինչք և զարդք՝ և անոր Գորֆուի ստացուածքներէն եկամուտ. և կու խոստանայ այդ երկու գումարին (200 դուկ.) փոխարէն դնել իր յատուկ ստացուածքը, և հատուցանել՝ եթէ պէտք ըլլայ:

Եթէ Յովսէփ հօրը աղքատութեան ժամանակ որբ մնաց, կ՚երեւի թէ բաւական ունեւոր կենակից մի գտաւ. սակայն իր ընտանեաց համար ոչ անկէց առած օժիտն և ոչ իր հիւսնական աշխատութեան վարձքը բաւական համարէր չափաւոր բարեկեցութեան. ուստի, այս իր վերջին խոստմանէն տարի մի ետքը (1609, օգոստ. 19) աղերս տուաւ առ Դուքսն, մի առ մի յիշեցընելով իր հօրը արդիւնքը և ճարտարութիւնը, 40 տարի տէրութեան ծառայութեան մէջ. և խնդրելով որ թոշակն՝ որ էր օրական 42 փող (soldi) աւելցուի, և տրուի 3 լիրա: Ըստ պատուիրանի Ծերակուտին՝ հոգցողք և գլխաւորք Նաւարանի՝ քննելով վկայեցին (ի 18 յանուարի, 1610) որ Յովսէփ իր ա-

րուեստին մէջ շատ յաջող է (molto sufficiente nella sua professione), և տէրու-
թեան բազմերախտ անձի մի զաւակ ըլլա-
լով՝ արժանի է շնորհաց։ Չեմ գիտեր ինչ
պատճառի համար այս խնդիրս և վկայու-
թիւնն ութ անգամ կրկնուած է երեք տա-
րուան միջոց, բայց վերջի անգամ (12 դեկտ.
1613) Ծերակոյտն Յովսեփայ 42 փող օրա-
վարձի վրայ աւելցընելով 8 փող այլ, այն-
պիսի փառաւոր վկայութիւն կու տայ իր գե-
րագոյն վճռով՝ անոր հօր արժանաւորու-
թեան. որ անգին կըրնայ ըսուիլ. « Հայ կո-
» չուած Սուրեան Անտոնի՝ մեր տէրութեան
» երկար և պտղաբեր ծառայութեան համար՝
» ի տան Նաւարանի, և իբրեւ ճարտարա-
» պետ, բաց ուրիշ իրեն լաւ գործերէն՝
» 1563ին հնարած ըլլալով ընկղմած կալէոնը
» հանելու համար շինած արկղաձեւերը, որով
» նաւահանգստին անբաւ օգուտ եղաւ, և այն
» ալ իր յատուկ ծախքով, և վերջի Նաւա-
» մարտին մէջ հրետները մեծամեծ խալէից
» կողերուն յարմարցընելով, ի շրջմանս ամենե-
» ցուն, և ամէն հասարակաց օգտի գործոց
» մէջ միշտ եզական պատրաստականութիւն
» ցուցընէր... և իր որդւոյ Յովսեփայ փու-
» թաջան և հաւատարիմ ծառայութեան հա-
» մար՝ իբրեւ հիւսն ի Նաւարանի, իր աշ-

» խատութեան օրերու Թօշակն ըլլայ 50 » փող », և այլն (1)։

Յովսեփայ կարօտութեանն բաւական չեղաւ այս յաւելուած ի Թօշակն. երկու տարի վերջը (18 մայիս, 1615) Նոր աղերսագրով մի խնդրեց որ իրեն ամսական 5 դուկատ (աւելի) տրուի բոլոր կենաց մէջ, ի շնորհս երախտեաց հօրը, Նա և իր յատուկ աշխատութեանց. որոց մէջ կու յիշէ, որ հիմայ կարող էր Նաւեր և խալէններ շինել. այս բանիս վկայեն Նաւարանի գլխաւորքն այլ.

1. Per la *lunga et fruttuosa* servitù prestato alla Sig. V. da Antonio Suriano detto *Armeno*, nella Casa d' Arsenale, et Ingegnere; havendo fra 'le altre buone operationi sue, l' anno 1563, cavati li cassoni che furono fondati per cavar il Galeone; con servitio infinito del Porto, et con sua spese particolare; et nella ultima battaglia navale accomodata l' artiglieria alla banda dellè galee grosse, *con meraviglia d'ogn'uno*, essendo sempre con *singolar prontezza l' opera sua* in tutte le occasioni di pubblico servitio, come dalla Scrittura hora letta hà questo Consiglio inteso; Et per la diligente et fedel servitù che Iseppo Suriano figliolo che fu del sudetto Antonio, presta nella Casa dell' Arsenale, come Marangon di detta Casa; Siano... accresciuti al detto Iseppo Soldi otto al giorno lavorante, alli 42 che ha al presente....

(nel fabricar in questa Casa (dell'Arsenale) Galee con molta sufficienza.) և գովութեամբ արժանի համարին իր խնդրածին (5 յունիս)։ Նոյնպէս և հոգցողք Հրազինուց (Proveditori d'Artellierie ի 16 օգոստոսի, 1612), թէ ոչ միայն հայրն՝ այլ և ինքն Ցովսէփ կարող և յաջող անձն է, իր յատուկ գիւտով խալէններ շինելու (1), և կու յուսացուի իրմէ միշտ լաւ ծառայութիւն (2). անոր համար արժանի է շնորհաց։ Ի վերայ այս վկայութեանց՝ Ծերակոյտն վճռեց ի 6 յունիսի, 1620 (հաւանօրէն և առաջ) որ Ցովսէփայ Թոշակին վրայ աւելցուի ամսական 3 դուկատ ալ բոլոր կենաց մէջ (3)։

Տասն տարի վերջը Ցովսէփ նոր և վերջին աղերսագիր մ'ալ տուած է (7 մայիս, 1629), որոյ մէջ կ'իմացընէ՝ որ իր հօրը պէս 40 տարի

1. È ancor lui persona sufficiente et di valore, fabricando Galee di suo proprio sesto.

2. Et si può da lui promettere in ogni tempo di ricever buon servitio

3. Եթէ (հաւանօրէն) ոսկի դուկատ չէ, որ ըստ նիւթականին արժէր իբր 17 ֆրանք, արծաթի 3 դուկատք հազիւ 10 ֆր. արժեն՝ ըստ նիւթոյն, մէկ լիրայն ալ՝ կէս ֆրանք։ Ըսել է որ ըստ վարկի ժամանակին՝ բազմապատիկ աւելի արժէք ունէին. այսպէս ալ գումարելու է Անտոնի ըրած և ցուցած ծախուց հաշիւները։

տէրութեան ծառայութեան մէջ է, նախ նաւերու մէջ, յետոյ Նաւարանին մէջ երբեւ հիւսն, և 25 տարիէ վեր հիւսանց գլխաւոր կամ գործավար, որոց վրայ շատ հոգով և տառապանօք կու հսկէ՝ որ տէրութեան վնաս չըլլայ անխնայութեամբ. շատ նաւերու և խալէից շինութեան մասնակից էր, զոմանըս ալ իր յատուկ ոճով. Նաւարանի տեսչաց հրամանաւ գացեր և հինգ տարի կեցեր էր ի Կորկիւրա (ուսկից հիմայ վեց ամիս է որ դարձեր էր), անկից նաւաց շինութեան համար խոտորնակ փայտեր բերելու (Stortami), և այն աստիճանի շատ բերեր էր՝ որչափ ոչ ոք իրմէ առաջ. որ և ոչ միայն 20 խալէից շինութեան բաւեց, այլ և դեռ շատ աւելցաւ։ Այն կղզում եղած ատեն՝ բերդին համար շատ կարեւոր գործեր տեսաւ (1). ուրիշ գործերէ զատ՝ նաւահանգստին ծոցում (mandracchio) ընկղմած տրոփ մի հանեց։ Այս ամէն աշխատալի գործոց համար վկայականներ ունէր. որով համարձակ խնդրէր որ դարձեալ Թօշակին վրայ աւելցուի օրական լիրա մի, և իր աստիճանակից արուեստակցաց նման՝ իրեն այլ տրուի հասարակ

1. Sendomi adoperato in molti altri importantissimi convenienti a quella fortezza.

աշխատաւոր կամ ծառայ մի, (il Fante grosso), ինչպէս ուրիշ գործավարք ունէին, առանց իրեն չափ արդիւնք ունենալու։ Այս ամեն բանին երդմամբ վկայեցին Նաւարանին գլխաւորքն (19 յուլ.). ոչ միայն իր հաւատարմութիւնը և 40 տարուան փութաջան աշխատութիւնը գովելով, այլ և սովորականէ վեր բաւականութիւնը՝ (sua non ordinaria sufficienza), մասնաւորապէս ի Կորկիւրա ըրած գործը, շատ հեղ վտանգաւ կենաց՝ յայլազգեաց հակառակութենէ. շատ մեծ ծառայութիւն՝ զոր երբէք անկէ առաջ մէկն չէր կըրցած ընել [1]։ Կու յիշեն նա և ոչ միայն արտիլը հանելը, այլ և իր ծախուք հանելը. նոյնպէս ուրիշ նաւ մ'այլ (Berton Foscolo) որ ալէկոծութեամբ ի ցամաք ընկեր էր. և այս ամեն բանի մեծ և չափէ դուրս գովութեամբ վկայականներ ունենալն ի պաշտօնէից [2]։ Ցայտնի է այս վկայութեանց վերջաբանն, որ արժանի շնորհաց համարին զՑովսէփ. իսկ տէրութիւնն որ ոչ երբէք

1. Servitio veramente di somma rilevanza, d'altri ne' tempi passati non saputosi eseguire di gran lunga.

2. Da publici Rappresentanti ha ottenuto Attestati che sommamente decantano il suo merito, con estraordinaria commentatione sue.

կու զլանար շնորհքը, այլ կու չափաւորէր. այս անգամ այլ փոխանակ աղերսողին խընդրած օրական լիրայի մի՝ աւելցուց անոր 48 փող Թոշակին վրայ՝ 6 փող այլ, որպէս զի կ՚ըսէ (ի 22 մարտի, 1630), հանգիստ և մխիթարուած սրտով՝ այսուհետեւ ալ նոյն եռանդեամբ շարունակէ իր փութաջան և օգտաւէտ ծառայութիւնը։

Հազիւ վեց ամիս կըրցեր է Յովսէփ վայելել իր աւելցած թոշակը. նոյն տարին այլ (1630) ի Վենետիկ ահաւոր սրածութիւն մ՚ եղաւ, ինչպէս իր ծընած տարին. կ՚երեւի թէ ինքն այլ բռնուելով այս ժանտախտէն՝ տէրութեան կարգադրած զգուշութեան հրամանին համեմատ՝ ի զգուշարանն (lazareto) խաւրուեր է, ուր վեցօրեայ գլխացաւով վախճաներ է, 54 տարուան ([1]), ի 29 հոկտեմբերի. իսկ իր բնակութեան տեղն է եղեր ի մեծ թաղին Ս. Պետրոսի, որ և Բերդի թաղ կ՚ըսուի (Castello), Սինեբրու անուանեալ փոքր հրապարակաձեւ տեղւոյ մէջ (Calle delle Colonne)։

Յովսեփայ կենաց և գործոց վերոյգրեալ յիշատակներէն զատ՝ մէկ մ՚ այլ ծանօթ է ի

1. 29 Ottobre, 1630. Ser Iseppo da Antonio Armenio, anni 54. Doglia di testa già sei giorni: In Calle delle Colonne. Lazareto.

Նոտարական Դիւանս (Leonello Geronimo Նոտարի), յամի 1622–3. Նաւարանի հիւսանց գործավարի երկրորդ մի, (Vice Capo d'Opera de' Marangoni) պարտական ըլլալով Յովսեփայ, նախ ի 22 դեկտ. 1622, յետոյ և ի 27 մայիսի, 1623, Նոտարի առջեւ խոստանայ և գրել կու տայ, որ իր պարտատէրն (Յովսէփ) ըլլայ իր գործակալն կամ երեսփոխան, և ընդունի ինչուան տարի մի և 2 ամիս՝ իր առնելիքները, որ էին 2 դուկատ ի Նաւարանէն, դուկատ մի և 18 փող ուրիշ պաշտօնարանէ, և չափ մի ալիւր ամսական, և առոնցմով վճարի պարտքն։

Այս երկու ազգայնոց՝ իրարու արժանաւոր հօր և որդւոյ (Անտոնի և Յովսեփայ) գովելի և յիշատակելի գործունէութիւնն, վերոյ նշանակեալ թուականներէն յայտ է՝ որ անընդհատ 80 տարի տեւած է, Վենետկոյ պետութեան և քաղաքին ամենէն կարեւոր, զօրաւոր և շահաբեր գործանոցին մէջ, որ է Նաւարանն. որոյ հետ անբաժան իմանալու է և Զինարանն, ինչպէս որ Arsenale կոչումն կ'իմացընէ։ Յայտ այլ եղաւ, կարծեմ, որ բաւական պարծանք և յիշելիք մի կրնար ըլլալ իր ազգայնոց, ներկայից և ապագայից. յուսալի էր որ աւելի երկարատեւ յայտնուէր այնպիսի գործունէութիւնն

իրենց ցեղին յաջորդութեամբ. թէ և Հայութիւնին ըստ լեզուի և կրօնի՝ յիտալութիւն փոխուած ըլլայ։

Անտոն 6 որդի թողած էր, մէկ մ'այլ իրմէ քիչ առաջ մեռած։ Յովսէփ յիշեց իր 4 զաւակներն՝ յամին 1609. բայց անկէ ետեւ ալ որդի ունենալն յայտնի է. շատ հաւանական է թէ իր եղբարց և որդւոց ոմանք՝ իրենց նման Նաւարանի գործաւորք եղած ըլլան. և թերեւս քանի մի ազգ, այսինքն որդւոց որդի յառաջ եկած ըլլան, և ժամանակաւ եթէ ցեղն ալ ընջուած չ է, այլ իրենց նախահօր Սուրիան մականունն ընջուած ըլլայ. թէ և Սուրիան մականուամբ եղած են Վենետկեցիք և ազնուականք, բայց ուրիշ ծագմամբ։ Միայն մէկ մի ծանօթ է մեր Հայոյն ցեղէն, և իր յատուկ թոռն, Յովսեփայ որդին, որ և իրենց արուեստը բաներ է ի Նաւարանի, և քաւորդ դար մ'այլ շարունակեր է անոնց գործը. բայց ո՞րքան յաջողութեամբ և ի՞նչ տեսակ. անծանօթ է։ Իր մահուան թուականէն (1655) յայտ է, որ Յովսեփայ առջինեկ որդիքներէն չէ սա [1], այլ 1622ին (ա-

1. Բաւական հաւանական կ'երեւի որ այս առջինեկներէն մէկն էր Նաւարանի հիւսն Գէորգ, որ կ'ըսուի որդի Հայոյն Յովսեփայ, (de Iseppo dell' Ar-

պրիլի 14ին՝ մկրտուած) և անուանած Ֆրանչեսկոյ–Մատթէոս–Անտոն. կնքահայրն ալ եղած է Նաւարանի հիւսանց համարակալի պէս գլխաւոր մի (Proto), Պետրոս անուամբ(1)։ Այս է մեր Հայուն Թոռան բոլոր մեզի ծանօթ յիշատակն, ծննդեան և մահուան, որ իր կենաց 33 տարին հանդիպած է, սեպտ. 14ին (1655)։ Բայց մեռելագրոց Նշանակածէն(2) կ՚իմացուի ոչ միայն մինչեւ վերջը

meno)· բայց դիտելի է, որ սա 1618ին զաւակ ունէր յօրինաւոր կնոջէ (Եղիսաբեթէ) և կնքէր (20 յունիսի) Յովհան–Պօղոս–Անճելոյ անուամբ· ըսել է, իր Ֆրանչեսկոյի (եթէ իր եղբայրն է) ծնանելէն չորս տարի առաջ· և հարկ է որ թէ ինքն (Գէորգ) և թէ Յովսէփ (եթէ իր հայրն է) իբրեւ 20 տարեկան կամ այլ աւելի նորահասակ կարգուած ըլլան։ Եթէ այսպէս է մեր Հայուն (Անտոնի) ցեղն կամ ճիւղն աստիճան մ'այլ կ' երկըննայ։

1· Մկրտագրքէն կու գրէ· 4 Aprile, 1622. Francesco e Matteo Antonio, fio di Ser Iseppo, q.m Antonio Armeni, Marangon, et di Chiara, jugali. Stà in Calle delle Colonne. Compare il Ser Pietro q.m Domenico, Proto de' Marangoni. P. Massi Curato.

2. 14 Settem. 1653. Messer Francesco q.m Iseppo Armeno, Marangon d' Arsenal, d' anni 33 in circa: da febre continua già giorno 8. Li medici Leonardi et Bartoldi. Fà sepelir Madonna Andreana sua consorte. Stà in Casa Sabinelli, in S. Iseppo.

Նաւարանի մէջ հիւսն ըլլալն, այլ և ամուսնացեալ ըլլալն, և բաւական ազնուական կին մ'ունենալն՝ Անդրէանա անուամբ, որ կոչուի Madonna Andreana, և իր ծախուք թաղել տուեր է այրիկը. և անոր ութօրեայ անընդհատ ջերմի հիւանդութեան ատեն՝ երկու բժիշկք եկած են զինքը հոգալու։ Նոյն ինքն Ֆրանչեսգոյ այլ՝ պատուով Messer կոչուած է և ոչ Ser (որ ստորին կարգի մարդկան մակդիր է)։ Բնակութեան տեղն՝ թէպէտ նոյն հօրը բնակած թաղին մէջ էր, բայց ուրիշ կողմն։ Այս ամեն նշաններէն գուշակուի, որ Հայոյն Թոռն՝ անկէ և իր Յովսէփ որդիէն աւելի բարեկեցիկ եղած ըլլայ, գոնէ կենաց վերջերը։ Հաճելի է թէ իր աշխատութեամբ և ճարտարութեամբ վաստըկած ըլլայ բարեկեցութիւնը՝ քան ժառանգութեամբ։ Պանծալի եւս է՝ որ Վենետկոյ ամենապանծ Նաւարանին մէջ՝ ամբողջ դարէ մ'աւելի (1549–1655), հօր, որդւոյ և Թոռան Հայ անուննն և արդիւնաւոր գործն շարունակ յիշուած են գովութեամբ։

## Ը.

### ԳԷՈՐԳ ԿԱՐԱՒԱՆԱԳԵՏ, Ի ՂԹՍՑԱՐ

### ԵՒ ԹԱՐԳՄԱՆ ՎԵՆԵՏԱՑ



Սուրբեան ճարտար Հայոց և անոնցմէ առաջ յիշուած լեզուագէտ և գործունեայ Գէորգայ և իր որդւոյն Մարկոսի նման, լեզուագէտ և ճարպիկ Գէորգ մ'այլ դըդէ Յովհաննու, գրեթէ անոնց ժամանակակից, աւելի ծանր ծառայութիւն կամ գործեր ըրած է Վենետկոյ տէրութեան, արդարեւ դժուար ժամանակ մի. երբ Օսմանեանց դէմ պատրաստութիւն կար պատերազմի և մեծ Նաւամարտին (1570)։ Ինքն իսկ Գէորգ իրեն հանդիպածը կու գրէ իտալերէն, յորդորմամբ Մարկոս–Անտոն (Marc' Antonio) Պա՛րպարոյ ազնուականի, որ ատեն մի Վենետաց Պայլ այլ եղած է ի Կ. Պոլիս (1568–71)։ Կ'իմացընէ ատոր, որ մինչ ինքն ի Ռակուզա էր՝ իր ապրանքները ծախելու համար, Յոյն մի զինքը գտաւ և հարցուց, թէ ի՞նքն է Գէորգն. և ստուգելով՝ հանեց Թուղթ մի, զոր յիշեալ Մարկանտոնիոսն (ի Վենետիկ ըլլալով այն

ատեն) կու յանձնէր Գէորգայ, որ տանի ի Պօլիս առ Պայլն կամ անոր փոխանորդն։ Գէորգ քիչ շատ դժարեցաւ այս վտանգաւոր գործոյ, բայց քաջալերուելով Թուղթը բերաղէն՝ յանձն առաւ։ Յայտ է որ իր ճարտարութիւնն արդէն ծանօթ էր Վենետկոյ տէրութեան։ Յետ զատկի տօնին՝ ցամաքով ճամբայ ելաւ. երբ հասաւ ի Սգոբիա քաղաք Պոսնիոյ, ետեւէն հասան Գոսովայի Վոյվոտայէն խաւրուած երկու Թուրքք, և հարցուցին կարաւանին թէ մէջերնին Հայ կա՞յ։ Գէորգ՝ որ ընկերաց հետ այն ժամուն նախաճաշ կ՚ընէր, իմացաւ՝ որ զինքը կու փնտռեն. նա մակը գրեր էր ի ծոցը, որ երբ վտանգ հասնի՝ ծածուկ դուրս ձգէ. բայց հիմայ լրտեսաց աչքի տակ՝ չէր կրնար այս բանս ընել. ուրիշ ճար չգտաւ, բայց եթէ ձեռքի հացին հետ Թուղթն ալ պատառ պատառ կլլնել։ Բռնեցին տարան զինքը Վոյվոտային, որ հարցուց թէ Թուղթ կա՞յ քովը. երբ ժխտեց, մերկացընել տուին. և ինչուան կօշիկներուն յատակը քննելով՝ բան չի գտան. յետոյ խաւրեցին՝ իր ապրանքն ալ քննելու. հօն ալ բան չգըտնելով՝ կապել և ծեծել տուին, որ խոստովանի Թուղթերը ո՞ւր պահած ըլլալը. նա միշտ կ՚ուրանար. և իբրեւ կիսամահ թողուած դարձաւ ի կարաւանն,

և նորէն ի ճամբայ ընկաւ, հասաւ ի Կ. Պօլիս, Համբարձման տօնէն վերջը. քանի մի ամիս կեցաւ հոն, դիտեց, տեսաւ և լսեց Օսմանեանց մեծ ու անդադար պատրաստութիւնը՝ մեծամեծ նաւեր շինելու և զինելու, 200էն աւելի, և ամէն կողմէ նաւաստի ժողվելը. իմացուց Պայլին իր ով ըլլալը, և երկու թուղթ առաւ անկէ ի Վենետիկ բերելու։ Օգոստոս ամսուն ելաւ ի Պօլսոյ գրեթէ նոյն ճամբով դառնալու. ամեն տեղ կու տեսնէր Թուրքաց պատերազմի մեծ պատրաստութիւնն և պաշարը՝ զոր կու տանէին յԵէնի գալէ։ Երբ հասաւ ի Ռակուզա և իմացուց քաղաքապետին՝ ինչ բանի համար գալն և երթալը, նա թող չտուաւ որ երթայ ի Վենետիկ, այն ատեն հոն հիւանդութիւն ըլլալուն համար, այլ թուղթերն առաւ և ղրկեց։ Իսկ Գէորգայ նորէն հրաման եկաւ երթալու ի Պօլիս. բայց ինքն իր տանը կենալու պէտք ունենալով՝ իր մէկ ազգականին յանձնեց գործը, որուն խոստացուեցաւ՝ որ երբ դառնայ՝ 40 դալէր վարձք տան։ Իսկ ինքն քիչ ատենէ նաւով ելաւ երթալու ի Վենետիկ. բայց օդոց և ծովու խառնակութեան պատճառաւ՝ 50 օր քշեց նաւարկութիւնն ։ Հօս վերոյիշեալ ազնուականին խընդրով՝ գրեց այս ամեն յիշուածը. գրուած-

քին Թուական չկայ (օրինակին մէջ), բայց 1571ին պիտի ըլլայ. որովհետեւ Պայլն ի Պօլսոյ գրած է առ Դոժքն ի 11 օգոստ. 1570, թէ ի Ֆակուզա գացող դեռ համբայ եկած չէ. յաջորդ տարին (1571) ապրիլի 22ին ալ կու գրէ, որ ի Ֆակուզա գացող Հայուն Թուղթեր տուած է. և տարակուսելով որ ուշ պիտի հասնի, Թղթերուն օրինակ մ'այլ կու խաւրէ ուրիշ համբով:

Գէորգայ բամծէն և ըրածէն (ի Վենետիկ գալու փուԹալէն) կ'իմացուի, որ ընտանիք ունէր այս քաղքիս մէջ. բայց երկար ատեն չկեցաւ անոնց քով. որովհետեւ այն ատեններ իր համբորդուԹեան մէջ տեսած Թուրքաց պատրաստուԹեանց, և Թերեւս իր տարած ու բերած Թղթոց՝ հետեւանքն կատարուած էր, Լեպանդեան մեծ Նաւամարտով: Վենետոք՝ Թէ և յաղԹողք կամ դաշնակիցք յաղԹողաց, սանց իրարմէ զատուելէն վերջը՝ Նորէն սկսան վախնալ իրենց հակառակորդներէն, և շուտով խօսեցան հաշտուԹիւն. որոյ պայմանները հաստատելու և կնքելու համար՝ դեսպան ընտրեցին (5 ապրիլ, 1572) զԱնդրէաս Պառոէր, և Պայլ՝ զԱնտոն Թիէոփոլոյ. սանց իբրեւ Թարգման ընկեր դրուեցաւ Գէորգ: Զորս խալէիւք համբայ ելան ի 22 յունիսի. երկու ամիսէ վերջը (28 օգոստ.)

հասան ելան ի Բերա ։ Հաշտութեան պայմանններն կնքեցան ի 18 փեբր. 1573 ։ Առանց ուշանալու դեսպանն ճամբայ ելաւ (27 փեբր.) դառնալու ի Վենետիկ. անտարակոյս Գէորգ այլ մէկտեղ, որուն դարձն մեծ բաղդ ալ եղաւ իրեն. վասն զի՝ ինչպէս իր պատմածէն կըրնայ գուշակուիլ՝ կրնար կասկածելի անձ մի համարուիլ Դրան առջեւ. և երբ այս ետքի ձմեռ (1572) դեսպանին ընկերներն ձանձրացած ի Պոլիս կենալէն՝ դաշնադրութեան պայմանաց ուշանալուն պատճառաւ, կ՚ուզէին թողուլ դառնալ իրենց տեղը, մեծ վզրուկն (Մէհէմմէտ) արգիլեց, սպառնալով երկաթի անուրներ անցընել անոնց վիզը և այնպէս դարձընել. իսկ անոնց հետ եկող Թարգմանը (որ էր Գէորգ) ի ցից հանել (1)։ Իրաւունք ունէր ուրեմն Գէորգ գրել, որ վտանգաւ կենաց կամ մահու կ՚ընէր իր այսպիսի ճամբորդութիւնները՝ յօգուտ Հասարակապետութեան, երբ ոչ ոք կու համարձակէր այնպիսի բան մի յանձն առնուլ։ Իսկ ինքն քանի մի անգամ ըրաւ այն վտանգալի ճամբորդութիւնը և թղթատարութիւնը, թուղթերն ալ ուրիշ երկու

1. E avrebbe fatto impalare il Dragomano che fosse venuto con noi.

Հայոց ձեռօք կու հասցընէր առ Պայլն, որ վախէն շատ հեղ և ոչ դուռը կու բանար, այլ պատուհանէն կ'ընդունէր կամ կու տար տալիքը՝ ապահով ատեն մի։ Այս ըրած ծառայութեանց համար՝ իրաւ Գէորգ Պայլէն և դեսպաններէն բարի վկայագիրներ ընդուներ էր, բայց ոչ և արժանաւոր վարձք. սակայն ինքն հաւատարմութեամբ դարձեալ յանձն առաւ երթալու ի Կ. Պոլիս, Յակոբ Սորանցոյ դեսպանին հետ, երբ սա ընտրուեցաւ (25 յանու. 1575) երթալ շնորհաւորելու Մուրատ Գի Թագաւորելը։ Դարձաւ դեսպանն յաջորդ տարին (1576, նոյեմբերի 8ին,) և Ծերակուտին առջեւ ճառօրէն պատմեց իր դեսպանութեան գործը, ըրածը, ըսածը և տեսածը։

Իբրեւ փոխարէն ծառայութեանցն Դուքսն կամ Ծերակոյտն շնորհեց Գէորգայ (1575ին) վաճառականաց միջնորդ (սէնսար) ըլլալ, որ բաւական շահաբեր գործ էր. բայց նա խափանուեցաւ գործողութենէն, նախ՝ Սորանցոյ դեսպանին հետ ի Պոլիս երթալովը, վերջն ի դարձին (1576) Վենետկոյ մէջ պատահած մեծ ժանտախտին համար, որ ամեն առուտուր դադրեցուցեր էր. բայց երբ քիչ մի թեթեւցաւ մարդամահն՝ Գէորգ աղերսագրով խնդրեց Ծերակուտէն (24 մարտ,

1577), որ ի վարձ իր այնքան վտանգաւոր ճամբորդութեանց՝ շնորհուի իրեն փոխանակ Հասարակ սենսարութեան, քաղքին Ս. Մարկոս մեծ հրապարակի և քաղաքը երկու բաժնող անուանի և աննման Ռիալդոյ կամուրջի կողմանց սենսար ըլլալ. որ շատ աւելի շահաբեր էր, և կրնար անով քիչ մի հանգիստ իր ընտանիքը պահել (1)։ Ծերակոյտն պատուիրեց այլ և այլ պաշտօնէից տէրութեան (վաճառականաց գունցերու, Consoli de Mercadanti, Հասարակաց փաստաբանից, Avogadori di Comun, և վաճառեղինաց վերակացուաց, Officiali alla Masettaria), որ քննեն Գէորգայ խնդիրը, ստուգեն և ինչ որ կու վայլէ ընեն։ Այս երեք պաշտօնարանաց գրուածքն չգտուեցաւ Դիւանաց մէջ, ուր այն տարիներուն այսպիսի գրուածք կու պակսին. որով չէինք կրնար

1. Hora mò che mi pensava di guadagnarmi un pezo di pan per sustentar et mi et casa mia, hano fatto Sansarîj Ordinarij; siche il merito et la gratia che mi aveva concesso Sua Serenità, è andato zoso. Però di novo La supplico a farmi un altro merito, a fine che possa sustentar casa mia. Offrendomi sempre servir Sua Serenità in ogni occasione che da S. Serenità sarò ricercato.

ստուգիւ ընել, այլ շատ հաւանականութեամբ՝ թէ կատարուած ըլլայ Գէորգայ խնդիրն, ինչպէս գրեթէ ամեն անգամ կատարուած է նոյն ատենները միւս ծանօթ Հայոյն (Սուրեան Անտոնի)։ Բարեբաղդաբար հինգ տարի վերջը վաճառականութեան Հինգ Գիտոն կոչուած պաշտօնեայք, իրենց մէկ պատասխանին մէջ առ Դուքսն կու վկայեն՝ որ շնորհուեր էր Գէորգայ խնդրածն։ Սակայն շատ ատեն չանցած՝ Քառասնից մեծ պաշտօնեայք այն տեսակ (Ռիալդոյի) սէնսարութիւնը դադրեցուցին։ Այս ատեն Գէորգ, որ իր ազգայնոց սիրելի էր, թէ՛ անոնց կողմէն և թէ՛ իր՝ նոր աղերսագրով խնդրեց՝ (1582) որ ինքն անուանի Թարգման Հայոց, և անոնց առեւտրի միջնորդութեան շահուն երրորդ մասն ընդունի. ինչպէս որ Թուրքաց առեւտրին համար կ'ընդունէր Միքայէլ Մամբրէ կոչուած Հրեայ Թարգմանն։ Այս խնդրոյս կու հակառակէին ուրիշ միջնորդք, իրենց յայտնի զրկանք ըլլալով. ուստի տէրութիւնն յանձնեց Հինգ Գիտնոց՝ որ քննեն. անոնք երկու կողմէն այլ լսելով, և զերկուքն այլ գոհ ընել ուզելով՝ պատասխանեցին առ Դուքսն (18 օգոստ. 1582), որ իրաւ զրկանք կ'ըլլար առ հասարակ միջնորդաց՝ եթէ Գէորգայ խնդիրն կատարուէր. բայց որովհետեւ շատ արդիւնք

ունէր նա և շատ բարի վկայութիւններ, թէ իբրև Թարգման, թէ իբրև Կարաւանապետ, և երբեմն իբրև ձեռնտու ներկայացուցչաց տէրութեան (որ է ըսել դեսպանի կամ նուիրակի), արժանի էր որ այդ միջնորդութիւնն ընէ իբրև հասարակ միջնորդ, ինչպէս յիշեալ Սամբրէն այլ կ'ընէր ։ Հաւանօրէն Ծերակոյտն այլ այսպէս վճռած է (1) ։

Այս վաստակով աշխատեր է Գէորգ քանի մի տարի այլ, և 1588ին դադրեր է կամ դադրեցուցեր են զինքն այս գործէս. հարկ եղած է իրեն այլ նորէն դիմելու տէրութեան, որ անոր փոխարէն թոշակ մի սահմանեն իրեն. Նոյնպէս այլ եղած են սովորական քննութիւնք Հինգ Գիտնոց վաճառականութեան (28 յունիս, 1588), նման վեց տարի առաջ ըսածներնուն, որոյ մէջ յիշեն Կ. Պոլիս գացող Պայլերուն բարի վկայագիրները, անոնց առաջնորդ և Թարգման ըլլալն ի ճամ-

1. Egli si è adoperato fedelmente in diverse *occasioni importanti* a Costantinopoli in esser Dragomano, et in esser *Capo di Caravan*, et in altre occasioni a servitio de rappresentanti la Serenità V. Per le quali sue buon' operationi fù medesimamente concesso a lui per l'Ecc. Collegio di potersi esercitar in Rialto per Sansero.

բան, իր Թղթատարութիւններն և ուրիշ գործերը. որոց համար վայլէր որ տէրութիւնն նոր շնորհք մի ընէր, որպէս զի կարենայ թէ զինքը և թէ իր ընտանիքն ալ պահել (1)։ Անտարակոյս է որ տէրութիւնն վարձատրեց զԳէորգ, այլ ի՛նչ և ո՛րչափ տալը՝ նշանակուած չի գտայ։

Բայց Գէորգ ուրիշ վաստակ կամ գործ մ՚ այլ ունէր նոյն իսկ միջնորդութիւն ըրած տարիներում. Հայոց Տան վերակացու ըլլալն, յաջորդելով զՍիմոն, որ 1555ին ընտրուած էր և 1577ին վախճանած։ Այս տան գերագոյն պաշտպանք՝ ըստ անոր կտակողին՝ մեծ Թաղական պաշտօնեայք տէրութեան, ժողովեցան (2 մարտի, 1577), և առաւելութեամբ քուէից ընտրեցին զԳէորգ, իբրև յարմարագոյն՝ շտկելու Սիմոնի խառնակ և անկատար թողած գործերը։ Հաւանօրէն մինչև իր մահն կեցեր է Գէորգ ի վերակացութեան Տանն Հայոց, որոյ երբեմն Պահապան կոչուի ի դիւանս (Custos, Custode), երբեմն Տէր

1. Avendo noi veduto diversi Fedi fatte da suoi Ecc. rappresentanti, che sono stati Baili in Costantinopoli, per le quali appare egli esser Capo di Caravane nell' andar ed ritorno di essi Bailj, et esser stato adoperato in Dragomano, et in far capitar lettere, et *altre operationi*, etc.

կամ Պաշտպան (Patronus), երբեմն Առաջնորդ (Prior)։ Մահն երբ եղած է՝ յայտնի չէ, այլ կ՚երեւի 1594 և 1595ի միջոց. որովհետեւ առջի տարին մայիսի մէջ կու յիշուի ինքն, իսկ երկրորդ տարին (1595) օգոստոսի 28, Նոր տնպահ կամ տնտես կարգեցին Պաշտօնեայք զՄկրտիչ Պարսկահայն։

Առաջին ինձ ծանօթ յիշատակ Գէորգայ ի Վենետիկ՝ է 1569ին (23 յուլիսի), երբ վկայ և Թարգման եղած է քանի մի ազգայնոց, որք իրենցմէ մէկը գործակալ կարգեցին, պահանջելու ի Մաքսապետաց փոխարէն մի՝ իրենց ապրանքը զուր կասկածանօք պահելնուն համար։ Շատ ուրիշ դատերու կամ վաճառականաց գործողութեանց մէջ այլ կու գտուի իր ստորագրութիւնն՝ իբրեւ վկայ և Թարգման, Նօտարաց գրութեանց մէջ, (լատինարէն Interpres, և Fidem faciens կոչուի), ի միջոցի 1584-9 տարիներու, որչափ ինձ ծանօթ է։

Վերջին և նշանաւոր յիշատակ մ՚ այլ կըրնայ ըլլալ Գէորգայ, եթէ ինքն է և ոչ ուրիշ նոյնանուն հօր որդի (Գէորգ որդի Յովհաննու), վասն զի այսպէս կու յիշուի առանց ուրիշ նշանի կամ գործոց մեր Գէորգայ (Թարգմանութեան, տնպահութեան, և այլն)։ Յիշատակն այս է, որ 1594 տարւոյն սկիզբը

(10 յանուարի) Գէորգ՝ երկու Միլանցի իրեն գործակալ կ'անուանէ նոտարի առջեւ, որ երբ երթան ի Միլան, այն քաղաքին մէջ Սպանիոյ Թագաւորին գանձապետէն ուզեն և առնուն՝ նոյն Թագաւորէն իրեն համար սահմանուած թոշակը, թէ չհատուցուածը և թէ անկէ վերջը հատուցանելիքը (1)։ Յովհան Օլան կամ Օլոն՝ քարտուղար Սպանիոյ դեսպանին ի Վենետիկ՝ վկայած է ստորագրութեամբ, Գէորգայ ծանօթ անձն ըլլալը և այդ գործակալութիւնը յանձնելն առ երկու Միլանցիս (Պետր. Ֆլոն և Մկրտիչ Ռաֆիմոնտ) (2)։ Որ և է Գէորգայ կամ Հայու մի համար՝ պատուաւոր յիշատակ մի է այս, և մնայ փափագելի իր արդիւնքը գիտնալ, կամ որ և է ըրած ծառայութիւնն, ըլլայ Սպա-

1. Ad accipiendum a Thesauraria sive a Magistrato III. Thesaurario ejusdem... *provisiarem* decursam et decurrendam predicto Georgio Joannis Armeno concessam et assignatam per Reg. Majest. Chattol. super ipsam Thesaurariam Mediolani.

2. Այս ատեն Գէորգ կու բնակէր ի Բերդ (Castello) կամ Ս. Պետրոս անուանուած մեծ թաղի. երկու տարի վերջը (1571, հոկտ.) յիշուի Գէորգ որդի Յովհաննու բնակած ուրիշ թաղի (Ս. Մարգարիտ) մէջ, և կու յարմարի երկրորդ անգամ Կ. Պոլսէ դարձած ժամանակին։

նիականաւէրութեան, թէ ըլլայ Միլան քաղաքի. մեր Գէորգայ այլ և այլ վկայեալ ճարտարութիւնքն հաւանութիւն կ՚ընծայեն՝ որ ինքն ըլլայ այս արդիւնաւորն։ — Թէ իր աղերսից մէջ ըսածէն և թէ պաշտօնէից վկայութեննէն իմացուեցաւ իրեն ընտանեաց տէր ըլլալն. սակայն մեզ անծանօթ մնան թէ կինն և թէ զաւակքն, և թէ իր մահուան ժամանակն և տեղին։ Բայց մեր գտած այսչափ յիշատակներն այլ բաւական և շատ են զինքը թէ՛ ճարտար, սրտոտ, կարող մարդ մի ճանչցընելու, և թէ՛ Վենետկոյ Հասարակապետութեան երախտաւոր անձ մի, այնպիսի վտանգաւոր ժամանակ ըրած հաւատարիմ և դժուարին ծառայութեանց համար, որոց չէին համարձակեր բնիկքն Վենետք, որով միանգամայն պարծելի է մեզ ազգայնոց։

Համանուն Գէորգ ո. Յովհաննէս՝ մեր ծանօթ Գէորգայ մահուան հաւանական թուականէն (1594) 20 տարի վերջ այլ յիշուի, և շատ հեղ վաճառական կ՚անուանի, բնակութեամբ ի Ս. Մարիամ Խորոտիկ (S. Maria Formosa) թաղի. այլ և այլ անգամ Նօտարաց առջեւ վկայ եղած է իր ազգայնոց դաշնակցութեանց. անգամ մ՚այլ (1614, մայիս 12) վկայէ Նախիջեւանցի Պետրոս ո. Յովհաննէս համար, թէ ինչուան այն ատեն ամուրի էր։

## Թ.

### ԳԷՈՐԳ ՈՐԴԻ ԹԷՈԴՈՐԻ ԿԵՍԱՐԱՑԻՈՑ.

Այս երկու Գէորգայ ժամանակակից երրորդ մ՚ այլ կայ շատ անգամ յիշուած, և ազգակցաց մէջ Նշանաւոր՝ հարըստութեամբ, կամ երկրատէր ըլլալով. իր վաստակի աղբիւրն այլ եղած է միջնորդութիւնն, **Սէնսար** ըլլալն. այլ և լեզուագիտութիւնն, որով շատ հեղ Թարգման եղած է Թուրքաց. բայց Թերեւս յաջողութեանն գլխաւոր պատճառն եղած է իր հայրենիքն կամ հայրն, որ կոչուի **Թէոդոր Կեսարացի**, որ մի անգամ սխալմամբ Նոտարի գրչին կամ ականջին՝ **Իոէդոր** գրուած է։ Ասոր ի Վենետիկ գալն յայտնի չէ, որով և Գէորգայ այս քաղքի՞ս Թէ ի Կեսարիա ծնանիլն, (որ աւելի հաւանական է). մահուան Թուականն յայտնի է ԺԷ դարուն սկիզբները, 96 տարուան Նշանակուած, որ իր որդւոց ծննդեան Թուականաց համեմատելով՝ չափազանց կ՚երեւի. վասն զի ըստ մահուան Թուականին՝ ինքն ծնած կ՚ըլլայ 1512ին, իսկ իր պայազատ որդին (Ստեփան) ծնանի իր 75 կամ 76 տարուան ե-

Թէոդոր Կեսարացի

- Յովսէփ † յԱնգոնա 1628
- Գէորգ—կին Ռուբինա դ. Սիմոնի † 1608
  - Եղիսաբեթ ծ. 1577 Ա(յրի՛) Յուլիան Պիոնեայ ծ. 1580 † Նախ քան 1595
  - Պաւլա Գոմինիկա (1607)
  - Ստեփան Պետրոս ծ. 1587 կ. Պաւլա Պաւլինի ծ. 1581 † 1634
    - Գիարա Ա. Մեմոլի (1600)
      - Ռուբինա
      - Գէորգ 1689
  - Սիմոն Յակոբ* ծ. 1581
  - Զեչիլիա Լուչինա ծ. 1584 Ա. Յովհ. Ֆիլիպպոյ
  - Ա. Ա. դուստր արամբի

* Ցիշուի յամի 1607։

ղած տանն։ Իւ որովհետեւ հարկ եղաւ յիշել սերունդը կամ ազգաբանութիւնը, ներկայացընենք նախ ինչ որ յայտնի է մեզ ի մկրտագրոց, մահագրոց, պսակագրոց և ի նոտարաց, նա և ի կտակէն Գէորգայ. այս ամեն գրուածներէն ձեւանայ այս ազգաթիւս. (տ. եր. 292). Գէորգ՝ մահուանէն տարի մ՚առաջ 7 զաւակ ունէր կենդանի, երկուքն մանչ և հինգ աղջիկ.

Եղիսաբեթ կամ Իզապել, մկրտուած ի 20 հոկտ. 1577

Պաւլա Դոմինիկա, մկ. 3 մարտի, 1580

Սիմոն Յակովբ, մկ. 31 հոկտ. 1581

Ջեչիլիա Լուչինա, մկ. 29 հոկտ. 1584

Ստեփան Պետրոս, մկ. 14 ապրիլ. 1587

Գիարա, որոյ ծննդեան թուականը չեմ գտած.

Ա.Ա. աղջիկ մ՚այլ՝ անծանօթ անուամբ, բայց ամուսնացեալ։

Ասոնց մայրն՝ կինն Գէորգայ՝ էր դուստր մեզի արդէն ծանօթ Հայոց տնպահին՝ Սխոնի, (տ. եր. 148), Ռուբինա անուամբ (Rubina)։

Գէորգայ ծանօթ յիշատակք իբր 40 տարիներու միջոց են (1571–1608). բնակութեան թաղն եղած է ի Ս. Յուլիան, ի տանն Հայոց. սով կու պարզուի անոր պահապանի (Սիմոնի) հետ խնամենալն՝ նախ

քան զ՚ 1577։ Առաջին յիշատակն է՝ Ochatau Թերեւս Ցօփնաթան անուամբ ազգայնոյ մի գործակալ ըլլալն (3 հոկտ. 1571), անոր 289 դուկատ առնելիքը պահանջելու. Տօլֆինոյ կոչուած դրամատեղանէն (banco). այս բանից վկայ եղած է մեր նախածանօթ Գէորգն Ցօվհաննէսեան։ — Երեք տարի վերջը (1574, մարտ 3) Կարչանեցի Սիմոնի հետ՝ որ նոյնպէս ի Հայոց տան բնակէր, կու վկայէ Շահղալան անուամբ Ջուղայեցւոյ համար, որ ութ ամիս առաջ եկած էր. ինչպէս որ գրուած է անունն ծովային մաքսատան մէջ. ուրիշ (Հալէպցի) Շասալաթի որդի մ՚ այլ (Ալէքսանդր) այս վկայից վկայ կ՚ըլլայ։ Իբրեւ թարգման Թուրք (թերեւս և պարսիկ լեզուի) յիշուի (1575, մարտի 18) ուրիշ Ջուղայեցւոյ (Բաստայ ա. Մարտարէ) խնդրոյ մէջ։ Երկու տարի վերջը (1577, մայիս 14) Պալլի Ահմէտ անուամբ Ամասիացի Թուրքի մի փոխ կու տայ 120 դուկատ, և գրաւական կ՚առնու անկէ երեք ծրար երկու տեսակ մետաքսի, որ դեռ ի մաքսատան էր, իր քով պահելու պայմանաւ։ Ուրիշ Ահմէտ մ՚ այլ (Պէկպազարցի Հաճի Հիւսէյինի որդի) 1589 տարւոյն սկիզբը (2 յանուարի) մահուան վտանգի մէջ ըլլալով, նոտարի հետ կու կանչէ զԳէորգ և զՄարկոս որդի Ցակովբայ, Թարգ-

մանելու իր ընելիքը, որ էր իր ստացուածոց, դրամոց և լաթեղինաց ժառանգ կարգել իր հօրեղբօրորդին (Յուսուֆ)․ երեք հայրենակից Պէկպազարցի Թուրքք այլ վկայ կ'ըլլան կտակին ։

Շատ տարիներ այս Թուականէս ետքը՝ Գէորգայ զաւակաց ծննդեան յիշատակէն զատ՝ ուրիշ բան չեմ գտած իր նկատմամբ․ այլ կ'երեւի թէ այն միջոցին (իբր 13 տարի) բաւական յաջողած ըլլայ իր միջնորդութեան արուեստով․ վասն զի անկէ ետեւ գետիններ կամ արտեր գնելու զբաղած կու տեսնուի․ և նախ 1592ին վերջերը (գեկտ․ 27) Վենետիկոյ սահմանէն շատ հեռու Պերկամոյ գաւառին մէջ, Պրեմպանա կամ Պրեմպոյ վիճակին Պիանգօյ կամ Պիանգիվալլէ գեղին, (որ հիմայ կոչուի S. Giovanni Bianco) Գաբիդելլի մասին մէջ 12 արտաչափ (campo) մշակուած գետին կու գնէ՝ 600 դուկատի, Ալգայինոյ Սալվատոր անուամբ մէկէ մի, և նորէն անոր վարձու կու տայ գնածը, պայմանաւ վեց ամսէ վեց ամիս շահն կամ վարձքը առնուլ 5 $^{0}/_{0}$, այսինքն 30 դուկատ տարեկան ։ Բայց գրեթէ տարի մի վերջը (11 հոկտ․ 1593) առուտուրը կու փոխէ․ գետինը կու դարձընէ իր հին տիրոջը, ետ կ'առնու տուած 600 դուկատը ։ Յայտ է որ անոր տեղ

Գէորգ 2000 դուկատի վաճառեց Ալվիզէ Կրիմանեայ ազնուականի, ազգականի նոյնացեղ դըքսի ժամանակին, որոյ Մարիամ աղջկան օժտէն առնուեցաւ գինն և գրաւի դրուեցաւ ի դրամանոցն (zecca)։ Առաջուան գնածին նման՝ ինքն (Գէորգ) նորէն վարձեց իր ծախածը 120 դուկատի վարձքով. սակայն յետոյ դարձեալ իր և իր որդւոց ձեռքը մնաց երկիրն, որ և այնպէս յիշուի 40 և աւելի տարի ետքն այլ. նա և անոր վրայ արտավար մի աւելցընելն, զոր յամի 1597 (յանու. 24) կու գնէ նոյն Վիլլադիկայի մէջ իր մէկ փեսային ձեռքով, 131 դուկատի, Պրեցցադոյ (Prezzato) Մկրտիչ անուանեալ տեղացիէ մի։

Մինչեւ այս ժամանակներս Գէորգ միջնորդութեան գործն այլ չէր թողած, ընկերակըցութեամբ ուրիշ նշանաւոր միջնորդի և վաճառականի մի, որ էր Մարկոս Մաւրոս որդի Յակոբայ. հիմայ՝ արդէն տարիքն առած ըլլալով՝ ուզեց ետ քաշուիլ ի գործոց։ Երկու ընկերակիցք և շահակիցքն ներկայացան նօտարի (ի 28 մայիսի, 1596), յայտնեցին և վաւերացուցին իրենց բաժնուիլը, ամեն հաշիւ մաքրած, և իրարմէ բնաւ առնելիք տալիք չունենալով, որպէս զի իրենց ժառանգք այլ չկարենան մէկմէկէ բան մի պահանջել։ Անկէ

վերջը Գէորգ 12 տարի ալ ապրած է համ-գըստեամբ, իր գնած 40 արտավար երկրին բերքը կամ վարձքը վայելելով, իր զաւակաց և Թոռանց խնամքով և սիրով։ 1607ին (օ-գոստ. 8) կու կանչէ իր տունը (որ այն ատեն Ս. Փելիքս Թաղին մէջ էր), Տրեվի-զան, Zuandrea կամ Giov. Trevisan նոտա-րը, և գրել կու տայ համառօտ կտակը. Թէ և դեռ միտք և մարմնով առողջ եմ, կ'ըսէ, բայց ծերացեր, անոր համար կ'ուզեմ գոր-ծերս կարգաւորեալ Թողուլ. և յետ յանձնելոյ զհոգին առ Աստուած և առ Ս. Աստուա-ծածին, առանց մի առ մի յիշելոյ ստա-ցուածքը՝ զամենքն այլ կու Թողու հաւասար իր երկու որդւոց, Ստեֆանի և Սիմոնի. իսկ իր հինգ դստերաց՝ բան մ'այլ չեմ Թողուր, կ'ըսէ, որովհետեւ զանոնք կարգեցի և ա-մենուն ալ տուի ինչ որ պատշաճ համարե-ցայ, իսկ բարեբարութեան տեղեաց համար՝ ինչ որ պատշաճ համարին որդիքս՝ Թող տան իրենք։

Դստերաց տուածէն կու յիշուի միայն Զա-պելի կամ Եղիսաբեթի տուածը, որ էր 800 դուկատ, զոր անոր այրիկն (Յուլիան Պինտոյ Ֆիորենդին կամ Ֆիորենցացի), ընդե-ղինաց և ալեր ամբարապետաց քով չահու դրեր էր. և հիմայ (Թերեւս կասկածելով

հօրը մահուանէն ետեւ վտանգուելու) Ջապել աղաչեց զհայրը, և սա յանձն առաւ Ներկայանալ Նոտարի, իր կտակն ընելէն ամիս մի վերջը (25 մարտ, 1607), և այդ գումարը (800 դուկատ) դարձընել տալու իր Սալցանոյ գիւղի երկիրներէն տասն արտավարի վրայ, տարին 48 դուկատ շահ տալով Ջապելի. և այս բանիս հոգը յանձնեց իր Սիմոն որդւոյն։ Շատ տարիներ վերջը (1635, մարտ 21), միւս որդին Ստեփան այս գումարը կամ օժիտը՝ ամբողջ դարձուց իր քրոջը՝ Ջապելին, որ այն ատեն այրի էր մնացեր, և երկուքն այլ մէկմէկու անդորրագիր տուին։

Դստերը օժիտը կամ ժառանգութիւնը ապահովցընելն՝ Գէորգայ վերջին յիշուած գործն է. անոր վրայ տարի մի և ամիս մի այլ ապրեր է, և ի 20 ապրիլի 1608ին, վախճաներ է, ըստ վերոյգրածիս՝ 96 տարուան, ջերմով և վէրքով մի հիւանդացեալ, Ս. Փելիքս եկեղեցւոյ թաղին մէջ, ուր և թաղուած է հաւանօրէն։

Գէորգայ դստերաց առջինեկին՝ Ջապելի՝ ամուսինն էր Յուլիան Պինտոյ. Ցեչիլիայի՝ Յովհան Ֆիլիպպին. Գիարայ՝ Մոնալէ մականուանեալ Կ. Պօլսեցի. իսկ միւս երկուց, անանուանն և Պաւլայ Դոմինիկայ, ամուսնաց՝ մին կոչուի Յովհ-Անտոն Ալէաննի (Aleanni

Zuan Antonio), միւսոյն Ստեֆան Կածարոյ (Gazaro) գրուած, որ թերեւս Ղազար Հայ ըլլայ. բայց ասոնց որն որուն ընկեր էր՝ չեմ գտած ։

Ցիշուեցաւ ի սկզբան Գէորգի մէկ եղբայրն՝ Ցովսէփ. սա իրմէ քսան տարի վերջը (1627) վախճաներ է յԱնգոնա. յաջորդ տարին (1628, յան. 17) Գէորգ Գոռնէլիոյ սէնսարն և չորս ազգային վաճառականք՝ Նոտարի առջեւ երդմամբ կու վկայեն, որ Ցովսէփայ գործակալն և խաչեղբայրն (compare) Վէնդուրա Ուղուրլու (Ventura Ugerlu գրուած), ըսեր է, թէ Ցովսէփ պատուիրած է որ իր ստացուածքը Անգոնայի Հայոց տան վերակացու՝ Բարդոյէ քովն է (Bardo Cester, թերեւս Կողովագործ), պէտք է առնուլ և տալ Զաքարիայի որդի Մարկոս սարկաւագին, որ իր ազգականն է, և իր թաղման ծախքը հոգացեր էր ։

Գալով հիմայ Գէորգայ որդւոց, Սիմոնէ յիշատակ չեմ գտած հօրը մահուանէն վերջը. իսկ Ստեփան շատ հեղ յիշուի, և գրեթէ միշտ իր հօրմէն ժառանգած երկիրներուն համար, ամբողջ 40 արտաշափին. ուսկից կ՚երեւի որ Սիմոն շուտ վախճանած ըլլայ, 1620էն առաջ. վասն զի այս թուականէս կու սկսի յիշուիլ Ստեփանի գետին-

ները ծախելն կամ վարձելն. նախ (սեպտեմբ. 26ին) իր հօրը՝ զատ տեղ մի (Վերին Ռովլինեկոյ կամ Sabrosi) գնած արտաշափ գետինը կու ծախէ 150 դուկատի (Աղեքսանդր Պոծայ վենետկեցի վաճառականի մի). երկրորդ տարին (15 յանու. 1621), կու դաշնադրի նոյն Աղեքսանդրի ծախել մէկ ու կէս արտաշափ գետին այլ ի Վիլլատիկայ, արտաշափն 130 դուկատի, բայց Աղեքսանդր բաւական ապահովուած չհամարելով դաշինքը կ՚աւրեն նօտարի առջեւ:

Ստեփանի Չեչիլիա Լուչինա քոյրն կ՚ապրէր երկանը հետ Վենետկոյ Բորդոյ Կրուարոյ վիճակին Տիզանա (Tisana) գիւղի Ս. Միքայէլ (S. Michiel del Quarto) ըսուած կողմը, ուր տուն և տեղ ունէր, բայց այրիկն (Ֆիլիպպին Ցովհան) ծախեր էր զանոնք տեղւոյն քահանային, և գինն աւանդեր էր Տիզանայի դիւանատան. 1626ին սկիզբը (21 յանու.) Ստեփան իր քրոջ խնդրելովը՝ գործակալ մի դրաւ (Մարտին Ալպերդինի) որ այն գումարէն 188 դուկատ հանէ, որպէս զի Չեչիլիա նորէն իր տունը և տեղը գնէ. և անշուշտ այնպէս եղած է: Վերը յիշեցինք Ստեփանի՝ միւս քրոջ Զապելի) այլ ըրած տիրութիւնը կամ օգնութիւնը. այն առթին՝ 800 դուկատը ճարելու համար 10

արտաչափ գետին ծախեր էր (21 մարտի, 1635)։ Նիկող. Պալտոյի (Nicolo q. Pompeo Baldo), այս պայմանաւ որ ինքն իր ծախածին վարձուոր ըլլայ 5 ½ տա. հարիւր չահ վճարելով, և եթէ հինգ տարուան մէջ վճարէ՝ նորէն երկիրն իրեն դառնայ. և այնպէս այլ կ՚ընէ ու կու տիրանայ իր տեղւոյն։ — Նախընթաց տարին (1634) վախճանած է Ստեփանի կինն Պաւլա Պաւլինի, որուն հետ պսակուած էր 1613ին. սա օժիտ բերած էր 2000 դուկատ, 500 դուկատի ալ հագուստ, և այլն. որ չափաւոր հարըստութեան նշան է, այն ատենուան ստակի արժէքին համեմատ. և որովհետեւ անկտակ մեռաւ, ըստ օրինաց Վենետկոյ՝ ընչից երրորդ մասն կ՚ինկնար էրկանը, մնացեալն՝ որդւոցը։ Ստեփան երկու զաւակ ունէր, մանչ մի և աղջիկ մի. զսա՝ որ իր մօր անուամբ Ռուբինա կոչեր էր, արդէն կարգէր և օրինաւոր օժիտը տուեր էր. ուստի իր կնկան 2500 օժտէն առաւ իրեն ընկած երրորդ մասն 833 դուկատը. իսկ իր (հօրն անուամբ) Գէորգ որդւոյն՝ մնաց երկու բաժինն, այսինքն 1666 դուկատ. այս գումարին տեղ հայրն տուաւ Գէորգայ 100 դուկատի ինչք, մնացեալ մեծ գումարին համար այլ Սալցանոյ գեղին երկրէն տուն մի և 15 արտաչափ, ո՛ր կտորն որ ուզէ. այս բանս

նօտարի առջեւ Տիրամօր եկեղեցւոյն (S. Maria Mater Domini) աւագերիցուն տանը մէջ գրուեցաւ, և Գէորգ իր հօրը անդորրագիր տուաւ, (19 մայիս, 1635)։ — Նոյն օր նոյն տան մէջ Գէորգ իբրեւ արդէն չափահաս խնդրեց որ ինքնագլուխ ըլլայ՝ հայրական իշխանութենէն ազատուած. ըսել է թէ 20 տարեկանի մօտ էր. հաւանեցաւ հայրն, և նօտարական գրով հաստատել տուաւ, «և ի նշան ազատագրութեան, կ՚ըսէ նօտարն, իր Աստուծմէ խնդրած հայրական օրհնութիւնը տուաւ որդւոյն, և երկուքն այլ փոփոխակի խոստացան և պարտաւորեցան հաստատ պահել այս դաշինքը»։

Գէորգ Գէորգեան արդեօք իր մօր օժտէն ժառանգած գետինը զատե՞ց ու առանձին բանեցուց, եթէ նորէն հօրը դարձուց՝ անոր գինը առնելով. — յետինս հաւանական կ՚երեւի. որովհետեւ իր ազատագրութենէն չորս տարի վերջը (1639, փետր. 22) հայրն Վիլլատիկայի մէջ ունեցած ամբողջ 40 արտաչափը վարձու տուաւ Ցուլ. Պորտոլուծծոյ (Giuliano Portoluzzo) Սալցանացի մէկու մի, իրեք տարուան համար. այսպիսի դաշամբ, որ սա ստակի տեղ տարուէ տարի տայ իրեն 55 քոռ (staro) լաւ, մաքուր, չոր ցորեն, 45 տակառ զուտ գինի (vin collado mastelli 45

a mosto), տեսակ տեսակ փայտեղէն կէս կէս չափ, քոռ մի նոյեռն, քոռ մի նոյմէր ո-‐եղի հունտ, և իբրև ընծայ՝ Ամենայն Սրբոց տօնին (Նոյեմբ. 1) զոյգ մի սագ. Ծննդեան տօնին՝ 3 զոյգ որձառ, խոզ մի 100 լտրանոց. Բարեկենդանին՝ 3 զոյգ հաւ. Զատկին՝ 2·0 հաւկիթ. Ս. Պետրոսի տօնին՝ 3 զոյգ վառեակ. և զայս ամենն ալ վարձուորն պարտական էր բերելու ինչուան ի Մեստրէ, որ Վենետկոյ ցամաքին մօտիկ և գլխաւոր նաւակայ աւան մ'է. ինչպէս որ կ'ընէր և կու վճարէր առջի վարձուորն։ Ընդեղինաց և գինւոյ չափերն Տրեվիզ քաղաքին չափերովն են, որոյ գաւառին սահմանուած էին վարձեալ արտերն։

Այս յիշատակէս վերջը չգտնելով ուրիշ բան Գէորգայ որդի և Գէորգայ հայր Ստեփանոսին, հարկ է բարով վայլէ ըսենք իր վարձուորին ընծայքը, և թողումք որ ժամանակն յայտնէ իր վախճանը և այն գետիններուն ժառանգները։ — Որդւոյն Գէորգայ այլ մասնաւոր յիշատակ մի ծանօթ չէ. բայց եթէ 1650ին (օգոստ. 19) իբրև 50 ազգային վաճառականաց հետ (որոց ամենուն անուանքն այլ գրուած են) միաբանելով կու խնդրէ, որ այն ատեն ի Վենետիկ գտուող նշանաւոր (և շատ այլ նշանաւոր) Թովմաս Հով-

դողեփն որ, երբեմն և պատրիարք [1] իրենց պաշտպան մի ընտրէ զիրենք խաբողներէն. յետոյ ոմանք զնոյն ինքն կ՚ընտրեն պաշտպան՝ իրենց պարտականաց հետ դատաստանին համար: — Թուի թէ նոյն ինքն Գէորգ է (Giorgio Punes գրուած, իբր Փանոս, Ստեփան), որ 15 տարի վերջ այլ (1665, հոկտ. 29) 30իւ չափ ազգայնոց հետ երեսփոխան կու կարգեն զՍարուխան որդի Յակոբայ, որ Քառասնից դատարանին մէջ բողոքէ Կիպրոսի մաքսառուաց դէմ, զիրենք նեղելնուն համար: — Աւելի շատ տարիներէ վերջը (1689, յունիս 9) վերջին անգամ՝ (իմ ծանօթութեամբս) կ՚երեւի Գէորգ՝ իբրեւ կնքահայր Յովհաննէս Ջէլոյ կոչուած ազգայնոյ մի որդւոյն մկրտութեան, զոր Գալուստ կամ իտալօրէն Վենդուրա կ՚անուանեն. այն ատեն Գէորգ կու բնակէր ի Ս. Յուլիան թաղի և թերեւս ի նոյն իսկ ի Հայոց տան: — Ասով կու վերջանայ այս Կեսարացի Թէոդորեան տոհմի Գէորգեանց մեր գիտցած 120 տարուան յիշատակն՝ ի Վենետիկ:

Եւ որովհետեւ զասոնք յիշելնուս գլխաւոր առիթն էր իրենց երկրատէր ըլլալն, հա-

[1] Տես Չամչեան Պատմ. Հայոց, Գ. 665-671 :

մատուռիւ յիշենք հօս. քանի մի ուրիշ ժամանակակից ազգային երկրատէր այլ, Վենետկոյ ցամաքին այլեւայլ կողմերում: Մէկն է մեր Հայոց Տնպահից կարգին յիշեալ Ղազար Պարչխանեան. որ յամի 1614 (մայիս 6) իրեն գործակալ կարգէ Պատուայի սահմանին մէջ եղած անուանի Պրալիա (Praglia) Բենեդիկտեանց վանքի մեծաւորը, որպէս զի Ձեխոյի գեղին մէջ իր ունեցած 16 արտաչափ գետնին վարձքը տանու ի վարձուորէն: — Մէկ այլն է Մելքոն ո. Յովհաննու, որ 1617ին (սեպտ. 18) կտակը գրել տալով, կու յիշէ Տրեվիզի Ս. Վլաս (S. Biagio) գեղին մէջ ունեցած գետինը, զոր կու թողու իր Լուկրետիայ կնոջ, մինչեւ որ գայ Կարապետ՝ իր եղբօր կամ քրոջ որդին. իսկ ինքն քանի մի տարի վերջը մեռած է (13 փեբր. 1625):

ԺԷ դարու կիսուն Յովսէփ Գրիգորի որդի մէկ մի՝ Նախ արտաչափ գետին մի գնած է ի Մէօլոյ, Պորտոկրուարոյ վիճակին մէջ, որ վերը յիշուեցաւ, 1649ին (հոկտ. 28). յետոյ (1651, յուլիս 1) արտաչափ մի եւ քառորդ մ՚ այլ՝ վերոյիշեալ Մեստրէի մօտ տեղ մի. վերջը ուրիշ գետին եւս. տասն տարի ետեւ՝ կու ծախէ 10 արտաչափ, այլեւայլ գնով: — Առնցմէ վերջը ծանօթ է Յովսէփ ո. Յովհաննու. որու գրքանչն եւ անոր եղբայրն՝ օժտի հա-

մար խոստանալով 1000 դուկատ, կիսուն տեղ կու տան (1673, Նոյ. 26) ընչեղէն, կիսուն տեղ այլ 6 արտաշափ, Պատուայի (Campo S. Piero, Ս. Պետրոսի արտ) վիճակին Պօրտօբէլլօ կոչուած մասին մէջ. ինքն այլ ընդունելութեան գիր տուած է (1675, դեկտ. 22)։

Ասոնցմէ ետքը նորագոյն ժամանակաց մէջ՝ երբ բազմացան Հայք ի Վենետիկ և տնուորեցան, յայտ է որ կարողութիւն ունեցողք՝ ցամաք երկրի վրայ այլ տուներ և գետիններ ստացեր են։

# Ժ.

## ՑԱՆՑԱՌՈՐ ՀԱՅՔ.

Թերեւս բիւրաւոր ազգայինք եկեր գացեր են ի Վենետիկ և հազարաւորք ալ բնակեր, ԺԳ դարէ սկսեալ մինչեւ ի մեր դար, և ընդհանրապէս հաճոյ եղած են Վենետաց, և ինչպէս հիմայ կ՚ըսուի՝ համակրելիք. միով բանիւ, լաւ անուն թողած են. և եթէ ամենքն Անտոնի և Գէորգայ նման հանճար չեն ունեցեր, այլ դեռ շատերն այլ անոնց պէս յատուկ իրենց ազգային անուամբ կոչուեր են. և երբ իրենց հասարակութեան վրայօք խնդիր եղած է տէրութեան առջեւ, միշտ գովուած և շնորհաց արժանի վկայուած են։ Այսքան երկար դարուց և իրենց անընդհատ յաջորդութեան մէջ՝ ի հարկէ բարոյապէս անհնար էր գայթակղութեան չպատահել, կամ պարսաւելի գործ և անձն այլ չերեւնալ. սակայն ժամանակին և բազմութեան համեմատ՝ քիչ հանդիպած են. և բարեբաղդաբար այս բանիս նկատմամբ Դիւանք՝ որ ամէն այնպիսի դէպք այլ կու նշանակեն, քիչ բան ունին ազգայնոցս համար։ Երբ Դիւանք

կ՚ըսեմք՝ պէտք է յիշել Վենետկոյ տէրութեան ահաւոր ատեաններն և պաշտօնեայքն, որ բարոյականութեան վրայ խստութեամբ կու հսկէին և մանր քննութիւններ կ՚ընէին, նա և երբեմն տանջանօք և նեղ ու մութ բանտերով, երբեմն ևս քաղքին և տէրութեան սահմաններէն դուրս վռնտելով զյանցաւորս: — Իբրև ի վկայութիւն բոլոր այս ըսածներուս, և ի հաւաստիս ճշմարտութեան և ոչ պարզապէս հետաքրքրութեան՝ յիշեմք ի յեղանակիս դիպուածներն այլ:

Ա. ԺԶ դարու սկիզբներում (1508–1513 միջոց) Հայոց տան մէջ յիշուի համառօտիւ՝ վատահամբաւ կին մի, համանուն այնպիսի համբաւով ի հնուց հռչակելոյն, Հեղինէ, թէ և չըսուիր հայ,՝ բայց ի բնակութենէն կարծուի. տան վերակացուն կամ գլխաւոր բնակիչն Ալեքսանդր՝ յատկապէս Հայ կոչուած, դիմելով յատեանս, նոտարաց առջև առած իրեք հաւատարմաց վկայութեամբ, ոչ միայն զվատուհին՝ այլ և անոր ըղպակը կարասիքը՝ տունէն դուրս կու ձգէ. և այս ամեն գործոց, նոտարաց և վկայից և դուրս ձգուածներուն համար եղած ծախքն կու վճարուի Հայոց տան եկամուտէն ([1]):

1. Pro ejicienda res et bona Elenæ existentis in Domo computatis expensis Notariarum;

Բ. Այս դիպուածէս 60 տարի վերջը, 1571 ամին և մինչ ի 1587, կու յիշուի այլեւայլ տեղ և ատեն՝ Յակոբ Մէտրէնգի Հայ վաճառական մի, որ թէ և (Յովհաննէս) քահանայի որդի է եղեր, բայց փոխանակ իր հօր տուած օրհնութեանց և խաղաղութեանց՝ անկարգ և անզգուշ բերնով անվայել և հայհոյական խօսքեր հաներ է, ինչուան այնպիսի գերագոյն անձի մի դէմ՝ որ առաջին անձն է յետ Աստուծոյ, յերկինս և յերկրի. ուսկից զայթակղելով զինքը բնակութեան ընդունող տանտէրն ի Մուրան կղզին՝ քաղքին քով, ուր ուլունք շինելու փուռեր, գործարաններ կան, և տանտէրն այլ նոյն արուեստն ունէր, իմացուց պատուաւոր մարդու մի, նա այլ՝ թէ Պատրիարքին և Պապի Նուիրակին, և թէ հաւատաքննութեան վերակացուին, նոյնպէս նա և Հայհոյութեանց համար սահմանուած մասնաւոր պաշտօնէից։ Ասոնք պատուիրեցին յիշեալ եկեղեցականաց՝ քննել նախ Յակոբայ ամբաստանողը կամ տանտէրը, յետոյ զամբաստանեալը։ Քննութիւնն և դատն ինչպէս եղած և աւարտած է, չեմ գտած. բայց դժբաղդաբար Յակոբայ մեղա-

pro examinatione Testium trium super fama et vita ipsius Elenæ.

պարտ ըլլալն կու ստուգուի յետագայ ամբաստանութեամբք և վճռով. համանօրէն Մուրանցի տանտէրն իր վարձուորը կու հանէ տունէն։ Նոյնպէս հաւանական է որ նոյն Յակոբն է (այս տեղ հօր անունն կամ մականունն չի յիշուիր)(1), որ իր նման անկարգ և անսանձ բերան Աղէքսանդր անուամբ ազգայնոյ մի հետ բնակելով ի Հայոց տան, ոչ միայն զտընեցիս այլ և թաղականներն անհանգիստ կ'ընէին և գայթակղեցնէին. տընպահն Սիմոն, յետ երկար համբերութեան՝ բողոքեց առ Հոգաբարձուս Ս. Մարկոսի, որք պաշտպան էին Հայոց տան, վկայութեամբ քանի մի բնակչաց նոյն թաղին (Ս. Յուլիանու), յամսեան մարտի 1573։ Հոգաբարձուք մէկ մէկ կանչեցին այս բանիս վկայողները, որոց առաջինն էր Ս. Յուլիան եկեղեցւոյ լուսարարն կիսասարկաւագ (ի մայիսի 2), և կարդացին այդ երկուքին վրայ գրուած ամբաստանութիւնները. սա ոչ միայն հաստատեց զայնս երդմամբ, այլ և անոնցմէ աւելի շատ բան կայ, ըսաւ. այսպէս ուրիշ վկայներն այլ քննուեցան, որք աւելի կու մեղադրէին զԱղեքսանդր։ Թէ և հոգաբար-

1. Քանի մի տարի առաջ (1568) յիշուի ուրիշ Յակոբ Մէրտինցի մ'այլ, որդի Աբրեհիմայ։

ձուաց վճիռն չեմ գտած, բայց անտարակոյս է իրենց արդար և խիստ դատաստանն, գոնէ ի Հայոց տունէն դուրս հանելն զերկուքն այլ ։

Նոյն օրեր և նոյն տարին (ապրիլ 22, հոկտ. 7) Յակոբ ներկայացած է Նոտարաց, բայց ի՞նչ խնդրոյ համար՝ յայտնի չէ ։ Վատն այն է, որ երկու տարի վերջը (1575, օգոստ. 22) Յակոբ նորէն կանչուած է յատեան Պաշտօնէից քննութեան հայհոյութեանց, (Esecutori alla Bestemmia), որք քննելով իր դէմ եղած հայհոյութեան առաջին ամբաստանութիւնը, նոյնպէս իրեն ալ երկու անգամ տուած պաշտպանողական գրուածքները, թէ և բոլորովին չդատապարտեցին զնա, բայց յանդիմանութեամբ պատուիրեցին, որ ինչո̀ւան տասն տարի չմտնէ ի տուն Հայոց. եթէ յանդգնի մտնել՝ ի Վենետկոյ և ի սահմանէն վռնտուի հինգ տարի. և եթէ այս արգելմանս այլ հակառակ գործէ՝ բռնուի. բռնողին 100 փոքր լիրայ տրուի վարձք՝ առնոր ստացուածներէն. իսկ ինքն վեց ամիս այս պաշտօնարանին բանտի մէջ մնայ, անկէ ետեւ այլ՝ մինչեւ որ վճարէ զինքը բռնողին վարձը. յետոյ նորէն աքսորուի ։ — Զօրութեամբ վճռոյս յայտ է, որ Յակոբ հեռացած է ի Հայոց տունէն ։ 1583–4ին յիշուի բնա-

կած ի Ս․ Մարիամ Խորոտիկ (S. Maria Formosa) Թաղի, իբրեւ պարտատէր (21 դուկատի) Անկիւրացի Թուրքի մի, որ քրիստոնէութիւն ընդունելով մկրտուեր եւ Թովմաս կոչուեր էր, բայց քիչ օրէն փախչելով բանուեր եւ բանտուեր էր, եւ անկէ կու խընդրէր (6 հոկտ․) որ ի Դրամատեղանի (banca) դրած ստակն հանուի, վճարուի պարտքն առ Յակովբ, աւելցածն այլ պահուի։

Նոյն տարին (1584, մարտ 5), Յակոբ ուրիշներու հետ կու վկայէ Դոմինիկոս Ազոտեա կոչուած Հայու մի արդարութեան, զոր Մեսսենացիք ծովու վրայ բռնելով՝ տանջեր էին իբրեւ այլազգի, եւ նա մահուանէ ազատելու համար՝ այնպէս եմ ըսեր էր․ իսկ հիմայ Հայք ի Վենետիկ վկայեցին, որ ծանօթ եւ բարի քրիստոնեայ էր։ Դարձեալ նոյն տարին (14 ապրիլ) Յակովբ երկու Իտալացւոց կու յանձնէ, որ իր մէկ առնելիք ստակը յԱնգոնա քաղաքի, պահանջեն անոնցմէ՝ որոց քով գտուէր, ազգային սափրիչի մի ձեռօք յանձնուած։ Քանի մ՝ օր վերջը (29 ապրիլ), իր ուրիշ առնելիքի մի համար (66 դուկատ) ուլունք շինողէ մի, իրաւարար կու դնէ մէկը՝ որ ինչուան իրեք ամիս վճարել տայ, եթէ ոչ՝ ինքն կրցածը պիտի առնու պարտականէն։ Իսկ իր որ եւ է ուրիշ առնելիքները պա-

հանձնելու համար՝ գործակալ կու կարգէ զՄկրտիչ Պարսկահայ՝ Սիմոնի յաջորդ տըն-պահը (յուլ. 7): — Երկու տարի վերջը (1586, սեպ. 29) դարձեալ գտուի Յակոբ առաջի Նօ-տարի, ուր Բաղիշեցւոյ մի հետ (Գոքբէլէն օղլէ Կէրակոսէ) երաշխաւոր կ'ըլլայ Ալամանէ օղլէ Գէորգեայ պարտուցը (100 դուկատ առ Յովհ. օղլէ Ճանիպէկէն), և կու վճարէ 60 դուկ., Գա-բրիէլ այլ 40. և այս երկուքն այլ մէկմէկու հետ կու դաշնադրին՝ այս տուածնին ինչ կեր-պով իրարմէ առնելու, և այլն: — Յաջորդ տարին (1587, մարտ 10), Նօտարի առջև Յակովբ Թարգման կ'ըլլայ Յօրտանէսն Մկրտ-ճեան Բաղիշեցւոյ, որ կու վկայէր, թէ Յոյնք ի Տուրացցոյ՝ Նաւուն մէջէն գողցան Հայոց ապրանքը և փախան:

Յակովբայ Մէրտինցոյ վերջի յիշատակն ի Վենետիկ՝ է իր կտակն համառօտ, զոր գրել տուեր է (իտալերէն) ի 21 ապրիլի 1587 տարւոյ (Մարկ–Անտոն Ֆիկոլինոյ Նօտարի). որով իրեն մէկ հատիկ ժառանգ և կտակա-կատար իր ամէն ստացուածոց և պահանջից կու հաստատէ՝ իր կինը Կատարինէ անուամբ, դուստր Անդրէի Դոկուլայ (Docula), Ուտինէ քաղաքին Արպա գեղէն, որ 350 դուկատի չափ օժիտ բերեր էր, Յակոբ այլ 50 դու-կատ վրան աւելցուցեր էր Նօտարի առջև

(ի 14 յուլ. 1579)։ Իր հայրենիքէն ելած ատեն՝ հօն թողեր է եղեր առաջին կնոջմէն՝ աղջիկ մի. կու պատուիրէ, որ ի նշան սիրոյն՝ ղըրկէ անոր 5 դուկատ։ Նոտարն, ըստ հրամայեալ օրինաց, կու հարցընէ, թէ բարերարութեան Տեղեաց այլ բան մի կու թողո՞ւս. կու պատասխանէ. Այդ հոգը յանձնեմ կնոջս, ինչպէս որ ուզէ՝ այնպէս ընէ։ — Իրեք օրէն վերջը (ապրիլ 24) կու վախճանի։ Ի՞նչ հիւանդութեամբ կամ քանի՞ տարուան, և ո՞ւր թաղուիլն յայտնի չէ. որովհետեւ այն եկեղեցւոյ (Նոր Ս. Յովհան, S. Giovanni Nuovo կամ in Olio), որոյ թաղին մէջ կու բնակէր, այն տարուան մեռելագիրքն կորած է, նոյնպէս մեծ Դիւանաց մէջ այլ։ Բայց փափագելի և յուսալին այն է՝ որ բարի մահուամբ ջնջած ըլլայ տուած գայթակղութիւնները, և ըստ կտակագրութեանն՝ աւանդած ըլլայ զհոգին «առ Աստուած և առ երկնային արքունականս». (Rendo l' anima a Dio et alla Corte celestial). — Իսկ իր անձնէն առաջին յիշատակն կ'երեւի որ ըլլայ Վենետկոյ հռչակաւոր մայր եկեղեցւոյ (Ս. Մարկոսի) աւագ դրան քովի սեան վրայ փորելով գրուածն. «Յովաննիսի որդի Յակոբ. Թվ. ՌԸ». որ է 1559, և այն սեանց և մօտի որմոց վրայ բազմաթիւ փորագրուած Հայոց

անուանց մէջ՝ սա հնագոյնն է ծանօթ Թուականաւ։

Գ. Դոմինիկոս ապանող և ապանեալ։ — Ըստ քաղաքական օրինաց՝ ամենէն յանցաւոր և չարագործ, և ըստ գործոյն պատուհասեալ՝ մէկ հատ Հայ. Նախայիշեալ Յակոբայ և անկէ առաջ յիշուած գովելի անձանց՝ ժամանակակից եղած է Դոմինիկոս անուամբ մէկն, որդի Յովհաննու. որոյ ո՛ւր տեղացի ըլլալն յայտնի չէ, որովհետեւ իրեն համար եղած քննութեանց գրուածքն այլ չկան կամ գըտուած չեն. իր անունէն կրնայ կարծուիլ, որ ի Ջահկեցոց ըլլայ. բայց քիչ մի յառաջ յիշուած Դոմինիկոս մ՛ այլ տեսանք՝ որ Կիլիկեցի էր, և քաղքին անունէն Ատանա կոչուած, ինչպէս իր եղբայրն այլ, և ընկերներն այլ Սսեցի էին. ասկէ զատ երբեմն Վենետք Հայոց յարմար անուններն իտալերէն կու Թարգմանէին, որով կրնայ ըլլալ որ այս Դոմինիկոս կոչուածն այլ ըլլար Տիրատուր մի, Կիրակոս մի, և այլն։ Սակայն ինչ ալ ըլլայ անունն, զայն կրողն անարգեց ու սեւցուց, և այնքան Հայոց բարի և պայծառ անուանց մէջ ի Վենետիկ՝ բիծ մի ձգեց. բայց դարձեալ այդ բիծն իրմով սկսած և իրմով վճարուած՝ ուրիշի վնաս չըրաւ, և օտարոտի բան մի համարուեցաւ Հայու հա-

մար այդպիսի գործ․ որ էր մարդասպանութիւն, ագահութեան կամ ընչասիրութեան պատճառաւ։ Գործոյն հանգամանքն անծանօթ են, վերը յիշած դատաքննութեան գրուածոց անյայտութեան համար․ յայտնին այս է, որ 1577ին վերջերը կամ յաջորդ տարւոյն առաջին օրերուն, այդ անարժան Հայն կու բնակի եղեր ի տուն մի (ի Ս. Մարիամ Խորոտիկ Թաղի) ուր բնակէր և խօճա Հասան աղայ Կիլանցի Թուրք մի՝ հպատակ Պարսից և գործակալ Եուսուֆ Ակէմ (կամ Աճէմ) մէկու մի։ Ասոր քով եղած մետաքսի ծրարները և ուրիշ ապրանքներ, հաւանօրէն և ստակ, տեսնելով Դոմինիկ՝ կու սպաննէ զնա, գուցէ ուրիշներու գործակցութեամբ, ինչպէս կարծուեցաւ, այլ չըստուգուեցաւ։ Տէրութեան Հասարակաց փաստաբան անուանեալ պաշտօնէից մէկն (Avogadori de Comun) բռնեց զնա, և իմացուց եղեռնագործութեանց (al Criminal) Տասն դատաւորաց, որք պատուիրեցին (10 յանուարի, 1578), եղածը լաւ ստուգելու համար, թէ՛ զանիկա և թէ ուրիշ կասկածեալ անձինքը ստիպել, նա և տանջանօք, խոստովանելու ըրածնին կամ չըրածնին։ Ասոնցմէ մէկն էր Ծանէտոյ (Յովհաննուկ, Zaneto fò de Andrea) թիավար կամ թիագործ մի, զոր

փորձելով ի բանտ ձգեցին, բայց չկրցան յանցանքը ստուգել, և առ ժամանակ մի բանտէն ազատելու հրաման տուին: Ինչուան ամսոյն 28, դեռ Դոմինիկոսի յանցաւոր ըլլալն այլ անտարակոյս չէր. Նոյն օր Եղեռնաքննին ատեանն՝ պաշտօնէիւքն և ընկերակըցօք, միանգամայն 28 անձինք, խորհուրդ ըրին թէ արդեօք ստուգելու համար տանջել տա՞ն զնա. մեծ մասն խորհրդակցաց (17) այսպէս ընելու քուէ տուին. Երկու օր վերջը, այս բանս հոգալու՝ գլխաւոր դրին իրենցմէ մեկը Փիլիպ. Ալբերդ կոչուած, (Capo nel caso dell' Armeno. Ph. Alberto), որ շուտով կատարեր է ընելիքը, և պարտաւոր յայտներ է զԴոմինիկ: Բանի մ' օրէն (5 փետր.) նորէն ժողովելով 13 խորհրդականք, 12 քուէիւք վճռեցին մահապարտութեան սոսկալի վճիռ մի, այնպիսի յանցանաց դէմ սաստիկ և քիչ մ'այլ բարբարիկ օրինօք ժամանակին: Այսինքն, յանցաւորը դնելով բեռնակիր նաւակի մէջ՝ անցընել քաղքին անուանի մեծ ծովային ջրանցքէն (Canal Grande), և հանել ի Փոքր Հրապարակն. հօն յանցաւորին աջ ձեռքը կտրել և վզէն կախել, ու գլուխն ի ձիու մի ագի կապած՝ քաշ տանել մեծ Հրապարակին մէջ. յետոյ տանիլ նոյն Փոքր Հրապարակին ծովեզերքը եղած

երկու մեծ և հաստ սեանց մէջ տեղ (որք ին-
չուան հիմայ կանգուն են), և բարձրաւան-
դակի մի վրայ գլուխը կտրել, յետոյ մար-
մինը չորս կտոր ընելով կախաղանի վրայ
թողուլ բոլոր այն օր։ Թէպէտ այս պժգալի
վճիռը տուին, բայց կամ ազգայնոց աղաչա-
նօք կամ ուրիշի՝ նորէն միաբան քուէար-
կութեամբ (14 անձանց) քիչ մի կակղացու-
ցին. և հրամայեցին երկու օր վերջը առա-
ւօտուն (7 փեբր.) միայն տանել զյանցաւորը
և կախել յիշեալ երկու սեանց մէջ, և ին-
չուան իրիկուն կախած թողուլ։ Այնպէս ե-
ղաւ. և նոյն իրիկուն այլ թաղուեցաւ մար-
մինն, ինչ կերպ որ թաղուէին մահապարտք.
և այսպէս կու նշանակէ Ս. Մարկոս եկե-
ղեցւոյ մեռելագիրքն (1)։

Ութ ամիս վերջը Յուսուֆ Պարսիկն ա-
ղերսագրով խնդրեց ի Ծերակուտէն, որ իր
երկու ծրար մետաքսը՝ զոր յանձներ էր սպա-
նեալ Խօճայ Հասանայ, և դատաւորք գրաւեր
պահեր էին, տան իրեն. Ծերակոյտն այլ յանձ-
նեց Վաճառականութեան 5 Գիտնոց՝ քննել
և ըստ արդարութեան կատարել։

Դ. Պարսքի համար շատեր բանտարկուած

1. 1577 (1578) A di 7 (Feb.) fù appiccato Domenego Armeno, d'ordine delli Ecc. Capi de X. et fù sepolto.

են, նա և երկար տարիներ, և յետոյ արձակուած. բայց թերեւս բանտողքն աւելի յանցաւոր ըլլան՝ քան փորձանքի եկած բանտեալքն։ Անիրաւութեամբ յանցաւորք յիշուին քանի մի, Հայոց բազմացած ատեն ի Վենետիկ (ի կէս ԺԷ դարու). ինչպէս, Պետրոս Աշտման (1649) որ Իսքէնտէր (Աղեքսանդր) անուամբ ազգակից մի ծեծով վիրաւորեր էր (5 յուլ.), ուրիշներու դրդմամբ. անոր համար բանտուած, և երաշխաւոր դնելով արձակուեր էր. Իսքէնտէր բողոքեց տէրութեան (28 յուլ.), և իր արեան տուժը պահանջելով՝ խնդրեց որ նորէն դատուի Պետրոս, ոչ առաջուան քննողներէն, այլ վաճառականութեան հոգցող 5 Գիտուններէն՝ որոց յանձնուած էին Հայոց խնդիրներն։ Ծերակոյտն պատուիրեց առաջին քննող պաշտօնէից՝ որ ստոյգ և երդուեալ տեղեկութիւն տան. զոր և անշուշտ ըրած են. բայց խնդիրն ինչպէս վերջացեր է, չեմ գտած։

Ե. Աւելի յանցաւոր Աստուծոյ քան թէ մարդկան՝ Յակոբ Գալուստեան, հայհոյութեանց համար դատապարտեցաւ (1651, յան. 15) երեք տարի թիավարութեան, ի խալէս (բերդանաւ). և թէ անկարող էր՝ վեց տարի մութ բանտի մէջ կենալու. նա կարող գտուեցաւ, և փոխանակ երեք տարւոյ վեց տարի աշխա-

տեցաւ Տանտոլա կոչուած խալէի մէջ. որ երբ դարձաւ ի Վենետիկ (1657ին), Հայք աղերս տուին տէրութեան (19 Նոյեմբ.) ազատելու զԳալուստ, որովհետեւ վճռուածէն աւելի ատեն պատժուած էր. խոստացան պարտքերն ալ վճարել: Տէրութիւնն գրեց Դալմատիոյ և Ալպանիոյ պաշտօնէից (22 Նոյեմբ. որք արդէն վկայեր էին անոր ծառայութեանը և ազատութեան արժանի ըլլալուն), որ լաւ քննեն, թէ արդեօք նորէն յանցանք ըրա՞ծ է, կամ պարտք ունի՞. և մինչեւ որ այս բանս ստուգուի՝ նա մնայ ի մութ բանտի: Ունէր պզտիկ պարտք մի 89 լիրայից, զոր Հայք պիտի վճարէին: Այս խնդրոյ վերջն այլ չեմ գտած. բայց անտարակոյս ազատուած է Գալուստեանն. վասն զի Հայք ոչ միայն պարտքը վճարել խոստանային, այլ և երաշխաւոր ըլլալ. տէրութիւնն ալ իր պատուիրագրին մէջ խնամով կ'ըսէ, որ Հայոց երախտաւոր ազգը հաճելը՝ իրեն (տէրութեան) ալ օգուտ է (1):

Ջ. Վենետկոյ զգաստ (երբեմն և չափազանց այլ) տէրութիւնն՝ ամէն տեսակ բանի

1. L'instanza si riconosce giusta, et riguarda anco il publico servitio nel consolar Natione tanto benemerita.

տեսող, քննող և պաշտօնեայ դրեր էր. բայց երբեմն երկու տարբեր բանի պաշտօնեայք՝ տարբեր կերպով ալ կու դատէին նոյն մէկ բանը, ինչպէս այս երկու յիշեալ դիպուածներէն կրնայ գուշակուիլ. երբեմն ալ իրենց չահուն համար խստութեամբ կու դատէին. ինչպէս հետեւեալ դիպուածն ալ, որ վերոյիշեալներէն առաջ եղած է (1643)։ Յակոբ որդի Սահակայ և Պալի՝ որ այն ատեն Հայոց մէջ գլխաւոր սէնսարք էին, ազգայնոց և Պարսից համար երկու տուն վարձեր էին. Նոր արդարութեան կոչուած պաշտօնեայք պարտաւորեցին զանոնք՝ իբրեւ յանցաւոր. վասն զի տուն կամ իջեւան վարձքի տուողք (albergatori) պարտական էին, ըստ օրինաց, հարկ կամ մաքս մի վճարել։ Պալի և Յակոբ բողոքեցին գրով առ Դուքսն (23 սեպտեմբ.), թէ իրենց ըրածն ոչ էր ստէպ վարձքի տալ՝ այլ ձրի բնակութիւն տալ, որպէս զի յորդորուին Հայք աւելի գալ և շատ վաճառք բերել։ Տէրութիւնն յանձնեց Ե Գիտնոց քննել. ասոնք արդարացուցին ամբաստանեալները, վկայելով որ անոնք ոչ թէ վարձք կ՚ առնուն ի վաճառականաց, այլ անոնց ծախուած վաճառքէն օրինաւոր սէնսարչէքը. և պէտք չէ այս բանիս համար նորութիւն կամ արգելք մ՚ ընել Հայոց, այլ թողուլ իրենց

ազատութեանը. — Քանի մի տարի վերջը (1650) այսպիսի բան մ՚ըրին նոյն պաշտօնեայք ուրիշ երկու Հայ վաճառականաց դէմ (Մարտիրոս և Պետրոս), որք 140 դուկատի տուն մի վարձեր էին իրենց ազգայնոց համար. բողոքեցին Հայք իրենց նեղութիւն տուողներուն դէմ. տէրութիւնն այլ ըստ սովորութեանն՝ յանձնեց Ե Գիտնոց. ատոնք արդարացուցին զՀայս, մանաւանդ թէ յարմար և լաւ համարեցան որ Հայք միատեղ կենան՝ քան թէ ցրուած. և չըլլայ որ այս բանիս համար նեղուելով՝ փոխանակ ի Վենետիկ գալու՝ երթան ի Լիվոռնոյ կամ ի Ճենովա:

---

## ԺԱ.

### Ա. ՍՏԵՓԱՆՈՍ Ե ԿԱԹՈՂԻԿՈՍ, Բ. ԹԱԴԷՈՍ ԿԹՂ.

Ա. Հայոց ԺԶ դարու ի Վենետիկ պէսպէս նշանաւոր երեւութից մէջ մէկն այլ է իրենց կաթողիկոսաց գալուստն. և թերեւս և առաջին անգամն ըլլայ Հայոց եկեղեցւոյ գլխոյն գալն յարեւմուտս, թէպէտ և ԺԱ դարէն կարծուի Գրիգորի Վկայասէրի հանդիպիլն ի Հռովմ, և իրմէ վերջը Ռուբինեանց իշխանութեան ատեն՝ այլոց, բայց ատոնք դեռ երկբայականք են։ Իսկ այս ատեն եկողաց առաջինն Ստեփանոս Ե Սալմաստացի (ի կէս դարուն, 1550) իր մէկ կոնդակին մէջ ի Հռովմ գրուած, կու վկայէ հօն կենալը վեց ամսէ աւելի։ Կոնդակին պատճառն այլ է վկայական մի՝ զոր տուեր է (սեպտեմբերի 6ին) Պետրոս անուամբ Եմովղոցի երիցու մի, ձեռնադրելով զնա արքեպիսկոպոս իր երկրին, Մահլուզայ գաւառին (որոյ աթոռն էր ի Ցարակոյ), ի փոխարէն իրեն ըրած ծառայութեանն և առաջնորդութեան առ Սրբազան Պապն և առ մեծամեծս, միանգամայն և մեծ սիրոյն « ի վերայ

մեր ազգին »․ որոյ համար և իւրեն Երեւոփո֊
խոն և Վոփէլ կարգէ Հայոց, « Մեծ Հռոմայ
» Եկողին և գնացողին․ զորն որ սա կամենա՝
» ընդունէ, և զոր չկամենա՝ ճանապարու դնէ․
» վասն այս պատճառի, զի բազում անբան
» մարդիկ կու գան և նախատինք կու վաս֊
» տակեն Հայոց ազգիս »։ — Թողլով իբրեւ
մեր նպատակէն դուրս քննել Կաթողիկոսին
գործերն ի Հռովմ, մեր յիշելիքն է իր հան֊
դիպիլն ի Վենետիկ, որոյ հաւաստիքն է
յանձնարարութեան կամ ընծայական գիր
մի, զոր գլխաւորք Հայոց հպատակք Թ․ահ֊
մազայ յաջորդին Շահ Իսմայէլի (որոյ հա֊
մար գիրենք Պօղոսի կ'անուանեն), գրած են
առ Դուքսն և առ մեծամեծ պաշտօնեայս Հա֊
սարակապետութեան Վենետկոյ։ Գրուածին
հայերէն բնագիրն չէ յայտնուած, այլ իտալե֊
րէն թարգմանութիւնն կայ, յորում կու պակ֊
սին (ցանկալի) անուանք գրողացն, այն ատենի
մեծամեծացն Հայոց․ գուցէ առանձին ծա֊
ծուկ նշանակած ըլլան, վասն զի զգուշաւոր
գրուածքին քանի մի խօսքէն գուշակուի՝ որ
քաղաքական խնդրոյ համար էր կաթողի֊
կոսը ղրկելնին։ Պէսպէս թուականօք գրուած
է թուղթն․ « Ի 6970 ամի սկզբան աշխարհի,
» 1547 ամի Մարդեղութեան Աստուծոյ, 1400
» ամի (Նոր) թուականին Հռովմայ, ի ՋՂԶ

» (996) Թուականին Հայոց, յերկիրն Արա-
» րադայ, ի կողմանս Եփրատայ և Տիգրիսի
» մեծամեծ գետոց, ընդ հովանեաւ Մարքատ
» (Marcat, Մասեաց)? լերին, ուր է տուն
» Նոյի, ի սահմանս Վաղարշապատ քաղա-
» քին, մերձ յաստուածաշէն եկեղեցին Էջ-
» միածնի (1) »: Թղթոյն այս վերջաւորու-
թեան համեմատ է և սկզբնաւորութիւնն;
որոյ վերնագիր գրած է թարգմանն՝ « Աղեր-
» սագիր տերանց Հայոց, (Supplica delli
» Signori Armeni). Ո՜վ աստուածահիմն և
» քրիստոսաշէն և 'ի Հոգւոյն Սրբոյ պահ-
» պանեալ քաղաք Վենետիկ, զոր ունին և
» բնակեն ուղղափառ տեարքն Վենետք. ո՛վ
» ամենայն քրիստոնէից և ամենայն մոլո-
» րելոց նաւահանգիստ և ապահով օթեվան.
» դու ամենայն քաղաքաց քրիստոնէից հարսն
» ես, և ամենայն աշխարհի հաւատարիմ օ-
» թարան. Աստուած ներշնչեց ի կուրծս հիմ-

1. Scritto nel principio del mondo 6970 anni, et dalla Incarnazione di Dio 1547, e dal n. di Roma 1400, et dal principio dei Armeni, 996, nella regione di Arrarath, alla parte di Efrate et Tigri fiumi grandi; sotto l'ombra del monte Marcat, dove è la casa di Noe, per mad. della città Vagachabath, nella parte della Iddio-fabbricata Chiesa, che ha il santo Unigenito.

» Նադրաց Նորին, որուն զարմանայ ամենայն
» աշխարհ, թէ ինչպէս հիմնեցար ջրոց վրայ,
» այնպէս լաւ զետեղուած, ինչպէս կ՚ըսէ
» մարգարէն. Գնացք գետոց ուրախ առնեն,
» և ալիք ծովուց ամրանան. իշխանուհի (Im-
» peratrice) ծովու և ցամաքի. յիրաւի մար-
» գարէական հոգւով քեզի համար ըսուած
» է, և քեզի համար կայ և մնայ ըսուածն.
» Որոտաց Տէր ի վերայ ջուրց բազմաց։ Ո՜վ
» աստուածապահ քաղաք, որպէս Գիրք ա-
» սեն, Հրեշտակք Նորա շուրջ զնովաւ են։
» Աստուած դրաւ ի քեզ մշտնջենաւոր թա-
» գաւորութեան աթոռը. քեզմով շատ ան-
» գամ քրիստոնէութիւնն պաշտպանեցաւ։
» Ուրեմն կեցցես ուրախ, որ քեզի նշան և
» պաշտպան ունիս զմեծ Առիւծն, ամենէն
» ուժովն և զօրաւորն ի կենդանիս, զՄար-
» կոս աւետարանիչ, Դպիր Բարձրելոյն, և
» դրօշ յաղթական թշնամեաց։... Ո՜վ վեհ
» քաղաք Վենետիկ, հիմնեալ ի բանն կեն-
» դանի, և իմաստուն աթենական աթոռ բո-
» վանդակ աշխարհի. գիտնագոյն ապաստա-
» նարան և անյաղթ վահան հոյակապ Իտա-
» լիոյ (Invincibil scudo della superba I-
» talia), մանաւանդ թէ պաշտպան բովան-
» դակ քրիստոնէութեան, թէ խոհեմութեամբ
» և թէ զինուք, նուաճելով զյանդուգն թըշ-

» նամին ճշմարիտ հաւատոց։ Քեզ, ով գե-
» ղեցիկ Վենետիկ, քեզ կու վայլէ ճշմար-
» տապէս կոչուիլ Թագուհի աշխարհի, ամե-
» նագեղեցիկ դիրքով, ուր առատապէս կու
» հոսին հարստութիւնք ծովու և բարիք ցա-
» մաքի։ Եւ թէպէտ հեղինակութեամբ Ա-
» ռաքելոյն Պետրոսի՝ Հռոմ քաղաքն է գե-
» րիշխան (1), սակայն դու վեհ քաղաքդ
» Վենետիկ, դու բանալի և փականք ես բո-
» վանդակ քրիստոնէութեան »։... Յետ այլ
եւս այսպիսի գովութեանց՝ կու դառնայ գրիչն
առ դուքսն, զինքը « չձանձրացընելու համար »,
կու մաղթէ իրեն անկէ՝ « որ կու վարէ
» զերկինս և կու պահէ քաղցր ներդաշնա-
» կութեամբ՝ յանդադար շարժման, միշտ
» օրհնութեամբ պահպանել, բոլոր քո գա-
» ւակօքդ։ Եւ որովհետեւ պարզ ես մտօք,
» որպէս հաւատամ և սրտիւ, սովորական
» կերպովդ ընդունէ իմ գրեթէ բարբարոս
» կերպով խօսուածս, և մեր տգիտութեան
» պակասութիւնը լեցու քու գերագոյն իմաս-
» տութեամբ։...
» Մենք գիտեմք ստոյգ որ մեր Հայ ազգն

1. E benchè per l'autorità di Pietro apostolo la città di Roma tiene il principato, nientemeno tu, alma città di Venezia, sei la chiave e serraglio di tutta la cristianità.

» ի տերանց Վենետաց շատ սիրուած և
» զգուած է. որոյ համար՝ նախ ի կողմանէ
» Առաքելոցն Բարդողիմեայ և Թադէոսի ող֊
» ջոյն կու ղրկեմք սուրբ Նշխարաց Ս. Մար֊
» կոսի՝ առաքելոյ և աւետարանչի. և ի կող֊
» մանէ մեր Համօրէն եպիսկոպոսաց, վար֊
» դապետաց և բովանդակ կղերին, և ամե֊
» նայն ազնուականաց և բովանդակ մեր ազ֊
» գին, ՝խոնարհելով կու պատուեմք և կ՚ող֊
» ջունեմք ձեր փառաւոր և յաղթական գրօշը,
» համբուրելով գոտս ձեր ամենապայծառ
» Գլխոյն, Սրբազան ժողովոյ կատարեալ
» Թուով Տասանց, ըստ օրինակի տասն Պա֊
» տուիրանաց, կատարեալ խորհրդարանի
» Քառասնից, ժողովոյ ատենակալ Ծերու֊
» նեաց (Pregadi), և քու ամենայն իմաս֊
» տուն պաշտօնէից. գերյարգելի Պատրիար֊
» քին, և ամենայն առաջնորդաց (prelati),
» քահանայից, քարոզչաց, վարդապետաց,
» և քո բովանդակ հաւատարիմ ժողովրդ֊
» դեանդ: — Եւ մենք խեղճ Հայքս ի մասին
» Պարսից, ի ներքոյ խիստ տառապանաց
» այլադենից, կու սպասեմք ձեր գալուն, ինչ֊
» պէս սուրբ Նախահարքն սպասէին փրկչին
» Քրիստոսի: Գիտեմք որ ի զգօնութենէ տե֊
» րանց Վենետաց պիտի սկսի մեր փրկու֊
» թիւնն և ազատութիւնն: Կ՚ուղարկեմք մեր

» պատրիարքը Ստեփանոս, շատ պատճառաց
» համար, առ մեծապայծառ տէրութիւն ձեր,
» որ յարգութիւն ընծայէ ձեզ, և մեր կող-
» մանէ յանձնէ զմեզ առ ձեզ, և յետոյ
» շնորհք ընէք իրեն որ կարենայ երթալ և
» համբուրել զոտս ամենասրբազան Պապին։
» փառք Աստուծոյ։ »

Այս գրուածէն զատ վկայութիւն մի չեմ գտած Ստեփանոս կաթողիկոսի գալուն և գործոց ի Վենետիկ. բայց շատ հաւանական է, որ բաւական ատեն մի կեցած ըլլայ ի քաղաքիս, և հետն այլ մեծաւոր, փոքրաւոր և ընկերներ ունեցած ըլլայ, և յառաջ քան ի Հռովմ՝ այս տեղ Դքսին յայտնած՝ իր գալուն պատճառը, կամ պատճառները՝ ըստ բանից աղերսագրին. որ բաւական հմուտ և ծանօթ կ'երևի Վենետկոյ տէրութեան կառավարութեան, պաշտօնէից և օրինաց, միանգամայն և վկայ Հայոց յաճախելուն և ընդունելութեանն ի Վենետիկ։

Բ. Քառորդ մի դարու յետ Ստեփանոսի եկած է ի Վենետիկ միւս (Զ) Ստեփանոսի աթոռակից կաթողիկոսն Թադէոս, և գտուած՝ նշանաւոր դիպուածի մի ատեն, սոսկալի՝ միանգամայն և սխրալի. այն ահաւոր մարդածախ ժանտամահի տարին, յորում Հայն Անտոն իր հնարած դեղովն շատեր ազատեց և տէ-

րութեան երախտաւոր ճանչցուեցաւ (տես եր. 260). Դուքսն, պաշտօնեայք և բոլոր քաղաքացիք ուխտեցին Աստուծոյ՝ ժանտախտը դադրեցընելու համար շինել եկեղեցի մի, ինչպէս յիշած եմք. խնդիր եղաւ տեղւոյն վրայօք՝ զանազան կարծեօք, վերջապէս հաւանութիւն և վճիռ եղաւ կանգնել քաղքին դիմացը և անոր մասն համարուած Ծուէֆօ կամ Ծիուրէֆօ ըսուած երկայնաձեւ կղզւոյն (որոյ համար և Երկայն փուշ կ'անուանէր, Spina lunga) վրայ շինել, և յանձնել հօն նոր եկած և հաստատուած Վեղարաւոր (Գաբուչին) և աղքատ կրօնաւորաց, որ այն ատեն կու բնակէին մօտ Ս. Մարիամ Հրեշտակաց կոչուած փոքրիկ եկեղեցւոյ մի, և ուրիշ երկու անոր նմանեաց քով, զորոնք շիներ էր տիկինն Ֆիօրէնցա, քոյր վերջին Հայոց Թագուհի անուանեալ Կատարինեայ Գոռնարոյ (տես եր. 191), և այն ինքն Թագուհին, կ'ըսուի, իր խոստովանահօր խրատով կտակած էր հօն շինել տալ եկեղեցի մի և Անապատ մի առանձնասէր միայնակեցաց համար։ Եկեղեցեաց կամ մատրանց շինութեան տարիներուն (1530–41) այն կողմեր եկած էին յիշեալ Վեղարաւորքն, և խեղճ բնակարան մի հաստատած էին, զոր քանի մի տարի վերջ (1548) սաստիկ փոթորիկ մի կործա-

նելով, ստիպուեցան Ֆիորենցայի չինածնե-
րուն քով գալ և բնակիլ, համանունթեամբ
Պապին և Վենետկոյ Դքսին: Սա հիմայ
վճռեց անոնց յանձնել չինուելու ուխտական
եկեղեցին. և երբ հրաշալի կերպով գրեթէ
մէկէն ի մէկ դադրեցաւ ժանտախտն, բոլոր
քաղաքացիք Վենետկոյ՝ ի դքսէն մինչև ի
յետին ռամիկն՝ ուզեցին Թափորով և նաւա-
կամրջով երթալ այն նոր չինուելու եկեղեցւոյ
տեղը: Թափորին գլխաւոր կազմողք էին ե-
կեղեցական ուխտն և բարեպաշտ ընկերու-
թիւնք, դաս դաս, պզտիկներէ կամ վարի աս-
տիճանի դասէն մինչև ի բարձրագոյնն, որ ա-
մենէն վերջը կու գար, և էր Պատրիարքն
Վենետկոյ. ատոր անմիջապէս առջևէն կ'եր-
թար՝ մեր Թադէոս կաթողիկոսն, (21 յու-
լիսի, 1577), իբրև այլ առաջ Ս. Մարկոս մեծ
եկեղեցւոյն աւագերէցն. որ է ըսել՝ Թափո-
րին մէջ յետ պատրիարքին Վենետկոյ՝ ամե-
նէն պատուաւոր տեղն ունէր Հայոց պա-
տրիարքն, ինչպէս և կու վայլէր իր աստի-
ճանին. և կերպով մի աղօթակից և օրհնիչ
եղաւ թէ իր հօն գտուած ազգայնոց և թէ
զազգայինս հիւրընկալող քաղաքացեաց: Ին-
չո՞ւ համար եկեր էր կաթողիկոսն ի Վենե-
տիկ, և ե՞րբ, և ո՞ւր գնաց ասկից. չեմ գի-
տեր. իսկ ո՞րչափ ատեն բնակեցաւ. — քանի

մի ամիս. (vi stette alquanti mesi) կ'ըսէ Կեսար Վեչելլիօ, եղբայր գերահռչակ պատկերահանին (Տիցիանոյ, որ՝ 100 տարուան ծեր հասակովը վերոյիշեալ ժանտամահին զոհ եղաւ, 1576). Կեսար այլ անուանի և պիտանի պատկերհանական գործոյ մի կու գրաղէր այն ատեն. զանազան ազգաց և տեղեաց զգեստուց տարազները օրինակելով, որոց մէջ կան և Հայք՝ Փոքր Ասիոյ և Կիլիկիոյ կողմանց, որոց ազնուականաց հագուստը նման կու գտնէ կաթողիկոսին հագածին, քիչ տարբերութեամբ, (con simile habito, con poca differenza), և այնպէս ներկայացընէ։

Թադէոսի այս ատեններ յիտալիա գտնուելուն՝ կարծեօք մէկ պատճառն կըրնայ ըլլալ 1575 տարւոյ Հռովմայ կրօնական յոբելեան տարին, յորում՝ պատմիչ մի Ցոբելլինից կու վկայէ՝ որ նա և շատ Հայք եկած էին. զնոյն վկայէ և դեսպանն Վենետաց որ ի Հռովմ, նոյն կամ նախընթաց տարին Հայոց հանդիպած բանի մի առթիւ։ Ասոնք այս Ցոբելինի հոգեւոր շնորհաց սիրով վենետկեցի նաւով մի կու գային Ասորւոց ծովեզերքէն, ապրանքներ ալ բերելով. երբ Տոսկանայի դքսութեան Չրբերու հասան, այն տէրութեան մեծ բերդանաւ մի (կալէոն) բռնեց վենետկեցի նաւը, և մեր Հայոց ստացուածքը գրա-

ւեց, իբրեւ այլազգի հպատակաց։ Հայք ի Վենետիկ դիմեցին առ դուքսն, նոյնպէս և ի Հռովմ առ դեսպան դըքսին. ասոնց գլուխ կեցաւ իրենց ազգակիցն Աղեքսանդր, թերեւս նոյն Հայոց տան վերակացուն՝ զոր յիշեցինք ասկէ առաջ (տես եր. 309), և հետոն առնելով զանոնք՝ գնաց ի Ֆիորենցա, անոր դըքսին աղաչելու, որ հրամայէ Հայոց ինչքը տալու անոնց. դուքսն մերժեց խնդիրը և խնդրողները, ըսելով, թէ փոխանակ ուրիշի դիմելու՝ պէտք էր որ Ս. Պապէն գիր բերէիր. նա ինձ պատուիրած է այդպիսեաց ստացուածքը բռնել։ Աղեքսանդր այս բանս գրեց ի Հռովմէ (15 յանու. 1575) առ դուքսն Վենետկոյ. նոյնպէս՝ գրել տուաւ նոյն օր և անոր դեսպանին. սա՝ գրով կու հարցընէր դըքսին՝ թէ ի՞նչ պէտք է ընել. դուքսն ալ պատասխանեց, որ պաշտօնապէս բան մի չընէ, այլ իմացընէ Հայոց՝ որ եղածին վրայ կու տհաճինք և կու ջանանք օգնել Թուրքաց հպատակաց այլ։ Քանի մ՚օր վերջը (29 յանու.) դեսպանն նորէն գրելով իմացուց դըքսին՝ որ Հայք Տոսկանայի դըքսին հարազատ Մէտիչի կարդինալը միջնորդ բռներ են, և Պապն գրեր է ի Ֆիորենցա՝ որ Հայոց խնդրածը տրուի։ Չեմ տարակուսիր որ այնպէս այլ եղած ըլլայ, և Հայք թէ ա-

պրանքնին վաստըկած ըլլան և թէ Յորե֊լեանը։

Գրուածիս այս մասին նպատակ՝ Հայոց կաթողիկոսաց ի Վենետիկ գալուն յիշատակն՝ խառնուելով և Վենետկոյ ընդ Հռովմայ, անցողաբար ըսենք, թէ կարծելի է որ Սսոյ Ազարիա կաթողիկոսն այլ՝ դար մի վերջը ի Վենետկոյ անցած ըլլայ, յերթալն ի Հռովմ, ուր երկար ատեն ապրելով 92 տարուան վախճաներ է ի սկիզբն անցեալ դարու (1710)։

Գ. Յետ կաթողիկոսաց Նախապատիւ Պատրիարք մ՚այլ Կոստանդնուպօլսի Հայոց՝ Թովմաս, կու յիշուի մօտ ի վերջ ԺԶ դարու, աթոռէն հրաժարելէն ետեւ եկած և բնակած ի Վենետիկ. քաղքէս ելնելու ատենն այլ իր եղբօր կամ քեռ որդւոյն՝ Անկիւրացի Խոճըղուլէն կու թողու իր կահ ու կարասիքը և ի փոխ տուած ստակները, զոր Մարկոս Մուրատ Հայ սէնսարն ժողովելով ի պարտականաց՝ կու յանձնէր անոր։

Աւելորդ է այս տեղ յիշելն այլ թէ ա֊սոնցմէ դարերով առաջ և ետքը՝ շատ Հայ եպիսկոպոսներ եկած և աւելի կամ պակաս ժամանակ կեցած են ի Վենետիկ, ինչպէս յիշած այլ եմք զոմանս. Թովմաս (եր. 160), Մարտիրոս Եզնկացի (եր. 194), և մեր պատմութեան ներկայ յեղանակիս (1543) Հայոց

տան մէջ բնակող եպիսկոպոսն, որու՝ իր հայրենիքը դառնալու ատեն՝ տէրութեան և Հայոց տան Հոգաբարձուք՝ քանի մի դրամ տուին յողորմութիւն։ — Յամի 1561 Նիկողայոս եպիսկոպոս Միաբանողաց Նախճաւանի. և մեր պատմածներուն աւելի մօտ տարիներ կու յիշուին ի 1565, Մելքիսեդ եպիսկոպոս, զոր յիշէ Աբգար տպագիրն Սաղմոսի՝ « առ ոտս Միքիսեդեկ եպիսկոպոսին, ի մայրաքաղաքն ի Վանատիկ, ընդ հովանեաւ Ս. Մարկոս աւետարանչին, ի Հայոց Հոգէտունն, ի ժամանակ Սելիմնի։ » Ինչպէս յետինս Հայոց տնպահն կամ վերակացուն էր, հաւանական երեւի Աբգարու խօսքէն՝ որ Մելքիսեդեկ եպիսկոպոսն այլ անոնց հոգեւոր առաջնորդն ըլլայ, որոյ « առ ոտս » յիշելն՝ հաստատուն կեցող ոտք երեւցընէ և ոչ պարզապէս անցորդ մի. բայց և ոչ միշտ կեցող համարելու է, այլ գոնէ քանի մի տարի, և յետոյ իր երկիրը կամ աթոռը դարձող։ 1560 թուականէն մինչեւ ի 1627՝ Մելքիսեդ կաթողիկոսն ալ համրելով՝ հինգ Մելքիսեդ եպիսկոպոսք յիշուին մեզի ծանօթք ի պատմութեան կամ ի յիշատակարանս գրոց. գուցէ ասոնցմէ մէկն ըլլայ, մանաւանդ Աբգարու հայրենեաց մերձաւորն և յիշեալն յետոյ յամի 1600, ի Սեբաստիա։

Դ. Աւելի մերձաւոր ժամանակ, տասն տարի Մելքիսեդէն ետեւ (1575), յերեւան կ՚ելնէ աներեւութանալու մօտ (այսինքն մահուան), և գուցէ այն տարի նոր սկսած ժանտախտին ազդեցութեամբ, Զաքարիա որդի Կիրակոսի եպիսկոպոս մի, որոյ թէև այլ յիշուի՝ իր իտալերէն գրել տուած կտակին մէջ, այլ չեմ կրնար ստուգել այդ տեղը կամ անունը, որ գրուած է Rassan կամ Rasson, Ռասան, Ռասոն: Համառօտիւ կ՚ըսէ կտակագիրն. «Ես Զաքարիա եպիսկոպոս Ռասանայ, որդի հանգուցեալ Կիրակոսի Հայոյ...
» հեռու գտնելով իմ տունէս և հայրենիքէս,
» չուզելով ինձմէ վերջ առանց կարգի և
» պատրաստութեան թողուլ իմ բաներս,
» կանչել տուի Պետրոս–Աբրահամ հասա-
» րակաց նոտարը, իմ բնակութեանս տունը,
» ի Ս. Յուլիան թաղի (ուր որ է և Հայոց
» տունն), և ստորագրեալ թարգմանաց բեր-
» նով, քանի որ միտքս առողջ է, թէ և
» մարմնով հիւանդ եմ, ուզեցի գրել տալ իմ
» վերջին կամքս և կարգաւորութիւնս... Կու
» թողում իմ Հայ սպասաւորիս Յովհաննու՝
» իր ըրած և դեռ ընելու ծառայութեան և
» զիս հոգալուն համար՝ 15 սկուտ, զգեստ-
» ներս և ինչ որ ունիմ այս տանս մէջ: —
» Սիմոնի՝ վերակացուի տանն Հայոց (a mes-

» ser Simon d'Armenia, vardian della ca-
» sa d'Armenj) *սկսեալ մի։ Ունիմ 14 սկու-*
» *տի չափ այլ, և կ'ուզեմ որ իմ սպասա-*
» *ւորս զատոնք ծախսէ հոգւոյս և Թաղմանս*
» *համար, ինչպէս որ իրեն յարմար երևի.*
» *և նոյն սպասաւորս աղօթէ իմ հոգւոյս հա-*
» *մար »։ — Կտակին ներքեւ անմիջապէս*
*կու ստորագրէ քաղդէարէն Յովհաննէս Քաղ-*
*դէացի մի. յետոյ « Յովհան Սուլեան միջնորդ*
» *(սանսէր), որ Թարգման եղայ կամաց կտա-*
» *կողին՝ Սիմոն Հայուն հետ և վերոյգրեալ*
» *Քաղդէացի Յովհաննիսի, և ստորագրեցի*
» *յանուն Պր. Սիմոնի, որովհետեւ նա գրել*
» *չէր գիտեր » (1)։ Ասկէ վերջ կու ստորա-*
*գրեն երկու Իտալացիք. Թարգմանն որ և*
*միջնորդ Սուլեան՝ գրեթէ անտարակոյս Հայ*
*էր, նոյնպէս Քաղդէացի Յովհանն այլ՝ չէր*
*կտակողին սպասաւորն, զոր որոշակի Հայ կ'ա-*
*նուանէ տէրն. այլ ո՞վ է և ինչո՞ւ միջամուտ*
*կ'ըլլայ այս բանիս այդ Քաղդէացին. — Ի*
*հարկէ ծանօթ էր թէ՛ եպիսկոպոսին և թէ*
*Սիմէոնի, Թերեւս և Հայոց հոգետան մէջ*

1. Zuane Sulian Sanser fui interprete della volontà del Testador, insieme con Messer Simon Armeno et il soprascritto Messer Zuane Caldeo, et o sottoscritto per nome di Msr. Simon, per non saper scriver lui.

թնակէր։ Կտակն գրուած է յօգոստոսի 27 (1575), երեք օր վերջը (30 օգոստ.) ներկայացուած է պաշտօնէից ատէրութեան (¹). ընել է թէ այն 3 կամ 4 օրերու մէջ և հաւանօրէն ամսուն 30ին վախճաներ է Զաքարիա։ Այն տարւոյն մահագիրքն կորած են, որով հանգուցելոյն տարիքն և հիւանդութեան տեւակն և թաղման տեղն անյայտ մնան. որ հաւանօրէն էր կամ Ս. Ցուլիանու եկեղեցին, կամ Ս. Գեորգ կղզին, ուր էր օրինաւոր հանգստարանն Հայոց։

Ե. Զաքարիայի ոչ ժամանակին մերձաւորութեամբ, այլ թեմին անծանօթութեամբ նման՝ հետաքննելի մնայ իրմէ իբր 50 տարի վերջը (1623), Վարդան եպիսկոպոս մ' այլ, Մանգին? մականուանեալ (Mangino). և ոչ միայն եպիսկոպոս կոչուի՝ այլ և արքեպիսկոպոս Hyfanայ? Մեծ Հայոց քաղաքի կամ գաւառի։ Այսպէս գրած է նօտարն, որոյ առջեւ (ի մայիսի 19) վկայեն քանի մի Հայք, որոց գլխաւորն Գէորգ Գոքիլիոյ կամ Գոքիլիասանսէր (Cochiglio, Cochiglia) (որ և շատ դիպուածոց մէջ կու յիշուի 40 տարուան մի-

1. Testamentum D. Zacharie Episcopi de Rassan Armenj, de quo fui rogatus ego Petrus Abramo' Venet. Notr. sub die 27 augti. 1575. Presentatus ad Canc. eccel. 30 dicti.

ջոց, և իր մականունն աստուածութեան կարօտ է)․ Թէ այդ արքեպիսկոպոսն 53 տարեկան է (ուրեմն ծնեալ յամի 1570), երկայն և թուխ մօրուօք, լեզուին վրայ այլ ազգի կամ նշան մի կայ վերաց․ ուղղափառ է հաւատով Հռով-մէական, բարի վարուք և օրինակեաց, Հայերէնէ և Թուրքերէնէ զատ ուրիշ լեզու չի գիտեր։ Այսչափ է նոտարական գրուածոյն տուած տեղեկութիւնն, յորմէ չիմացուիր ինչ պատճառաւ տրուիլն․ արդեօք Վարդան կ՚ուզէ՞ր բնակիլ ի Հայոց տան, թէ շնորհք մի խնդրէր ի հասարակապետութենէն, թէ յանձն-առաքութեան թուղթ մի։ — Մեզի հետաքըն-նական թեմին անուանն՝ զոր ըստ գրուածին Հէջան կու կարդամք, չեմք կրնար որ և է Հայոց եպիսկոպոսական թեմի մի նմանցընել, բայց եթէ վերջի մասամբն՝ Վանայ․ հաւան-օրէն նօտարն քանի մի անգամ կրկնել տուած է Հայ վկայից այս անունը, բայց դարձեալ անոնց ըսածն և իր լսածն նոյն անունն կամ ձայնն չէ․ ինչուան հիմայ այլ շատ հեղ այսպէս կու պատահի արեւելցի լեզուաց ըսածին և եւրոպացի ականջաց լսածին, որ երբ գրուի՝ շատ օտար և այլանդակ ձայն կամ կերպարանք կ՚առնու։

Ջ․ Նոյն տարին վեց ամիս վերջը (1623 Նոյեմբ․ 10), նոյն Գէորգ վաճառական և

սանսէր, Թարգման կ'ըլլայ քանի մի վկայից՝
որոց երկուքն են Եզընկացիք, Խոճայ Սէֆէր
որդի Գէորգայ, և Աբրահամ որդի Ցովհաննու
Եմիլէտի? (Emiliti. ահա տարակուսելի անուն
մ'այլ). որք կու ներկայանան նոյն նոտարին՝
ներկայացընելով ուրիշ արքեպիսկոպոս մի
Մեծ Հայոց, Ներսէս անուամբ, որոյ թեմն և
աթոռն թէ և քիչ մի այլագրած՝ կու ստու-
գուի Բաղիշու Խնդրակատար Աստուածածնին ըլ-
լալ. քաղքին անունն Buchis գրուած է, վա-
նացն՝ Ս. Աստուածածին Շնորհաց՝ Թարգ-
մանուեր է, S. Maria delle Grazie, որ Ի-
տալացւոց հաճոյ անուն մ'է, իրենց շատ ե-
կեղեցեաց այսպէս կոչմամբ։ Ներսէս արքե-
պիսկոպոսն՝ ըստ վկայութեան Հայոց՝ էր իբր
42 տարուան, միջակ հասակաւ, սեւ և բո-
լորակ մօրուօք, քիթն քիչ մի տափկած կամ
ճզմուած (ha il naso alquanto fracato)։
Ժամանակին մօտաւորութիւնն և թեմին ա-
նունն քիչ մ'այլ կ'աւելցընեն զկարծիս՝ Վար-
դանայ թեմին այլ մօտ ըլլալն ի կողմն Վա-
նայ. Նոյնպէս և անշուշտ կ'աւելցընեն զփա-
փագ գիտնալու, թէ ի՞նչ պատճառաւ այդ
երկու արքեպիսկոպոսք ի խոր Հայոց եկեր
են ի Վենետիկ, և ո՞ւր գնացեր. — Ներսէ-
սի ի Հռովմ՝ գտուիլն յամի 1630 յայտնի է ի
յիշատակարանաց. հաւանական է և միւսին. զի

վկայք երդմամբ հաստատեցին անոնց ուղղափառութիւնը. և ոչ միայն անոնց՝ այլ և նոյն օրը՝ որ Վարդանայ համար վկայեցին (19 մայիս, 1623), նա և նոյն այն վկայից մէկուն համար այլ, որ է Ստեփան Փիրպաս? (Pirbas) կու վկայեն Գոզիլիոյ և այլք, թէ ի Մեծ Հայոց է, հպատակ Պարսից Թագաւորի, 55 տարուան, միջահասակ, կլորակ և ճերմակ մօրուօք, որդին այլ Փիրպաս 25 տարուան, բարձրահասակ, դեռաբոյս մօրուօք, բարեպաշտ ուղղափառ համաձայնք են. և թէ ի Վենետիկ և թէ օտար քաղաքաց մէջ այլեւայլ վաճառուց առուտուր կ'ընեն, և հայերէնէ ու թուրքերէնէ զատ լեզու չեն գիտեր։ Կըրնայ այլ կարծուիլ՝ որ այս ժամանակս կրօնական խնդիր կամ դիպուած մի հանդիպած ըլլայ ի Վենետիկ՝ Հայոց մէջ, որոյ համար հարկ ըլլայ այսպիսի տեղեկութիւններ տալ տէրութեան նոտարաց։

Է. Բայց մենք մեր հիմնական խնդրէն (Հայ եպիսկոպոսաց ի Վենետիկ) և ժամանակէն (ԺԶ դար) չհեռանալու համար, միայն ի հարեւանցի յիշենք յաջորդ դարուն (ԺԷ) յետ Վարդանայ և Ներսիսի՝ քանի մի հանդիպող եպիսկոպոսներ ալ. Առաքել Բողէկ, 1661–2, † ի Հռովմ. — Վարդան Յովնանեան, 1677, արքեպիսկոպոս Լեհա–Հայոց,

յաջորդ Նիկոլի. — Յովսէփ արքեպիսկոպոս Զմիւռնիոյ, 1686. Յաջորդ ԺԸ դարու մէջ, ինչպէս կրնայ գուշակուիլ, թէ ընդհանուր երթեւեկութեանց աւելի յաճախելուն համար, և թէ Մխիթար Աբբահօր ի Վենետիկ հաստատած վանաց համար, ազգային եպիսկոպոսք աւելի շատ եկած են յայս քաղաքս, աւելի երկար տարիներ բնակած, և ոմանք վախճանած և թաղուած ի յիշեալ վանս մեր։ Ծանօթքն մեզ են, ժամանակի կարգաւ.

1702 Յովհաննէս եպիսկոպոս մի.

1716†1738 Յարութիւն կամ Անաստաս արքեպիսկոպոս Նէօկեսարիոյ.

1726 Սահակ եպիսկոպոս.

1731–5 Յովնան եպիսկոպոս Սեբաստիոյ.

1736–57* Մինաս արքեպիսկոպոս Փէրվազեան.

1743 Կարապետ արքեպիսկոպոս Կեսարիոյ, † ի Դրիեստ.

1747–50 Աթանաս եպիսկոպոս Աբրահամեան.

1750–3 Սարգիս Սառաֆեան արքեպիսկոպոս Անկիւրիոյ.

1760 Ղազար Անմարմին արքեպիսկոպոս Տրապիզոնի.

* Աստղանիշքն մեռած են ի Վենետիկ, և թաղուած ի Ս. Ղազար վանս մեր։

1766 Սիմոն եպիսկոպոս Գաղատացի.
17.. Յարութիւն Բոսնեցի արքեպիսկո-
պոս, † ի Դրիեստ, 1796
1773* Գրիգոր եպիսկոպոս.
1776-1791 Գրիգոր Գասպարեան Պատ-
րիարք Կ. Պոլսոյ, † ի Դրիեստ.
1790* Կարապետ Մելքեան Հնձեցի արք-
եպիսկոպոս Տփղիսու։

Ը. Վերադառնալով մեր յիշատակաց ժամանակագրական կարգին, ԺԶ դարու վերջերը, աւելի հետաքննելի և անծանօթ Անտոնէ անուամբ եպիսկոպոսի մ'այլ վերջին նշոյլ մի կու ծագի և կու ծածկի, մահուանը յիշատակաւ. ո՞ւր և ե՞րբն անստոյգ. այլ մահն կ'երեւի ի սկիզբն 1594 տարւոյ, տեղին այլ Թերեւս ի Վենետիկ. վասն զի հօս նոյն տարին (մայիսի 4), Նոտարի առջեւ Կորողեր որդի Թովմայի՝ անոր իրեն յանձնածը կու յանձնէ առ Տէր Յովսէփ Մարգարեան երեսփոխան կաթողիկոսի անուանեալ. և յանձնածէն կու յայտնուի՝ որ եպիսկոպոսն Նուիրակ էր կաթողիկոսին առ արեւմտեան Հայս։ Առ Կարապետի աւանդածն էր մեծ ճերմակ տուփ մի՝ իր կնքով երկու տեղ կնքած, որոյ մէջ կային պղնձեայ աման մի 3 1/2 լիտր միւռոնով. Նշխարք Սրբոց, 10 ոսկի վենետկեան (ծեգին), մէկ կարմիր համրիչ ոսկրէ, 6 սապոն, 4 Թաշկինակ՝ երկուքն մետաքսէ, 1

գտակ մանուշակագոյն չուխայէ, (una Tachia de panno pavonazo)․ և աւելի հետաքրքրական՝ 34 հայերէն տպագրեալ տոմար (Calendari in stampa in lingua armena)․ Հաւանօրէն տասն տարի առաջ (1584) ի Հռոմ թարգմանուած և տպագրած Գրիգորեան Նոր տոմարն էր ձեռամբ Յովհ․ Տէրզնցւոյ․ կրնայ ըլլալ և անկէ առաջ (1567ին) ի Կ․ Պօլիս տպագրեալ Տօնացոյցն։ Կաթողիկոսն՝ (կամ Նոր ընտրուած Մելքիսեդն, կամ Դաւիթ Ե) գրեր և պատուիրեր էր առ Կարապետ, որ հանգուցեալ Աւետիք եպիսկոպոսի թողածն յանձնէ Տէր Յակովբայ․ և սա այնպէս կ՚ընէ ներկայութեամբ և վկայութեամբ արդէն մեզի ծանօթ Գէորգ Թարգմանի և Տնպահի Հայոց, և Առաքելի որդի Յոկոբէ մի․ որոց կու ստորագրեն երեք Քաղդէացիք և Ասորիք (Եղիա որդի Դոմինիկոսի, Բենեդիկտոս ո․ Յակովբայ և Անճելոյ ո․ Սերովբէի)։ Ինչո՞ւ փոխանակ Հայոց՝ այս օտարազգիք կոչուած են ի վկայութիւն․ — Թերևս աւելի ծանօթք ըլլալով † եպիսկոպոսին կամ իր աւանդապահ Կարապետին․ կամ իրենք աւելի ծանուցուած անձինք ըլլալով ի Վենետիկ։

Թ․ Յետ այս բարձրաստիճան եկեղեցականաց (կաթողիկոսաց, պատրիարքաց և եպիս-

կոպոսաց) արժան էր որ նոյն ատեններս ի Վենետիկ հանդիպած՝ հասարակ վարի աստիճանաւորները, (քահանայ, սարկաւագ, ևն.) վերիններէն աւելի շատ եկած ըլլան. բայց աղջիններուն պէս փայլուն չըլլալով և ոչ այլ արտաքին գործոց մէջ մտնելով, շատ չեն ճանցուած։ Ասոնք հաւանօրէն բնակելով ի Տան Հայոց, հօն այլ պատարագէին սենեկի մի մէջ, երբ որ հանդիպէին, խորան մի պատրաստելով. երբ քահանայ չի գտուեր, սենեակն այլ իր սրբազան շնորհքը կորսունցընէր, կամ բնակարան կամ մթերանոց կ՚ըլլար. ինչպէս քիչ մի վերջը պիտի վկայուի ի Տնպահէն։

Յիշենք, այս եկեղեցականաց մէկ երկուսն, ԺԶ դարու վերջերում ի Վենետիկ։ 1575 Թուին Տէր Թովմաս Հըռնքէյֆցի, Jacobat անուանուած, որ անշուշտ Յակոբիկ նշանակէ. արդէն իր երկիրն այլ կարծեցընէ ասորի կամ քաղդէացի ըլլալը. սակայն Հայոց հետ կու յիշուի, իրենց դատի մի մէջ վկայելով զանոնք և անոնց գործը գիտնալը։

1593. Յաջորդ (ԺԲ) գլխոյ մէջ պիտի յիշուին Տէր Յովհաննէս ո. Զատալբայ, և Հ. Սահակ մի, իբրեւ Նուիրակք կաթողիկոսի, յորոց հաշիւ կու պահանջէր Նոր և մեծագոյն Նուիրակ մի (Տէր Յակովբ), որու սարկաւագ-

ներն այլ պէտի յիշուին իր հետ։ Նոյն ժամանակ ուրիշ սարկաւագ մ՚ այլ կար, որ եթէ անոնց հետ գործ չունէր, սակայն հարկ էր ծանօթ ըլլալ այն մեծ նուիրակին. մանաւանդ որ մէկ ձեռագիր (Մաշտոցի) մէջ (հիմայ ի Բարիզ), թէ՛ իր գրուածն կայ և թէ նուիրակին. սա գրէ. «Զհամթեցի Յակոբ երէցն յիշեցէք յաղօթս ձեր, որ զայս տաղս Զրօրհնեաց՝ (Ով զարմանալի խորհուրդս այս) գրեցի». իսկ միւսն. «Գրեցաւ սակաւ գիրս Թոխաթցի Գաստոխ սարկաւագին, ի քաղաքն Վանատիկ. Թուին ՌԽԱ (1593) յունուար ամսոյ ի ԻԴ, աւրն բշթի. զմեղաւորս յիշեցէք և Աստուած յիշէ զձեզ», ևն։

1591. Աստնցմէ աւելի նշանաւոր համարելի է, թէ և անծանօթ, կրօնաւոր մի, Մկրտիչ որդի Մարտիրոսի, որ կենաց յետին յիշատակաւն յայտնուի, այն է կտակն (ի 17 յունիսի), թէ և կարելի է այն կտակէն վերջ առողջացած և ապրած ըլլայ, ([1])։ Կտակն իտալերէն գրուած է որոյ մէջ զինքը

1. Կտակողին մեռած օրը կու բացուէր կտակն, և վրան կու գրուէր թէ այս օր (ամսոյ և տարւոյ) վախճանեցաւ նա. իսկ եթէ ազատէր նա ի հիւանդութենէն և ապրէր՝ կտակն կնքուած մնար, և անվաւեր համարուէր. Եղ. Յովհաննու կտակին վրայ այլ չէր նշանակուած իր մահը. և փակուած պահուած էր. ըսել է թէ

կ՚անուանէ Եղբայր Յովհ. Մկրտիչ Հայ, որդի † Մարտիրոսի, ի կարգէ Ս. Անտոնի. (Fra Gian-Battista Armeno q.m Martiros dell'ordine di S. Antonio), և կ՚ըսէ. հիւանդ ըլլալով յանկողնի՝ ի տան Պր. Յակոմբայ, որոյ տանտէրն էր ազնուականն Պրակատին, քանի որ միտքս առողջ է, կ՚ուզեմ սահմանել իմ ստացուածքս, (Յովհ. Ֆիկոլինոյ) Նոտարի ձեռքով գրել տալով։

Կտակակատար կարգէ զՄուրէս Մուրատ Հայ սանսէր, որմէ առնելիք ունէր 100 դուկատ. այս ստակէն կ՚ուզէ որ հանուի իր Թաղման ծախքն, ի վանս Ս. Գէորգ կղզւոյ (տես եր. 152), և մնացածն այլ իր հոգւոյն համար տրուի յողորմութիւն. յանուանէ յիշէ լա-

առողջացեր է, և հաւանօրէն դարձեր է իր երկիրը և իր Ս. Փրկիչ վանքը։ Ասոր նման քանի մի Հայոց կտակ գըտանք ի դիւանս Նոտարաց Վենետկոյ, որ երկու երեք հարիւր տարիէ ի վեր կնքուած մնացեր էին, և ըստ օրինաց՝ տէրութենէ հրաման խնդրելով՝ բացինք, մեծ հետաքրքրութեամբ և զարմացմամբ պաշտօնէից և նոտարաց. հնագոյնն այս Եղ. Յովհաննուն էր։ Անկէ հին մեր բացածն էր Հաճի Հիւսէինի որդի Պեկպաղարցի Ահմէտ Թուրքի մի, (1579, յանուար 2) որ իրեն Թաղման ըրեր է մեր ծանօթ Թէոդորոսի ո. Գէորգը, և Յակոբայ ո. Մարկոս՝ Հայերը։ Հայերէն գրուած և փակ մնացած կտակաց (մեր գտածներէն) հնագոյնն էր՝ Տեր-վինոյ Եղիազարի որդի Հայրապետին, 1694, մայիս 30։

տին սարկաւագ մի (Nicolò Lucadelli) որ նոյն (Ս. Մարիամ Խորոտիկ) Թաղին մէջ բնակէր։ Ի Հայաստան ունեցած ընչից համար՝ կ'իմացընէ, որ հայերէն կտակին մէջ գրեր պատուիրեր էր. մասնաւոր խնամքով կու յանձնէ Մարկոսի (զոր իր սիրելի հայր և եղբայր կոչէ) որ իր Խաչատուփը կամ Խաչափայտի մասնատուփը խաւրէ իր երկիրը ի Ս. Փրկիչ վանս (1), զոր փափագելի է գրտնել, թէ Հայոց ո՞ր գաւառի կամ քաղքի մէջ էր. կ'իմացընէ եղբայրներ այլ ունենալն, բայց պատուիրէ որ ոչ ասոնք, ոչ ոք Հայ, ոչ եղբայր, ոչ քահանայ, ոչ եպիսկոպոս, ոչ կարդինալ և ոչ այլ ոք՝ չնեղեն իր խոստակատար Մարկոս Մուրատը՝ իրմէ բան մի պահանջելով։ Վերոյիշեալ լատին սարկաւագն և երկու Վենետկեցիք եղած են վկայք կտակին։

1. Mandi la mia Croce de Reliquie nel mio paese, al mio monastero Pergix.

## ԺԲ.

### ՏԷՐ ՅՈՎՀԱՆ ՄԱՐԳԱՐԵԱՆ ԱՄԴԵՑԻ, ՆՈՒԻՐԱԿ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԵՒ ԴԵՍՊԱՆ.

Աւելի քան զվերայիշեալ եպիսկոպոսներն հետաքննութեան արժանի անձ մ՚է սա, և իր յայտնի կամ անյայտ գործովք խորհրդաւոր և գաղտուկ կերպարանք մի կ՚երեւցընէ՝ և կարծեմ թէ իր ատենն այլ այնպէս երեւած է ոմանց և կասկածելի եղած, ինչպէս գուշակուի իր վրայօք մնացեալ քիչ կամ անկատար յիշատակներէն. որոց եթէ թիւն աւելնայ, անշուշտ աւելի նշանաւոր պատմական անձ մի պիտի յայտնուի ի վերջ ԺԷ դարու և ի սկիզբն ԺԸի, արեւելից և արեւմտից միջնորդ կամ ներգործող։ Քաան տարուան ժամանակի միջոց ծանօթ է Յակոբ՝ ի դիւանական կամ նոտարական գրուածս Վենետկոյ. հայրենեօք Ամդեցի (Տիարպէքիրցի) վկայեալ, ցեղով Մուրթուրեան կամ Մուրթուրէ որդի, և պաշտօնով կամ վիճակաւ՝ Աղեքսանդրու կամ Նահապետի կաթողիկոսին Էջմիածնի։ Զայս ամէն բովանդակէ հնագոյն

իր յիշողաց (1593, մայիս 26), նոտար մի. Il Molto Reverendo Jacomo Marcara di Caramit, Armeno, Vicario Generale del Reverendissimo Patriarca dell' Armenia Maggiore. գրեթէ միշտ այսպէս յիշուի յի֊տալական գրուածս, և յայտնուի՝ որ շատ անգամ եկեր գացեր է, ոչ միայն ի Վենե֊տիկ, այլ և ի Հռովմ և ի Գերմանիա, հա֊ւանօրէն նա և ուրիշ արեւմտեան Եւրոպիոյ աշխարհներ. ոչ հասարակ նուիրակի մի պէս, այլ և իբր երեսփոխան և գործակատար. նոյնպէս ալ եղած է Վրաց և Պարսից թա֊գաւորաց կողմանէ առ արեւմտեայս, և ա֊տենցմէ առ նոյնս։ Արեւելից նկատմամբ՝ նշա֊նաւոր է ժամանակն Շահ Աբասայ թագա֊ւորութեան, անով և Վրաց, նոյնպէս մեր կաթողիկոսաց այլ չփոթութեանց, Դաւթի Եւ և իր նոր աթոռակից Մելքիսեդեկի։

Առաջին ծանօթ կամ հնագոյն յիշատակին մէջ Յակովբ ի Վենետիկ իր տեղ գործակալ կու դնէ՝ նոտարի առջեւ՝ իր հայրենակից (Ամդեցի) մի, Գասպար Տէրվէլչեան, որ պահան֊ջէ Ջուղայեցւոյ որդւոյ Տէր Յովհաննիսէ՝ 100 դու֊կատը, զոր Պայլն Վենետաց (անշուշտ ի Կ. Պոլիս) տուեր էր անոր՝ որ հասցընէ առ կա֊թողիկոսն։ Այս գործակալութեան վկայ կ'ըլ֊լան Գէորգ՝ արդէն մեզի ծանօթ Տնպահն

Հայոց, որ և Թարգման (եր. 287), քանի մի Անկիւրացիք, Էլճն որդի Էլճնառի կամ Էփճնառի, և իր որդին Էփճնով. Աստուածատուր ու Սէլոնք և Մելքիշան ու. Մուրատ։ — Քանի մ'օր վերջը (29 մայիս, 1593) զնոյն Գէորգ Տեղանը գործակալ կու կարգէ նոյն նօտարին գրութեամբ, որ պահանջէ ի Հ. Սահակայ՝ ինչ որ կաթողիկոսին պարտական էր։ Այս բանիս վկայ կ'ըլլայ Գուլաւեղ ու. Մուրատայ՝ մականուամբ կամ հայրենեօք՝ d'Arpiez գրուած։ Այս անուանս ստուգելն այնքան հետաքննելի չէ, որքան գիտնալն թէ ով էին այն Տէր Յովհանէսն Զաքարեան և այն Հ. Սահակն, որոց քով կային կաթողիկոսական պահանջք, թերեւս նուիրակք էին կամ տանձին պարծոց համար ղրկուածք. և անոնց ու նմանեացն (եթէ կային) կաթողիկոսական վերադոյն երեսփոխան էր տէր Յակոբ։ Զաքարիա՝ քահանայի որդի՝ ինքն այլ կամ նոյնպէս աշխարհիկ երէց մի էր կամ վարդապետ. իսկ Սահակ՝ կամ Էջմիածնի կամ ուրիշ վանքի մի միաբան. վասն զի ուրիշ նոտար մ'այլ տարի մի վերջ կ'անուանէ զնա կրօնաւոր ի կարգէ Ս. Անտոնի (hordinis S. Antonij). ամէն Հայ կրօնաւորք կամ Անտոնեան կամ Բարսեղեան կոչուէին յարեւմտեայց։ Այս Սահակայ երկրորդ ծանօթութիւնն եղած է ի

24 ապրիլ 1594, վերոյիշեալ գործոյ նման. Տէր Յակովբ ի Վենետկոյ դառնալ ուզելով իր երկիրը, դարձեալ զԳէորգ Տնպահ իրեն գործակալ կու կարգէ, պահանջելու և ընդունելու իր առնելիքն՝ ի Հ. Սահակայ։ Այս գործակալութեան միակ Հայ վկայ կ'ըլլայ Հռոմէ Օհան Յորդանընէնէ որդւէ, զուցէ Անկիւրացի։ — Ահա այս գործէս տասն օր վերջ (մայիս 4) ✝ Աւետիք եպիսկոպոսի քով գըտուածները կ'ընդունի Յակովբ ի Կարապետէ, զոր յիշած եմք (եր. 210).

Անտարակոյս է Յակովբայ քիչ ատենէն ելնելն ի Վենետկոյ, իր նուիրակութեան և դեսպանութեան գործոց համար. այլ անկէ ետեւ երեք տարի ո՞ւր երթալ գալն և՝ գործելն յայտնի չէ ինձ. յետ երեք տարւոյ (1597) նորէն կ'երեւի ի Վենետիկ, ի Հռովմ երթալու համար, ի կողմանէ Վրաց թագաւորին կամ իշխանաց, առ Ս. Պապն։ – Ի՞նչ բանի համար. – Նոյն իսկ Վենետկոյ դուքսն փափագէր իմանալ, և յանձնեց տէրութեան դպրապետին՝ ճարտարութեամբ հետաքննել։ Օր մի (22–3 յունիսի) երբ Յակովբ եկեր էր ի պալատն՝ ընդունելու իրեն շնորհուած 50 դուկատը, (յայտ կ'ըլլայ որ Վենետաց տէրութեան համար այլ ծառայութիւն մ'ըրած էր), հարցուց աստ պաշտօնեայն իր

համբորդութեան վրայօք. Նա զգուշութեամբ խօսեցաւ (mostrandosi nel parlare molto riservato). Վեց ամիս կայ, ըսաւ, որ ելայ Գաղուինէն, Թագաւորէն (ի Շահ Աբասայ) ղրկուած. եկայ ի Tecbis (Թիֆլիզ) առ Աղեքսանդր և Սիմոն իշխանս Վրաց. այս իրենց տեղն՝ Գաղուինէն երկու օրուան ճամբայ է. ասոնք ալ թուղթեր տուին առ Պապն տանելու, նա և առ դեսպան կայսերն ի Հռովմ, բայց ասոր գրուած թուղթն այլ Պապին թըղթոյն մէջ դրին. ասոնց գրուած թուղթեր այլ ունիմ, նա և ի պատրիարքէն Վրաց, զոր պէտք է տամ և սպասեմ պատասխանին։ Ուրիշ անգամ այլ ասոնցմէ և Սանդա Սեւերինայի կարդինալէն թուղթեր տարած եմ առ Շահն և առ իշխանս և պատրիարքն Վրաց. բայց որովհետեւ իտալերէն գրուած չէին՝ չկարցան հասկընալ, և աղաչեցին որ Պապն պարսկերէն գրել տայ, և աղօթք ընէ՝ որ կարենան թշնամւոյն դէմ երթալ. միանգամայն և կու սպասեն՝ որ արեւմտեայք նախ յաղթութիւն մի ընեն, որ իրենք այլ վստահանան։ Ի Հռոմ իմ թարգմանս է Յովբ անունամբ Հայ մի, իսկ բնակութիւնս վերոյիշեալ կարդինալին քով, ուր ուրիշ անգամ ալ բնակեր եմ։ Շահ Աբասայ համար ըսաւ, որ 26 տարուան է, մանչ մի և փոքրիկ աղ-

ջիկ մ'ունի. 80,000 ձիաւոր ունի, բայց ոչ հրացանաւոր: Սիմոն վրացին կտրիճ մարդ է, 45 տարուան, որդի մ'ունի 25 տարուան, շատ զօրաւոր, (di gran virtù). 40,000 հետեւակ կըրնան ունենալ, բայց ոչ ձիաւոր. հրացանաւոր այլ ունին. այս Վրացիք՝ Պարսից պէս ճերմակ գլխապատ ունին, ականջնին այլ օղեր, կուրծքերուն վրայ մեծկակ խաչ մի: — Վրաստանէն եկայ ի Վան, անկէ ի Հալէպ. գաղտուկ լրտեսի մի առաջնորդութեամբ ի Հալէպ ներկայացայ Վենետկոյ գունցին, ուսկից ընդունեցայ պաշար եւ ստակ, եւ ցամքով ու ծովով հասայ ի քաղաքս. նոյնպէս այս տեղ մաքսապետն պաշար տուաւ ինձ. եւ այս իրիկուն ճամբայ կ'ելնեմ երթալու ի Հռովմ: — Այս քիչ շատ ըսածներէն կ'իմացուի Յակոբայ դեսպանութեանց կամ նուիրակութեանց պատճառն, աւելի քաղաքական քան կրօնական:

Ըսածին համեմատ՝ եթէ յունիսի 23ին (1597) մեկնած է ի Վենետկոյ, բաւական երկար ատեն այլ բնակեր է ի Հռովմ. վասն զի ունիմք ժամագիրք մի յետ եւ առաջ գըրուած իր ձեռօք. ուր կու գրէ յաջորդ տարին 1598, եւ բաւական կու ծանօթացընէ մեզ Տէր պապա ըլլալը. «Գրեցաւ ժամա-
» գիրս ի թվին Հայոց ՌԽԷ, ապրիլ ամսոյ

» Ա. ավարտօ (աւարտեցաւ) ի մայրաքաղաքն
» ի մեծն Հռովմ, ի հայրապետութեան սուրբ
» փափին Գղեմէնդ Ութաւոյ (Ottavo, Ու-
» թերորդ). ի ժամանակն կարտինալ Սանդա
» Սեվերենին, ձեռամբ անարժան և մեղօոր
» Համթեցի Յակոբ երիցուս, որ միայն զա-
» նունս ունիմ և ոչ զգործս բարիս. յիշա-
» տակ ինձ և ծնօղին իմոյ Եղիսին, և հօրն
» իմոյ Տէր Մարգարէն, և որդոյն իմոյ Եղիայ
» սարգօագին, և եղբօրն իմոյ Պաղտասա-
» րին, և կողակցին իմոյ և ամենայն յարեան
» մերձաւորացն՝ որք փոխեցան ի Քրիստոս։
» Արդ աղաչեմ զձեզ, սուրբ քահանայք և
» սարկօագունք, որ չիմեղադրէք սղա(լա)-
» նաց գրոյս, զի ի բէրանէ 'ի մտաց գրեցի,
» և ոչ յօրինակօ։ Արդ որք ժամ ասէք սովօ
» կամ յօրինակէք, թէ թերի կայ՝ լցէք. և
» ինձ մի բերան Աստուած ողորմի ասէք, և
» Աստուած ձեզ և մեզ ողորմեսցի։ Հայր
» մեր »։ — Անմիջապէս ասկէ ետեւ կու գրէ.
« Յիշատակ է ժամագիրքս Հայոց ժամատան
» ի մայրաքաղաքն Վանատիկ. ամէն »։ Յայտ
է որ ինքն թողած է իր ձեռագիրքը Հայոց
եկեղեցատան, բայց ոչ այս անգամ Հռով-
մէն գարձած ատեն, այլ յետոյ, թէ և ստոյգ
է վերը յիշեալ թուականէն (ապրիլ, 1598)
տարի մի վերջը ի Վենետիկ գտուիլն, մայիսի
7ին, 1599։

Այս մէկ տարուան միջոցին Յակովբ (անշուշտ բերած թղթոց պատասխանները տանելով) դարձեր էր յարեւելք, ինչպէս այս եաքի յիշած օրը՝ ի Վենետիկ Նոտարի առջեւ վկայեցին իր երկու հայրենակիցքն, Մէրղա որդի Աղաճանի և Գասպար որդի Տէրմէջէ։ Այս ետքինիս Լուրֆի որդւոյն հետ՝ Տէր Յակոբ գացած էր ի Վրաստան՝ առ իշխանն Սիմոն, և անկէց թուղթեր կու բերէր առ կայսրն և առ իշխանս Իտալիոյ։ Ասոնց վկայ և թարգման եղաւ Մկրտիչ Պարսկահայ Տնպահն, յաջորդն Գէորգայ։ Երկրորդ օր՝ ուրիշ Հայ վաճառական մի Խարիսպեան (Charispian) որդի Ղազարայ՝ նոյնպէս երդմամբ վկայեց, որ Յակովբ հաւատարիմ և բարի մարդ է, և ինքն տեսեր էր զնա Սիմոն իշխանին քով։ Ասոր խօսքին ստուգութեանն այլ վկայեց ուրիշ Հայ մի Ջուղայեցի՝ Գէորգ Սէրգոր կոչուած, և թէ Յակովբ իրաւ քանի մ՚ամիս առաջ գացեր էր առ Սիմոն, հետն այլ կար ուրիշ Հայ մի, զոր բռնեցին Թուրքք ի Գանձակ, և թղթատար կարծելով՝ կ՚ուզէին այրել, բայց Ջուղայեցի Հայք ստակ տալով՝ ազատեցին։ —

Յակովբայ գործն յիրաւի զգուշալի և իրեն վտանգաւոր կրնար ըլլալ, զարմանք չէ կասկածելի ըլլալն այլ. բայց առանց զարմանքի չէ Վենետաց կասկածոտութիւնն այն անձին

վրայ, որմէ քանի մի տարի առաջ տեղեկու-
թիւններ առին և 30 դուկատ վարձք կամ
պարգեւ տուին: Սակայն դարձեալ հարկ է
թէ՝ իրաւ կամ սուտ՝ կասկածանաց առիթ մի
կար, նոյն իսկ Ցակոբայ խորհրդաւոր կեր-
պով մի և ստէպ այլեւայլ արեւելեայ և ա-
րեւմտեայ տէրութեանց արքունիքը մտնել ել-
նելն: Ի՞նչ առիթ կամ դիպուած էր, չեմ գի-
տեր, բայց հետեւանքն և գլխուն եկած փոր-
ձանքն՝ յայտնէ իրեն հաւատարիմ ընկեր օրհ-
նեալ ժամագիրքն. որոյ մէջ այս կարեւոր հա-
մառօտ և հետաքննական ծանօթութիւնն այլ
կ'աւելցընէ, ի թուին Հայոց ՌԽԸ, որ է
1599–1600ի հոկտեմբեր ամսոյ մէջոց. ու-
րեմն, 1599 մայիսի մէջ ի Վենետիկ գտուե-
լէն վերջը. «Ինձ անարժանիս մէկ բերան
» Աստուած ողորմի տայ, որ լի եմ մեղօք
» տառապեալ անձամբ. ես Ակոբ երէցս Համ-
» թեցի՝ զայս ըսպասաւորութիւնս (Պատա-
» րագի) ի Տէր քահանայէն՝ ի Բռուկոյ քաղաքին գրե-
» ցի»: Խե՛ղճ երէց. նախահոգութեամբ հետն
առած նոտարական վկայութիւնն այլ բաւա-
կան չէ եղած զինքը պաշտպանելու կարծուած
յանցանքէ մի, որ հաւանօրէն անիրաւ կաս-
կած մ'էր. իր օտար լեզու չգիտնալն այլ՝
կու պժուարացընէր ինք զինքը պաշտպանելը:
Ժամանակն էր Աւստրիոյ կայսեր և Թուր-

քաց պատերազմի. անշուշտ այս գլխաւոր գործոյ մամնաւոր պարագայ կամ դիտելի բան մի պատճառ եղած է Յակոբայ բանտարկութեան. որ յուսալի է թէ երկարատեւ եղած չըլլայ. թէ և անկէ վերջ քանի մի տարի անյայտ մնայ ինքն՝ ինձի ծանօթ յիշատակաց մէջ։

1605ին վերջերը նորէն յերեւան կ՚ելնէ երէցն՝ իր յաճախած քաղքին մէջ, ի Վենետիկ. ուր և գրեթէ հաստատ մնայ անկէ ետեւ. վասն զի թէ այն տարւոյն Նոյեմբեր ամսոյ 23ին, և թէ յաջորդին սկիզբը (1606, յան. 17, մարտ 6) վենետաբնակ Հայք՝ որոց 17 կու յիշուին յանուանէ, որոց 6 Անկիւրացի են, և մէկն այլ սարկաւագ է (Սարգիս). 3 Ամդեցի՝ որոց մէկն Յակոբայ սարկաւագն է Կարապետ անուամբ՝ (որ և շատ տարի վերջ (1607) յիշուի Հայոց եկեղեցւոյն մէջ), 2 Բաղիշեցի, այլքն Ուռհայեցի, Հռոմկլայեցի, Սեբաստացի, Ջուղայեցի, Կաֆացի, Պօլսեցի. ամէնքն միաբան վկայեցին, (ինչպէս շատ տարի առաջ ուրիշներն), որ Յակոբ Մարգարեան իրենց կաթողիկոսին ընդհանրական Պետրոն է. կ՚ընտրեն զինքը այս տեղ իրենց եկեղեցւոյն հոգաբարձու, պատուրագիչ և հոգեւոր առաջնորդ, մինչեւ ի մահն, խոստանալով դարմանել զնա. և այս բանիս համար

իրեն բացարձակ իշխանութիւն կու տան, նա և ներկայանալու առ Սրբազան Պապն և առ կարդինալս, և խնդրելու շնորհքներ իրենց եկեղեցւոյ համար և յօգուտ իրենց հոգւոյն (1)։ Այս բանիս վկայ և թարգման եղաւ Բենեդիկտոս ո. Յակոբայ ասորի փերեզակ մի։ — Քանի մ՚ օր վերջը (16 մարտի, 1606) քանի մի հոգի վերոյիշեալ Հայերէն, հանդերձ Կարապետ սարկաւագով, և գլխաւոր ունենալով Ջուղայեցի փերեզակ մի, Ղազար ո. Յովհաննու, նորէն նոտարին ներկայացուցին իրենց ընտրած հոգեւոր առաջնորդը, իբրեւ իրենց և բոլոր ազգայնոց գործակալ, որ երթայ ի Հռովմ, խնդրէ Սրբազան Պապէն կամ ի կարդինալաց, հայերէն Աստուածաշունչ, Աւետարան և ուրիշ Ս. Գրքեր, և բերէ ի Վենետիկ, որ օրինակեն և ամենայն հաւատարմութեամբ յետ դարձընեն, և այնպէս կարենան իրենց քրիստոնէական պարտքն ու պաշտօնը կատարել (2)։

1. Quodlibet facultatem et auctoritatem ipsi conferendo, comparendi etiam ad pedes Sanct$^{mi}$. D. Papæ, seu cujuslibet ex Ill$^{mis}$. et Rev$^{mis}$. Romanæ Ecclesiæ Cardinalibus, pro impetrando in benefitium ipsius Ecclesiæ quelibet munera, et pro animabus eorum augmento Sanctæ fidei et servitio Divinæ Majestatis.

2. Libros S. Bibliæ et Evangeliorum, seu alterius sortis Sacræ Scripturæ, donec ipsos in

Այս Ներկայացման այլ վկայ և Թարգման եղաւ վերոյիշեալ ասորի փերեզակն ։ —՝Հայերէն Ս. Գրոց պակասութեան այն ատեն ի Վենետիկ՝ վկայէ հեռուէն բարեպաշտ ազգային մ'այլ, Խօճա Շէլէպի Սեբաստացի, որ Աւետարան մի գնեց « Ի ձեռաց անարժանից,
» և եդ յիշատակ իւրն և իւր ննջեցելոցն.
» ոչ թէ ի յաշխարհս մեր Անատոլական, այլ
» ի Վենետիկ Ֆրանկաց տան. զի իմացեալ
» աստուածասէր այրս Խօճայ Շիրին, եթէ
» կայ անդ քահանայ՝ և ոչ գոյ աւետարան,
» այլ փութով առեալ զսուրբ աւետարանս և
» ետ 'ի վաճառականքն, որ տանին ի Բերիայ՝
» որ ասի Հալապ, և անտի երթեալ հասանէ
» ի մեծահռչակ քաղաքն ի Վենետիկ » ։

Քաղաքականօրէն իր ընտրութիւնը հաստատելէն վերջը՝ Տէր Յակոմբ եկեղեցական օրինօք այլ հաստատեց. և նախ, Հայոց տան մէջ ինչուան այն ատեն մատրան տեղ որոշուած սենեակը՝ ուր միայն աղօթք կ'ընէին քահանայ չգտնուելուն, մաքրել տուաւ, խորանը հաստատեց, ժամահրաւէր զանգակ

hac urbe exemplari faciant, postmodum restituendo absque ulla contradictione: ad hoc ut possit Natio ipsa instrui in sancta fide, et exercere ea ad quæ quilibet Christianus tenet et obligatus est.

մ'այլ կախել տուաւ. և Վենետկոյ պատրիարքին աթոռակալին ձեռօք օրհնել տալով, սկսաւ պատարագ ու ժամասացութիւն կատարել, նա և Սրբութիւն այլ դրաւ ի խորանին. և տարուէ տարի կ'աւելցընէր փոքրիկ մատրան հանդէսը, որոյ համար կ'ուզէր զանգակ մ'այլ աւելցընել, որ այնչափ հաճոյ չէր երեւէր Տնպահին (Պարսկահայ Մկրտչի): 1608ին Ս. Խաչի տօնն (Երեւման, ի մայիսի) աւելի մեծահանդէս եղաւ. տօնին եկող և աղօթողաց համար՝ Ներողութեան օրհնութիւն բերել տուեր էր: Հանդիսին համբաւն և զանգակին ձայնն՝ արթընցուցին Հայոց տան վերահսկող՝ քաղքին Ներքին երեք մեծ տեսուչները (Procuratori de Citra). կանչեցին Տնպահը և երկար ու մանր հարցմունքներով տեղեկացան, որ իր տնպահութեան մտած ատեն (1595) դադրած էր հօն պատարագ մատուցանելն, իսկ երբ երեք տարի առաջ (1605) եկաւ Տէր Յակոբ իր Կարապետ սարկաւագով, և վերոյիշեալ բաները կարգաւորեց, սկսաւ ամէն կիրակի պատարագ և ժամասացութիւն կատարել, երբեմն լուր օրեր այլ. իսկ այս Խաչի տօնի պատարագին՝ ոչ միայն Հայք, այլ և բազմութիւն քաղաքացեաց եկած էին: — Պաշտօնեայքն մեղադրեցին Տնպահին՝ որ այս բաներս ա-

ռաջուց իրենց չէր իմացուցած. ինքն այլ ըսաւ, որ երբ պատրիարքին աթոռակալն եկաւ օրհնեց տեղը, ինքն անտարակոյս կարծէր որ իրենց գիտութեամբ է եղածն. այս այլ աւելցուց ըսել, որ ինքն Պարսիկ ըլլալով (յետոյ մկրտեալ) Հայոց լեզուն չէր հասկընար: Այս քննութեանց պատճառն գուշակուի որ կրօնական կասկած մ'ըլլայ, ստաբաց բերնով Պաշտօնէից հաղորդուած. բայց Տէր Յակովբայ նախահոգութիւնն կամ նախատեսութիւնն՝ ամեն բան կարգով և օրինօք ըրեր էր, որով պաշտօնէից ուրիշ բան չէր մնար՝ բայց զանիկայ իրենցմէ ճարտար և զգոյշ գտնել:

Եթէ այս եկեղեցական և կրօնական պիտոյից համար՝ Յակովբ գնացե՞ր է ի Հռովմ, հաւանական է, այլ վկայուած չէ. եթէ և գնացեր այլ է, ոչ անմիջապէս յետ ընտրութեանն (1606, մարտի 16). վասն զի ապրիլի 5ին ի Վենետիկ վկայ եղած է Նոտարի առջեւ՝ չորս Բաղիշեցի վաճառականաց, որք կու վկայէին թէ անցեալ տարի սեպտեմբերի մէջ ի Հռովմ վախճանած Պետրոս Էլճին այլ Բաղիշեցի էր, և ունէր հայր՝ Ախէճան անուամբ, եղբայր մի Սէֆէր, և մանր զաւակներ, որոց կ'ինկնար թողած ստացուածքն: — Նոյն տարին (1606) յուլիս ամսոյ վերջի օրը՝

Մէհմէտի որդի Հասան անուամբ Թուրք մի Կ. Պոլսի մօտ Քեաֆի՞ (Chiaffi) բերդէն, քրիստոսական կրօնք ընդունելով՝ կու մկըր-տուի Վենետկոյ պատրիարքական Ս. Պե-տրոս կաթողիկէի մէջ. Յակոբ երէցն (որ միշտ յամենայն գիրս Նոտարաց և եկեղե-ցեաց՝ Մեծ Հայոց պատրիարքին Վէտօր կո-չուի), Հռոմկլայեցի վաճառական Սիմոնի որդւոյ Յովսեփայ հետ՝ կնքահայր կ՚ըլլայ. այս եօ-քինս այլ Հայոց մէջ Նշանաւոր տնուոր հա-րուստ մէկն էր, և այս Թուականէս ինչուան 30 տարի վերջ կու յիշուի։ – Քանի մի տա-րի վերջ Նոյնպիսի գործով դարձեալ կու յի-շուի մեր երէցն, այսինքն կնքահայր ըլլալով ուրիշ չափահասի մի, որ էր ունկարացի տղայ մի 13 տարուան, զոր Թուրքք գերի տարեր էին ի Պելկրատ քաղքէ, և անունը Մուս-դաֆա դրեր. Վառէլ անուամբ Հայ մի գնեց զնա (իր տէրն Մահմէտ կոչուէր), և հիմայ (ի 16 մարտի, 1609) մկրտուելով (վասն զի որոյ որդի ըլլալն յայտնի չէր) կոչուեցաւ Գէորգ. Յակոբայ ընկեր կնքահայր մ՚այլ եղաւ Գէորգ Էմին ո. Կոստանդնի Նաբոլիացւոյ։

Այս հոգեւոր հայրութիւններէն զատ ու-րիշ բարի գործոյ մ՚այլ միջնորդ եղաւ Յա-կոբ, թէ և խաբուեցաւ։ Վերոյիշեալ Թուա-կանէն երկու տարի վերջ ի Հռովմ էր, (հա-

ւանօրէն յետ 1606ի երթալն առաջին ան-
գամն չէր)․ Հօն էր այն ատեն Յովասափ Փա-
փազեան (Ogasap q.m Papas) Անկիւրացի
մի, որ իր հայրենակից Կէօմիւշեան Այվա-
տէ (Aivat Chiomis) բերած ցփսիները առեր
էր ծախելու, կէս առ կէս շահով, ինչպէս
դաշնագրած էին ի Կ․ Պօլիս (1610, սեպտ․),
բայց չէր աջողած, և կ՚ուզէր իր առանձին
ապրանքով վճարել․ Տէր Յակոբ տեսաւ որ
ի նեղն ընկած է նա, և թէ՛ ընչից թէ ան-
ձին վրայ ձեռք պիտի դնեն, առաջարկեց որ
գայ ի Վենետիկ և ինքն միջնորդ ըլլայ Այ-
վատին հետ գործը վճարելու։ Յովասափ ու-
րախութեամբ յանձն առաւ, այլ ապահովու-
թեան գիր ուզեց յԱյվատայ, և երբ առաւ՝
եկաւ ի Վենետիկ, ուր արդէն դարձեր էր
և մեր երէցն։ Երկու վաճառակիցքն դաշ-
նադրեցան ուրիշ Հայոց առջեւ, որ նախ Յո-
վասափ վճարէ Այվատայ 100 դուկատ, և 50
դուկատ արժող մուշտակ մ՚այլ․ Մնացած
պարտքը 300 կամ 350 դուկատ՝ վճարէ տա-
րուէ տարի 50 դուկատ․ այս բանիս երաշ-
խաւոր եղաւ Սիմոն ո․ Խոճաչորբայ․ բայց աւելի
ապահովութեան համար խոստացաւ Յովա-
սափ՝ որ իր աղջիկն այլ տայ ի կնութիւն Այ-
վատի մէկ որդւոյն։ Սակայն քանի մ՚օր
վերջը (1611, մայիս ամսոյ 14) Այվատ բանել

և բանալ տուաւ զՑովսափ՝ Օտարականաց Գաշտօնարանի (Officio de Forestier) բանտի. (ի Վենետիկ սովորական էր պարտականները բանտել)․ բայց այսպէս խարդախ պարտատիրոջ դէմ բողոքեց պարտականն առ դատաւորս․ ցուցընելով որ՝ նախ, ինքն վրստահացեալ Այվազի գրութեանց, ի ձեռն Տէր Յակոբայ Խոստովանահօր Հայոց, եկաւ ի Վենետիկ․ Բ․ որ 300 դուկատի պարտական էր, իսկ Այվազ 350 կու պահանջէր․ Գ․ և Դ․ որ Այվազ ոչ միայն հաւաներ էր վերոյիշեալ պայմանաց իրաւախոհութեան, այլ և երբ դուրս ելան սենեկէն՝ բարեկամութեամբ ձեռք տուած էր։ — Այս դատին ինչպէս վերջանալն չեմ գիտեր, հաւանիմ թէ մեր բարեսէր Տէր Յակոբն բարերարութեամբ աշխատած և ազատած ըլլայ իր խոըհըրդով Հռոմէն ի Վենետիկ եկողը։

Տէր Յակոբայ վերջին ծանօթ յիշատակն ի Դիւանս՝ է վկայ ըլլալն (ի 28 յունիսի նոյն 1611 տարւոյն) առաջի նօտարի, որ Մարկոս ո. Գէորգեայ Բոսչեցի իր գործակալին (Սիմոն ո. Յովսեփայ) իշխանութիւն կու տայ, որ երբ իր 200 դուկատ պահանջն ընդունի, 10 դուկատ տայ Հայոց եկեղեցւոյն, 10 դուկատ այլ Գէորգեայ ո. Յովհաննու վաճառականի։

Վերջնագոյն յիշատակն այլ չուտով հա-

տած է, հազիւ. 17 օր ետեւ, այսինքն յուլիս 15ին. շաբաթ մի ջերմով և արեան վերբերութեամբ հիւանդացեալ՝ վախճաներ է Տէր Յակովբ, 55 տարուան։ Մահագիրքն Ս. Յուլիանոս Թաղի, (որոյ մէջ է Հայոց տունն և՝ եկեղեցին), միայն Պատուելի Հ. Յակոբ Հայն կ՚ըսէ. առանց մականուան և պատուանուան, բայց բնակութեան տեղէն և այնուհետեւ իր անուան լռելէն յայտ է՝ որ ինքն Մարգարեանն է, կաթողիկոսի վիքարն. արժանաւոր լաւագոյն ծանօթութեան և պատուոյ, նկատմամբ՝ յօգուտ Հայ-Վենետաց և օտարաց՝ աշխատալի նուիրակութեանցն։ Իսկ նկատմամբ ազգիս՝ այն քաղքին Հայոց և իրենց եկեղեցւոյն տարած խնամոց համար. մանաւանդ որ ինքն է եղած անոնց առաջին հաստատուն հոգաբարձու և խոստովանահայր, ինչպէս իրենք ալ վկայեցին։ Շատ տարի վերջը (1629), բարեզգած մէկ մի՝ մեր երիցու ձեռագիր ժամագրոց մէջ գրեր է. «Աստուած ողորմի հոգուն Տէր Ակոբին. ամէն. Հայր մեր». որով կ՚իմացուի որ դեռ կային զինքը սիրով յիշողք և յարգողք. որպէս հաճանիմ թէ ըլլան և մեր ընթերցողք. և յուսամ թէ ժամանակն յայտնէ նոր յիշատակներ այսպիսի ժիր և արդիւնաւոր անձին։

## ԺԳ.

### ՋՈՒՂԱՅԵՑԻ ՎԱՃԱՌԱԿԱՆՔ Ի ՎԵՆԵՏԻԿ

Շատ անգամ յիշուած և լսուած են ի գիրս և յօրագիրս մեր, նա և ընդհանուր վաճառականութեան պատմութեան մէջ, Հայ վաճառականք Ջուղայի, ԺԶ դարուն կիսէն վերջ մինչև յ՛ԺԸ դար. մեր Հայ-Վենետաց պատմութիւնն այլ կու պահանջէ՝ այս ժամանակիս քննել զանոնք ի Վենետիկ, ուր՝ Մեծ և Փոքր Հայոց ամեն կողմերէ՝ աւելի բազմութեամբ եկած են, միանգամայն և աւելի հարըստութեամբ, վաճառքով և վաստակով։ Բայց նախ զայս պէտք է գիտնալ, որ երկու Ջուղա կայ, Հին և Նոր. առաջինն ի Հայաստան, Երասխ գետոյ եզերքը, որոյ բնակիչքն Շահ Աբաս Պարսից թագաւորին բռնի հրամանաւ հանուելով՝ քշուեցան ի Պարսկաստան, ի մայրաքաղաքն Սպահան, ԺԷ դարուն սկիզբը (1605)։ և անոր քով կամ դիմաց շինեցին երկրորդ և Նոր Ջուղայն. ուր՝ յետ շատ նեղութեանց՝ աճեցան, հարըստացան, և վաճառականութեամբ սփռեցան

կամ գնացին եկան՝ յայլեւայլ շահաստաններ Եւրոպիոյ և առաւել ի Վենետիկ։ Մեր յիշելիքն հիմայ այս Նոր Ջուղայեցիներն չեն, այլ Հիներն. որք, մեր ազգի պատմութեան մէջ թէ և կարճ՝ այլ փառաւոր միանգամայն և գթաշարժ յիշատակ մի թողած են, որ և հասարակաց ծանօթ ըլլալով՝ ոչ հարկ և ոչ պատշաճ է մեզ կրկնել զայն. այլ միայն յայտնել զարմանքնիս այդ Ջուղայի գրեթէ խորհրդաւոր երեւման վրայ. զարմանալի՝ իր վաճառականական բարգաւաճանօք և հարըստութեամբ, թերեւս մեր երկրի ամէն քաղաքներէ աւելի՝ իր ատենին. խորհըրդաւոր, իր ծագման կամ այդ բարգաւաճանաց սկըզբնաւորութեան անծանօթութեամբ. և իբրեւ յանկարծօրէն փայլելով, մանաւանդ թէ փայլատակելով՝ ԺԶ դարու վերջի երրորդ մասին մէջ, այնպիսի գրեթէ անծանօթ ծակէ մի, ինչպէս է իր դիրքն, քարոտ տեղ մի. որ թէ և շատ հին ատեն լսուած է իբրեւ գեղ կամ աւան, այլ անկէ վերջը հազիւ թէ յիշուած ի պատմութեան, մինչեւ իր դժբաղդ գերութիւնը և աւերումը։

Անկէ 30 կամ 40 տարի առաջ կու յայտնուին Ջուղայի ճարտար վաճառականք ի Վենետիկ, և ի պատմութեան Վենետկոյ։ Առաջին ծանօթ ինձ Ջուղայեցին այս քաղքիս

մէջ է յամի 1570 (յուլ. 19), Գայրէ կամ Խայրէ? (Cayri) անուամբ մէկն, որ կը վճարէ իր պարտքը, 285 դուկատ, առ Յովհան Ամդեջէ ո. Տէօվլէթեքեարի (Duulethiar կամ Dohaulattiar). Ջուղայի անունն այլ Վենետկեցի նոտարն գրէ Iula, թերեւս մոռնալով f տառը (Iulfa)։ Նոյն Ամդեցւոյն հետ իր հաշիւը կու կնքէ (մայիս 29) և Կոնտրադ ո. Ամիրէ Պարսկաստանցի (Gondus de Armenia q.m Amir de Azami)։ Նոյն օր նոյն Ամդեցին նոյնպէս Փանոսէ ո. Գէորգէ հաշիւները կու կնքէ, որոյ հետ թէ՛ ի Հալէպ թէ՛ ի Վենետիկ առեւտուր ըրեր էր։

Մինչդեռ ի Վենետիկ այս առաջին անգամ Ջուղայեցիք կ'երեւին մեզ՝ նոտարաց առջեւ, նոյն օրերում (14 օգոս. 1571) Վենետկոյ տէրութեան դեսպան մի՝ Վինչենցոյ Ալեսսանտրի (Alessandri Vincenzo) եկեր էր ի Գազուին, ուր էր այն ատեն Պարսից շահն. հօս իրեն եկան քանի մի Հայ վաճառականք հարցընելու իրենց ընկերաց համար, զոր շատ ապրանքով ղրկած էին ի Վենետիկ։ Ալեսսանտրի իմացուց որ անոնք Դուքսէն լաւ ընդունելութիւն գտած՝ իրմէ շատ առաջ (1570) ճամբայ ելած էին դառնալու իրենց երկիրը։ Այդ Հայերն ըսին որ իրենք Ջուղայի գլխաւորներէն են (esser si-

gnori della loro terra chiamata Diulfa), և թէ իրենցմէ մէկն իբրև իրենց գործակալ կենար ի Գազուին։ Ասոնց միջնորդութեամբ յաջողեցաւ Ալեսսանտրի ներկայանալ առ Միրզա՝ որդի Շահին, և իր դըքսին կողմանէ բերած թուղթերը տալ․ ինչպէս որ կու գրէ ինքն իր տէրութեան, ի Գրաքովիոյ (24 յուլ․ 1572)․ և ասով յայտնի կ՚ընէ այն Ջուղայեցի Հայոց համարձակութիւնը Պարսից արքունեաց առջև։

Նոյն իսկ և Հայք յիշեցուցին զայս՝ Ալեսսանտրեայ, երբ իր դառնալէն վերջ ի Վենետիկ, հարկ եղաւ իրենցմէ երկու հոգի խաւրել այս տեղ, մէկն Տէրման (Derman) կոչուած, միւսն Սոնտուս (Sondus), թերևս վերոյիշեալ Կոնտուզն․ ասոնք առանց ապրանքի կու գային այս անգամ, որպէս զի արգելք չըլլայ ճամբուն, և շուտով հասնին, ու իրենցմէ առաջ եկողներուն ձեռօք՝ Տոլֆին կոչուած Դրամատեղանոյ (Banco Dolfin) մէջ դրած ստակնին հանեն․ իբրև ծանօթ բարեկամ կ՚անուանեն և կ՚աղաչեն որ Ալեսսանտրի դիւրացընէ այս գործը, ինչպէս որ մենք ալ կ՚ըսեն, քեզի այս տեղ դիւրացուցինք ընելիքդ (1)․ և դարձեալ, երբ առիթն

1. Siamo sicuri che vi saranno raccomandati in ogni occasione; essendo anco noi offerto tanto

հանդիպի՝ կ'օգնենք քեզի կամ քու ազգայնոցդ։ Այս թուղթս գրուած էր ի Ջուղա, հայերէն, հոկտեմբերի սկիզբը, տարին նշանակած չէ (գոնէ իտալերէն թարգմանութեան վրայ, վասն զի բնագիր հայերէնն չկայ), այլ գրեթէ անտարակոյս գրուած է 1572ին։

Գրողքն՝ որ զիրենք սիրելի բարեկամ կ'անուանեն Ալեսսանտրեայ՝ և անշուշտ Ջուղայի գլխաւորներէն էին, կոչուին Թէնէքէսէս? (Tenechesiss), Մէլէճան և Մուրադխա. կ'իմացընեն որ իրենց երկու պատգամաւորներն առանձին խնդիրքներ այլ ունէին, որոնց առանց տարակուսելու կրնար հաւատալ, վասն զի լաւ և արժանաւոր անձինք են։ – Հասան ասոնք ի Վենետիկ, և յայտնեցին իրենց գաղտնի յանձնուածը, որ էր Պարսից շահին պատրաստութիւնն ի պատերազմ՝ ընդդէմ Օսմանեանց, նոյնպէս ասոնց այլ թէ պատրաստուիլն և թէ մզկըթաց մէջ աղօթելն, որ իրենց և Պարսից մէջ եղած հաշտութիւնն չաւրուի, որպէս զի իրենց նաւատորմիղն նոր փորձանքի մի չհանդիպի ի քրիստոնէից։ Աւելորդ է ըսել թէ որչափ կարեւոր էին Վե-

prontamente quando eravate qui: il che facendo ne teniremo continua memoria, e ne dimostreremo effetti quando se ne appresenterà occasione in servir voi o altri di vostra natione.

նետաց համար այս տեղեկութիւններն. և թէ անշուշտ որչափ խնամքով Ալեսսանտրին այլ օգնեց Ջուղայեցւոց խնդրոյն։

Այս երկու պատգամաւորներէն վերջը ծանօթ է ի Վենետիկ Խոջէնազէր ո. Էմիրէ Ջուղայեցի (de Persia loci de *Giulfa*), որ 1573ի (մայիս 8) իրեն գործակալ դնէ Նօտարի գրուածքով՝ Ֆր. Կալլոյ Մուրանցի մի, (Մուրան Վենետկոյ գրեթէ կցուած կըղզեակ մ՚ է)։

Յաջորդ տարին (1574, մարտ 3), ծանօթ Գէորգ ո. Թէոդորի սանսէրն՝ Կարկառեցի Յարութեան որդի Սէմնէ ([1]) հետ կու վկայեն նօտարի առջեւ, որ Շահավալաթ Ջուղայեցին ութ ամսէ ի վեր ի Վենետիկ էր, և ստոյգ այս էր անունն (Sciavalat Armeno di Chiulfa), և այսպէս այլ գրուած էր Ծովային մաքսատան դիւանաց մէջ. ըոածնուն վկայ եղաւ ուրիշ Շահավալաթն մի որդի Աղէքսանդր Հալէպցի։ Այս վկայութեանց պատճառն էր Շաւալաթայ հիւանդութիւնն, որ և երկրորդ օրը (4 մարտ Նիկ. Տոլֆոն, նօտարը կանչելով իրեն) ի Հայոց տունն կամ անոր մօտ ի Ս. Յու-

1. Սիմոնս այս վկայ եղած է յամին 1570 Գայիրէ և Յովհ. Ամիդեցւոյ առեւտրին. իսկ վերոյգրեալ տարին (1574) յիշուի իբրեւ հասարակ սանսէր։

Մէհմէտի որդի Հասան անուամբ Թուրք մի Կ. Պօլսի մօտ Քեաֆի՛ (Chiaffi) բերդէն, քրիստոսական կրօնք ընդունելով՝ կու մկըր-տուի Վենետկոյ պատրիարքական Ս. Պե-տրոս կաթողիկէի մէջ. Ցակոբ երէցն (որ միշտ յամենայն գիրս Նոտարաց և եկեղե-ցեաց՝ Մեծ Հայոց պատրիարքին Վիտոր կո-չուի), Հռոմկլայեցի վաճառական Սիմոնէ որդւոյ Ցոլաբէկոյ հետ՝ կնքահայր կ՚ըլլայ. այս ետ-քինս այլ Հայոց մէջ նշանաւոր տնուոր հա-րուստ մէկն էր, և այս Թուականէս ինչուան 30 տարի վերջ կու յիշուի։ – Քանի մի տա-րի վերջ նոյնպիսի գործով դարձեալ կու յի-շուի մեր երէցն, այսինքն կնքահայր ըլլալով ուրիշ չափահասի մի, որ էր ունկարացի տղայ մի 13 տարուան, զոր Թուրքք գերի տարեր էին ի Պելկրատ քաղքէ, և անունը Մուս-դաֆա դրեր. Վաչէ անուամբ Հայ մի գնեց զնա (իր տէրն Մահմէտ կոչուէր), և հիմայ (ի 16 մարտի, 1609) մկրտուելով (վասն զի որոյ որդի ըլլալն յայտնի չէր) կոչուեցաւ Գէորգ. Ցակոբայ ընկեր կնքահայր մ՚այլ եղաւ Գէորգ Էմին տ. Կոստանդնի Նարոլիացւոյ։

Այս հոգեւոր հայրութիւններէն զատ ու-րիշ բարի գործոյ մ՚այլ միջնորդ եղաւ Ցա-կոբ, թէ և խաբուեցաւ։ Վերոյիշեալ Թուա-կանէն երկու տարի վերջ ի Հռովմ էր, (հա-

ւանօրէն յետ 1606ի երթալն առաջին ան-
կամն չէր)․ Հօն էր այն ատեն Ցօվասափ Փօ-
փօղեան (Ogasap q.m Papas) Անկիւրացի
մի, որ իր հայրենակից Կէօմիւշեան? Այվա-
տի (Aivat Chiomis) բերած ցփսինները առեր
էր ծախելու, կէս առ կէս շահով, ինչպէս
դաշնագրած էին ի Կ․ Պօլիս (1610, սեպտ․),
բայց չէր աջողած, և կ' ուզէր իր առանձին
ապրանքով վճարել․ Տէր Ցակոբ տեսաւ որ
ի նեղն ընկած է նա, և թէ ընչից թէ ան-
ձին վրայ ձեռք պիտի դնեն, առաջարկեց որ
գայ ի Վենետիկ և ինքն միջնորդ ըլլայ Այ-
վատին հետ գործը վճարելու։ Ցօվասափ ու-
րախութեամբ յանձն առաւ, այլ ապահովու-
թեան գիր ուզեց յԱյվատայ, և երբ առաւ՝
եկաւ ի Վենետիկ, ուր արդէն դարձեր էր
և մեր երէցն։ Երկու վաճառակիցքն դաշ-
նագրեցան ուրիշ Հայոց առջեւ, որ նախ Ցօ-
վասափ վճարէ Այվատայ 100 դուկատ, և 50
դուկատ արժող մուշտակ մ' այլ․ Մնացած
պարտքը 300 կամ 350 դուկատ՝ վճարէ տա-
րուէ տարի 50 դուկատ․ այս բանիս երաշ-
խաւոր եղաւ Սէմէն ․․ Խօջաօղլու․ բայց աւելի
ապահովութեան համար խոստացաւ Ցովա-
սափ՝ որ իր աղջիկն այլ տայ ի կնութիւն Այ-
վատի մէկ որդւոյն։ Սակայն քանի մ' օր
վերջը (1611, մայիս ամսոյ 14) Այվատ բռնել

և բանտել տուաւ զՅովասափ՝ Օտարականաց Պաշտօնարանի (Officio de Forestier) բանտի. (ի Վենետիկ սովորական էր պարտականները բանտելն). բայց այսպէս խարդախ պարտատիրոջ դէմ բողոքեց պարտականն առ դատաւորս. ցուցընելով որ՝ Նախ, ինքն վըստահացեալ Այվատի գրութեանց, ի ձեռն Տէր Յակոբայ Խոստովանահօր Հայոց, եկաւ ի Վենետիկ. Բ. որ 300 դուկատի պարտական էր, իսկ Այվատ 350 կու պահանջէր. Գ. և Դ. որ Այվատ ոչ միայն հաւաներ էր վերոյիշեալ պայմանաց իրաւախոհութեան, այլ և երբ դուրս ելան սենեկէն՝ բարեկամութեամբ ձեռք տուած էր։ — Այս դատին ինչպէս վերջանալն չեմ գիտեր, հաւանիմ թէ մեր բարեսէր Տէր Յակոբն բարեսրտութեամբ աշխատած և ազատած ըլլայ իր խորհըրդով Հռոմէն ի Վենետիկ եկողը։

Տէր Յակովբայ վերջին ծանօթ յիշատակն ի Դիւանս՝ է վկայ ըլլալն (ի 28 յունիսի նոյն 1611 տարւոյն) առաջի Նօտարի, որ Մարկոս ո. Գէորգեայ Բաղչեչեցի իր գործակալին (Սիմոն ո. Յովսեփայ) իշխանութիւն կու տայ, որ երբ իր 200 դուկատ պահանջն ընդունի, 10 դուկատ տայ Հայոց եկեղեցւոյն, 10 դուկատ այլ Գէորգեայ ո. Յովհաննու վաճառականի։

Վերջնագոյն յիշատակն այլ շուտով հա-

տած է, հազի. 17 օր ետեւ, այսինքն յուլիս 15ին. շաբաթ մի ջերմով և արեան վերբերութեամբ հիւանդացեալ՝ վախճաներ է Տէր Յակովբ, 55 տարուան։ Մահագիրքն Ս. Յուլիանոս Թաղի, (որոյ մէջ է Հայոց տունն և՝ եկեղեցին), միայն Պատուելի Հ. Յակոբ Հայն կ՚ըսէ. առանց մականուան և պատուանուան, բայց բնակութեան տեղէն և այնուհետեւ իր անուան լսելէն յայտ է՝ որ ինքն Մարգարեանն է, կաթողիկոսի վիքարն. արժանաւոր յաւագոյն ծանօթութեան և պատուոյ, նկատմամբ՝ յօգուտ Հայ–Վենետաց և օտարաց՝ աշխատալի նուիրակութեանցն։ Իսկ նկատմամբ ազգիս՝ այն քաղքին Հայոց և իրենց եկեղեցւոյն տարած խնամոց համար. մանաւանդ որ ինքն է եղած անոնց առաջին հաստատուն հոգաբարձու և խոստովանահայր, ինչպէս իրենք ալ վկայեցին։ Շատ տարի վերջը (1629), բարեզգած մէկ մի՝ մեր երիցու ձեռագիր ժամագրոց մէջ գրեր է. «Աստուած ողորմի հոգւոյն Տէր Ակոբին. ամէն. Հայր մեր». որով կ՚իմացուի որ դեռ կային զինքը սիրով յիշողք և յարգողք. որպէս հաւանիմ թէ ըլլան և մեր ընթերցողք. և յուսամ թէ ժամանակն յայտնէ նոր յիշատակներ այսպիսի ժիր և արդիւնաւոր անձին։

# ԺԳ.

## ՋՈՒՂԱՅԵՑԻ ՎԱՃԱՌԱԿԱՆՔ Ի ՎԵՆԵՏԻԿ

Շատ անգամ յիշուած և լսուած են ի գիրս և յօրագիրս մեր, նա և ընդհանուր վաճառականութեան պատմութեան մէջ, Հայ վաճառականք Ջուղայի, ԺԶ դարուն կիսէն վերջ մինչև յ'ԺԸ դար. մեր Հայ-Վենետաց պատմութիւնն այլ կու պահանջէ' այս ժամանակիս քննել զանոնք ի Վենետիկ, ուր' Մեծ և Փոքր Հայոց ամեն կողմերէ' աւելի բազմութեամբ եկած են, միանգամայն և աւելի հարըստութեամբ, վաճառքով և վստահով: Բայց նախ զայս պէտք է գիտնալ, որ երկու Ջուղա կայ, Հին և Նոր. առաջինն ի Հայաստան, Երասխ գետոյ եզերքը, որոյ բնակիչքն Շահ Աբաս Պարսից Թագաւորին բռնի հրամանաւ հանուելով' քշուեցան ի Պարսկաստան, ի մայրաքաղաքն Սպահան, ԺԷ դարուն սկիզբը (1605), և անոր քով կամ դիմաց շինեցին երկրորդ և Նոր Ջուղայն. ուր' յետ շատ նեղութեանց' աճեցան, հարըստացան, և վաճառականութեամբ սփռեցան

կամ գնացին եկան՝ յայլեւայլ շահաստան-
ներ Եւրոպիոյ և աւելի ի Վենետիկ։ Մեր
յիշելիքն հիմայ այս Նոր Ջուղայեցիներն չեն,
այլ Հիներն. որք մեր ազգի պատմութեան
մէջ թէ և կարճ՝ այլ փառաւոր միանգամայն
և գթաշարժ յիշատակ մի թողած են, որ և
հասարակաց ծանօթ ըլլալով՝ ոչ հարկ և ոչ
պատշաճ է մեզ կրկնել զայն. այլ միայն
յայտնել զարմանքնիս այդ Ջուղայի գրեթէ
խորհրդաւոր երեւման վրայ. զարմանալի՝ իր
վաճառականական բարգաւաճանօք և հարըս-
տութեամբ, թերեւս մեր երկրի ամէն քա-
ղաքներէ աւելի՝ իր ատենին. խորհըրդաւոր,
իր ծագման կամ այդ բարգաւաճանաց սկըզբ-
նաւորութեան անծանօթութեամբ. և իբրեւ
յանկարծօրէն փայլելով, մանաւանդ թէ փայ-
լատակելով՝ ԺԶ դարու վերջի երրորդ մասին
մէջ, այնպիսի գրեթէ անծանօթ ծակէ մի,
ինչպէս է իր դիրքն, քարոտ տեղ մի. որ թէ
և շատ հին ատեն լսուած է իբրեւ գեղ կամ
աւան, այլ անկէ վերջը հազիւ թէ յիշուած
ի պատմութեան, մինչեւ իր դժբաղդ գերու-
թիւնը և աւերումը։

Անկէ 30 կամ 40 տարի առաջ կու յայտ-
նուին Ջուղայի ճարտար վաճառականք ի Վե-
նետիկ, և ի պատմութեան Վենետկոյ։ Ա-
ռաջին ծանօթ ինձ Ջուղայեցին այս քաղքիս

մէջ է յամի 1570 (յուլ. 19), Գայրէ կամ Խայրէ՞ (Cayri) անուամբ մէկն, որ կը վճարէ իր պարտքը, 285 դուկատ, առ Յովհան Ամդեցի ո. Տէօվլէթքեարի (Duulethiar կամ Dohaulattiar). Ջուղայի անունն այլ Վենետկեցի նոտարն գրէ Iùla, թերեւս մոռնալով f տառը (Iulfa)։ Նոյն Ամդեցւոյն հետ իր հաշիւը կու կնքէ (մայիս 29) և Կոնտոսաղ ո. Ամիրէ Պարսկաստանցի (Gondus de Armenia q.m Amir de Azami)։ Նոյն օր նոյն Ամդեցին նոյնպէս Փանոսէ ո. Գէորգէ հաշիւները կու կնքէ, որոյ հետ թէ՛ ի Հալէպ թէ՛ ի Վենետիկ առեւտուր ըրեր էր։

Մինչդեռ ի Վենետիկ այս առաջին անգամ Ջուղայեցիք կ՚երեւին մեզ՝ նոտարաց առջեւ, նոյն օրերում (14 օգոս. 1571) Վենետկոյ տէրութեան դեսպան մի՝ Վինչենցոյ Ալեսսանդրի (Alessandri Vincenzo) եկեր էր ի Գազուին, ուր էր այն ատեն Պարսից շահն. հոս իրեն եկան քանի մի Հայ վաճառականք հարցընելու իրենց ընկերաց համար, զոր շատ ապրանքով ղրկած էին ի Վենետիկ։ Ալեսսանդրի իմացուց որ անոնք Դուքսէն լաւ ընդունելութիւն գտած՝ իրմէ շատ առաջ (1570) ճամբայ ելած էին դառնալու իրենց երկիրը։ Այդ Հայերն ըսին որ իրենք Ջուղայի գլխաւորներէն են (esser si-

gnori della loro terra chiamata Diulfa), և թէ իրենցմէ մէկն իբրև իրենց գործակալ կենար ի Գաւզուլին։ Ասոնց միջնորդութեամբ յաջողեցաւ Աղեսսանտրի ներկայանալ առ Միրզա՝ որդի Շահին, և իր դըքսին կողմանէ բերած թուղթերը տալ. ինչպէս որ կու գրէ ինքն իր տէրութեան, ի Գրաքովիոյ (24 յուլ. 1572). և ասով յայտնի կ'ըլլայ այն Ջուղայեցի Հայոց համարձակութիւնը Պարսից արքունեաց առջև։

Նոյն իսկ և Հայք յիշեցուցին զայս՝ Աղեսսանտրեայ, երբ իր դառնալէն վերջ ի Վենետիկ, հարկ եղաւ իրենցմէ երկու հոգի խաւրել այս տեղ, մէկն Տէրման (Derman) կոչուած, միւսն Սոնտուզ (Sondus), թերևս վերոյիշեալ Կոնտուզն. ասոնք առանց ապրանքի կու գային այս անգամ, որպէս զի արգելք չըլլայ ճամբուն, և շուտով հասնին, ու իրենցմէ առաջ եկողներուն ձեռօք՝ Տոլֆին կոչուած Դրամատեղանոյ (Banco Dolfin) մէջ դրած ստակնին հանեն. իբրև ծանօթ բարեկամ կ'անուանեն և կ'աղաչեն որ Աղեսսանտրի դիւրացընէ այս գործը, ինչպէս որ մենք ալ կ'ըսեն, քեզի այս տեղ դիւրացուցինք ընելիքդ (1). և դարձեալ, երբ առիթն

1. Siamo sicuri che vi saranno raccomandati in ogni occasione; essendo anco noi offerto tanto

հանդիպի՝ կ՚օգնենք քեզի կամ քու ազգայ-նոցդ։ Այս թուղթս գրուած էր ի Ջուղա, հայերէն, հոկտեմբերի սկիզբը, տարին նշա-նակած չէ (գոնէ իտալերէն թարգմանութեան վրայ, վասն զի բնագիր հայերէնն չկայ), այլ գրեթէ անտարակոյս գրուած է 1572ին։

Գրողքն՝ որ գիրենք սիրելի բարեկամ կ՚ա-նուանեն Աղեքսանդրեայ և անշուշտ Ջուղայի գլխաւորներէն էին, կոչուին Թէնէքէսիս? (Te-nechesiss), Միրզէճան և Մուրատխա. կ՚իմացը-նեն որ իրենց երկու պատգամաւորներն ա-ռանձին խնդիրքներ այլ ունէին, որոնց ա-ռանց տարակուսելու կրնար հաւատալ, վասն զի լաւ և արժանաւոր անձինք են։ – Հաստատ ասոնք ի Վենետիկ, և յայտնեցին իրենց գաղտնի յանձնուածը, որ էր Պարսից շահին պատրաստութիւնն ի պատերազմ՝ ընդդէմ Օսմանեանց, նոյնպէս ասոնց այլ թէ պատ-րաստուիլն և թէ մզկըթաց մէջ աղօթելն, որ իրենց և Պարսից մէջ եղած հաշտութիւնն շաւ-րուի, որպէս զի իրենց նաւատորմիղն նոր փորձանքի մի չհանդիպի ի քրիստոնէից։ Ա-ւելորդ է ըսել թէ որչափ կարեւոր էին Վե-

prontamente quando eravate qui: il che facendo ne teniremo continua memoria, e ne dimostreremo effetti quando se ne appresenterà occasione in servir voi o altri di vostra natione.

նեաոց համար այս տեղեկութիւններն. և թէ անշուշտ որչափ խնամքով Աղեքսանդրին այլ օգնեց Ջուղայեցւոց խնդրոյն։

Այս երկու պատգամաւորներէն վերջը ծանօթ է ի Վենետիկ Իօհաննէսէ ո. Էմիրէ Ջուղայեցի (de Persia loci de *Giulfa*), որ 1573ին (մայիս 8) իրեն գործակալ դնէ Նոտարի գրուածքով՝ Փր. Կալլոյ Մուրանցի մի, (Մուրան Վենետկոյ գրեթէ կպուած կըղզեակ մ՚ է)։

Յաջորդ տարին (1574, մարտ 3), ծանօթ Գէորգ ո. Թէոդորի սանսէրն՝ Կարկառեցի Յարութեան որդի Սիմոնէ ([1]) հետ կու վկայեն Նոտարի առջեւ, որ Շաւալաթ Ջուղայեցին ութ ամսէ ի վեր ի Վենետիկ էր, և ստոյգ այս էր անունն (Sciavalat Armeno di Chiulfa), և այսպէս այլ գրուած էր Ծովային մաքսատան դիւանաց մէջ. ընծանուն վկայ եղաւ ուրիշ Շաւալաթի մի որդի Աղէքսանդրէ Հալէպցի։ Այս վկայութեանց պատճառն էր Շաւալաթայ հիւանդութիւնն, որ և երկրորդ օրը (4 մարտ Նիկ. Տոլիոն, Նոտարը կանչելով իրեն) ի Հայոց տունն կամ անոր մօտ ի Ս. Յու-

1. Սիմոնս այս վկայ եղած է յամին 1570 Գայիրի և Յովհ. Ամդեցւոյ առևտրին. իսկ վերոյգրեալ տարին (1574) յիշուի իբրև հասարակ սանսէր։

լիան, կտակը գրել տուած է, ինքն Թուրքարէն ըսելով մէկու մի (Պիոնեդդա), նա այլ պարսկերէն Թարգմանելով ուրիշի մի, և տա իտալերէն գրել տալով Նօտարին։ Շաւալաթ կը յայտնէ իր հօր անունը Գասպար, հօրեղբօրը՝ Յակոբ, որոյ որդին Մարքէմպէ էր ի Վենետիկ, և զնա կ՚ընէ իբրև կտակակատար. իսկ ժառանգ՝ զանոնք որ հայերէն կտակի մէջ նշանակեր էր, իրեք օր առաջ գրած՝ իր քաղաքացի Նաւխալի ձեռքով. անոր կը յանձնէ իր հոգւոյն համար պատշաճ համարած ողորմութիւնը տալ։ Մահուան և Թաղման յիշատակն չկայ. որովհետև այն տարուան մեռելագիրքն կորսուած են։

Նոյն օրեր (12 յունիս, 1574) Կարապետի որդի Յովհաննէս Ջուղայեցի այլ՝ իրեն գործակալ դրած է Վենետկեցի մի, Հերոնիմ Ֆորեսդի, որոյ վկայ և Թարգման եղած է վերոյիշեալ Հալէպցի Շաւալաթի որդի Աղեքսանդր. սոր հայրն Հալէպի դրամանոցի վարպետ վերակացու է եղեր, (Sauolet, mistro della Cecha in Aleppo). Յովհաննէս Կարապետի որդին և Նասիպ կամ Նաւրուզ Մանուէլի որդի Ջուղայեցիք կու յիշուին՝ նա և մէկ Թատերական կամ ողբերգութեան յարմար դիպուածի մէջ այլ, որ է հետեւեալն։

Թուականէս իբր տասն տարի առաջ՝ Ջու-ղայեցի երիտասարդ կամ չափահաս մէկ մի Յովսէփ անուամբ կու գայ ի Վենետիկ, ի Ճե-նովա, և Իտալիոյ ուրիշ քաղաքներ. և ինչ-պէս կ'երեւի՝ Դուռինի մօտ Ալա գեղէն Դո-մինիչիլլա (Dominicilla) անուամբ տարասեռի մի կու սիրահարուի. 1573ին մահն վրայ կու հասնի. առոր կու կտակէ Յովսէփ իր ստա-ցուածքը։ Իր հայրն Պաօլօ կամ Բաօլօ որդի Մարգարեայ ողջ է եղեր. և լսելով դիպուածը՝ կու գայ ի Վենետիկ, կ'իմանայ եղածը, և կու ջանայ ձեռք բերել իր որդւոյն թողածը. որոյ համար շատ ժամանակ կ'անցնի, և կու ստիպուի ինքն ուրիշներէ փոխ առնուլ՝ դա-տաստանի ծախքերը վճարելու։ Պարտատե-րանց մէկն է յիշեալ Շաւալաթի որդի Ա-ղեքսանդրն, ուսկի առեր է 310 դուկատ, զոր յամի 1575 (մարտի 18 և 21) Նոտարի առջեւ կու խոստանայ վճարելու. վկայ կ'ըլ-լան Նասուպն և Գէորգ ո. Թէոդորի, և Տէր Թոմաս ո. Գէորգայ՝ Հընքէյֆցի Յակոբիկ քահանայ մի։ Կարապետի որդի Յովհանն այլ ոչ միայն երաշխաւոր կ'ըլլայ Բասսայի, այլ և գլուխ կու կենայ դատը առաջ տանե-լու, ընկեր առնըլով իրեն քանի մի Ջու-ղայեցիներ, Աղեքսանդր ո. Անդրէէ, Միսսայա? (Missaia), Մաւրօս և Կիրակոս (Chiragatus)։

Ասոնք Բասայի հետ կու պնդեն, թէ Յովսէփ իր երկրէն դուրս չելած՝ հօն թողեր էր 9 կամ 7 տարուան որդի մի Հայրապետ անուամբ, որու կ՚ինկնայ ժառանգութիւնն։ Ասոր հակառակ ուրիշներն կ՚ըսէին, թէ Յովսէփ 15 տարի է որ Իտալիա եկած էր, և այն տարիքով որդի չէր կրնար ունենալ իր հայրենեաց մէջ։ Ասոնց խօսքը հաւանական կամ քննութեան արժանի համարելով, վերոյիշեալ թուականին (1575, դեկտ. 23) Հասարակաց Փաստաբանից անուանեալ դատարանն կու կանչէ Յովհաննու կողմնակիցները. միայն սա և Բասսա եկան, մէկայլ ընկերքն աներեւոյթ եղան. անոր համար դատաւորք զանոնք խարդախ և սուտ վկայ համարելով՝ դատապարտեցին (23 յուն. 1576), որ եթէ բռնուին, հրապարակին երկու սեանց մէջ աջ ձեռքերնին և լեզունին կտրելով ի բանտ դրուին տարի մի, յետոյ վռնտուին Վենետկոյ սահմանէն. և եթէ նորէն դառնան՝ երկու տարի բանտի դատապարտուին։ Իսկ Յովհան և Բասսա իրենց ըսածին վրայ հաստատ կեցան, թէ և բանտուեցան։ Միւս կողմէ Դոմինիչիլլա՝ իր ո՛ր և է կերպով ժառանգածը չկորսուանելու համար՝ կ՚իմացընէր, որ այս խնդրոյս վրայօք քննութիւն եղած էր ի Ճենովա և իրեն տրուած էր իրաւունքն։ Վե֊

Նետկոյ դատաւորք փաստաբան մի խաւրեցին ի Ճենովա. սա քննեց իմացաւ որ սուտ է կնկան ըսածն. այն ատեն (1579, սեպ. 3) դատաւորք արձըկեցին ի բանտէ զՅովհանն և զԲասսա. և ոչ միայն Յովսեփայ Թողածը վճռեցին առնուլ և տալ իր հօրը և որդւոյն, այլ և Դոմիչիլլայի օժիտէն առնուլ և տալ Բասսայի և Յովհաննու՝ իրենց դատաստանի համար ըրած ծախուց փոխարէն։ Վճռողքն էին 36 դատաւորք. որոց միայն երկուքին քուէն անորոշ էր։

Վերոյիշեալներէն զատ եկեր են անշուշտ շատ Ջուղայեցիք ալ ի Վենետիկ, որ որոշակի իրենց քաղքին անուամբ յիշուած չեն. մենք ալ չուզելով կարծեօք ընդունիլ, քանի մի անտարակոյսներ այլ յիշենք ԺԶ դարուն վերջի և ԺԷ դարու առաջին տարիները։ Այսպիսիքն, Տէրան մի, Thirano գրուած, յամի 1593, որ 110 դուկատ պարտական էր Նախճաւանցի Պօղոսէ, որդւոյ Բարողէ, (Baser գրուած). սա իրեն գործակալ դրաւ (օգոստ. 23) Հայոց ճարպիկ սանսէրներէն մէկը, Մարկոս Մաւրաս ո. Յակոմբոյ, առնելիքը պահանջելու համար, կամ ուղղակի կամ Տիրանայ ինչքը գրաւելով. վկայ եղան մեզի ծանօթ Գէորգ տնպահն Հայոց (ո. Թէոդորի), Մելքոն վաճառական, Մարկոս վաճառական ո. Շահնշայէ (Iansa)։

1599, *մայիս* 7. Գէորգ Ջուղայեցի Սեդտար *մականուանեալ, որ վկայեց Մարգարեան* Տէր Յակոբայ *պատգամաւոր երթալն առ իշխանն* Վրաց, *և ի* Պարսս:

Կարապետ օ. Բարսղի (*Թերեւս վերոյիշելոյն*), *որ առնելիք ունէր* 360 *դուկատ* Համըլայեցի Յովսեփայ *որդի* Խաչատուրէն. *սա խոստացաւ* (1601, *փեբր.* 6) *որ երբ դառնայ այն քաղաքէն ուր պիտի երթար, վճարէ* Խաչատրոյ *ամբողջ պարտքը. այլ և կու խոստանայ որ պարտքէն դուրս՝ տայ* Խաչատրոյ *զոյգ մի չուխայէ գուլպայ կամ տափատ վաթսուննոց?* (un paro di calce di panno de sessanta), *իբրեւ ընծայ մի և ոչ այլ ինչ:*

Աւետիք Ջուղայեցի օ. Խոջապաղաշի (1602, *մայիսի* 21) *կ՚ընդունի իր առնելիքն ի Սիսիանցի* Ղազարայ *օ.* Յովհաննու, *և անդորրագիր կու տայ անոր. երկու օր վերջը* (*մայիս* 23), *իրեն գործակալ կարգէ Նոտարի առջեւ՝* զՔրիստափոր օ. Տոնատոյ Սուրիան *անուանեալ,* (Ասորի *կամ Հալէպցի կարծուի*) Թուրքաց *սանսէրը, որ ընդունի իր ապրանքները, երբ հանին Նաւով, և ուրիշ որ և է առնելիքը, և այլն:*

Գրիգոր օ. Մարտիրոսի և Գէորգ օ. Անտոնի Ջուղայեցիք՝ *իրենց գործակալ կարգեն* զՄարկոս Մորատ *սանսէր և անոր որդին* Յակոբ,

որ պահանջեն Տոռնակուինչի (Tornaquinci) անուանեալ Ֆիորենցացիներէ՝ իրենց ծախած մետաքսի գինը. վկայ կ՚ըլլան վերոյիշեալ Սեբաստացի Մարկոսն ո. Շահինշայ, և Ջուղայեցին Դանիէլ ո. Տէվէնէ (1602, հոկտեմբ. 21)։ Այս Դանիէլ այլ քանի մ՚օր վերջը (25 հոկտ.) նոյն Մարկոս Մուրատը և որդին իրեն գործակալ կ՚ընէ, ընդունելու 13 հակ Մանածի գինը, զոր ծախեր էր իտալացի (Պետրոս Յովհան) թամբակագործին։

1603, յանուարի 10, կու վախճանի Յովհաննէս Ջուղ. որդի Պապայ, որ յիշուած է յամի 1596, ջերմով հիւանդացած ըլլալով, (ի տան Յովհ. ո. Նիկոլ Վենտրամին ազնուական Վենետի, ի Ս. Մարկոսա կոչուած Թաղի)։ Նախընթաց դեկտ. 16ին կտակը գրել տուեր էր, գործադիր կարգելով իր ճամբու ընկեր և հայրենակից Սխանը, որուն կ՚ապըսպըրէ իր ապրանքները ծախել, երթալ յԱսորիս, անկէց այլ ի Ջուղա. և անոնց գինը յանձնել Սէֆէրի որդի Խաչկայ։ Հասարակաց մեռելագրոց մէջ կ՚երեւի սխալմամբ 19 տարուան գրուած է վախճանեալն, որ անհաւատալի է. մանաւանդ որ յայտնապէս նօտարական գրուածոց մէջ վկայուած է նա յամին 1596 (մարտ 16) իբր 55 տարուան. յիշուելուն պատճառն այլ նշանաւոր է։ Խա-

չատուր ո. Ա–Եոլէ+է Հոյէոցէ վաթսուն տա-րուան ծերուկ մի (որ ձախ ձեռացը վրայ վիրաց ապի մի ունի եղեր), Կղեմէս Ը Սրբ. Պապէն վկայագիր առեր է (12 յուլ. 1595) ստակ ժողովելու, իր ընտանիքը Թուրքաց գե-րութենէն ազատելու համար. հիմայ ի Վե-նետիկ գտուելով՝ իրեն գործակալ կարգէ այս Պապայ որդի Ցովհաննէսը ողորմութիւն ժողովելու։ Այս բանիս վկայ կ՚ըլլան Գէորգ Ա—ա+եւէ որդի սանսէր մի Հայոց տան մէջ բնակող, և Ասորի վաճառական մ՚այլ (Բե-նեդիկտոս)։ Ասոնց հետ յիշենք Գ. յեզանա-կի (Հայ–Վենետաց) սկըզբան, (1607 Նոյեմբ. 24) Մուրատ Ջուղ. ո. Սէֆէրէ, որ անդորրա-գիր կու տայ առ վերոյիշեալ Քրիստափոր ո. Տոնատոյի իր 24 դուկատ առնելիքն ընդու-նելուն համար։

# ԺԴ.

## ՀԱՅՈՑ ԲԱԶՄԱՆԱԼՆ ԵՒ ԲՆԱԿԱՐԱՆՔՆ Ի ՎԵՆԵՏԻԿ

*Բաւական համարելով առ այժմ այսչափս Հին Ջուղայեցւոց ի Վենետիկ երթեւեկին նկատմամբ, ցաւիմք որ անոնց վրայօք Հայերէն գրուած մի չեմք գտած՝ այս միջոց ժամանակիս, այլ միայն իտալերէն, որ՝ քաղքին անունն ալ պէսպէս գրէ, ինչպէս տեղ տեղ յիշեցինք.* Iula. Iulfa. Diulfa. Chiulfà. Giulfa, *և այլն։*

*Հետաքրքրական է նա և ասոնց յաճախեալ բնակութեան տեղն ի Վենետիկ. բայց նախ պէտք է գիտնալ, որ Վենետկոյ տէրութիւնն յամենայնի զգուշաւոր և կասկածոտ, մանաւանդ այս յեղանակիս* (ԺԵ–Զ *դար), առանց քննութեան և հրամանի չէր թողուր օտարականաց բնակիլ իրենց ուզած տան մէջ. Ինչպէս յիշուի ի դիւանս նոցա, որ յամի* 1530 Ի Կ. *Պօլսոյ կու գան երեք Հայք, Զաքարիա, Սիմոն և Գէորգ, և կ'իջեւանին ի տան Գասպարայ (անշուշտ և սա Հայ). տէրութեան հրամանաւ Եօթն Գիտունք կոչուած պաշտօնեայք քննելով՝ ընդունելի*

համարին զանոնք. բայց պատուիրեն Գասպարայ (16 մարտի) որ առանց հրամանի չընդունի ուրիշ մի, և ոչ հաց ոչ գինի տայ ուրիշի՝ իր տան մէջ»։

Շատ անգամ այս գրուածին մէջ յիշուած Ս. Մարիամ Ֆորոտիկ (S. M. Formosa) եկեղեցւոյ և Ս. Նոր Յովհաննէսի (S. Giovanni Nuovo) թաղից մէջ և անոնց քովերը՝ բնակած են Հայք, գլխաւորապէս այն փողոցում՝ որ ինչուան հիմայ կոչուի Ռուկա Ճիւֆա (Ruga Giuffa), զոր շատք՝ թէ իտալացիք և թէ մերայինք՝ համարած են նոյն իսկ Ջուղայի անուամբ, որ և յարմար և բնական կ'երեւի. սակայն չէ ստոյգ. վասն զի յառաջ քան Ջուղայեցւոց գալը՝ այնպէս կոչուած է այն փողոցն, և մեր Ջուղայ անուան պէս ծռմռկած, (Ruga Iulfa, R. Giuffa, R. Iuffa, R. Giufa, R. Ziulfa). Հնագոյն գրուածք կոչեն Gajoffa կամ Gagiuffa. Քաղքին ուրիշ մէկ կողմն այլ կար այսպէս կոչուած փողոց մի. երկուքին ևս անունն Կյուֆա բառէն ծագած է ինչուան ԺԳ դարէ (1283), այն տեղ խարբերայ կամ Գնչու (չինկեանէ, zingani) բնակողներէ, որք այնպէս կոչուէին. ինչպէս հիմայ այլ Դալմատք Կէյուբկա (Geiupka) կ'անուանեն զԳնչուս. ուսկից համարի գիտնական մի՝ լատինարէն Gaiu-

fus և Gajufa կոչելն զայր և զկին զնչու։ Ոմանք ի գիտնական Վենետաց՝ կարծած են, թէ այդ անունն իրենց Կայուֆֆի կոչուած մէկ հին ընտանիքէ մի առաջ եկած է։ Դարձեալ, ուրիշ գիտնական մի կարծէ՝ թէ այն փողոցին մէջ ժանտամահ հանդիպելէն այնպէս կոչուած ըլլայ, իբր զի Կայուֆա ժանտախտ կու նշանակէ։

Յիշատակ այսչափ Ջուղայեցւոց ինքնին գուշակել կու տան, թէ այս ժամանակ (ԺԶ դարու կիսէն վերջ) որչափ յաճախութիւն կար Հայոց ի Վենետիկ, և ոչ միայն ի Ջուղայէ կամ ի Պարսկահայոց, այլ և ի Թուրքահայոց, մանաւանդ ի Փոքր Ասիոյ, յԱսորւոց կողմանէ և ի Կիլիկիոյ եւս։ Այս բանս յայտնապէս ծանուցին Հայք՝ իրենց մէկ գրուածով, յամին 1579, որոյ դժբաղդաբար հայերէն բնագիրն չկայ, այլ իտալերէն թարգմանութիւն. և այնչափ աւելի փափագելի և պատուական է՝ որչափ որ հին կամ առաջին անգամն է, որ կ՚իմացընէ Հայոց միաբանօրէն ժողովիլն և իրենց տան համար կարգ կանոն սահմանելն. յորում և եկեղեցական կամ կրօնական վիճակնին այլ կու յիշեն, և միով բանիւ Սահմանադրութիւն կ՚անուանեն իրենց որոշածը և գրածը. զոր ահա թարգմանեմք յիտալական թարգմանութենէն.

« Այս է ծանուցումն Սահմանադրութեան
» ազգիս Հայոց․ Յամի Տեառն մերոյ 1579,
» ի քաղաքն ի Վենետիկ․ Աստուած լուսա-
» ւորէ փառօք արքայութեան զհոգի ամենա-
» փառաւոր և ամենազնիւ Մարկոսի Ծիա-
» նեայ, որ յամի Փրկչին 1253, առատա-
» ձեռնութեամբ տուաւ մեր Հայոց ազգիս
» վաճառականաց՝ իր մէկ տունը, որ զետե-
» ղուած է ի Ս․ Յուլիանոս Թաղի, որպէս
» զի մշտնջենաւորապէս միայն Հայոց ազգին,
» ինչպէս որ պայմաններն այլ գրուած են
» իր կտակին մէջ։ Անցեալ ատեններ հօն
» բնակէին մեր վաճառականք, և երբ շատ-
» ցան ազգայինքն, իրենց յօժար կամօք թո-
» ղուցին այն տունը իրենց (հայրենակից)
» աղքատաց, և իրենք գնացին առանձին տու-
» ներու մէջ բնակելու։ Այս տան (մէկ մա-
» սին) մէջ խորան մի շինեցին, միւս մասին
» մէջ աղքատներն կու բնակէին։ Սահմա-
» նեցին եւս՝ որ Էջմիածնի կաթողիկոսական
» աթոռէն քահանայ մի գայ և աստուածային
» պաշտամունքը կատարէ։ — Դարձեալ․ ազ-
» գային վաճառականք իրենց մէջ պայման
» մ՚այլ հաստատեցին, որ իրենց ողորմու-
» թեան տուրքով թէ այդ խորանն պահպա-
» նուի և թէ աղքատներն․ և ինչուան այս
» օրս կու պահուի այս սահմանադրութիւնս,

» որով ամեն տարի վաճառականներէն մէկն
» կ'ընտրուի Պահպանիչ (Conservatore), որ
» ժողվէ վաճառականներէն իրենց կամաւոր
» տուրքը, որպէս զի վայելչապէս պահուին
» խորանն և աղքատք։ Ով որ այս վերոյի-
» շեալ Սահմանադրութիւնս պահէ միշտ հաս-
» տատուն, և բարի մտօք կատարէ միշտ
» բարեկարգութիւնը, օրհնեալ ըլլայ յամե-
» նակալէն Աստուծոյ, օրհնեալ ըլլայ յամե-
» նայն Սրբոց, և արժանի սուրբ արքայու-
» թեան և Աստուծոյ յաւիտենական փառաց.
» ամէն »։

Այս Սահմանադրութենէս երկու տարի առաջ էր (1577), որ Գէորգ ո. Յովհաննու ընտրեցաւ Տնպահ (տ. եր 200). իբրեւ 25 տարի վերջը եկաւ Տէր Յակոբ Մարգարեան, եկեղեցապան և ժամարար։ Սահմանադրութենէն շատ տարի և գրեթէ դար մի առաջ, կու յիշուի Հայոց խնդրելն և նորոգել տալն իրենց տունը (1493–6), և յամին 1497 օտարները հանելով՝ իրենց մտնել և բնակիլն (տ.201). և կ'երեւի թէ այն ատեն սկսած են այն տեղ իրենց մատուռ մի շինելու մտածութիւնը, և քիչ մի ետքը Լեւոն Ժ Պապէն խնդրեր են զայն հաստատել։ Ոչ իրենց աղերսագիրն և ոչ այլ Պապին կոնդակն յայտնուած է. սակայն ոչ միայն այս-

պէս աւանդուած է, կ՚ըսէ աստուածաբան քննիչն՝ դքսին հրամանաւ՝ յամի 1740, այլ և Յոյնք՝ երբ նոյն Վենետկոյ տէրութենէն խնդրեցին եկեղեցւոյ շինութեան հրաման (1511), իրենց աղերսագրին մէջ կու վկայեն, որ արդէն Հայոց տրուած էր այսպիսի շնորհք. իսկ Պապն իրենց (Յունաց) հրաման տուաւ ի 1514 (յունիս 9)։ Հայոց այն ատեններ շատնալուն ի Վենետիկ՝ բաց յայլոց վկայէ քաղքին ազնուականներէն մէկն այլ, Թովմ. Կոնտարինի (Tomaso Contarini), օտար բազմաթիւ ազգայնոց կարգին դնելով և զՀայս [1]. « Այնչափ Հայք գտուին հօս.. Քրիստոնեայն Հրէին կու հանդիպի.. Յոյնն՝ Հայու, Հայն՝ Իտալացւոյ ».

Այսչափ Հայոց բազմանալուն ի Վենետիկ՝ իրենց իսկ յիշեալ գրաւոր վկայութիւնն յայտնէ, թէ բաւական չէր ի բնակութիւն Ծիանի դքսորդւոյն թողած տունն, որ եթէ և միշտ հայաբնակ եղած է ինչուան այս (ԺԹ) դարուս կիսուն մօտ, այլ և միշտ փոքր տուն մ՚է, և աւելի փոքրացաւ՝ երբ յատակին վրայ Ս. Խաչ եկեղեցին շինեցին։ Հարկ էր որ ոչ

1. Qui si trovano tanti... Armeni. Il Christiano con l' Ebreo... il Greco con l' Armeno, l' Armeno con l' Italiano.

միայն այն տունն, այլ և առաջ՝ քաղքին ու-
րիշ կողմերում այլ բնակէին Հայք. և ար-
դէն ցուցինք իրենց բնակութեան գլխաւոր
թաղը (ի Ս. Մարիամ Խորոտիկ). որու մօտ
կամ կից է և Նոր Ս. Յովհաննէս կոչուած
(S. Giovanni Nuovo) եկեղեցին և թաղն,
որ և նոյնպէս Հայաբնակ էր. կար հօն նոյն
անուամբ (Ս. Յովհաննէս) վաճառականաց
օթեվան. մ'այլ (Case dell'Hospitaletto di S.
Zuan Battista delli Mercanti, poste in
Ruga Gajuffa) (1). թուի թէ հօն այլ բնա-
կէին մերազգիք. և զուցէ նոյն իսկ Ս. Յով-
հաննէս տեղին ըլլայ, ուր ԺԹ դարուն կիսէն
առաջ կային Հայ Եղբարքն (տ. 151):

Սակայն ոչ ամեն Հայք այս յիշեալ թաղե-
րու մէջ բնակէին, այլ ըստ հաճութեան ուր
որ իրենց յարմար համարէին. և այլեւայլ
կողմեր իրենց համար տուներ վարձած էին՝
իրենցմէ առաջ եղած և հաստատ բնակող
ազգայինք և իրենց Հայ սանէրքն, մօտ այս
յիշեալ թաղերուս: Նա և յայտնապէս վկա-
յուի, որ յամի 1646, (յան. 31) Հայոց հոգ-
ցողք՝ յետոյ վաճառականութեան պաշտօ-
նեայ Հինգ Գիտունք՝ հաւանեցան որ Յովսէփ

1. Կոչուի եւս Case dell' Hospidal de Mercanti in Ruga Gajuffa.

ո. Գրիգորի՝ տուն մի վարձէ ի Ս. Մար. Խո-րոտիկ Թաղի՝ իր ազգայնոց համար, իբրեւ օթեվան, որ այն տան մէջ կարենան, կ'ըսեն, իրենց ապրանքը տեղէ տեղ փոխել (1), ըսել է սենեակէ սենեակ. այնքան խիստ կամ ճիշտ էր տէրութեան օրէնքն։

Վենետիկ քաղաքն այն ատեն և ինչուան հիմայ այլ վեց մեծ մասն կը բաժնուի (sestiere), զոր կրնանք Վեցերեակ կոչել. ատոնց երկու գլխաւորքն են Ս. Մարկոս և Դղեակն (Castello). երկուքն այլ մօտ ի մեծ Հրապարակն և ի ծովեզրն կամ ի Նաւակայս. և ահա Հայք առաւելապէս այս երկու վեցերեակ բաժնից մէջ բնակէին։ Վերոյիշեալ Թաղերէն զատ՝ ի Ս. Մովսէս. ուր և կու տեսնուի հիմայ հարուստ վաճառականի մի գերեզման, արձանագրութեամբ (Մարտիրոսի ո. Վելիճանի, † 1686). — Ս. Պետրոս, ի յատուկ Դղեակ Թաղն, ուր որ երբեմն (1569) բնակած տեսանք զԳէորգ ո. Յովհաննու (տ. 278–280). — Ս. Մարինէ, ուր բնակէր ԺԶ դարուն վերջերը (1597) շատ հեղ յիշուած վա-

1. Licenza a Iseppo qm. Gregorio Armeno, che possi tuor ad affitto la casa a S. Maria Formosa... e tenirla per *Hospitio de Armeni* che capiteranno, e trasportar robbe da luogo in luogo in detta casa.

ճառականն Մարկոս ո. Ցովհաննու Շահինշահ, որ և Ս. Մարկոսի հրապարակին մէջ առ-նուտուրի վաճառասեղան (Panco կամ տա-ղաւար ունէր. — Ս. Լեւոն, որ մօտ է վե-րոյիշելոյն և Ս. Մար. Խորոտիկի և՝Նոր Ս. Ցովհաննու. այս տեղ բնակէր աւելի առաջ (1571ին Ցովհան ո. Սիմոնի։ — Ս. Յով. Մկըր-տիչ՝ է Պրոկուլա (Procula) կոչուած Թաղի, ուր վերջին ժամանակներ, յ՛ ԺԸ դարու և ինչուան մեր ԺԹ դարուս կիսէն վերջ այլ՝ քանի մի Հայ պառաւք բնակէին. — Նոյնպէս և անոր մօտ Ս. Մարտին Թաղի մէջ, ուր որ և մեր Հայրն Մխիթար Աբբայ՝ յառաջ քան Ս. Ղազար կղզին ստանալը՝ բնակած է իր ա-շակերտօքն՝ երկու տարի (1715–7)։

Բայց ինչպէս հաճոյից և պիտոյից սահման և կանոն չկայ, զարմանք չէ որ Հայք՝ մանաւանդ վերջին ժամանակներ, քաղքին կեդրոնէն հեռու այլեւայլ կողմեր այլ բնակած ըլլան. ինչպէս վերոյիշեալ և արդէն ծանօթ Գէորգն ո. Ցովհաննու, զոր 1569ին տեսանք ի Ս. Պետրոս, երկու տարի վերջ (1571) գտանք հեռաւոր Թաղի մի մէջ բնակած (ի Ս. Մար-գարիտ)։ — Աւելորդ կու համարիմ ուրիշ Թաղեր կամ կողմեր այլ յիշել՝ ուր Հայք ոմանք բնակած ըլլան. մեր դիտելիքն էր քաղքին այնպիսի մասերը նշանակել, ուր ընդ-

հանրապէս կու բնակէին, և կրնանք հա-յաբնակ անուանել: — Վենետկոյ մօտիկ և իբր իրեն մասն համարուած կղզեկաց մէջ այլ երբեմն բնակած Հայոց նշան կամ վկայ ըլլայ, ԺԶ դարու մէջ մեզի ծանօթացեալ և ոչ բարեհամբաւ Մէրտինցի Յակովբն (տ. 310): — Այսչափ ո՛ր և է կերպով հայա-բնակ կողմերէ կամ տեղերէ, դեռ հիմայ այլ անոնց ամենէն հինն (ԺԴ դարէ ի վեր) Ս. Խաչի մօտ Բոկաֆողոյն՝ կոչուի յանուն Հայոց (Calle degli Armeni): Տանց մէջ այլ անոնց ամենէն վերջին բնակող և հարուստ ազգայ-նոց տոհմի անուամբ՝ Շէհրիմանեանց պալատ (Pa-lazzo Sceriman) կոչուի մինչև ցայսօր:

Հայոց՝ այս ժամանակիս ի Վենետիկ յա-ճախելուն, միանգամայն և ըստ Պեմպոյի ը-սածին (եր. 201), քաղաքին « բարեկամական տեսարան » մի ընծայելնուն՝ կըրնայ կերպով մի հաճոյական նշան ըլլալ՝ այս ԺԶ դարուն կիսէն ետև Armenia անուամբ շատ կանանց և նորածին աղջկանց կոչուիլն. որոց 40 տա-րուան միջոցում նոյնքան թուով այլ հանդի-պած եմ ի քաղաքական և եկեղեցական դի-ւանս, մեծագոյն մասն՝ նորոգ ծնելոց. նա և դարուն կիսէն առաջ կնքուածք կան ի 1532 և 1534. անշուշտ առոնցմէ այլ առաջ

պիտի ըլլան ոմանք ի չափահաս յիշուած-
ներէն։ Եթէ քան զասոնք այլ առաջ կային՝
հաւանօրէն, (որովհետեւ մեր յիշած հնագոյն
Թուականէն առաջ մկրտագիրք և մեռելագիրք
գրեթէ չկան), այդ այլ հաստատէ մեր զու-
շակութիւնը։ Զեմք ուզեր յիշել այս տեղ
Իտալիոյ ուրիշ կողմերում այլ Armenia
կամ Armeni մականուամբ ընտանիքներ. յե-
տին կոչմամբ շատ գտուին ի Վենետիկ, բայց
սոցա անունն այլ՝ իրենք այլ յունական ծագ-
մամբ են. — Ո՛ր և է ծագմամբ ըլլայ՝ գէթ
իբր յարմարութիւն յիշենք և նշանաւոր
մարդ մի, Armenio Alban. որ յամի 1484
Վենետաց նաւատորմին երրորդ խըմբին ա-
ռաջնորդ էր, ի նաւամարտին ընդդէմ Օսմա-
նեանց, Մոռէայի Սապիենցա կոչուած կըղ-
զւոյն մօտ, և մեռաւ ի 28 յուլիսի։

## ԺԵ.

### ՀԱՅ ՍԱՆՍԷՐՔ Ի ՎԷՆԵՏԻԿ.

Յայտնի է ամենուն՝ թէ վաճառականութեան մէջ որքան կարեւոր է վաճառողի և գնողի միջնորդ մի ունենալ, երբեմն իբրեւ ճանչցող նիւթոց, երբեմն իբրեւ իրաւարար, և շատ հեղ այլ իբրեւ թարգման՝ իրարու լեզու չհասկացող օտարազգեաց. ինչպէս Վենետահայոց այլ գրեթէ միշտ հարկաւոր եղած է. և իբրեւ ճիւղ մի վաճառականութեան և վաստակի, նա և հարըստութեան առիթ եղած է Սանսէրութիւնն: Ծանօթ է նշանակութիւն բառիս և ծագումն յԱրաբացւոց, որք սիմսար կոչեն, և եւրոպացիք զնոյն բառ գործածեն կերպ կերպ այլայլելով, Sensale, և Sanser, և այլն: Մեր լեզուի մէջ այլ մնած է բառը՝ շատ վաղուց, և ոչ միայն սոսկ բառն՝ այլ և միջնորդին առած վարձն՝ Սամսըրէք կամ Սըմսարէք կոչուած է ի ժամանակս իշխանութեան Ռուբինեանց: Աւելի նշանական և աղուական է մեր հին բառագրոց բացատրութիւնն, միջնորդաց սովորական յատկու-

թիւնը կամ արուեստը, իրենց շատխօսութիւնը յայտնելով, գրէ իբրեւ զուգանիշ, « Սանսար՝ շաղակրատ ». կ՚աւելցընէ եւս, փատաւէր. գուցէ լաւ եւս ըսէր՝ շահաւէր։ Թողլով բանասիրականը՝ դառնանք մեր պատմականին։

Վենետք՝ աշխարհածանօթ վաճառականք միջին դարուց, ինչպէս այդ արուեստի ամեն հնարքն և պէտքը հոգացեր էին, հարկ էր որ միջնորդաց օրինաւոր կարգ և կանոն մ՚ունենային. բայց՝ ըստ վերոյգրելոյս՝ աւելի օտարազգեաց առեւտըրին հարկաւոր ըլլալով, կ՚երեւի որ ատոնց (և կըրնամք ըսել մերազգեաց) ի Վենետիկ յաճախելուն ատեն՝ սահմանած ըլլան զայն։ Եւ յիրաւի, ի սկզբան ԺԶ դարուն՝ երբ կու սկսի Հայոց ստէպ երեւնալն, Պարսից Նոր պետութեան (Շահ Իսմայելի) հաստատութենէն վերջը, յամի 1503 (սեպտ. 23) Հասարակապետութեան հանդիսաւոր վճռով կու հաստատուին սանսէրից կարգն և թիւն, 150 անձանց։ Յետ ոչ շատ ժամանակի՝ առեւտըրոյ աճելն կու պահանջէ ատոնց թիւն այլ աւելցընել. և յամի 1560 (մայիս 22) Նոր վճռով սահմանուի սանսէրից թիւն՝ 190. և այնպէս այլ մնայ մինչեւ ի վերջ։ Ըստ այսմ սահմանի՝ երբ յամին 1593, Յովհաննէս անուամբ Հայ մի կու խըն-

դրէ ի դըքսէն՝ սանսէր ըլլալ, սար հրամանաւ Հինգ Գիտունքն քննելով՝ պատասխանեն առ դուքսն, թէ ըստ օրինաց՝ 190 սանսէրք պիտի ըլլան, և երբ անոնցմէ տասն հոգի պակսի, ուրիշ տասն պիտի ընտրուին. իսկ հիմայ ոչ միայն կան 190 սանսէրք, այլ և յաւելորդք այլ ընտրուած են, և ոմանք առանձին շնորհքով յաւելուած են. ուստի դըքսին իմաստութեան թողուն խնդիրը։ Ասոր վճիռը գտած չեմ, բայց հաւանական երեւի որ շնորհուած ըլլայ Յովհաննու։

Իրմէ առաջ և մանաւանդ վերջը, երկու դարուց մէջ՝ հարիւրէն աւելի Հայ սանսէրից անուն և յիշատակ գտած եմ յայլեւայլ դիւանս Վենետկոյ, մանաւանդ ի Նոտարացն և Պաշտօնէից վաճառականութեան և դատից։ Հաւանօրէն շատ աւելի այլ եղած են, և ոմանք միանգամայն վաճառական և միջնորդ, և իրենց ժամանակակցաց մէջ հարուստ և նշանաւոր մարդիկ։ Մի և նոյն ժամանակի մէջ եղած սանսէրից ցանկ մի չեմ գտած, բայց տասնիւ չափ միանգամայն՝ յայտնուած են։ Ասոնք և բազմութիւն սանսէրից կոչուէին Հասարոն կամ Ուխալդոյի սանսէրք, (որ էր կենդրոն վաճառականութեան քաղաքին), յանուն տեղւոյն և հռչակաւոր միակամար կամրջին։ Թուի թէ յատուկ ինչ նիւ-

թոց և դիպուածոց համար՝ յատուկ սանսէրք այլ կային, որ աւելի պատուաւոր համարուէին, միանգամայն և շահաւոր։ Դարձեալ, երբեմն այլ յիշուին ըստ ազգաց՝ սեփական սանսէրք Հայոց, Թուրքաց, և այլն։ Ըստ երկարութեան ժամանակի և ըստ բազմութեան ազգայնոց՝ յայտ է որ Հայ-Վենետաց Գ Ցեղանակի մէջ եղած են միրազգի բազմաթիւ սանսէրք. իսկ այս Բ. Ցեղանակիս և սանսէրութեան երկրորդ սահմանադրութեան 40 տարիներու միջոց (1560-600) քանի մի մեզի ծանօթները կ'ուզեմք յիշել, թողլով ապագայի և ապագայից՝ Գ Ցեղանակին անձինքը։

Ա. Ժամանակի կարգաւ առաջին յայտնուած սանսէր, սանսէրութեան Նոր կարգադրութենէն քիչ տարի վերջ է, յամին 1568, Ցակոբ որդի որդէն մեզի ծանօթ Սիմոնի Հայոց տնպահին (տես 200). ասոր առանձին գործ մի չեմ գտած, և թուի թէ իր հօր տնպահութենէն շատ գոհ չըլլալով պաշտօնեայք պետութեան, զինքը յաջորդ չեն ընտրած, այլ զԳէորգ ո. Ցոհաննէս. (տ. 178)։ Ցակոբ կու յիշուի իր բնակած թաղին (Հայոց տան) Ս. Ցուլիանու մկրտագրոց մէջ. կինն կոչուի Լուրա. որդին, Մնչոէն, մկրտեալ ի 6 փեբր. 1569, (որ իմ գտած յիշատակա-

գրոց մէջ սա է առաջին Հայ ծնունդ ի Վենետիկ). սոր և միւս որդւոցն այլ կնքահայր եղած է Անտոն Ջափարեան. — Յովհաննէս, մկրտ. 2 յուլ. 1572. — Անտոն, մկր. 28 դեկ. 1573. — Յովհան-Դոմինիկ, մկրտ. 30 յունիս, 1575. սոր կնքահայրն՝ անուամբ Անտոն, բայց մականուամբ իտալացի Mafei կոչուի. նոյն մականուամբ Օգոստինոս մ'այլ կնքահայր եղած է Թէոդորոսի ո. Գէորգայ՝ Չեչիլիա դըստեր (1584)։ Յակոբ (որ իր պապուն անուամբ կոչուած է) կ'երեւի թէ յիշեալ զաւկըներն ունենալէն վերջ՝ եկած է ի Հայոց տանէն. Նոյնպէս Թուի թէ կամ տղայ հասակաւ հօրն հետ եկած է ի Վենետիկ, կամ այս քաղքիս մէջ ծնած, ինչպէս վարի ըսելիքէս կըրնայ կարծուիլ։

Բ. Ժամանակակից Յակոբայ սանէր և անոր աներձագն է մեզի ծանօթ և դեռ նոր յիշեալ Գէորգն ո. Թէոդորի (տ. 291), որ Սիմոնի Բոնքինա դուստրն առեր էր ի կնութիւն։

Գ. Յովհաննէս ո. Խաչատրոյ. Այսպէս համարիմ հօրն անունը, որ միշտ իտալերէն Christoforo գրուած է. զարմանալի է և իր ազգութեան համար գրուածն. նախ յիշուի իբրեւ յամի 1572 (օգոստ. 13), իր պսակուի-

լըն ի Նոր Ս. Յովհան եկեղեցի, Մատթէոս (Matthio) ը. Գէորգայ հացագործի դստեր Բեդրոսյէ (Եղիսաբեթ) հետ, որ բնակէր Հայոց սովորական բնակած Ռուկա Կայուֆֆա Թաղին մէջ, որով կարելի է զՄատթէոս այլ Հայ կարծել. կնքահարքն և վկայք իտալացի և գերմանացի են: Այս տեղ խաչատուր կոչուի Քրիստոնեայ Ս. Թովմայէ, ինչպէս կոչուէին Հնդկաց Մալապարի քրիստոնեայք. իսկ իր զաւակաց մկրտագրին մէջ գրուի Հայ սանտէր: Առջինեկն (ծնած ի հոկտ. 1573) կոչուի Քրիստինէ Սանթա (Santa). երկրորդն, մկրտեալ 16 օգոստ. 1575, Լորենցոյ Հատոս. — երրորդ մի՝ Իզաբել, մկր. 1576: Յետ այնր յայտնի որ կինն մեռած է. և ինքն նորէն կարգուեր է Մարիա Գրեգա անուամբ մէկու հետ, ուսկից ունեցեր է դուստր մի Քրիստինէ Յովհաննա, մկր. 1 յուլ. 1579: Այս տեղ Յովհաննէս Բողդեայէ կոչուի. բայց անտարակոյս է մի և նոյն անձն ըլլալն. որովհետեւ այս վերջի զաւակն՝ իր միւս զաւակաց ծնած տան մէջ ծնած է (Cha Lion in Ruga Gajuffa), և կնքահայրն եղած է Հայ մի, Հայոց տան մէջ բնակող Մինտոյեւ ո. Զաքարեայ: — Այսպէս զանազան ազգութեամբ գրուածն յայլեւայլ անձանց, շատ հաւանութեամբ նոյն ինքն է՝ որ նոտարական

գրուածքի մի մէջ յամի 1580, զուտ հայկական անուամբ գրուի Յովհաննէս Հայ ո. Խաչատրոյ. գրողաց անզգաստութեամբ կամ ոչ լաւ քննելով և չորոշելով՝ այսչափ այլայլեալ. մինչեւ յիշեալ վերջի Նոտարս իսկ՝ որ Նախ (ի սկիզբն մարտի) պարզ Joannes Armenus գրէ, քանի մ'օր վերջը (16 մարտի) աւելի ճշդելով գրէ Յովհաննէս կամ Ովհաննէս, Ioannes seu Ovannes. Առջի գրութեան պատճառն է Յովհաննու անգործագիր տալն առ Նուրում ո. Փէրամէ Էրզրումցի, որ իրեն պարտական էր և երաշխաւոր դրեր էր զԳէորգ և Յակոբ Հայս։ Ասոնք ի Հռովմ գացեր են եղեր, ուր Նուրում գոհար ակունք տարեր է, և Յովհաննէս՝ համանուն ընկերէն Յովհաննու քով զանոնք ի գրաւ դրեր է. հիմայ կ'ազատէ, և զնոյն Նուրում իրեն գործակալ դնէ, որ իր ակունքն առնու։ Այս բանիս գրով վկայ կ'ըլլան Նոտարին առջեւ՝ Յովհաննէս ո. Ճանիկեան։ Մուրատբէկեան որդի Գասպարեանի, Աճէլմեան ո. Հովհան և Մարկոս ո. Յովհաննու. ամենքն այլ Հայք, և ըստ անուանցն՝ Թուրին ազնուականք և մեծատունք։ — Երկրորդ գրութեամբ կ'իմացընէ Նոտարն (Նիկոլ Տոլիոն) որ Յովհաննէս կու վկայէ, թէ Յովհաննիսեան Ծատուրէ ընդուներ է 220 դուկատ, Նուրումի պարտքը, Մատուրն այլ նոյնքան ստակ առեր

էր ի Նուրումէ. և այսպէս մէջերնին առնելիք տալիք չի մնար։ Այս բանիս այլ վըկայեն վերոյիշեալ Արղլմանըն, որ այս անգամ կ՚ըսուի եւս Խաչատուր կամ Քրիստոփոր, seu Christophorus, Յովհաննէս ո. Sancti գրուած (գուցէ Սարգիս կամ Ճանիպէկն), որ և Թարգման կ՚ըլլայ, Գիրեղ կամ Կիւրեղ, Girech ո. Աւետիքի, և Ովանէս ո. Համազասպայ, Amasach գրուած։

Անտարակոյս իրմէ տարբեր է և Հայ, թէ և չէ գրուած Հայ, Յովհաննէս մ՚ այլ, սանսէր Թուրքաց, որոյ մահն յիշուի յամի 1578, ի Ս. Մար. Խորոտիկ Թաղի, 90 տարուան, ծերութեան հիւանդութեամբ։

Դ. Գէորգ ո. Յովհաննու. որ Սիմոնի յաջորդ՝ Հայոց տնպահ եղած է, ինչպէս գրած եմք իր վրայօք երկարօրէն (տ. 178-90), սանսէրութիւն այլ ըրած է։

Ե. Սիմոն ո. Յարութեան, Կարկառեցի։ Երկու տեղ կայ ի Հայս՝ Կարկառ անուամբ, ծայրէ ի ծայր իրարմէ հեռու. մէկն յարեւելս, Արցախոյ կողմ, միւսն յարեւմուտս, Դ Հայոց և Եփրատայ մօտ. այս թուի հայրենիք Սիմոնի, զոր միայն քանի մի նօտարական գործոց մէջ յիշուած գտած եմ, իբրեւ

Ուբալդոյի Հասարակ սանտէր։ Նախ, յամի 1570 (յուլիս 17), մէրտինցի Ցակոբայ հետ (տ. 310) վկայէ նոտարին առջեւ, որ Գարահամիտցի (Ամիդ. Տիարպէքիր) Տէօվլէթպէկարէ ո. Ցովհաննէս ընդունեցաւ ի Գայրէ (Cayri) Ջուղայեցւոյ իր պահանջը, 285 դուկատ։ Հետեւեալ տարին (1571, մարտ 29), Շամուրան՝ Հալէպի դրամանոցի վարպետի որդի Ալէքսանդրէ հետ վկայէ, որ նոյն Ցովհաննէս՝ Փանոսէ որդի Գէորգեայ անդորրագիր տուաւ, իրենց թէ ի Հալէպ և թէ ի Վենետիկ ըրած առեւտուրին համար։ — Չորս տարի վերջը (1574, մարտի 3) ըրած վկայութիւնը տես յերես 294։

Քանի մի ամիս վերջը (31 յուլիս, 1574) Սիմոն վկայ և Թարգման կ՚ըլլայ Եզընկացի Մերտէնշահէ որդի Էմիրեասին. (Emiryassın q.m Merdensà, citatis Erzengieu), որ իրեն գործակալ կարգէ զՆիկոլ Մերենտի ո. Մարտինի, Cottimi կոչուած մաքսի պաշտօնարանէն ընդունելու իր պահանջը (189 դուկատ, 17 կրոս)։ Այս մարդը (Nicol de Me-reudis) քանի մ'օր վերջը (օգոստ. 2) նոյնպէս գործակալ կարգեց Ցակոբէ ո. Ալոիզէ, Թոմկըէ ո. Ցակոբայ, Ալոիզ ո. Մէստրէ? (Mesderi), որ իրենց առկէ ընդունած 25 դուկ. և 14 կրոսի փոխարէնն առնու վերոյիշեալ

պաշտօնարանէն. իրենց վկայ և Թարգման եղած է տնպահն Գէորգ ո. Յովհաննու։

Զ. **Յովհաննէս Սուլեան**, Sulian. — Այս սանսէրս այլ՝ Թէ և գրուած չէ՝ այլ Թուի Հայ. վասն զի Սիմոն տնպահին և Յովհան Քաղդէացւոյ հետ (յամին 1575, օգոստ. 27) իբրև Թարգման Զաքարիայ Հայ եպիսկոպոսին՝ կու ստորագրէ սոր կտակին տակ, Նոտարի առջև։

Է. **Նիկողայոս ո. Գէորգայ**, Պետրացի? de Petra գրուած է իր հայրենիքն. բայց ո՞ւր է այդ տեղդ. յամի 1590 (14 Նոյեմբ.) ստորագրած է սա՝ զինքն սանսէր կոչելով, Գէորգ տնպահի և Զաքարայ Պարսկահայոյ հետ, առաջի Նոտարի, որ **Տէրէնչ ո. Պօյէճեան** Թուրքն՝ ի Սկոպիա (քաղաք Պոսնիոյ) 60 դուկատ տուեր էր, և այս տեղ (ի Վենետիկ) առաւ այդ գումարը **յԱստուածեան Գէորգեայ** որդւոյ Անդրէի, առ որ պէտք է հատուցանէ Իօմէր։

Ը. Այս **Գէորգ** եւս սանսէր է, և ի Հայոց տան բնակէր վերոյգրեալ Թուականէն վեց տարի վերջ (1596, մարտ 16). յորում՝ Ասորի Յակոբայ ո. Բենեդիկտոսի հետ վկայած է Նոտարի առջև, Հալէպցի Աւետիքի դե-

պաշտօնին համար (տ. 380). չատ տարի առաջ այլ Դոմինիկ Աստանայի համար (1584), ինչպէս յետոյ պիտի յիշեմք. նոյնպէս և Գաբրաղաշի դիպուածին առթիւ (1590)։ Տասն տարի վերջ (1608) Ղազարայ Տաճնշանհի և Գօղոսի կեսարացւոյ՝ Մկրտիչ Գարսկի ընկերութեան խնդրին վերջանալուն առեն այլ վկայ եղած է։

Թ. Միքայէլ ռ. Եղիայ. Ասորի կոչուի, և գուցէ այնպէս այլ էր. բայց շատ հեղ Ասորւոց կողմէն եկող Հայք այլ Ասորի կոչուին։ Յիշուած է սա յամի 1594 (22 մայիս) իբրեւ Թարգման և վկայ Թուրքերու. որոց հետ երբեմն թէ առեւտուր ունէր, կամ անոնց գործակալն էր. վասն զի ութ տարի վերջ այլ (1602, յուլիս 19) բարձրագոյն ատենէ յանձնուի Ե Գիտնոց քննել զխնդիր 16 տախտ կամ ծրար ցփսեաց, զոր Գարա Եուսուֆ անն ղրկեր էր առ Միքայէլ՝ ուրիշ Թուրքի մի ձեռօք։

Ժ. ԺԱ. Մարկոս Մուրատ ռ. Յակովբայ, և Յոհանէս որդի նորա։ — Երեսուն տարիէ աւելի միջոց կու յիշուի Մարկոս իբրեւ Հասարակ սանսէր, և յատկապէս Թուրքաց, այլեւայլ դիւանաց մէջ, և շատ գործոց մէջ

մտած ելած է, երբեմն այլ ի բանտ։ Երկրորդ անունը (Մուրատ) Իտալացիք իրենց մէջ սովորական ձայնով երբեմն գրած են Մորէտօ (Moreto), որ Սեւուկ նշանակէ։ Առաջին անգամ ինձ յայտնուած է 1579ին, (երեք յանուարի), երբ Թէոդորեան Գէորգայ հետ Թարգման եղեր է Պէկպազարցի Ահմէտ Թուրքին, կտաւեղինաց վաճառականի, որ այլեւայլ նիւթերէ զատ՝ զուտ ստակ ունի եղեր 1152 դալէր և 70 դուկատ։ — Թուականէս յետոյ մինչեւ տասնումէկ տարի՝ Մ. Մուրատի գործերն աչքէս կամ մտքէս վրիպած են. ապա յամի 1590 (սեպտ. 27) ուրիշ ո. Յակոբայ Մարկոս մի՝ զնա իրեն գործակալ կարգէ նոտարի առջեւ, վաճառական անուանելով, (D. Marcum Morat q.m Jacobi, mercatorem hic Venetiis). որպէս զի իր ապրանքներն ընդունի ի մաքսատանց նաւուց և լազարէթից. վկայ կ՚ըլլան Պարսկահայն Մկրտիչ՝ և Զաքար ո. Սանուկէ։ Յաջորդ տարւոյն կիսուն (1591, յունիս 7) կտակակատար կարգուի Յովհաննէս Անտոնեան կրօնաւորին, ինչպէս յիշած եմք և գայս (եր. 349)։ 1593ին գործավար եղած է Պօղոսի Նախճաւանցւոյ, զոր յետոյ պիտի յիշեմք։ Դարձեալ, ի սկզբան 1595 տարւոյ կու գտուի ի մթան, ի բանտի, ծանր

յանցանաց կամ կասկածանաց համար. վասն զի Քառասունք Գիշերոյ կոչուած պաշտօնեայք (I 40 Signori di Notte al Criminal) բանտեր էին զինքը. Երբ բանուած և երբ արձակուած, և ինչ պատճառաւ. — չեմ գտած. այս յայտ է որ հետեւեալ տարին ազատ էր. իսկ հիմայ (1595, մարտի 22ին) Նոտարական գրուածով կ' իմացընէ, որ երկու տարի առաջ (1593, ապրիլ 14) խնդրեր էր ի պետութենէ, ինչպէս և հիմայ, որ կարենայ իր Օրիորդի (Hostaria della Donzella) (1) կոչուած պանդոկը (ի Calle della Torre քովի Ս. Մատթէոս թաղի, in contra di S. Mathio de Rialto), վարձէ Դոմինիկոսի Տէօլետոյ ո. Պատուացի կոչուած Մկրտչի (Domenico Teoleto fò de Msr. Battista Padoan), տարուան մի համար (սկսեալ յ' 19 մարտի 1596); 132 դուկատի, ամեն երկու ամիս վճարելով մասն մասն, առանց ծախք ընելու իր հաշուին,

1. Ինչպէս այս խնդրոյ որպիսութիւնը մեր աչքէն վրիպած է, կ' երեւի թէ մեր ժամանակակից վենետ. Տասսինի (Giuseppe Tassini) հետաքննին Վենետական իրաց և տեղեաց (Curiosità Veneziane, Origini delle denominazioni stradali, ecc.) գրողին աչքէն ալ՝ վրիպեր է այս պանդոկիս հնութիւնը. վասն զի միայն 1740ին կ' իմացընէ ծանօթ ըլլալ, մինչ գրեթէ դար և կէս առաջ Հայ մի զայն ուրիշի վարձեր էր։

կամ ուրիշի վարձելու։ Այս բանիս երաշխաւ-ւոր կ՚ըլլան վարձողին եղբայրն Վանճելիստա (Աւետարանիչ) և այլք։

Յաջորդ տարին (1596) Մարկոսի ընդ Թէո-դորեան Գէորգայ սանսէրութեան և առեւ-տըրրի հաշիւնին կնքելն՝ արդէն նշանակած եմք (եր. 297)։ — Տարի մի վերջ (1597, հոկ. 19) յիշուի իբրև կնքահայր Ֆրանչիս-կոս Սէֆէր հայազգւոյ որդւոյն. հետեւեալ տարին (1598, յանուար 27) Անկիւրացի՝ Խոճըքազադէ որդի եղբօր կամ քեռ. Թովմայ պատրիարքի (տ. 335) կ՚ընդունի ի Մ. Մար-կոսէ՝ ասոր թողած ինչքը և 65 դուկատ, քիչ մ՚այլ մանր ստակ, և անդորրագիր կու տայ Մարկոսի. վկայք Պօղոս ո. Յովհ. Կեսա-րացւոյ, և Ղազար ո. Յովհ. Պարսկի։

Ինչուան մեր սահմանած Հայ Վենետաց Բ. Յեղանակին միացեալ տարիներում դար-ձեալ ծածկուի Մարկոս, և յաջորդին առա-ջին տասնամեկին մէջ աւելի յաճախ յայտնուի. ի դարագլուխն (1601, փեբր. 22) նոտարի առջև իրեն գործակատար կարգէ զՀաճի Յուսուֆ Թուրք, որուն յանձներ էր 20 փերթ Ջուխայ, 6 սնտուկ Սապոն, որ տանի ի Կ. Պոլիս՝ իր տիրոջ Գարա Միխայիլ Թուրքի, քանի մի կտոր չուխայ այլ ուրիշ Թուրքի մի. բայց նաև խորտակուեր էր ի Գորֆու,

տանողն ապաստաւոր էր. Մարկոս՝ գրէ ա-սար՝ որ ինչերն ի ձեռք ձգէ և հասուցընէ վե-րայգրելոց:

Ի սկզբան 1602 տարւոյ (փետր. 22) Գա-լոմէրէ ո. Դոսէն գործակալ կարգէ զնա, պա-հանջելու ի Ե Գիտնոց չորս տախտ կամ բեռ ցփսի, զոր բըռներ էին ի լազարէթին, նոյն-պէս և այն տեղ վախճանած Անկիւրացի Մուստաֆայի ինչերը: Դաւթի և գործոյն վկայ կ՚ըլլան Ճեանի ո. Նիկոլ՝ որ էր ի Մանաս-տըրէ Կ. Պօլսոյ (Manoster գրուած), և Նէ-կողոսէ ո. Յովհաննէս Հայ: Երկրորդ օր Տէմէ-նէ ո. Մարտոս և Պետրոս ո. Յովլիոսէ? Հայք վկայեն, որ Դաւթի առացուածք էին ցփսիքն: Նոյն օր յիշեալ Պետրոսի եղբայրն Մէլոնէ նոյնպէս գործակալ կարգէ զՄ. Մուրատ, իր † տիրոջ Մագստոսի 177 կարկեհան (Tur-chini) ականց տուփը պահանջելու ի Ե Գիտ-նոց: Այս խնդրոյ համար Հայք դիմեցին բար-ձրագոյն ատենի, որ պատուիրեց Ե Գիտնոց (113 քուէիւք ընդդէմ 6ի) տալ անոնց այդ ինչերը, նախ մաքսն և եղած ծախքերը վճարել տալով: Նոյն տարւոյն սեպտ. 3ին, Սիվրի-հիսարցի Կէրակոս ո. Դէնիսէ? (Donis) զՄու-րատեանս՝ հայր և որդի՝ գործակալ կարգէ Նօտարի առջեւ, որ իր առաջուան գործակա-լէն՝ Բաղտասարայ՝ ընդունին իր 16 բեռ վա-

ճառքն և անկիւրական Ստեւն և ցփսին, զորս սա բերէր գարամուսալ (տեսակ մի) Նաւով, պահանջելով զատոնք Նաւուն (Գուպաթ) ռայիսէն, որ կու գար ի Կ. Պօլսոյ. և երբ ծախէ Մուրատ՝ առնու այն գումարէն իր փոխ տուածն առ Կիրակոս, 44 դուկատ և 25 մաճառ ոսկի։ Վկայ կ՚ըլլան բանիս, Պօղոս Հայ վաճառական բնակեալ ի Ս. Յովհ. Բրագորա (Bra[illegible]ora) Թաղի, Անճելոյ ո. Սերովլեէ ատորի սանսէր։ — Դարձեալ քիչ մի վերջը (հոկտեմբերի 21ին), երկու Ջուղայեցիք՝ Գրէգոր ո. Մարտիրոսի և Գէորգ ո. Անտոնի, զործավար կարգեր են զՄ. Մուրատ և զորդին, պահանջելու ի Տոռնակուինչի (Tornaquinci) Փիորենցացի վաճառականաց բնակողաց ի Վենետիկ, իրենց քիչ օր առաջ ասոնց ծախած մետաքսին գինը։ Այս բանիս վկայ եղած են Տէրվիչի ո. Դանիէլ Ջուղայեցի, և Շահնշահ ո. Մարկոս Սեբաստացի։ — Քանի մ՚օր վերջ յիշեալ Դանիէլն նոյնպէս Նոտարի առջեւ գրութեամբ յանձնէ Մուրատեանց՝ պահանջել Պետրոս Յովհաննիսեան վենետ բոմբակագործէ (Bombaser) 13 հակ մանածի գինը. վկայք՝ Ղազար ո. Յովհաննէս, Յովհան ո. Երզնկացի Ղազարոս.

Քանի մի տարի վերջ յիշուի Մ. Մարկոս կնքահայր՝ իր մէկ անուանակցի (Մարկոսի)

դատեր, ի Ս. Մար. Խորատիկ Թաղի (1605, մայիս 1), նայնպէս և յաջորդ տարին (1606, նոյ. 12) Երեխայից անուանեալ տան մէջ ծնածի մի: — Վերջի թուականէս քանի մի ամիս ետեւ, փոխանակ նորածիններ կնքելու՝ Մ. Մուրատ իր կեանքը կնքելու մտածութիւնն ունեցեր է. հիւանդ յանկողնի (1607, փետր. 7ին), կանչելով (Հերոնիմ Բրինիս, Brinis) նոտարը, գրել տուեր է կտակը. յորում՝ նախ կ՚իմացընէ, որ աւելի առաջ այլ կտակ մի գրել տուեր է եղեր, և հիմայ զայն ոչինչ համարելով, այս նորովս ժառանգ սահմանէ իր Կարապետին կինը՝ մինչեւ ի մահը, յետոյ իրենց որդին Յակոբ. կու պատուիրէ, Դոմինիկեան Հայոց քով (ի Ս. Յովհ. — Պօղոս վանս քաղաքին) Եղ. Կարապետէն (որ հաւանօրէն Հայ է), առնուլ իր 70 դուկատ պահանջը, և իր հոգւոյն համար պատարագել տալ: Ուրիշ բարերարութեան տեղեաց՝ բան չի թողուր, որովհետեւ՝ արդէն կարողութեանս չափ տուած եմ, կ՚ըսէ. (ho fatto del ben de mia posta), և առանց հանդիսի կ՚ուզէ թաղուիլ:

Բայց այս անգամ այլ մահն հեռացեր է իրմէ չորս հինգ տարի այլ, և Մարկոս իր Յակովբ որդւոյն օգնութեամբ նորէն կ՚աշխատի Թուրքաց գործակալութեան և սան-

ռէրութեան. որոց կարեւոր ծառայութիւն մ'այլ կ'ընէ, ըստ գրութեան Նոտարի (յ' 8 օգոստ. 1608). Ռոճեր անուամբ անգղիացի նաւապետ մի՝ ի ծովու բռներ է՝ ատենօք Մէքքէի ղատի Եահեա էֆէնտիի դուստրը, Այիշէ խաթուն, անոր մայրը Մէրեմի Սաիքէրէ ? և երկու աղախինները՝ Նազլու և Զալքի ? (Zalke), զորս Ապտ՝ իւլամ անուամբ թուրք մի պահեր է ի Լիվոռնոյ. Ալմէլի Մէհէմմէտ ոմն Կ. Պօլսեցի՝ Ալեքս. Ֆագգա Վենետի և Տոռնաւկուինչի Աղեքսանդր Միլանցոյ ձեռքով՝ կ'ազատէ զանոնք և խաւրէ ի Վենետիկ առ Մարկոս. սա իր տան մէջ կու պահէ, յետոյ կու յանձնէ Խոճա Սէֆէր կոչուած Հայ Յովհաննու (որդւոյ Յովսեփայ), որ տանի ի Ռակուզա և տայ Հաճի Մէհմէտի, և իրմէ կ'առնու 1000 դուկատ՝ ի գին գերեհանութեան, զոր Սէֆէր (ի 14 յունիսի) յաւանդ դրեր էր, և կու խոստանայ՝ զգուշութեամբ խնամելով տանիլ ի Կ. Պօլիս առ Հաճի Մէհմէտ։ — Նոյն օր Յակովբ ո. Մարկոսի կու ստորագրէ ուրիշ իտալացի և թուրք գերեաց փոխադարձ ազատութեան համար։

Հետեւեալ տարին (1609, սեպ. 25) Հասան չէլէպի՝ Ադրիանուպօլսեցի թուրք մի՝ գործակալ կարգէ զՄ. Մուրատ, թեսաղոնիկեցի Ծաննի Հոռմէն պահանջելու իր 45 ծեգ-

դին ոսկին և վաճառքը, զոր երեք ամիս ա-
ռաջ յանձներ էր անոր, ի տօնավաճառքին
Սոնեայ (Sogne) յԱլբանիա։ — Երկու ա-
միս վերջը (Նոյեմ. 9) Մ. Մարկոս՝ Ցոլհան-
նաս ո. Մելքոնէ (Marchio) հետ նստարի կու
յանձնեն՝ համազգի Մանուէլ կողմէն՝ տար
ընչից բեռնագիրը (3 ծրար ակնոյ, 1600
դանկատ, 3 վառիլ (տակառ) և 6 անտուկ
ուրիշ վաճառեղէն, զոր գրեր էր՝ յԱսորիս
խաւրելու համար՝ վենետկեցի փոքր նաւու մի
մէջ, որոյ գրագիրն այլ տուեր էր այդ ընդու-
նելութեան գիրը. իսկ նաւն Բուլիոյ Ս. Հրեշ-
տակ (S. Angelo) լերին ծովեզերաց մօտ
խորտակուեր էր։ — Նոյն օրեր (սեպտ. 19)
երեք Հայ Ջուղայեցի վաճառականք, Գալա-
ղէկ ո. Փափազ Յակոյ?, Ողլաթ Խօճա ո.
Ատէբէկէ (Odibech), միւսն այլ երեց մի՝ Տէր
Գաբրիէլ ո. Անդրէէ, ի Կ. Պօլսոյ եկած, ձի-
րարտի սանսէրի հետ զՄ. Մարկոս այլ գոր-
ծավար կարգեն, վկայելու և գրաւելու 31
հակ իրենց մետաքսը, որ ոչ էր ոչ Թուրքի
ոչ Հրէի և ոչ այլոյ. վկայեն բանիս Բե-
նեդէկտոս վաճառականն ո. Ցակովբայ Ասորւոյ
և իտալացիք ոմանք։

Վերջին գործ Մարկոսի՝ որդւոյն ընկերու-
թեամբ յիշուի ի 1611 սեպտ. 7։ Խաչատուրէ
Դաւիթ Ջուղայեցւոյ ո. Աւետէ՝ իրեն գործա-

կալ դրեր էր Տօնատոյ կոչուած տարի սանտէրը, և սա տուեր էր անոր պարտական Էմին Հայէն՝ $443\,^{3}/_{4}$ դուկատ՝ կամ ռէալ, որ էր գին բերած Խաչնդեղին. հիմայ զՄարկոս կարգէ գործավար, և սա ընդունի ի Տոնատոյէ այդ գումարը, ի բաց հանելով 34 դուկատ եղած ծախքն, և առ Էմին տրուած 50 դուկատը. և որովհետև գործակալութեան թղթոյն մէջ մոռացուեր է Դաւթի որդի գրելն զԱւետիք, Մ. Մարկոսի որդին Յակովբ խոստանայ վկայել՝ որ այնպէս է։ Այս վերջին բանս կարծես գուշակել տայ՝ որ Մարկոս յօգներ է, այնուհետև իր որդին պիտի գործէ. և յիրաւի յաջորդ տարին (1612) վախճաներ է Մ. Մուրատ, ի Ս. Մար. Խորոտիկ թաղի (կարծեմ). եթէ Նոր կտակ մ՚այլ գրած է թէ ոչ՝ չեմ գտած, և ոչ այլ մահուան օրն և թաղումն։ Նոյնպէս և ոչ շատ յիշատակ իր որդւոյն Յակոբայ. մէկն է յամի 1623 (յուլ. 10), վկայելն որ Քէրէմ ո. Տօնադէոյի բնակէր ի Հայոց տան, 6 կամ 7 տարի առաջ Թուրքաց գերի ըլլալով՝ փախեր եկեր էր։ — Յամին 1624 (օգոս. 9) վկայ և թարգման կ՚ըլլայ Մարկոսի որդի Պետրոսի մի՝ ուրիշ Մարկոս Մուրատի խնդրոյ մէջ. այս ետքինս Հրէից ռաբբիին Իսահակ որդին բանտել տուեր էր, իբրև գող իր գոհարաց։

նոյն տարին յիշուի նաև իբր փերեզակ կառա-ւավաճառ ոսկի—արծաթ նշանաւ ի Ս. Մարկոս հրապարակի։ — Յակոբ յիշուած է և յամի 1639. Թերևս նոյն ինքն է և Մարկոսի ս. Յակոբն՝ որ յամի 1650 շատ ազգայնոց հետ աղերս մի տուած են դքսին։ Շատ հաւանական է որ Դիւանաց մէջ պիտի գտուին դեռ ուրիշ յիշատակք այս հայր և որդի Մուրատեանց։

ԺԲ. Մարկոս ս. Յովհաննէս Շահնշահ, Սեբաստացի։ — Վերնոց նման և սա շատ անգամ յիշուած պիտի ըլլայ. ինձ հանդիպած յիշատակքն իբրև 25 տարիներու միջոց են (1584-608)։ Յիշուի իր եղբայրն այլ Ղուկաս անուամբ։ Հօրերնուն անունէն (Շահնշահ) գուշակուի որ ազնուական տոհմէ են, և ո՛ գիտէ թէ յարքայական զարմէ Սենեքերիմեանց Արծրունեաց համարուած չըլլան։ Դիւանաց մէջ իտալացիք պէսպէս գրած են այդ անունը, Sainsa, Saise, Ciancia, Iansa, Chianchia, Chianssa, Jansa. Առաջին յիշատակ գտածս է 1584 տարւոյ՝ (յունիս 30). որով կ՚իմացուի որ նա հինգ տակառ դանակ և ածելի և սոնց նմաններ լեցուցած՝ դրեր է Balbiana կոչուած նաւու վրայ, դրկելու յարևելս. բայց դիտմամբ փոխանակ իր անուան՝ զանունք

գրեր է յանուն Եանի Զանդացւոյ․ հիմայ հարկ կ՚ըլլայ որ իրեն ըլլալուն վկայեն երդմամբ առաջի նօտարի, Յակովբ Մէրտինցին, Անտոն Անեցի ո․ Թուրազայ (Turaz, գուցէ Թորոս), և Վասիլ Գաբրիել պրուսացի․ յետինս Թուի թէ ծանօթ չըլլալով ի Վենետիկ՝ ծանօթ Վալի որդի վաճառականն Աղեքսանդր Արդան՝ վկայէ զինքը ճանչնալ։

Երկրորդ յիշատակս (ըստ կարգի ժամանակի) կ՚իմանամք, որ Մարկոս կանամբրի է, կինն էր Ադրիանա կամ Անդրիանա, դուստր Ֆրանչ․ Tiepolo, ազնուական ցեղէ․ որոց որդին Յակոբ Ղազար մկրտուի ի 15 մարտի, 1592․ կնքահայր կ՚ըլլայ ծանօթ Գէորգ ո․ Յովհաննու (290․ 389)․ սոսր բնակութեան տեղն է ի Ս․ Ղուկաս թաղի, իսկ Ծահնչահի ի Ս․ Յով․ Բրագորա, Calle del Forno (փռան բակփողոց) կոչուած կողմը։ Երկրորդ որդին Գաւանդուր (Ventura) Ֆրանչեսկոս կնքուած է յամին 1598, սեպտ․ 13, կնքահայր եղած է Մկրտիչ Պարսկահայ․ — երրորդ, աղջիկ մի Մագդաղենէ Մարգարիտա, մկրտուած ի 29 յուլ․ 1602, որոյ կնքահայր եղած է Ֆր․ Պարպինի սանուէր Թուրքաց․ — չորրորդ, աղջիկ մ՚այլ՝ Վենետկուհի Յովհաննա, մկրտուած յ՚ 2 մարտի, 1604, ի տան, և նոյն օր մեռած, առանց կնքահօր․ — հինգե-

րորդ, աղջիկ մ՚ այլ, Յուլիա Անդրէանա, որոյ կնքահայր եղեր է (1 մայիս, 1605) Մարկոս Մուրատ՝ բնակողն ի Ս. Մար. Խորոտիկ և ոչ ս. Յակոբայ. և † 27 մարտի 1608, ծաղկի հիւանդութեամբ։ Այս երկու աղջկանց խառն անուամբ վեցերորդ մի՝ Յուլիա Անդրէանա, մկրտ. ի 26 մայիսի, 1608, որոյ կնքահայրն է սանսէր Յովհ. Անտոն Գէորգ (Zorzi), որ Թուրի իտալացի ([1]).

Նոտարական գրուածոց մէջ յիշուի Մ. Շահնշահ ի 23 օգոստ. 1593, իբրեւ վկայ և ճանչցող Բարսղի (Baser) որդի Նախճաւանցի Պօղոսի, որ 110 դուկատ փոխ տուեր էր առ Տէրան Ջուղայեցի, և հիմայ զայս յետ առնըլու համար՝ գործավար կարգէ զՄարկոս Մուրատ սանսէր. վկայք են և Գէորգ տընպահն Հայոց և Մելքոն ս. Յովհաննու վաճառականն։

1. Այսոնցմէ առաջ (1588, մարտ 20) ուրիշ թաղի մէջ (Ս. Մար. Խորոտիկ) նշանակուած է մկրտութիւն դստեր Հայ Մարկոսի մի, որոյ ուրիշ անուն և մականուն չէ գրուած. բայց կնոջ անունն ըլլալով նոյն, աղջըկանն այլ վերջիններուն նման Յուլիա կոչուիլն (Ruosa Iulia), հաւանական կ՚ ընեն թէ հայրն ըլլայ նոյն Շահնշահ Մարկոսն, այն ատեն այս տեղ բնակած։ Այս աղջիկն պսակուեր է Պօղոսի որդի Յովհաննու ազգայնոյ հետ, յամի 1605–6։

1595, հոկտ. 24. Շահնշահ իրեն յատուկ գործակալ կամ սպասաւոր մի ունեցեր է Պօղոս Պօլչ ո. Ցովհ., իրեն միայն բնակութիւն, կերակուր և զգեստ տալով. հիմայ Նոտարի առջեւ խոստանայ որ նոյնպէս պահէ և պահեն զնա իր ժառանգներն այլ. իսկ եթէ ասոնք ուզեն տունէն դուրս հանել զնա, պարտական ըլլան ապրուստը հոգալու: Վկայ պարսկահայն Մկրտիչ և ասորին կամ Սուրիան Տոնատոյ:

1597, ապրիլ 17. Վաճառականք ոմանք իտալացիք կ'ընդունին ի Մ. Շահնշահէ 664 դուկատ, զորութեամբ փոխանակագրի, զոր իր աներն Յր. Դիեբոլոյ ստորագրած էր ի Զմիւռնիա, ընդունելով զգումարն ի Լիոն Կերակոսէ, և գրաւ դնելով (ի 16 օգոս. 1596) 20 բեռ բամբակ և կապոց մի կապերտի, զորս (Ponte անուն) նաւով ղրկեր ի Վենետիկ, և նաւն հասնելէն 15 օր վերջը՝ պէտք էր վճարել: Այս Նոտարական գրուածի մէջ յիշուի, որ այն ատեն Շահնշահ բնակէր ի Ս. Մարինէ թաղի, մօտ ի Ս. Մար. Խորոտիկն, և թէ ի հրապարակի Ս. Մարկոսի ունէր վաճառատեղան կամ խանութ. անկէ տարի մ'առաջ այլ (1596, սեպտ. 9), վկայուած է այս տեղ բնակիլն, ի տունս Կոռնելիոյ տոհմի, (in domibus de Chà Coruelio), այն

օր՝ որ նա երկու Յունաց դաշանց վկայ ե-ղեր էր։

1598 (մարտ 6). յիշուի Մարկոս իբրեւ Թարգման Շիրվանցի Հէմոի Մէհէմմէտ պարսկի, որով կ՚իմացուի պարսկերէն լեզու գիտնալն։

1599, յուլիս. — Վկայ կ՚ըլլայ Մ. Շահնշահ առաջի նոտարի, որ Խաչատուր (Cazadur) որդի Ամդեցի Գարաճայի, վճարեց իր համազգի Պօլէ որդի Սեֆէրին՝ ոսկի դրամով 90 լիրա, որ էր մնացորդ անոր վարձուց, և այլ առնելիք կամ պահանջ չունի սա։

1602. Հոկտ. — Յակոբեան Մուրատեանց վրայ գրածնուս մէջ (տ. 407) նշանակուած է այն օր Մ. Շահնշահի վկայութիւն մ՚այլ, Ջուղայեցւոց խնդրոյ մէջ։ — Մինչեւ ի 1612 թուական հանդիպած եմ Շահնշահ Մարկոսի գործոց յիշատակաց. այս ետքի տարին նոտարի գրել տուած է իր Ս. Մարկոսի հրապարակին քով խանութին մէջ կտակեղինաց թիւը, որոց բաժանորդն իր փեսայն Մելքոն ս. Թօխադցի Փէլոռի, քանի մ՚ամիս առաջ † էր ի Հռովմ։ Գուցէ յիշուած ըլլայ անկէ վերջ այլ, ինչպէս կըրնայ կարծուիլ իր անդրանկան՝ Յակովբայ՝ յիշուած ատեն, յամի 1623, ս. Մարկոսի Շահնշահի կոչուիլն, առանց զ.m գրուելու, որ նշանակէ

հօրն մեռած ըլլալը, իսկ առանց աստր գուշակուի որ հայրն ողջ է։ Այս յիշատակս է Ցակոբրայ վկայութիւնն Վարդան Մանգին եպիսկոպոսի համար (տ. 330). իսկ յամի 1626 և 1630 յիշուի Ցակոբ Շահնշ. ո. † գ.m Մարկոսի իբրև կտաւավաճառ (Tellariol)։

Իսկ եղբայրն Մարկոսի Ղուշոր՝ Թուի առաջին անգամ յիշուած սոսկ Ղազար անուամբ, յամի 1585, ի կտակի Մուրոէլոսէ որդւոյ Կարապետի Ուռհայեցւոյ, բնակողի ի Ս. Մար. Խորոտիկն, որ 30 դուկատի արժողութեամբ ինչք տուեր է առ սա (Ղազար) որ երթայ ծախէ ի Թուրքաստան. 100 լիրայ այլ տուեր է առ Մարկոս Մուրատ Սեբաստացի (Շահնշահն). ուսկից գուշակուի թէ Ղազար աստր եղբայրն էր։ Դարձեալ, իրենց բնակած թաղին մէջ ի Ս. Ցովհ. Բրագորա, ուր նշանակուած են ծնունդք զաւակաց Մարկոսի և ոմանց մահն, նոյն մեռելագրոց մէջ նշանակուած է և Ղազարայ Հայոյ մահն, 8 դեկտ. 1627 ամի, 75 տարուան. որոյ կինն այլ Զապել (Isabella) ամիս մի առաջ վախճաներ է (22 Նոյեմ.) չըգողութեամբ, 88 տարուան։

ԺԳ. Մնջոնէ Գուրոբէն կամ Պարսկահայ, ո. Ջուղայոյ։ — Քանի՞ անգամ յիշուեցաւ

սա, և յատկապէս (յեր. 362) Հայոց տընպահ եղած առեն՝ անոնց քահանայից և մատրան վրայ տուած ծանօթութեամբք. յորում յայտնապէս ըսած է, թէ ինքն՝ Պարսիկ է, և անոնց լեզուն և սովորութիւնը չի գիտեր: Կըրնայ ի պարսիկ կրօնքէ դարձեալ ըլլալ ի քրիստոնէութիւն, բայց հօր անունն այլ քրիստոնէական ըլլալով՝ կըրնայ և Պարսկահայ ըլլալ, հին Ջուղայի աւերածէն առաջ ի Պարսկաստան ծնեալ և բնակեալ: Ինչ այլ ըլլայ՝ իր գործողութիւնքն ի Վենետիկ, և բնակութիւնն ու պահպանութիւն տանն Հայոց, և անոնց երբեմն կնքահայր ըլլալն, զինքն այլ իրենց ընտանութեան և պատմութեան վերաբերեն, թէ և արինակից և խնամի այլ չըլլայ: Իր մահուան թուականն և իր կնոջ և զաւակաց յիշատակք՝ երեւցընեն թէ շատ տարի առաջ եկեր է ի Վենետիկ, և երկու անգամ ամուսնացեր, թէ և մեզի ծանօթանայ ի դիւանս՝ միայն ի միջոցի 25 տարիներու (1584–608):

Առաջին յիշատակն է յամին 1584 (հոկ. 8), կնքահայր ըլլալն որդւոյ Հերոնիմ Հայոյ և կնոջն Գիարայ, ուրիշ Յովհաննէս անուամբ կնքահօր հետ. (թէ սա՝ թէ Հերոնիմ մկրտագրոց մէջ երբեմն առանձինն Armeno գըրուած են, երբեմն Armeni, որ կըրնար մակ-

անուն կարծուիլ)։ Շատ տարի վերջը (1598), կնքահայր եղած է իր գործակից Մ. Մարկոս Շահնշահի Գալուստ որդւոյն։ Քաղաքական գործոց մէջ այլ առաջին անգամ վաճառական կոչմամբ յիշուի ի սկիզբն 1585 տարւոյ (1 մարտի), երբ վկայէ, որ Յարութեան որդի Դոմէնիկոս Ադոնա վաճառակից էր Սիմոնէ Թուրաղայ, ինչպէս և յետոյ պիտի յիշուի։ — Քանի մի տարի վերջ (1588, մարտ 21) Մէրջէն Պարսիկ, (Mirinus Turcho Persianus q.m Asange) գործավար կարգէ զՄկրտիչ՝ իր տուած 30 դուկատ փոխը պահանջելու Յակոբ Iacolato կոչուած անձէ։ Բարեկրդցի Ֆէրուհէ (Feruch) ո. Ստեփանոս յամի 1595 (հոկ. 23). իրեն գործակալ կ՚ընտրէ զՄկըրտիչ, որ ի մաքսատան եղած իր չորս բեռ Բամբակը հանէ և ծախէ։ Այս բանիս վկայ կ՚ըլլայ Գուրանկէօղ ո. Մարկոսէ, անշուշտ Անկիւրացին։

Իսկ իր սանսէրութեան և վաճառականութեան գործոց՝ ընկեր ունեցեր է Մկրտիչ շատ անգամ Հայոց գործոց մէջ յիշուած իբր Ասորի՝ Քրիստափոր Տոնատոյ մէկ մի, որուն Ասորի՞ թէ Հայ–ասորի, թէ իտալացի ըլլալը՝ չեմ կրնար վճռել. որովհետեւ Surian մականուամբ ընիկ վենետաց այլ կան, և սա միշտ կ՚անուանի Cristoforo q.m Donado Su-

rian. Արդ, ասոր հետ ընկերակցութեանց գործոց և շահուց հաշիւները քննելով և հաւասարելով, Նոտարի առջեւ կու կնքեն իրենց առնելիք տալիքն և ընկերութիւնը, յամի 1596, օգոս. 28. Թէպէտ եօթն տարի վերջ այլ (1603, ապրիլ 28) նոյնպէս Նոտարի առջեւ Մկրտիչ անդորրագիր կու տայ Տոնատոյի, որ ընդունեցաւ իրմէ 100 դուկատ պահանջը. երկուքն այլ այս տեղ Հասարակ սանսէր կոչուին: — Նոյնպէս յետ քանի մի տարիներու (1608, մարտ 26) ուրիշ երկու Հայ վաճառականաց հետ, մին վերոյիշեալ Ղազարն Շահնշահ (417), միւսն Պօղոս Կէտրոյէ ո. Յովհաննու, վերջացընէ իր ընկերակցութիւնը, ընդունելով անոնցմէ իր մնացեալ պահանջը՝ 200 դուկատ. այս մուրհակս Նոտարի առջեւ գրուած և ստորագրուած է, բայց ի Տան Հայոց, որոյ պահապանն էր այն ատեն, 13 տարիէ ի վեր:

Յիշած եմք արդէն (տ. 200) որ յետ Գէորգայ ո. Յովհաննու՝ սա եղած է Հայոց տընպահ. բայց երկուսին միջոց քանի մի տարի անցեր էր, և այն միջոցին՝ եթէ կար ուրիշ տնպահ և թէ ոչ, շատ խառնակութիւն եղած էր ի Տանն, և օտարազգիք մտեր էին բնակելու, հակառակ կտակի տունը պարգեւողին (Մարկոսի Ծիանի): Հիմայ (1595, օգոս.

28) խնամակալքն այդ տան՝ մեծ պաշտօնեայք ներքին քաղաքին (Procuratori di Citra), հրատարակեցին նոր տնպահ ընտրել, և խնդրողաց մէջ յարմարագոյն գտնելով քուէիւք ընտրեցին զՄկրտիչ, պատուիրելով որ բնակի ի տանն և օտարազգի չընդունի. (Sii obbligato habitar in la detta casa, et dar allogiamento alli Armeni soli, et non ad altri, che sono et aggiongeranno in questa città). և եթէ օտար անձ ընդունի, զրկուի հանուի Տնպահն իր պաշտօնէն, (dando alloggiamento ad altri, resti privo di esso carico). Մկրտիչ հաւատարիմ գտուած է իր պաշտաման մէջ մինչեւ ի մահն. և իր այն ետքի տարին տուած տեղեկութենէն, Մարգարեան Յակոբ երիցու առթիւ (տ. 362–3) կ՚երեւի իր խոհականութիւնն. և այս գրեթէ իր կենաց վերջին և կարեւոր յիշատակն է (1608, մայ. 14). Անկէ ճիշտ տարի մ՚առաջ (1607, մայ. 10) յիշուի իր վերջին քաղաքական գործը (ըստ իմ ծանօթութեան), իր հին ընկերակից Տօնատոյի և Ջուղայեցի Ամուրատի խնդրոյ մէջ, Նորէս Թարգմանին հետ իրաւարար ըլլալն, որպէս զի ատենական դատաստանի չերթան. որով կ՚իմացուի եւս իր իրաւախոհ յարգելի անձն ըլլալն։

Մկրտչի մեզի ծանօթ ընտանեկան յիշատակաց մէկն է իր կնոջ Իզապէլլայ (Զապէլ կամ Եղիսաբեթ) մահն, յամի 1588, (յանուար 13), երիտասարդ հասակաւ, 28 տարուան, երեք ամիս հիւանդութեամբ ջերմի։ Որո՛յ դուստր կամ ո՛ր տանէ ըլլալը՝ չեմ գտած. մեռեր է Ս. Անտոնինոս ըսուած թաղին մէջ, ուր այն ատեն բնակի եղեր Մկըրտիչ, և թաղուեր է ի Ս. Գեմինիանոս եկեղեցւոջ։ Հաւանօրէն սա առաջին կինն է. իսկ երկրորդն անուամբ այլ անծանօթ, նոյնպէս հոն թաղուեր է, ուր և իրենց մէկ դուստրն, և ուր ինքն Մկրտիչ այլ ուզեր է թաղուիլ, ըստ կտակին՝ որ յ՚ 31 յանուարի, 1599. երբ ծանր հարբուղխով նեղուած՝ գնացեր է ի տուն իր Իզապէլլայ կնոջ հօրաքեռ Զէչիլիա այրի տիկնոջ, Ս. Հրեշտակ կոչուած թաղին մէջ (Contrà de S. Anzolo), և կանչելով գնոտարն (Ովրատ Տասկա, Horatio Tasca) գրել տուեր է կտակը. յորում կ՚իմացընէ վերի ըսուածներէն զատ, որ կրօնաւոր որդի մի ունի Հռեմիճ անուն (1), Fra Remigio, ի կարգէ Շնորհաց Ս. Աստուա-

1. Սա առաջին կամ հնագոյն է յարմանաւոր եկեղեցականս, կրօնաւորս և հաւատաւորս Հայոց, որք յԳ Ցեղանեակին, մանաւանդ յԺԸ դարու ընծայեցան Վենետկոյ և Իտալիոյ։

ծաձնի (dell' ordine di S. Maria di Gratia)[1]. Այս տունն Հռեմիգ ի Հռովմ է եղեր, ի Ս. Հերոնիմոս կոչուած վանս. տասը կտակէ հայրն 50 դուկատ. իսկ միւս բոլոր ստացուածները թողու իր Կոփոչենն դստեր, որ վերոյիշեալ Ջեչիլիայի խնամոց յանձնուած է, և թէ ամուսնանայ՝ թէ կուսակրօն ըլլայ, ինքն է իր ժառանգն։ Զնոյն Ջեչիլիա և զաւագերէցն Ս. Հրեշտակ եկեղեցւոյ (Մարկ-Անտոն) կարգէ կտակակատար, և կ՚իմացընէ՝ որ Հայոց տան մէջ են իր քանի մի կտոր կարասիքն. և դարձեալ, ունի գետնի երես մի 300 դուկատի, զոր վարձեր է (Ֆերրերի Ալեքսանդրի) 6 % շահով, և ի գրաւ դրած անոր մօրը երկու տուներն (ի Ս. Անտոնին). պատուիրէ որ տեղւոյն շահն այլ՝ գլուխն այլ առնուն, և անկէ հանեն որդւոյն համար սահմանուած 50 դուկատը, մնացածն այլ՝ աղջըկանը. իսկ եթէ յետինս մեռնի նախ քան զամուսնանալ կամ ի կուսանոց երթալ, 100 դուկատ առնու Ջեչիլիա, մնացեալն առնու

1. Այս տեղս Վեննետկոյ Ծիւտեկկա կոչուած և լայն ջրանցքով զատուած մասին քով նոր տանն ջըրէ բարձրացած գետին մ՚է, ուր բարեպաշտք ոմանք յանուն Տիրամօր եկեղեցի և առաջ անապատ կամ ճգնարան մի շինելով, յետոյ վանք և նոր կրօնք մի ձեւացաւ, թէ կուսանաց և թէ արանց։

Հռեմիգ. բայց եթէ ասոր վանաց միաբանք՝ ուզեն քննել և աւելի բան մի պահանջել, ամէն բանէ զրկուի Հռեմիգ, և ինչքն տըրւին ուրիշ բարերարութեան տեղւոյ մի. կտակկատարքն այլ՝ իրենց ծախուց և Կատարինէի դարմանոյ համար՝ պէտք եղածն առնուն. և թէ իրենցմէ մէկն մեռնի յառաջ քան Կատարինէի վիճակին որոշումն, ուրիշ մի ընտրուի: Բարերարութեան տեղեաց ողորմութիւն տալն այլ՝ թող իրենք կտակկատարքն սահմանեն, կ՚ըսէ:

Վերի այլեւայլ յիշատակներէն իմացուեցաւ, որ Մկրտիչ բժշկուեր է այդ հիւանդութենէ, և տասն տարի այլ ապրեր և գործեր է, մինչեւ յառաջին օր դեկտ. ամսոյ 1608ին, յորում վախճաներ է ի Տան Հայոց, 15 օր ջերմով հիւանդացեալ, իբրեւ 60 տարուան, և թաղուեր է ի Ս. Յուլիան. Հաւանելի է թէ Նոր կտակ մ՚այլ գրել տուած ըլլայ. բայց ոչ այդ և ոչ երկու զաւակաց բաղդն կամ վախճանն յայտնուած է մեզ: Աւելի այլ հաւանելի է, թէ դեռ շատ ուրիշ յիշատակներ անծանօթ մնան ի դիւանս՝ այսպիսի գործունեայ վաճառականի, սանսէրի և տնպահի Հայոց:

Բաւական համարելով այսչափս Հայ-Վե-

նետաց Բ Յեղանակի սանսէրից համար, յիշենք միայն յանուանէ քանի մի Փեշեշէի այլ, այսպէս անուանելով զանոնք՝ որ Ս. Մարկոսի Հրապարակին մէջ (յատուկ արտօնութեամբ տէրութեան), շարժուն խանութ դընէին կամ սեղանատախտ (Banca). ասոր համար ի Թուրքահայոց Գ. Յեղանակին Պոնգ:Չէ կոչուին, և վաճառքնին ափռելով կամ շարելով սեղանին վրայ՝ ծախէին։ Ինչուան ի վերջ Հասարակապետութեան և ի վերջ ԺԸ դարուն եղած են Հայ փերեզիկք. զորս Վենետք կոչեն Վաճառական ի վերայ Հրապարակի Ս. Մարկոսի. Mercatores super Plateam S.i Marci. – Mercanti sopra la Piazza di S. Marco. կամ Venditores mercium super Plateam S. Marci.-Vende-merci sopra la Piazza di S. Marco. Այսպիսիք են, արդէն մեզի ծանօթք՝ Մարկոսն Շահնշահ, յիշուած ի 1597. – Յակոբն ո. Մարկոսի. – ուրիշ Մարկոս մի a Vitalis? կոչուած, նոյնպէս ի 1597. — Ղազար ո. Յովհաննու, Ասորի գրուած, 1600. – Բենէտ Սարգիսն բայց Հայ և ո. Յակովբայ կոչուած, 1603. – Սիմոն ո. Յովսէփայ, 1603. – Գէորգ Աստէլ, 1608։ Յիշենք և զԱնճելոյ (1) ո. Սերովբէի Տրա-

1. Այդ իտալացի անուամբ՝ որ նշանակէ Հրեշտակ, յիշուած է և ուրիշ հին Հայ մի, Anzolo Armenio,

պօլսեցի Աստրի, որ 1589ին խնդրած է սան․ տէր ըլլալ, և շատ հեղ Հայոց գործոց վկայ եղած է․ ինչպէս, յամի 1594, Տէր Յակով․ բայ, և յամին 1602, Կիրակոսի և Գուլպաթ Նաւապետի, և այլն։

† յամի 1572 ի տան Հայոց, 65 տարուան։ — Նոյն տեղ և ամէնի տառով (1553) յիշուի և Աղայես Հայ մի։



# ԺԶ.

## ՅՈՒՇԱՏԱԿՔ ԺԶ ԴԱՐՈՒ ՀԱՅ-ՎԵՆԵՏԱՑ

Մինչեւ հիմայ Հայ–Վենետաց համար գըրուածէն յայտնի եղաւ՝ որ ասոնց յարընչութեան գլխաւոր և նախնական պատճառն եղած և տեւած է ամբողջ 600 տարի (ԺԲ–ԺԸ դարք) վաճառականութիւնն. և ասոր պատճառաւ կան եկածք և ծնածք ի Վենետիկ, նա և այնպիսիք՝ որ ոչ վաճառականութեամբ՝ այլ ուրիշ գործով մի նշանաւոր եղած են հոն, ինչպէս որ տեսանք այս Բ Ցեղանակիս յիշատակաց ԺԱ–Բ գլխոց մէջ. որոց վրայ աւելցուցինք յետագայից մէջ տուկ վաճառականութեան դիտմամբ եկող և գործող քանի մի. անձինք, կամ անոնց յատուկ գործոց և բնակութեան գիտելիքը. (գլ. ԺԴ. ԺԵ)։ Ասոնք մէկ նշոյլ կամ ճաշակ մի կըրնան ըսուիլ այն բազմութեան վաճառականաց՝ որ ի Մեծ և ի Փոքր Հայոց եկած են ի Վենետիկ այս Ցեղանակիս երկրորդ (ԺԶ) դարուն, և աւելի ասոր այլ կիսէն ետեւ. որք հետզհետէ աւելցեր են Գ Ցեղանակի առաջին (ԺԷ) դարուն մէջ. այնպէս որ եթէ

ԺԶ դարու մէջ հարիւրաւոր յիշուին՝ յա-
ջորդին մէջ կըրնայ հազարաւոր ըսուիլ։ Այս
վերջիններս թողլով, ատաջնոց այլ ամենուն
անուանքն և աննշան գործ մի յիշել, եթէ
կարելի այլ էր, այլ ոչ կարեւոր. տակայն և
իբր ոչ անօգուտ հետաքննութեան բան՝ ան-
պատշաճ չեմ համարիր յիշել քիչ շատ ա-
նունցմէ, (որոց ոմանք արդէն որ և է կերպով
յիշուած են), ըստ կարի՝ ժամանակագրութեան
և յիշատակաց մերձաւորութեան կարգ մի
պահելով։

Ցառաջ քան զանձինս՝ յիշեցընեմք համա-
ռօտիւ վաճառականաց հայրենիքը կամ ուս-
կից գալը, և բերքերնին։ Նախընթաց (Ա)
Ցեղանակին մէջ սակաւաթիւ ի Վենետիկ ե-
կող Հայք՝ գրեթէ ամենքն ի Սիսուանայ են
կամ Կիլիկեցի. Երկրորդիս մէջ հազիւ այն
կողմէն եկողք, այլ շատն յարեւմտեան Փոքր
Ասիոյ և յԱսորւոց երկրէ, սակաւք ի բուն
և Մեծ Հայոց, ի բաց առեալ զՋուղայեցիս,
զոր արդէն տեսանք, որոց զուգակից են և
Նախճաւանէ եկողք և Ղափանցիք։ Ի Փոքր
Ասիոյ եկողաց բազմաթիւ երեւին Անկիւրացիք,
յայտ է որ իրենց երկրի համբաւաւոր և ըն-
տիր Տիֆթիկն բերելով. իրենց մերձաւոր տե-
ղիք՝ Ստանոզ, Սիվրիհիսար, և ոչ շատ հեռի
Պրուսա այլ ունին իրենց ներկայացուցիչ. ո-

րոց մերձաւոր համարելի է և ամենուն տիրողն Կ. Պոլիս: Երկրորդ բազմաթիւ և հարուստ վաճառականութեան տեղիք են յԱսորիս, Հալէպ, Մէրտին, որոց մերձաւորք այլ յիշուին Ուռհա, Տրէպոլիս, Հըսնքէյֆ, և առանց յատուկ տեղւոյ յիշուած Քաղդէացւոց և Ասորեստ. աւելի հեռուէն Պարսկաստանայ: Իսկ մեր հին վաճառականութեան և Հայ-Վենետաց գործակցութեան կենդրոնէն՝ դեռ Սիս, Այաս, Ադանա, Գարաման. ասոր հիւսիսային կողմէն՝ մեծագոյն քաղաքն Կեսարիա. արեւելեան կամ Եփրատացւոց կողմէն՝ Հռոմկլայ, Կարկառ, Արղնի, և միւս մեծ քաղաքն՝ Ամիդ (Տիարպէքիր): Իսկ ի Մեծ Հայոց տեղիք վաճառաբերք կամ վաճառահանք, Կարին, Երզնկա, Բաղէշ, Բաբերդ. որոց հաւաստր և աւելի նշանաւորն Վան՝ այս Ցեղանակիս մէջ չերեւիր ի հրապարակի Ս. Մարկոսի, եթէ աչքէս չէ վրիպած: — Նկատմամբ բերոց կամ նիւթոց վաճառականութեան՝ յիշած ենք Ա Ցեղանակին մէջ (եր. 51–4). այս Բ Ցեղանակիս մէջ այլ՝ մասամբ նոյն են բերուածքն, և ամենէն աւելի Մետաքս և Ցփոխ. սա յարեւմտեան Փոքր Ասիոյ, միւսն յարեւելեան Հայոց և ի Պարսից. իսկ ի միջնաշխարհէն Հայոց՝ իր հռչակեալ խաշնորեղն: Ի Վենետկոյ հանած բերոց

մէջ գլխաւորքն են Աղաչեղէնդ և Ոսլանդ, և Կոբէլու գործիք։

Ցայտնի յիշատակք վաճառականաց՝ դարուս (ԺԶ) երկրորդ քառորդէն կու սկսին. անկէ առաջ յամի 1522 (սեպտ. 27), Վենետկոյ վաճառականութեան պաշտօնէից վճիռ մի պատուիրելով Ասորւոց կողմէն եկողներուն՝ որ իրենց վաճառոց չափն ու տեսակը ցուցընեն իրենց տեղում գտուած Վենետկոյ տէրութեան գունցին կամ երեսփոխանին, տեղեաց մէջ առաջին գրէ Jaza, որ մեր սըրտառուչ Այասը հնչեցընէ, յետ նախընթաց դարուն և ապագայից լռութեան։ Ստուգիւ Այաս էր՝ թէ ոչ. – անունն անգամ կ՚արժէ մեզ։ – Վաճառոց յայտարարութիւնն ի հարկէ անոնց համեմատ գին և նեհ (tariffe) սահմանելու համար էր. այս բանս շատ անգամ եղած է Վենետկոյ տէրութեան կողմանէ՝ իրենց պաշտօնէից և գունցից ձեռօք. այս եաքիններէս Պետրոս Մոլին գունցն ի Հալէպ, յամի 1534, քննութեամբ երեք ճանաչողաց՝ սահմանեց նեհ մի. զոր քանի մի տարի վերջ (1537, մարտ 5) տէրութեան պաշտօնեայք քննելով՝ արքունի վճռով հաստատեցին։ Դարձեալ, քանի մի տարի ետեւ (1541, սեպտ. 1) Ե Գիտունքն՝ ըստ խնդրոյ Թուրքաց, Պարսից և Ասորւոց (որք մեծ

մասամբ Հայք էին), հաւանեցան որ $2\frac{1}{2}$ տուրքէ Մետաքսից ազատ ըլլան, իսկ Նաւողչէքէ և ուրիշ տուրքերէ՝ այն անգամ միայն ազատ ըլլան։ Դարձեալ, յամին 1549 (մարտ. 19) վճռեց տէրութիւնն՝ որ ի Թուրքիոյ եկող վաճառականք, եթէ բերածնին Վենետիկէն դուրս պիտի հանեն՝ բան չի վճարեն, իսկ եթէ այս տեղ պիտի ծախեն՝ վճարեն. միայն թէ վըկայիւք պէտք է ցուցընեն՝ թէ վաճառքն իրենց է և ոչ օտարի։ — Ասոնց նման յամի 1567, 1574 և շատ ուրիշ անգամ այլ, արեւելցի վաճառականաց դիւրութիւն տրից և մաքսից շնորհուած է ի հասարակապետութենէ Վենետկոյ։

Գալով յատուկ դիպուածոց և անձանց, այս կարգաւորութեանց առաջին տարիներում (1536), Նիկոլոս Դոլչէ (Dolce) անուն մէկն՝ Վենետիկէն լաթեղէնի վաճառքով ի Տրիպօլիս գնացեր է. և այն տեղի խօճայ Ղոզէլ (Gazel, Թուի Ղազար) Հայոյ հետ առուտուր ըրեր է, որ երկար՝ աւելի քան 15 տարիներու խնդրոց, դատի և իրեն բանտուելու առիթ եղեր է։ Հայէն մետաքս առեր, փոխանակ տուեր է Չուխայ և անոր նման նիւթ մի՝ որ Carisce կամ Carisca գրուած է. բայց դեռ պարտական մնայ 1500 կանգուն այլ տալու առջինէն, 300 կտոր երկրորդէն։ Այն ատեն

հանդիպի պատերազմն Օսմանեանց, որք կողոպտեն աւար վաճառքն՝ յԱղեքսանդրիա, իբր 6000 դուկատ գնոյ. իսկ ինքն յետ հաշտութեանն, մետաքսն առած կու գայ ի Վենետիկ, կու բանայ սնտուկները, և մետաքսը իր կարծածէն աւելի ցած տեսակ կու գտնէ. անոր համար Զուխայն կու խաւրէ, բայց մէկալէն՝ փոխանակ 300 կտորի՝ 160 միայն կու խաւրէ. Մնացեալ 140ը բռնելով իբր փոխարէն անարգ մետաքսին: Ղազէլ կու տհաճի. և եթէ առաջ 500 դուկատ համարէր առնելիքը, հիմայ կու պահանջէ 3361, ծեզզին ոսկւով. դիմելով ի Կ. Պօլիս առ Ռիւստէմ փաշայ՝ խնամի սուլտանին. և թէպէտ պայլն և դեսպանն Վենետաց՝ կու ջանան պաշտպանել իրենց հայրենակիցը, բայց փաշայն կու սպառնայ՝ որ մինչեւ չհատուցանեն՝ չեբեւնան՝ ոչ իրեն և ոչ ուրիշ մեծամեծաց: Անճարուկներն կու ստիպուին հատուցանել, և ի Վենետիկ գրաւել տալ Դոլչէի ինչքը, և զնա ի բանտ ձգել: Բայց անկէ առաջ Ղազէլ Տրիպօլսի դատաւորին ձեռօք և Ռիւստէմի հրամանաւ՝ Դոլչէի 6000 դուկատ արժէքի ինչքը գրաւեր էր: Վենետկոյ տէրութիւնն այլ (1543, սեպտ. 29) գրեր էր առ պայլն՝ որ ջանայ հաճել զՂազէլ՝ այդ գումարէն վար իջնելու, Դրան հետ այլ զգու-

շութեամբ խօսի: Գոլչէ ի բանտէն աղերս կու տայ Դըքսին, որ արձակուի և երթայ ի Կ. Պոլիս, օգնութեամբ պայլին՝ իրաւախոհ ըլլալու Ղազելի հետ. իրեն երաշխաւոր դնէ իր եղբայրն և ուրիշ մի, որք յանձն կ՚առնուն գրաւ տալ 3000 ծեքին, 461 դուկատ այլ ուրիշ պարտուցը համար: Եթէ գնացեր է և թէ ոչ, դեռ տարիներով վերջ այլ պարտական Մնացեր է նա իր տէրութեան, 3461 դուկատից. և չկարենալով վճարել որոշուած ժամանակին, կու խնդրէ երկարել ժամադրութիւնը. տէրութիւնն այլ (1547, մայիս 21) կու շնորհէ իրեն իրեք ամիս, պարտքին մէկ քառորդը վճարելու, միւս քառորդներն այլ տարուէ տարի: Երկու տարի վերջը (1549, մայիս 10) տէրութիւնն նորէն հրամայէ Ե գիտնոց քննել, որով կ՚իմացուի՝ որ Գոլչէ դեռ չէր վճարած իր պարտքը, և գանգատէր՝ որ Ղազէլ զինքը խաբեր էր, Դամասկոսի մաքսապետք այլ զինքը պարտաւորեր էին: Դարձեալ, երկու տարի վերջը (1551, յունիս 20), ըստ խնդրոյ Գոլչէի՝ տէրութիւնն շատ դատաւորներ կարգէ Գոլչէի և Ղազելի առուտուրը քննելու, բայց միշտ պարտաւորելով զառաջինը՝ հատուցանելու իր պարտքը կամ առած փոխն ի տէրութենէ: Յետ այս 15 տարիներու, գուցէ և աւելի՝

գործոց և դատից, խնդիրն ինչպէս վերջացեր է, զայն չեմ գտած ի դիւանս, նոյնպէս և ուրիշ գրուածներ՝ որք անշուշտ այն տարիներու մէջ այն դատին այլեւայլ պարագաներն արձանագրած են. ուսկից թերեւս աւելի ճանչցուէր Ղազելի կամ Ղազարի ով ըլլալն. զի Թուի՝ թէ ոչ միայն մեծատուն վաճառական էր, այլ և ծանօթ արքունեաց. յայտնի չէ թէ արդեօք ի Վենետիկ այլ եկած է նա երբեմն։

Իսկ նոյն ատեններ յայտնապէս ի Վենետիկ եկող Հայոց առջիններուն անուանքը, թերեւս թըղթեղէն դիւաններէ աւելի՝ յայտնեն քարեղէնքն, Ս. Մարկոսի հրաշալի տաճարին սիւներն՝ կիսաքանդ գծերով. ինչպէս այս. « Թվին » 15?3. (1) Նովէմբրին (ԻԵ?) Եափրէ Յան» կոբ ց?... ղսրայ... որ եկի Վէնէտիկ ». անտարակոյս չէ կարդացուածն, բայց Թուի թէ գրողն Եաւտի անուամբ Անկիւրացի մի է։ — Մօտ թուականաւ փորագրած են, Մարգար Թվ. Ռ. (1551). — ուրիշ մի. Թվ. ՌԳ. (1554), թերեւս ներքեւը գրողն Էօցող? Պօղոսար (Պաղտասար). — « Յովաննիսի որդի Յակոբ. Թվ. » ՌԸ.» (1559). Նոյն կամ ժամանակակից Տէր Յովհաննու որդի բացբերան Մէրտինցի

1. Որոշ չերեւիր երրորդ թիւն, բայց կը նմանի, 1543։

Յակովբայ (տ. 308)։ — Գուցէ աւելի հին ըլլայ՝ ոչ սեանց վրայ՝ այլ եկեղեցւոյն հըռչակաւոր գանձատան Ներքին պատի վրայ գրուածն. « Ես Կոստանդին ծառայ Աստուծոյ » որ գիս յիշէ »։ — Ասոր մօտ և Նոյնպէս հին համարուի, † Յոհանէսի տէրն։

Քարերէն անցնելով ի Թուղթս, առաջին յիշատակ ազգայնոյ, յամի (1553) թէ և օտար անուամբ՝ բայց միշտ հայ վկայուած և ի Հայոց տան բնակող՝ Ալոյիս ոմն է, որդի Մորանայ կամ Միրանայ (Morany) և Հայր Յակովբայ. յետինս ոչ միայն չափահաս՝ այլ և պատուաւոր վաճառական մի գուշակուի, վասն զի Նօտարն լատինագիր՝ Prudens vir կոչէ (խոհական կամ զգօն այր). և կ՚իմացընէ, որ Յակոբ՝ քաղքէն հեռանալ ուզելով իր հայրը գործակալ կարգէ (25 օգոստ.), որոյ պատշաճէին իր ամեն առած և ծախած ինչքն և առնելիք—տալիքն, և ինքն է պատասխանատու։ — Զորս տարի վերջը Ջոսէփ անուամբ Հայ մի, որոյ ոչ հայրն յիշուի և ոչ հայրենիքն, իրեն գործավար և երեսփոխան կարգէ զնոյն Ալոյիս (Aloysius), որ և է իրեն վերաբերեալ խնդրոց համար։ Տարի մի վերջը վախճանած է Ալոյիս ի Տան Հայոց (1553, օգոստ. 16), ութ օր ջերմի հիւանդութեամբ, որ ծերոց հասարակ ըլլա-

լով գուշակուի իր ծերութիւնն այլ, զի տա-րիքն նշանակուած չէ ի մեռելագիրս. քան զայն աւելի հետաքրքրական է անունն, մկըր-տակա՞ն՝ թէ հայերէն անունէ մի ծամռկած յիտալացի։ Նշանաւոր է և Զուառայ անունն, (յիշեցընելով Դ. դարու Զուիթ երէցը, սպի-տակ ու սեւ մազով). ուրիշ յիշատակ չէ յայտ-նըւած ասոնց։

Նոյն տարիներ և նոյն տեղ՝ ի Տան Հա-յոց, որոյ և պահապան՝ Մխթռ ռ. Յովսէփայ՝ արդէն ծանօթ է մեզ (եր. 336), և իբրև ամենուն ծանօթ նշանաւոր անձ ցուցընէ զնա՝ տպագրողն Աբգար, պարզապէս « ի » ժամանակս Սիմոնի » ըսելով, իր տպա-գրական գործոյն համար։ Յիշեցինք և իր հայր-անուն որդին Յակոբ, ի կարգի սանսէրից (տ. 395)։ Այդ յաջորդական անուանքն (Յա-կովբ և Սիմոն) կարծիք մի բերեն, թէ ար-գեօք Սիմոնի հայրն Յակոբ՝ չէ՞ր մեզի առաջին հայ գրատիպ ճանչցուած Յակոբն՝ յամի 1512 (եր. 208)։ Եթէ կարծեաց սանդուղն հաս-տատութիւն ունենար, Յակոբէ Յակոբ աս-տիճանաբար վեր ելնելով՝ կու հանէինք ի Յակոբն յիշուած ի Տան Հայոց յամի 1434 (տ. 180), հանդերձ որդւովն, որոյ անունն չէ յիշուած։ — Սիմոն՝ հարկ է որ շատ ազգային գործոց մէջ մտած ըլլայ, բայց

անոնց յիշատակները չեմ գտած. միայն դիւանաց մէջ Ֆիկոլին Նոտարի գրուածի մի հանդիպած եմ (1567, մայիս 17), որ յայտնէ թէ Սիմոն գործակալ էր Էրճինա կամ Ռէճինա (Թագուհի) անուամբ կանէացի (Կրետէ կղզւոյ) բանտարկեալ կնոջ Սարավալլոցի Յակոբայ. որ շնորհիւ դըքսին՝ բանտէն անդորրագիր կու տայ Սիմոնի, որ իր ստացւածքն ազատեր էր (Ռագոզա Հերոնիմ անուանեալ Սարավալլեցի) մէկէ մի։ Այս կամ ուրիշ անդորրագիր մի յանուն Ռեճինայ գրուած առ Սիմոն՝ յամի 1569. գտուի յիշեալ Նոտարին գործոց մէջ. բայց գիրքն՝ խոնաւութեամբ կէս փտտած և աւրուած՝ չի կարդացուիր։ — Սիմոն՝ Հայոց Տնպահ գրուած կ'երեւի յամի 1555ին, քանի մի իտալացիներէ ետեւ. և յիշուի ի Հայ-տան յաջորդ տարւոյն սկզբում (կամ 1557, յան. 26), իր սեննեկին պատուհանից Նորոգութեան առթիւ։ Յիշեցինք (եր. 311) Սիմոնի բողոքելն (1573) առ Հոգաբարձուս՝ ընդդէմ Աղեքսանդրի և Յակովբայ անառակութեանց, որք և կու սպառնային տնպահին որդին սպաննել։ Յիշեցինք նաև իր Թարգման ըլլալը Զաքարիայ եպիսկոպոսի կտակին, յամի 1575 (եր. 334) և սկուտ (դրամ) մի ժառանգելն անկէ։ Երկու տարի վերջը † է Սիմոն (1577) փե-

բրուարի սկզբան, Թերևս մեծ ժամանակաւէն քանուած։ Քիչ օր վերջը (մարտի 2) Հոգաբարձուք զՊէտրոս ու. Յովհաննու անոր յաջորդ կարգելով, յիշեն՝ որ շատ գանգատ եղած է Սիմոնի վարչութեան դէմ (1)։ — Նոյն ժամանակէն մեռածներուն կարգին նշանակուած է և Յովսէփ Հայ մի, ով և ուստի ըլլալն անյայտ։

Այս յիշեալ Հայերէն զատ՝ 1560էն առաջ ծանօթ են ի գիրս Նոտարաց, Ֆրանչիսկոս Հայ մի՝ ո. Պետրոսի Մարտիրոսի, որ իր համանուն Ֆրանչիսկոս մի իրեն գործակալ կարգէ (1558, հոկտ. 1)։ — Գրիգոր Մուրատ ո. † Յովսեփայ, բնակեալ ի Տան Հայոց, գործակալ կարգէ զԽաչատուր (Christophorus) ո. Ապտուլլահի, իր պահանջները ժողովելու՝ պարտականներէն։ Հետեւեալ տասնամեկին մէջ (1560–70) նշանակուած է Դաւիթ անուամբ Հայ մի (1568), որ թուի անդորրագիր տուած կամ առած. Նոտարական գրոց ցանկի մէջ գրուած է միայն D(ominus) David Armenus. Quietatio. իսկ խնդրոյն տեղեկու-

1. Esendo alli giorni pasati mancato di questa vitta Simon gia custode de la Casa deli Armenj ·· et per li molti reclami che Sue Signorie Ecc.me a avuto del mal governo fato da lui S. Simon, ecc.

թեան գրուածն՝ փտտած և թափած է։ — Նոյն տարին (1568, մայիս 15) մեր արդէն յիշած (եր. 373) Բերիացի Շաւալաթեան Հալէպի դրամանոցի վարպետին որդին Աղե-քսանդրն, պատրաստուած երթալ ի Կ. Պօլիս՝ կիպրացի Նաւով, իրեն գործավար կարգէ Լորենցոյ Կոնտարին (Contarino) փաստա-բանը, դատ վարելու Մկրտիչ Avetula կոչուած իտալացւոյ դէմ. Նոյնպէս և զՅակոբ Մերտինցի որդի Իբրահիմայ, անոր երկու հակ մետաքսը պահանջելու Նոյն Աւետուլայէն։ Երկար ատեն բնակած է Աղեքսանդր ի Վենետիկ, և այս Նաւարկութենէն երեք տարի ետքը (1571, մարտ 29) Նորէն վկայ կ՚ըլլայ Կարկառեցի Յարութիւն ո. Սիմոն սանսէրի (տ. 294. 313) հետ, որ Յովհաննէս Ամդեցի ո. Տէօվլէթքեարի՝ անդորրագիր տուաւ Կոնտուզի (տ. 370) որդւոյ † Ամիրի (զ.<sup>m</sup> Amiri de Azami) Պարսկահայոյ։ Այդ Յովհաննէս Նոյն օր Նոյնպէս անդորրագիր տուած է և Փանոսի ո. Գէորգեայ, ասոր հետ թէ՛ ի Հալէպ թէ ի Վենետիկ ըրած առեւտրին համար. ինչպէս տարի մ՚ առաջ այլ տուած էր Ջուղայեցի Գայիրի (տ. 370) 285 դուկատ պահանջիցն համար, որոյ վկայ կ՚ըլլան յիշեալքն Յակովբ Մէրտինցի և Սիմոն սանսէր։ Աղեք-սանդր՝ չորս տարի վերջ այլ (1574, յունիս

12) *յիշուի իբրեւ վկայ և Թարգման Կարապետ ո. Յովհաննէսի Ջուղայեցւոյ (եր. 374)։ Տարի մի վերջ այլ* (1575, *մարտ* 18) 15 *դուկատ փոխ կու տայ Պասսայի Ջուղայեցւոյ՝ իր որդւոյն խնդրոյն առեն (եր.* 374), *երաշխաւոր դնելով զԿարապետեանն Յովհաննէս, և վկայ՝ զԳէորգ ո. Թէոդորի, Նասիպ Ջուղայեցի և Հընդքէյֆցի յակոբիկ տէր Թումասը։*— 1569, *յուլիս* 23. *Աղեքսանդր և Թէոդոր Անկիւրացի վաճառականք՝ իրենց հայրենակից Յովսէփը գործավար կարգեն, պահանջելու ի մաքսապետաց և յայլոց՝ իրենց բերած 26 տախտ կամ հակ Ցփսեաց, և* Mocaja *կամ* Mocagiari *(Թուխ պօղաս)* *կոչուած տեսակ մի կտաւեղէնքը և ուրիշ դրամական առնելիքը. վկայ դնելով զԳէորգ ո. Յովհաննու ծանօթ սանսէրը։ Նոյն օր տէրութիւնն վճռեր էր, որ այդ տեսակ նիւթոց* Cottimo *և* Bailaggio *ըսուած տրոց համար՝ ստէպ վէճ և խնդիր կ՚ըլլար, այսուհետեւ երկու տուրքն այլ պահանջուին, բայց ամբողջ սոսակն տէրութեան սնտուկին յանձնուի։ Գուշակուի որ այս վճռին շարժմամբ՝ նոյն օր առաջ կամ վերջ՝ Անկիւրացիք իրենց ընելիքն ըրեր են. բայց չորս ամիս վերջը (Նոյեմբ.* 25) *նոյն բանի վրայ նորէն խնդիր ըլլալով, Ժ Գիտունք անպատշաճ համարին այդ վճիռը,*

իբր զի արդէն 1541ին վերցուեր էին այդ տուրքերն, և երբ խնդրէին վաճառաբերք՝ կու շնորհուէր իրենց. — Քիչ որ վերջը Յո-նոլէ՝ Gentile? կոչուած և Սիմոնի ո. Տար-խան, որ Թուրքաց և Պարսից հետ ի Պարսկաստանէ մետաքս բերեր էին ի Կէլիպոլի, և անկէց ցամաքով եկան ի Վենետիկ, մինչ այլազգիք նաւով գալով՝ մաքսէ ազատ եղան, խնդրեն որ իրենց այլ շնորհուի ազատութիւն, վասն զի ի Կ. Պօլսէ չեն եկած. (ըսել է թէ այդ քաղքէն բերողք՝ պարտաւոր էին մաքսի և բաժի)։ Նոյն տարին (1569) ասոնցմէ առաջ ուրիշ Անկիւրացի մի՝ որուն անունն և հօրն այլ խանգարած են նոտարք, գրելով Սերէն և Գարան? (Serinus Ermenius filius S. Carani), նոյնպէս մետաքս բերեր էն, կու յանձնէ (ապրիլ 28) Նիկոլ Արիկոնի Իտալացւոյ, որ պահանջէ յՈկտաւիոյ Պարոնոյ՝ իրենցմէ գնած մետաքսին գինը և յԱնգոնայէ եկած փոխանակագրին գումարը, (184 դուկատ). վկայ կ՚ըլլան ծանօթքն Գէորգ ո. Թէոդորի և Սիմոնի ո. Յակոբ սանսէրն։ — Նշանելի է մի և նոյն ժամանակ գրեթէ մի և նոյն տարի՝ Անկիւրացւոց յարեւմտից՝ ի Թուրքիոյ, և Ջուղայեցւոց (տ. 358) յարեւելից՝ ի Պարսից մետաքս բերելն։ — Ասոնցմէ մէկն էր կամ ուրիշ եր-

կըրցի Յօհանան այն կամ Օխանան՝ զոր յիշեցինք Թէոդորեան Գէորգայ գործոց մէջ (եր. 294), ուր ուրիշ անծանօթ վկայ մ՚ այլ յերեւան ելաւ, Յովհան ո. Սխոնէ։ — Իսկ կարկառեցի Յարութեան ո. Սիմոնն՝ այլ և այլ անգամ յիշուեցաւ (եր. 439)։

Ասոնց ժամանակակից անկիւրացի մ՚ այլ յիշուի, Աղէքսանդր ո. Անդրէէ, որ ի Կ. Պօլսոյ բեռ մի փոկ (Cordovan) բարձեր Սկուտա (Scuta) անուանեալ նաւուն վրայ և բերեր էր ի Վենետիկ, ուր իր համանուն իտալացի Աղեքսանդրի Ռանի հետ վէճ ունենալով, երկուքն այլ հաւանին (1571, յուլ. 5) իրաւարարներ դնել և անոնց վճռածն ընդունիլ։ Նոյնն յիշուի երկու տարի վերջը (1573, յուլ. 28), իբրեւ գործակալ կամ գործակից Աբդլասատ ո. Աբդլմէսիխոյ Մէրտինցւոյ, որ (Ցինարտի) նաւապետէն փոխ առեր էր 93 դուկատ, և խոստանար հատուցանել ի Տրիպօլիս. ապա թէ ոչ՝ նաւապետըն (Մոչենիկոյ) պիտի առնուր իր ապրանքը, մնացեալ պարտքն այլ պիտի հատուցանէր Աղեքսանդր։

Առանց հայրենեաց տեղւոյ յիշուեցան այս ատեն վաճառականք, Յովսէփ ո. Առաքելի, Ասատէլ ո. Մեստերի? (Mesder) և Թանկէ։ Ասոնցմէ Յակոբն Առաքելեան քսան

տարի վերջ այլ յիշուած է (1594, մայիս 4), իբրեւ վկայ Մարգարեան Տէր Յակովբայ ընդունած ընչից՝ ի հաշիւ կաթողիկոսին Հայոց (եր. 345)։ — Էմիրճան? (Emiryassin գրուած) ո. Մէրտէնշահի Եզընկացւոյ՝ զՆիկոլ Մարենտի իտալացի իրեն գործակալ դրած է նոյն տարին (1574, յուլ. 31) իրմէ ընդունած 189 դուկատի հաւասարը՝ մաքսի պաշտօնարանէն պահանջելու։ — Քանի մ՚ամիս առաջ (կամ հետեւեալ տարին, 25 փեբր.) այս եզընկացին՝ Թօխաղցի Կոսկեան? անուամբ Հռոմի յանձնարարութեամբ՝ առած էր ատոր պահանջը, 34 դուկատ, ի Տոնատոյ Խաչատրոյ կամ Քրիստոփորէ, երաշխաւոր կարգելով զպարսիկն կամ պարսկահայ Ղազար ո. Յովհաննու։

Այս ժամանակ (1574) ի Վենետիկ և ի Վենետկոյ դուրս կարեւոր դէպք մի հանդիպած է Հայոց ոմանց, որք թէ վաճառականութեան և թէ ի Հռոմ Ներողութեան տարին ուխտի երթալու պատճառաւ, վենետկեան նաւով մի կու գային. երբ Տոսկանայի ջրերու հասան, այն տեղացի բերդանաւ մի արգիլեց վենետկեան նաւը, և Հայոց ինչքը կողոպտեց իբրեւ Թուրքի հպատակաց. սանք ի Հռոմ բնակող Աղեքսանդր անուամբ ազգակցի բերնով, դիմեցին առ դուքսն Վենետ-

կոյ. դուքսն քաջալերեց զանոնք որ երթան
ի Ֆիրենցէ և կ՚ առնուն ստացուածքնին. Հայք
եկան ի Ֆիրենցէ. բայց դուքսն մերժեց զա-
նոնք, ըսելով՝ որ ի Ս. Պապէն պատուէր
ունի Թուրքի հպատակաց ինչքը գրաւելու.
Աղեքսանդր դառնալով ի Հռովմ՝ նորէն գրեց
առ դուքսն Վենետկոյ (1575, յանուար 15),
եղածը պատմելով, և չեմ հաւատար՝ ըսե-
լով, որ Ս. Պապն հաւանի խեղճ քրիստոնէից
ինչքն կողոպտելու. (Ma jo credo che S.
Santità non volgia che la roba deli po-
veri christiani si perdano a questo modo;
per le parole che mi disse V.ª Serenità).
և կու խնդրէր որ բարեխօս ըլլայ առ Պապն:
Նոյն օր Վենետաց դեսպանն այլ (Պօղ.
Դիեբոլոյ) ի Հռովմէ գրէ առ տէրութիւնն, որ
Հայք խնդրեր էին իրմէ որ խօսի ընդ Սըր-
բազանին, բայց ինքն չուզեց առանց հրա-
մանի դըքսին, և սպասէ ասոր պատուէրին:
Խորամանկ կամ խորագէտ դուքսն՝ ոչ իր
պատուակցին ուզելով դպչիլ և ոչ անոր պէս
Հայոց աղերսը մերժել, գրեց (22 յան.)
դեսպանին, որ անձամբ միջնորդութիւն չընէ,
այլ քաջալերէ զՀայս, վստահացընելով իր
տէրութեան փափագին՝ որ Թուրքաց հպա-
տակք չվնասուին: Քանի մ՚ օր վերջը (29
յան.) դեսպանն գրով իմացուց, որ Հայք

իրենց բարեխօս ըլլեր են առ Պապն զՄետիչի կարդինալը։ Վստահ եմք որ բարեխօսութիւնն յաջողած ըլլայ զբարերարութիւնը, և Ս. Պապն՝ Էմմանուէլ Ֆիլիպպերտի (դքսին Տօսկանայ) խստասրտութիւնը կակղած ըլլայ։ Եւ գուցէ այս սրբազան հաճութեան զօրութեամբ է, որ յաջորդ տարին Գարամանցի Հայ վաճառականք՝ Միրզան (Mirzan), Խօճամալ կամ Գամալ (Chamali) և Պետրոս քահանայ, 17 բեռ մետաքս և քանի մի սնտուկ խաշնդեղ բերեր են ի Ֆիրենցէ, և վենետկեան բերդանաւով փոխադրեր են ի Վենետիկ. հօս Հինգ Գիտունք քննելով Հայոց հաւաստագրերը, որոց մէկն այլ Հալէպի վենետկեան գունցին քահանայն (G. Batista Audet) գրեր էր, վստահանալով՝ Թողեր են որ Հայք վերցընեն իրենց ինչքը. բայց անոնց հետ եկող Հրէից վկայականները բաւական չհամարելով՝ իբրեւ աւանդ պահեր են։

Այս վերջի Թուականներուս՝ յիշուի Կ. պօլսեցի մի, հիմայ այլ ծանօթ մականուամբ, Ալտընկիւլ, որ երբ յամի 1574 ելեր է ի Կ. պօլսոյ երթալ ի Լեհաստան, իր պարտականէն առնուլ պահանջը (1000 դահեկան), և ցամաքով դառնալ Վենետիկ, իր մէկ ծանօթի կամ սպասաւորի (garzone) ձեռօք՝ կու խաւրէ ի Վենետիկ 18 հակ Ցփսի։ Այս

բանիս խնդիր ըլլալով՝ յետ երեք տարւոյ, (1577, Նոյեմբ 30) Խաչատուր Թագաւորցի կամ որդի Թագւորի (Cristoforo de Tacor), կու վկայէ նոյնպէս, թէ Անդրէաս Ստամաթի (Stamathi) ընդունեցաւ զանոնք։ Այս բանիս վկայ կ՚ըլլան նոտարի առջեւ՝ Թորոս ո. Կարապետէ, Յովհաննէս Մոսէսէ ո. Սարգսի? (Santo), և Աստուածատուր ո. Այդընէ։ Շատ տարիներ վերջ այլ (1580) կու յիշուի այս Սսեցին, իբրեւ վկայ, նոյնպէս և ի 1597ին։

Այսր նման անգամ մի առաջին Թուականին մօտ և յետոյ քսան տարի վերջ Նորօրինակ առեւտրըրի մէջ յիշուած անձ մի է Միքայէլ ո. Զաքարիայ, որ յամի 1579 Յովհ. ո. Խաչատրոյ Սանոսէրի (տ. 396) որդւոյն կնքահայր եղած. և քանի մի տարի վերջ (1584) յիշուած յԱնգոնիա, Մէրտինցի Յակոբայ գործոց մէջ (տ. 313)։ Ամ 1588ին (յուլ. 29) ուրիշներու հետ կու վկայէ Դոմինիկոսէ ո. Միքայէլէ որպիսութեան համար, որ պիտի յիշուի ի կարգին։ Իսկ Նորատեսիլ առեւտուրն եղած է յամի 1590 (հոկտ. 15). Աղաբէյէն՝ որ Թուրի Իբրահիմ՝ ո. Ճէնոյ Երուսաղեմացի (Ասորի? Թէ Արաբ), 80 դուկատի կու ծախէ Միքայէլի՝ չէկ մազով կամ մորթով (de pello rosso) և իբր եօթն ու կէս տարուան՝ տաճիկ ուղտու կէս մի, կէս մ՚ այլ հասարակ

ուղտու, պարզագոյն և իբր 9 տարուան, երկուքն այլ առողջ. այս երկու կիսոց վրայ՝ Միքայէլ իշխանութիւն պիտի ունենայ ուղածըն ընել տալու. Նոտարի առջեւ կու վճարէ գինը. Իպրահիմ այլ խոստանայ դաշինքը կատարել. կու վկայեն Խաչատուր Զաքէ ո. Սիմոնի, բնակող ի տան Հայոց, և Յովսէփ Jaconi անուանուած, որ ոչ թուի հայ: Կու մնայ գիտնալ թէ ո՞ւր էին ուղտերն, և թէ ի՞նչպէս Միքայէլ անոնց կէսը պիտի շահեցընէր: Իբրահիմայ համար վկայուի՝ թէ այս ատեն ի Վենետիկ կու բնակէր, Ponte di Paglia կոչուած թաղի մէջ, ուղտերն այլ իր քով էին (sono appresso il predetto M.sr Abrayn): Թէ Վենետկեցւոց ո՞րչափ զարմանք բերած են այդ անճոռնի զոյգն՝ կերպով մի յայտնէ Նոտարն, իբր չտեսնուած արարած մի զտաճիկ ուղտը կոչելով «մէկ կենդանի մի» այնպէս անուանուած, un a nimale nominato Dromidario. զմիւսը կոչէ un Gambollo, di pello chiaro.

1580. Եզընկացի մի՝ Ծատուր ո. Յովհաննու յերեւան գայ այս թուականիս, որոյ արդէն յիշած եմք (եր. 398) առեւտուրն ընդ Յովհ. ո. Խաչատրոյ և ընդ Նուրումի Կարնեցւոյ: Այն գործակցութենէն քանի մ՚օր

վերջը (18 մարտի), ինքն Ծառուր իրեն ընդ-հանուր գործակալ կարգէ զԱբտըլմսէհ, (զոր նօտարն համանիշ համարի Քրիստափոր անու-ան (Abdelmisi, sive Christoforus) ո. Հա-տուէ, վկայ ունելով զանկիւրացի Պօլէ ո. Յա-կոբայ և զՅովսէփ ո. Գրիգորէ, որ և թարգման։ — Յիշեցինք արդէն (տ. 298) այս ժամանակիս և սոյն գործողութեանց վկայ զՄաղաքեաշահ ո. Գաբրըլշահէ, որոյ անունն ազնուական ցեղ մի գուշակել տայ, և Յովհաննէս ո. † Համազա-սպայ (Ovanes q.m Amasach) (տ. 399)։ Հաստա-նուամբ այլ յիշուի մէկ մի յաջորդ տարեն (1581, մայիս 27) ո. Ալոյիսի ի Հալէպայ, որ այն տեղէն գրով գործակալ կարգեր է իրեն՝ զիտալացին Bertaboni, և սա հիմայ զգործակալութիւնը կու յանձնէ ուրիշ իտա-լացւոյ մի (Rossini Orazio)։

1583. Յովհաննէս ո. Սարգսէ (Joannes San-ctis) Սեբցին՝ կրետացի Գէորգայ յանձնա-րարութեամբ ութ վառիլ սուր կու բեռցընէ Balbiana կոչուած նաւուն վրայ, որ պիտի երթար ի Կիպրոս և յԱսորիս. Նաւահան-գըստէն ելնելու ատեն՝ այն տեղի պաշտօ-նեայք կու քննեն, և բեռնագրերը անվաւեր գտնելով՝ կ՚արգելուն ապրանքը. Սարգիս զինքն արդարացընել կու ջանայ (օգոս. 2), և

կ՚ըսէ, թէ ուրիշի գրել տուած էր. դատաւորք այլ կէս աչք գոցելով՝ միայն պարտաւորեն զնա՝ որ 15 դուկատ տուժէ, և իբր ողորմութիւն տայ երեք կուսաստանաց:

Այս ժամանակիս հանդիպած է և Ահմէտ Թուրքին մկրտուիլ և Թոմաս անուանուիլն (տ. 313), և յետոյ փախչելն ու կտաւեղինաց տակ պահուըտիլն ի Նաւուն, և բռնուելով բանտուիլն, մէրտինցի Յակովբայ տան մէջ բնակած ըլլալով և անոր պարտական. յիշուած է Յակովբայ տեղեկութիւն տալն այլ և վճիռն դատաւորաց (1584, հոկտ. 6), որ մինչեւ ի յայտնութիւն այս գործոց՝ արգելուի ուրացեալ համարեալն, և իր ի դրամատեղանի գտուած ստակէն վճարուի Յակովբայ պահանջն, 21 դուկատ:

Դարձեալ, նոյն տարին (օգոս. 4) վճռած է ծերակոյտն արձըկել ի Թիոց (Նաւարանտէ) զՄուրատ Հայ, զոր շատ տարի առաջ Թուրքք բռներ և ձգեր էին ի Նաւարանտ. վեննետկեցիք բռնելով զնաւը՝ զՄուրատ իրենց նաւարանտին մէջ ձգեր էին ի թիավարութիւն: Մուրատ աղերս տուած է տէրութեան (իբրեւ յամի 1578), բայց չէ ազատուած. չորս տարի վերջ (1582, նոյեմ. 6) նորէն աղերս կու տայ. ծերակոյտն նոյն

որ յանձնէ Նաւարանի զինուց պաշտօնէից՝ քննել խնդիրը. պաշտօնեայք ուշկեկ (1583, յունիս 7) պատասխանեն, թէ արժան է արձըկել զնա, որովհետեւ խալամութեան նշան չունի, և ուրիշ թիարգել Հայոց այլ ազատութիւն տրուած էր: Բայց դարձեալ, որ և է պատճառաւ՝ Մուրատ Պեյ յարգելանի, մինչեւ ի 4 օգոստ. 1584. այն օր ծերակոյտն վճռէ արձըկել զխեղճն, յետ երկարամեայ անպարտ տառապանաց:

Նոյն տարին (1584) և նոյն օրերուն հանդիպած է և Սօֆոնոշցի Ֆրանչեսկոյի կամ Ֆրանչիսկոյի՝ քիչ շատ նման խնդիր մի. սա քանի մի Գանիացւոց և ուրիշներու հետ՝ Վենետիկէն կու նաւէ դէպ ի Նարենտա քաղաք Գանիոյ. երբ կու հասնին ի Լեզինա (քաղաք և կղզի Դալմատիոյ), Ֆրանգոյ 117 ծեզին ոսկի կու փոխէ ի դալէր կամ ի դահեկան Թուրքաց. նաւապետն կասկածելով թէ նա կամ ապրանքն փախստական ըլլայ, բոլոր դրամները կու գրաւէ, նոյնպէս և Թուրքաց զէնքերը. Սօփոնոզցին ուրիշ ճար չի մնար այն ատեն, բայց լալ, մինչեւ որ դառնան ի Վենետիկ, և բողոքէ: Դատաւորք յանձնեն (Մարինոի) նոտարի՝ որ քննէ վկայից ձեռօք. և սա (սեպտ. 4) կու կանչէ հետը եղողները. յորոց պօսնիացի մի (Գէորգ ո. Փիլիպ.) կ՚ը-

տէ, թէ տարի մ՚ առաջ Ֆրանգոյի հետ ասկից նաւեցինք ի Նարենտա. ո՛ր տեղացի ըլլալը չեմ գիտեր, բայց երբ Լեզինա հասանք՝ փոխեց ստակը, զոր նաւապետն գրաւեց իբրեւ գողցուած. Ֆրանգոյ կու լար ու կ՚ աղաչէր որ տայ դրամները, իմս է ըսելով։ Ասոր նման անկիւրացի Մուստաֆա թուրք մի վկայէ, որ Ֆրանգոյ Անկիւրիոյ մօտ քաղքէ մ՚ էր, և անցեալ տարի օգոստոսի կիսուն մէկ տեղ նաւեցին. երբ մօտեցան ի Նարենտա՝ վենետկեան խալէ մի կողոպտեց անոր դրամները, որ՝ գիտեմ թէ իրենն էին, վասն զի ծախած ընչից գինն էր։ Ֆրանգոյի պաշտպան կ՚ ըլլայ և թուղթ մի Սիւլէյման պէկի՝ Մոռէայի կողմերու նաւապետի կամ ծովապետի, որ կու յիշեցընէ եւս անոր Կ. Պօլսի պայլէն թուղթ բերելը։ Յետ այսքան վկայութեանց՝ ծերակոյտն կու վճռէ (6 հոկտեմբ.) որ պաշտօնեայք Դրամանոցի ետ դարձընեն ու տան առ Ֆրանգոյ 117 դալէրը, առանց ուրիշ բան պահանջելու իրմէ՝ բայց ընդունելուն անդորրագիրը. վասն զի, կ՚ ըսեն, այսպէս ըրինք և թուրքի մ՚ այլ (3 յուլիսի) նոյնպիսի դիպուածի առթիւ։

Եթէ չէ այս Ֆրանգոյ՝ բայց իր ժամանակակից է ի Վենետիկ բնակող Ֆրանչեսկոյ մի, զուցէ ո. Սէֆէրէ կոչուածն, գործակից

Ամիրաս. Նովէլլի տեղացւոյ. որ ըստ դաշնա-դրութեան այս Հայոյն հետ, կու սպասէր զոր (1586 յունիս 11) նօտարի ձեռքով, որ գնած ապրանքը տանի ի Պատուա ի տօնա-վաճառն, որ քաղքին հռչակաւոր Ս. Անտոնի տօնի օրերուն (13 յունիսի) կ՚ըլլայ, ուր և խանութ մի վարձեր էր. և վախէր թէ Ֆրանչ. չուզելով երթալ՝ թէ կրպակի վարձքը կոր-սնցընէ և թէ շահ։ Պաշտօնական անձ մի՝ գտնելով զՖրանգոյ ի հրապարակի Ս. Մար-կոսի՝ կու տայ իրեն այս սախալող պատուիրա-գիրը։ — Ֆրանչիսգոյի երթալն կամ չեր-թալն՝ մեզի կարեւոր չէ, որչափ իր ազնիւ յիշատակները, որ անյայտ են ինձ։ Նոյն Ֆրանչ. անուամբ այլեւայլ Հայք յիշուած են ի Վենետիկ. մին է Նախայիշեալ Մար-տիրոս ա. Պետրոսի (տ. 438)։ Մեռելագրաց մէջ այլ յիշուի Ֆրանչ. Հայ մի † յամի 1598, մարտ 15, 48 տարուան. Թերեւս ս. Գէորգ, զոր յետոյ պիտի յիշեմք ընդ Պէկի (1588). յետագայ դարու մէջ այլ յիշուին Հայ Ֆրանչ.։ — Անունը թողլով և Ֆրանգոյի հայրե-նեաց դառնալով, յետագայ Ցեղանակի սկըզ-բան (1605) Սաանոզցի սարկաւագ մի Մի-չէլոս անուն, եկեր է խնդրել ի Ն Գիտ-նոց (մարտ 23), որ իր ի Վենետիկ † եղ-բօր ինչքը՝ զոր գրաւեր էր Ա[illegible]

անուամբ մէկն, տան իրեն. և գրաւողն խոստանայ տալ:

Քանի մ՚ անգամ վերջի գրածներուս մէջ յիշուեցան Ադամս մականուամբ երկու վաճառականք (տ. 402. 413), անշուշտ իրենց Սիսուանեան հայրենի քաղքէն, և որպէս երեւի՝ երկու եղբարց որդիք, Ստեփանոս՝ Վասլի, Դոմենիկոս՝ Յարութեան. յետնոյս անունն (Դոմ. Թարգմանուած Թուի ի Կիրակոսէ. յիշուի ասոր եղբայրն այլ Գրիգոր: Գուշակուի որ ասոնք շատ յիշատակ պիտի ունենան ի դիւանս, և յառաջ քան զ1580 թուական. բայց իմ գտածներուս առաջինն է 1584ին (ի 5 մարտի). երբ ըստ խնդրոյ Սիմոնի որդւոյ Թուրաղայ (Թորոսի) Սսեցւոյ՝ Գէորգ Առաքելեան ո. Կ. Պօլսեցի Անդրէի, և Ղազար ո. Յովհ. Սեխանցի, երդմամբ վկայեցին Նօտարի, որ հինգ տարի առաջ՝ երբ Ալպանիոյ Լես? կոչուած տեղում էին, լսեցին որ մեսսենացի խալէ մի բռնեց զԴոմինիկոս, և այնքան չարաչար ծեծեցին՝ որ կիսամահ ակամայ ըսաւ որ ինքն Թուրք է. զնոյն վկայեց և Գէորգ Մոտոնցի, որ նոյն խալէի մէջ ոտնակապ բանտուած էր: Ասոնց վկայութեան վկայ եղան Յակոբ Մէրտինցին և Գէորգ ո. Յովհ. տնպահն: Այս ատեն Դոմինիկ Թուի թէ չէր ի Վենետիկ. վասն զի ամիս

մի վերջը (ապրիլ 4) երբ Յուսցի Սիմոնի հետ Ստեփանոս զԳէորգ Առաքելեան զօր֊ ծակալ կարգեց՝ նա և Դոմինիկոսի կողմէն, կ՚ըսէ նօտարի առջեւ (սա զերկուքն այլ իրա֊ րու եղբայր գրէ), և վկայէ, որ Սիմոնի վաճառակիցք էին։ Երկու ամիս վերջը (յունիս 30) երբ խնդիր կ՚ըլլայ Մարկ. Ծահնշահի (եր. 412) հինգ տակառ դանակեղինաց, և Վասէլ ո. Պրուսացի Գարաճայի վկայէր զայն, Ստեփան այլ վկայեց Վասլի հաւատարմու֊ թեան։ Քանի մի ամիս այլ վերջը՝ նօտարի առջեւ վկայուի (13 հոկտ.) որ այն ատեն Ստեփան ի Հռովմ էր, և հիմայ Յովհաննէս ոմն ո. Ստեփանոսէ ի խնդրոյ Ըսեցի Սիմոնի վկայէր, որ սա դրամ կամ փոխ տուած չէր Ստեփանոսի. այս բանիս վկայ եղան Պօղոս ո. Յովհաննէս Կեսարացի վաճառական՝ որ բնակէր ի Ս. Մովսէս Թաղի, և Մարտիրոս Ուռհայեցւէ ո. Գաբրիէլի, որ բնակէր ի Ս. Մարիամ Խորոտիկ, ուր և Յովհաննէսն այն։ — Յաջորդ տարւոյն սկիզբները Ստե֊ փանոսի տեղ Դոմինիկոս կ՚երեւայ ի Վե֊ նետիկ, և կու խնդրէ (4 մարտի, 1585) որ յիշեալ Մարտիրոսն և ծանօթ Մկրտիչ Պարսկահայն, Գէորգն ո. Յովհ. և Կարա֊ պետ ո. Կիրակոսի (միշտ Դոմինիկոս գրուած) վկայեն երդմամբ, որ ինքն վաճառակից էր

Սիմոնի Սսեցւոյ, որուն ապրանքն տարեր էր ի Հռովմ, և նա հօն մեռեր էր. ասոնց վկայ եղան Գարակէօզ Անկիւրացի ս. Գէորգայ, Փօլատ ս. Բարսղի, և Սերովբէ ս. Գէորգայ։ Նոյն օր նոյն նօտարի գրութեամբ՝ Դոմինիկոս իրեն փոխանորդ կարգէ զՍտեփան՝ որ ի Հռովմ, որպէս զի † Սիմոնի ինչերէն և դրամէն իրեն մասը գրաւէ։ (Այս տեղ նօտարն զՍտեփան ս. Վասլի գրէ, զԴոմինիկ ս. Ցարութեան (Salvatoris, զի իտալացիք այսպէս կոչէին Ցարութիւն անուամբ Հայը)։

Եւքի Թուականէս երեք շաբաթ վերջը վերոյիշեալ Մարտիրոսի Ուռհայեցւոյ որդւոյ Կարապետի՝ հիւանդութիւն հանդիպի, և յանկողնի կանչելով զնօտար (22 մարտի), գրել կու տայ կտակը, կտարիչ կարգելով զԴոմինիկ, իսկ ժառանգ՝ իր Թորոս եղբայրը. կ՚իմացընէ, որ 30 դուկատի վաճառք տուած էր Ղազարայ ս. Ցովհան. որ տանի ծախէ ի Թուրքիա. 100 լիրայ ալ Սեբաստացի Մարկոսէն առնելիք ունէր. նա և երեք սնտուկ ապրանք այլ կար քովը՝ Ստեփանոս Ատանայէն տըրուած, որոց բանալիքն այլ անոր քով էին (ի Հռովմ). իր ստակներէն պէտք էր վճարել զվարձ բնակած տանը՝ որ ի Ս. Մարխորոտիկ. 20 դուկատ այլ տալ Ս. Ցովհան – Պօղոս կոչուած մեծ հիւանդանոցին։ Այս

կտակը բանալու բազդն մեզի ընկաւ, յետ 300 տարիներու կնքած մնալու ի դիւանս, որ յայտնէր թէ Մարտիրոս առողջացեր է այն հիւանդութենէն, որոյ և ինքնին վկայէ քիչ օր վերջը (9 ապրիլի), երբ նոյն կտակագիր (Մարին Լիոյ) նոտարին առջեւ գործավար կարգէ զԴոմին. Ատանա՝ պահանջելու ի Ղազարայ իր 30 դուկատի պահանջը։ — Տարի մի վերջը (1586, մարտ 24), ինքն Դոմինիկոս այլ իր Գրէգոր եղբայրը գործավար կարգէ պահանջելու իր ապրանքն ի Ռակուզա՝ այն տեղացի Պասգուալէն. այս բանիս վկայ և թարգման կ՚ըլլայ վերոյիշեալ Գէորգն Առաքէլեան ս. Անդրէի. — Այսուհետև ոչ Ռուհայեցւոյն և ոչ Դոմինիկոսի գործք յիշուին. միայն սա տարի մի ետև (1587, ապրիլ 29) վերջին անգամ յայտնուի, երբ իր համշիրակն և գործակից Ստեփան Ատանա՝ խպառ ծածկուի. վասն զի նոյն օր ծանր հիւանդ ըլլալով կանչել կու տայ վերոյիշեալ ծանօթ նոտարը (Մարիոյ Լիոյ) և գրել կտակը, կատարիչ կարգելով զԴոմինիկ, ժառանգ՝ իր կինը Առնէր (Arnier), որոյ անունն յայտնէ Հայ ըլլալն, այլ ոչ ուր ըլլալը, և իր Ցոկոլէ որդին։ Ատոնցմէ զատ ուրիշ բան չեմ սահմաներ, կ՚ըսէ, երբ նոտարն հարցընէ՝ թէ բարեբարութեան տեղեաց բան կ՚ուզէ՞

թողուլ։ Քիչ օր վերջը (2 մայիսի) կու վախճանի, շաբաթ մի scoranzia հիւանդութեամբ, իբր 60 տարուան. Նոյն օր Դոմինիկոս բանալ կու տայ կտակը։

Ստեփանի և Ալսեցի Սիմոնի խնդրոյն մէջ վկայ եղող Պօղոսն Կեսարացի ո. Յովհաննու, որոյ բնակութեան թաղն (Ս. Մովսէս) և տունն այլ այն տեղ (Corte Contarini) յիշուի, ուրիշ անգամ այլ (1588, յուլ. 29) թէ իբրեւ վկայ և թէ թարգման, այս ժամանակի գլխաւոր վաճառականաց մէկն կ՚երեւի. գի Մկրտչի Պարսկի և Յակոմբայ Շահնշահի հետ ընկերակից եղած էր, և անոնց հետ վերջացուց ընկերութիւնը յամին 1608։ Դարձեալ, նոյնն վկայ եղած էր (1599, յան. 27) Թովմաս պատրիարքի թողած ընչից խընդրոյն մէջ (եր. 335)։ Յակոմբայ Մէրտինցոյ գործոց մէջ այլ յիշուած են այլեւայլ վաճառականք այս տարիներուս (1586–8). ինչպէս, Յովհաննէս ո. Ճանիքեկի, Գէորգ ո. Աղամանէ, Գաբրիէլ ո. Կիրակոսի, Յարութիւն Միքիճան։ Յետինս յամի 1587 (մարտ 10) նոտարի առջեւ վկայած է, որ ի Դուրաձձոյ (Ռումելիոյ քաղաք) մօտ ծովու վրայ գտուած ատեն, քանի մի յոյն փախան նաւէն, Առաքելեան Գէորգայ և Ստեփանոսի մի վաճառքը գողցած հետերնին տանելով։ — Նոյն օրեր (14 մայիս)

երկու Հայք այլ յիշուին՝ որդիք Մելքիսեդի, մին Cedrin? կոչուած, որ իւրեն գործակալ կարգէ զմիւսը՝ Ջէօր, իր պահանջները ժողովելու. Միքայէլ Քիոսցի յոյն մի՝ ասոնց թարգման եղեր է հայերէն լեզուին, ըստ նօտարին, որ հաւանօրէն Թուրքարէն էր։

Ասոնցմէ և քան զշատ առջիններն և վերջիններն՝ նշանաւոր է մեզի համար Փէյրշուէ Ղոֆոնցէ, որ 1586–7ին ոչ միայն ի Վենետիկ՝ այլ և Եւրոպիոյ ուրիշ կողմեր պտըտեր է, զորոնք իր ռամկական լեզուով նշանակէ. և որքան այլ ցամաք է գրածն, գոնէ տեսած տեղեաց չատութեանն համար՝ կ՚արժէր որ ընդօրինակեմք, թէ ոչ բոլորը՝ (ինչպէս ըրած եմք զնոյն ուրիշ գրոց մէջ) գոնէ Վենետկոյ վերաբերեալը. «Ես մեղաւոր Փիրզատա Ղի-
» զիլպաշէն (Պարսկաստան), երկիր Ղա-
» պանէն, Իւրոտէն ձորէն (Որոտնայ ձոր),
» կեղոս (գեղս) Գետաթաղէն, Պաստամէցէց
» աքէն (ցեղէ), Ջաքէրի թոռն Միրզին,
» (ո՞րն հայրն է ո՞րն պապն), Հռոմսիմին
» (մայրն Հռիփսիմէ) տաղայ, Իսայիոան
» փարուն?, Պահալվէն աղբէր։ Էն տարին
» որ Հայոց Թվ. էր ՌԼԵ (1586–7), ես
» իմ տանէն ելայ, գլուխս առայ ասկական?
» (աստանդական?) մուլորեցի, օտար աշ-
» խարհ եկայ։ Առջի քաղաքն Վան. էնկից

» կինեցի Հիզու քաղաքն. էնկից կինեցի
» Ղարահէմիդ. ևն. էն. կին. Իզնայմիտ. էն.
» կին. Աստանբուլ քաղաք, որ Խոնդքարին
» Թախտն այ ». ևն: Դանուբեան գաւառաց
վրայօք կ'երթայ ի Լեհաստան. 400 տուն
Հայ գրէ ի Կամենից, 12 ազգային դատաւոր:
Լեհաստանէ կ'անցնի ի Տանձկա, Փրակա,
ուսկից մտնէ յԻտալիա, « Դէյիլանայ եր-
» կիրն, Վէնէտիկ քաղաք՝ ՃԲ մեծ պարոնի
» ձեռն այ. որ Ս. Մարկոս Աւետարանիճին
» մարմին այ. ծովի մէջ այ. ՁՌ (6000) կար-
» մոճ կայ մէջն! ՁՌ (6000) պարքայ կայ
» իւր մէջն, խիստ (մեծ կամ զարմանալի)
» քաղաք այ: Էնկից կինեցի Ենուայայ
» (Ճենովա կամ Անգոնա). էնկ. կին. Հռու-
» մայ քաղաք, » և այլն:

Ուրիշ տեսակ հետաքրքրական դիպուածք են և հետեւեալքն. տարի մի վերջը, 1588, Ստանօզցի Ֆրանգոյ յիշելնուս՝ յիշեցինք և զՖրանչէսգոյ ո. † Պօղոսի. սա և Պէկ ո. Մար-կոսի, երկուքն այլ վաճառականք և բնակողք ի Տան Հայոց, որք կու վկայեն Նոտարի առջեւ (22 մարտի), որ Պարսկահայն Միքայէլ ո. Դոմինիկոսի (Կիրակոս) ամուրի էր, և չեն կարծեր որ ուրիշի խօսք տուած ըլլայ կար-գուելու. Թուի թէ հիմայ կ'ուզէր պսակուիլ և հարսնացուին կողմանէ խնդիր կ'ըլլար:

Աստեց վկայ կ՚ըլլայ Մէթոյէլ ո․ Յովհաննէսու։ — Քանի մ՚ամիս վերջը (յուլ․ 29) դարձեալ առոր համար կու վկայեն երդմամբ Մէթոյէլ ո․ Զաքարայ և Ղազար ո․ Յովհաննէսու վաճառականք, թէ ամուրի էր նա, 26 տարուան, հասակաւ կարճկեկ, շագանակագոյն քիչ մօրուօք, և ձախ դաստակին վրայ երկու սպի ունի կրակի այրածի։ Պօղոս բնակէր ի Ս․ Յովհան-Պօղոս թաղի, և թարգման եղեր է իր ընկեր Ղազարայ։ — Այսպիսի ընտանեկան օրինաց պարտքն առած էր վերոյիշեալ վկայից վկայ Միքայէլն ո․ Յովհաննէսու, բնակող ի Կայուֆա փողոցի, ինչպէս կ՚իմացընէ Նոտարի առջեւ (1589, սեպտ․ 9), որ ութ տարի առաջ պսակուեր էր Ֆր․ Բեռնարդի դստեր՝ Յովհաննայի հետ, և սա բերեր էր 150 դուկատ օժիտ և ինչք․ և խոստանայ (Միք․) հատուցանելու զայն՝ կնոջը կամ անոր ժառանգաց։

Հակառակ տեսարան մի կ՚ընծայէ ի ժամանակիս՝ Սիվրիհիսարցի Աբրահամու ո․ Գարաղաշ վաճառականն (Carabassi de Suvarassari), որ իր նախընթաց մեզ անծանօթ գործոց համար՝ դատի ենթարկուեր է, և (1588, մայիս 18) դատավար կարգեր է զԹեսէոս Կելլա (Ghella) պատուաւոր Պօղոսի մի որդի․ վկայ կ՚ըլլան կիպրացի, կրե-

տացի և մետելլինեցի Յոյնք։ Դատն զինքը ձգէ ի (Լիոնա անուանեալ բանտ), բայց չի դադրիր իրեն պաշտպան ընտրելու (1589 մարտ 7) երկու իտալացիներ (Վիչեն Կալուբի և Նիկ. Ամբրոզինի). բանտապահ մ'այլ վկայ կ'ըլլայ։ Դեռ բանտի մէջ է հետեւեալ տարին այլ (1590), գոնէ ի սկըզբան. վասն զի փետրուարի հնգին խնդրելով ի տէրութենէ իրեն հաշիւները և գործերը քննել, կու յանձնէ Անդրէի ո. Առաքէլեան Գէորգայ (տ. 425), Բաբատոբոլի Կիպրացի յոյնին հետ, (որ երկու տարի առաջ վերոյիշեալ երից վկայից մէկն էր), մասնաւորապէս Ս. Մարիամ անուանեալ Նաւուն մէջ ըրած ծախքերը։ Գէորգ իրեն տեղ գործավար կարգէ զԱնդրէաս Նիկրոնի թարգմանը, բայց քիչ օր վերջը (21 փետր.) յետ կ'առնու այս յանձնարարութիւնը նոտարի առջեւ. այս բանիս այլ վկայ կ'ըլլան Դեմետր ո. Թէոդորի Թեսաղոնիկեցի հայ վաճառական և Ծատուր կամ Աստուածատուր ո. Սիմոնի Պարսկահայ. յետոյ (28 փետր.) դարձեալ կու հրաժարի Գէորգ, նոյն վկայից ներկայութեամբ. Գարապաշ այլ յետս կոչէ անոր հետ ըրած դաշինքը։ Իսկ իր գործն ի՞նչ վերջ կ'ունենայ, և ի՞նչպէս կ'ազատի, զայս չեմ գտած։

Այսպէս այլ անծանօթ մեայ ինձ նոյն ատեն

Հայոց ոմանց ուրիշ խնդրոյ մի վախճանն. ասոնք էին 'Խաչատուր (Aciadur) և Ջատա (Xada) մի, որք † Ֆրանչ. Բրատիչ կոչուած Գրաճճացի (Ադրիականի ծովեզերքի կղզի մի կամ Դալմատիոյ քաղաք) մէկէ մի պահանջ ունէին, իրենց՝ նաւու մէջ ապրանաց համար, և շատոնց դիմած էին առ ատեանն Քառասնից, և թէպէտ ասոնք յանձններ էին քննել, բայց որովհետեւ ուրիշ պահանջողներ այլ կային, խնդիրն խառնակ ըլլալով անորոշ մնացեր էր. Հայք նորէն բողոքեցին, Քառասունքն այլ նոր անձանց յանձնեցին քննել, և զՀայերը նեղացընողը (Ձիրինէոյ) պատժել (1588, սեպտ. 12)։ Քննող դատաւորքն ութ անձինք էին, և երեք անգամ քուէ ձգելով հաւասար հակառակք ելան 4 և 4. անոր համար Քառասունքն սահմանեցին (1589, յուլ. 5) որ այնու հետեւ զոյգ թուով դատողք չընտրուին, այլ 11 հոգի ըլլան կամ գոնէ ինն, և շուտով վճարեն գործը։ Խնդիրն կ'երեւի թէ ԺԶ դարու հռչակաւոր Ուսկոկ կոչուած յելուզակաց չարագործութեան պատճառն էր. ասոնք Դալմատացւոց Scoco բառիւ այսպէս կոչուին, որ նշանակէ յելուզակ, ծովու ասպատակ. և 1532 թուականէն մինչեւ ի 1616 անդադար ծովու վրայ նաւեր կողոպտեր և շատ մարդ սպաններ են, և հազիւ այնքան

տարիներէ վերջը կըրցեր են Վենետք և այլք՝ նուաճել և դադրեցընել զանոնք։ Այս յիշեալ դիպուածիս առեն՝ ոչ միայն վնաս հասուցած են Հայոց, այլ Թուրի թէ և ոմանց մահ. որոյ համար Ժ մեծ պաշտօնէից ատեանն հարցուց (1589, յան. 18) Պրաձձայի կոմսին և Ռուզոքաց դէմ դրուած ծովապետին. ասոնք պատասխանած են յ՚ 3 և 10 փեբր. և երեւի թէ երեք Ռուզոք այլ բաներ են։ Պաշտօնեայք նորէն կու յանձնեն (1589, մարտ 10) քննել Հայոց խնդիրը, որ շատ երկայն քշեր է. վասն զի երկու տարի վերջ այլ (1591, սեպտ. 16 և 23) դարձեալ զնոյն յանձնեն այլեւայլ դատաւորաց. և վերջնական վճիռն անյայտ մնայ ինձ. անտարակոյս Թուրի որ գրկելոց խնդիրն կատարուեր է, բայց շատ ուշ։

Նոյն ժամանակին ուրիշ Հայոյ խնդիր մ՚ այլ երկար քշած է, և նոյնպէս պարագաները և վերջն անծանօթ. Պետրոս, որ 1587ին կամ աւելի առաջ խնդրեր է ի տէրութենէ կամ ի պաշտօնէից Վենետկոյ՝ † Գուլուարեան Յովհաննու (ըստ Իտալացւոց Zuanne de Bonaventura) ժառանգութեան դատը քննել և տալ. տէրութիւնն այլ նոյն տարի (օգոստ. 29) յանձներ է վաճառականութեան Ե Գիտնոց՝ հոգալ. որք արդէն քանի մ՚ օր առաջ (22 օգոստ.) վկայեր էին, թէ արժան է գո-

հացընել զՊետրոս, և զուրիշներն այլ՝ տարբեր կարեւոր բանի մի համար, որ հաւանօրէն էր Հալէպի գունցին նոր տուրքեր պահանջելն ի վաճառականաց Հայոց ։ Տէրութեան վճռական գրուածէն (1588) կ'իմացուի, որ առաջ ամէն մէկ բեռ վաճառքի $2\frac{1}{2}$ դուկատ կ'առնուր գունցն. տարի մ'առաջ սկսաւ 10 դուկատ այլ պահանջել իւրաքանչիւր բեռան. Հայք բողոքեցին. տէրութիւնն յ'7 յուլիսի, 1588, պատուիրեց ժԲից կոչուած ժողովին, որ այդ բանը հաստատեր էր (յ'7 փեբր.), խափանել այդ նորութիւնը ։ Բայց երեւի թէ գունցն Հալպայ չառաւ այսպիսի պատուէր կամ. չուզեց լսել. Հայք նորէն բողոքեցին. տէրութիւնն այլ ուժով գրեց պատուիրեց, որ ինչպէս 1588ին պատուիրած էր՝ վերցուի այդ նոր բաժառութիւնն, և ամենայն կարելի քաղաքավարութեամբ վարուին այդ վաճառականաց հետ՝ յօգուտ վաճառականութեան, և յետ դարձընեն տան անոնց ինչ որ սովորականէն աւելի առած են. իսկ եթէ իրենց ուրիշ շահու համար է Հայոց զանգատն, անմիջապէս շուտով գրեն (պաշտօնեայք) և իմացընեն. բայց մինչեւ որ պատասխան առնուն՝ զգուշութեամբ վարուին Հայոց հետ. որպէս զի չըլլայ թէ ճամբանին փոխեն, թողուն զՎենետիկ և ուրիշ տեղ

տանին վաճառքնին (¹)։ Բայց քանի մի տարի վերջ՝ նորէն Հայոց գանգատ լսուի մաքսի ծանրութեան համար. Ե Գիտունք պատուիրեն (յուլ. 1591) քննել, և եթէ հասարակաց համար է դրուած մաքսն, այնպէս մնայ, իսկ եթէ միայն Հայոց՝ վերցուի։ Այս պատուէրս գրած է տէրութիւն առ գունցն ի 10 յուլ. 1591։

1590. Այս թուականիս քանի մի Հայ վաճառականք նոր կամ նորէն յերեւան գան. — Անկիւրացի մի՝ Յովսէփ ո. Դոնատոյ (Donato) ըստ Իտալացւոց, զոր համարիմ Տիրատուր, գործակալ կարգէ զԳաբրիէլ ո. Լեւոնի. թերեւս իր հայրենակիցը, որ պահանջէ ի Ստեփանոսէ հացագործէ 7 ½ դուկատ՝ գին կտոր մի ճերմակ Ցփսի, զոր քիչ օր առաջ առեր էր Օսման անուամբ թուրքէ։ Այս

1. ... Non sia fatta altra novità in questo proposito; et che sia usata verso li detti mercanti ogni conveniente cortesia et buon trattamento per beneficio del commercio; facendo restituire intieramente quel denaro che fosse stato esborsato per tal conto... Volendo che fratanto usiate ogni buon trattamento ad essi mercanti, come confidiamo che farete; perche possino continuar li loro viaggi, et non habbino a tentar altra strada co' le loro mercantie.

առեն ուրիշ Գարակէօզք այլ կային ի Վե֊նետիկ. մին՝ ո. Գէորգայ Անկիւրացի. որ Դոմ. Ատանայի և Սիմոնի վաճառականցութեան վկա֊յից վկայ եղեր էր (1585). միւս մէկ մ՚ այլ ո. Մուրատայ, որոյ հայրենիքն կամ ցեղն Arpiez գրուած է. սա քանի մի տարի վերջ (1593) վկայ եղած է Տէր Յակովբայ՝ զՏըն֊պահն Գէորգ իրեն գործավար դնելուն, և վախճանած է յամի 1607 ի Տան Հայոց, 40 տարուան։ — Գարակէօզ ո. Մարկոսի, զոր յիշեցինք ի գործս Մկրտչի սանսէրի և տըն֊պահի (եր. 419)։ — Դարձեալ Caracosa գրուած Հայ մի ո. Յակովբայ, բնակող ի Ս. Մարիամ Խորոտիկ, որ նոյն թաղին՝ † Բար֊ղողիմ. Zatter թողած այրի կնոջ Մարեմայ հետ պսակուեր է (1593, մայիս 16)։

— Ջաքար ո. Սանաթէ, որ Յակոբեան Մար֊կոսի զՅակովբեան Մարկ. Մուրատ գործա֊կա՛լ կարգելուն՝ վկայ և թարգման եղած է (27 սեպտ. 1590)։ —

— Պօղոս Նախճաւանցի ո. Բարսղի, քանի մ՚ անգամ յիշուած։

Խաչատուր Ամդեցի (Cazadur de Carahamit) ո. Գուրաճեայ. սա շատ անգամ յիշուած Տրի֊պօլսեցի Դոնատոյի ո. Քրիստափորը գոր֊ծակալ կարգէ (1595, օգոս. 30) իր վաճառք֊ներն ընդունելու ի նաւուց, ի մաքսատանց,

են։ Քանի մի տարի վերջ (1599, յուլ.) վճարելով զՄնացորդ վարձուց իր սպասաւոր Պօլէն ո. Սեֆերօյ՝ 90 լիր. ոսկի դրամով, Նօտարի առջեւ կ՚առնու անկէ անդորրագիր. որոյ վկայ և Թարգման կ՚ըլլայ Շահնշահն Մարկոս։ — Ասոր ժամանակակից են Ստեփան Բօբերդցին ո. Ֆէրուհի, զոր յիշեցինք՝ Մկրտիչ Պարսկի գործոց մէջ (1595, հոկտ. 23)։ — Ամիրճան Եզընկոյն, որ Թօխադցի Կուկիսան? Հռոմի մի յանձնարարութեամբ՝ կ՚առնու (1595, փեբր. 26) ի վերոյիշեալ Դոնատոյէ՝ անոր պահանջը, 34 դուկատ։ Հաւանօրէն սա է 20 տարի առաջ յիշուած (1574, յուլ. 31) Եզընկացի Մէրտէնշահի ո. Emiryassin գրուածն (եր. 443)։ — Այս տարիներուս պատահած են և դէպք Աւետիքի Բերիացւոյ և Պապայ ո. Յովհաննու, զոր յիշած եմք Ջուղայեցւոց վրայօք գրելով (տ. 379, են)։

Քաղաքական և դատողական դէպք մ՚այլ պատահած է այս տարիներում, Անդրէաս ո. Յակոբայ Հայու. սա 1594 տարւոյն վերջերը և յաջորդին սկիզբը՝ յաճախելով բարեկամաբար առ Հասան Թուրք՝ (գերի Էմիր Մէհէմմէտ չէլէպիի, ի Նոր Ս. Յով. Թաղի, ի տան զոր Պաւլա Պրէանի՝ Թուրքաց կու վարձէ եղեր), քիչ քիչ այդ Թուրքին 300 լիպ. Պողպատը գողունի կու վերցընէ, նոյն-

պէս անոր կարմիր վերարկուն այլ, և յա-
րեւելք երթալու խալէի մի վրայ 78 կապոց
կտաւեղինաց 49ին մէջը կու դնէ՝ ծածկելով,
գործակցութեամբ Մարկոս Մուրատ ռանոէրի
և Նաւուն գլխաւորաց և բեռները քննողաց.
Նաւն դեռ քաղքէն չբաժնուած, տուն վար-
ձող խաթունն կ՚իմացընէ եղածը։ Անդրէաս,
Մ. Մարկոս և վերոյիշեալք կոչուին ի դատ,
յանցաւորաց կարգին կայնելով ի դատարա-
նի Avogadori di Comune կոչուած դատա-
ւորաց. յետ երկար քննութեանց (որոց գրուա-
ծը չեմ գտած) 1597ին դեկտեմ. 3ին, ամեն
մէկուն վրայ քուէ ձգելով՝ կու վճռեն զա-
մենքն այլ արձըկել, բաց յԱնդրէասայ. որ
դատապարտուի տարի մի բանտարկուելու,
ուսկից եթէ փախչի և բռնուի, տասն տարի
Վենետկոյ սահմաններէն դուրս պիտի վռըն-
տուի. և եթէ նորէն ներս մտնէ և բռնուի,
դարձեալ տարի մի խիստ բանտ, բռնողին
այլ վարձք անոր ստացուածքէն, եթէ ունի,
թէ ոչ՝ ի տէրութենէ։

Սոյն թուականիս (1597, օգոստ. 9), նօտա-
րի առջեւ Պօղոս Պետրոս անուամբ մէկ մի
Սերուիոյ Սոֆիա քաղաքի Ճիագոտենա բեր-
դէն (Giagodena castel de Soffia della Ser-
via), իր տիրոջ Գրիգորի ո. Թէոդորի Սեբաս-
տացւոյ անդորրագիր կու տայ, որ իր եօթնա-

մեայ ծառայութեան վարձուց Մնացորդ 180 դուկատն ընդունեցաւ և այլ պահանջ չունի։ Տիրոջ անունն՝ մանաւանդ հօրն անունն՝ կարծեցընէ, թէ սա մեզ ծանօթ Թէոդորի ո. Գէորգն ըլլայ. և յիրաւի Նոտարն այլ նախ այսպէս գրած է, բայց յետոյ աւրած և ի լուսանցսն Գրիգոր գրած է, հայրենիքն այլ Sapas, որ է անշուշտ Սեբաստիա, որ ինչպէս յայտնի է ռամկօրէն Սըվազ կ'ըսուի։

ԺԶ դարու վերջընթեր տարին յերեւան գայ Գէորգ ո. Սահակայ, երիտասարդ վաճառական մի, 25ամեայ բարձրկեկ հասակաւ, շագանակագոյն դեռաբոյս մօրուօք, և աջոյն միջին մատին վրայ խնձորի նշան մ' ունենալով, երկաթի նշան մ' այլ ձախ բազկին վրայ. այսպէս վկայեն Անճելոյ Ասորի սանսէրն, Գրիգոր ո. Ստեփանոսի, Սիմոն ո. Յովհաննու և Անդրէաս ո. Յովհաննու. և թէ քրիստոնեայ է, և շատ տեղ պտըտեր է վաճառականութեամբ։ Վկայութեան կամ քննութեան պատճառն չէ նշանակուած։ — Ասոր նման վկայութիւն մի տուած են քանի մի Ջուղայեցիք, Շահաբասայ հրամանաւ՝ իրենց հայրենեաց ողբալի աւերման տարին, (1605, մարտ 21), Մուրատ ո. Կոսամայ (Cossam), Սաֆար ո. Յակովբայ, Մուրատ ո. Մարգարայ, և Յակոբ ո. Մելգոնի կամ Մանկի? (Meuchio գրուած),

հայրենեօք՝ Պարսից Անկիրոն? (Anghiron, Էնտերուն?) քաղքէն, իրենց հայրենակից Ջուղայեցի Ստեփանէ ո. Էրփանայ համար, որ 40ամեայ, բարեկազմ, միջահասակ, կապոյտաչուի, չիկամօրուս, բարի քրիստոնեայ է. չորս տարի առաջ ելեր է իր երկրէն, և հիմայ կարծեն որ ի Սիկիլիա բանտուած է. ինչերն իրենն են և ոչ Թուրքի կամ ուրիշ մարդու։ Այս վկայից հաւատարմութեան վկայ կ՚ըլլայ ծանօթ Դոնատոյի որդին։ Բանտարգելութեան պատճառն յայտ չէ, բայց տարօրինակ բան պէտք չէ համարիլ՝ այն ատենի Սիկիլիոյ սպանիական տէրութեան համար։

Այս տարիներու Ջուղայեցւոց իրենց հայրենեաց դեռ չլինութեան ատեն՝ վերջին յիշատակներն արդէն նշանակած եմք, իրենց վրայ յատուկ գրելով (եր. 368–81)։

ԺԶ դարուն և Հայ–Վենետաց Բ Ցեղանակի վերջին տարին, (1600) Պորտոգալցի Հռոտրիկոսի վաճառակից Եզընկացի մի յայտնուի, Խոճան անուամբ, որդի Ասլանայ, որ ի Հալէպ անոր փոխ տուեր է 300 դուկատ. հիմայ հօս ի Վենետիկ անոր եղբօրմէ (Պետրոսէ Ալմետայ) կ՚ընդունի Խոճան իր ստակը՝ չահովը մէկտեղ, ունկար (մաճառ) ոսկւով, և կու տայ անդորրագիր։

Այս եւքի յիշեալ Հայոյս՝ անուամբ մեր-

ձաւոր և տեղեաք ոչ շատ հեռի՝ ազգային մ՚ այլ, Աճիխան (Agican) գուցէ Ախիճան, Արղնցի, որդի Տիարի, իւրեան գործավար կարգեր է (1602, սեպտ. 6), Թուրք մի, Նասրէտտին չէլէպի, որ պահանջէ ի Խօճէլօյ հայազգւոյ՝ իւրեան տուած 12 փերթ չուխայից երկուքն այլ. զի ինքն 12 կտոր տուեր էր ասոր՝ որ տայ Էմիրջէ անուամբ ուրիշ հայ-ազգւոյ. խոըը 10 կտոր միայն տուեր է։

Բաւական համարուի այսչափ համառօ-տածս՝ ի ԺԷ դարու ի Վենետիկ գործով յիշուած Հայոց համար, որոց հետ նա և անոնց, որոց ուրիշ յիշատակ մի չէր յայտ-նուած, բայց եթէ վկայ ըլլալ առջիններուն անձանց, գործոց և դատից, և երբեմն գոր-ծակից։ Ցիշենք մէկ քանի մ՚ այլ, որոց ոչ այլ ինչ յիշատակ կայ, բայց մահուան, որ ծածկէ անոնց քիչ շատ գործածը և կրածը. միանգամայն և յայտնէ՝ որ անպակաս եղեր են ի Վենետիկ՝ ազգայինք մեր, և յառաջ քան զնախայիշեալ գործով յայտնիս։ Այս եօքիններէս (անյայտից) քանի մի՝ արդէն պատճառաւ ինչ յիշուած են. թէ զանոնք թէ զայլս շարեմք իրենց մահուան թուականին կարգաւ, ի կիսոյ ցվերջ դարուն, դուրս թող-լով երախայ հասակաւ վախճանեալները։

1553 Գրիգոր. 23 օգոստ. ի Տան Հայոց. անմօրեայ հիւանդութեամբ։

1555–6 Սիմոն. 19 փեբր. ի Տան Հայոց. տարի մի brusa (այրած) հիւանդութեամբ։

1558 Աւոյիս կամ Ալվիզէ (տես 426), ի Հայոց տան, ութ օր ջերմով։

1564 Գրիգոր. 29 յուլիս. սա թուի թէ խոց կամ ուռեցք մի կտրել տուեր է, և խոկոյն մեռեր է (1), ի Տան Հայոց։

1565 Գրիգոր ո. Սկանտարի։

1570 Սարգիս. 30ամեայ, նոյնպէս ի Տան Հայոց, 3 ամիս հիւթոց իջուածոյ հիւանդութեամբ։

1573 Անճելոյ. փեբր. 55ամեայ, 3 ամիս հին հիւանդութեամբ, կ' ըսուի։

1574 Յովհաննէս. 34 ամեայ. 14 օգոս. այլևայլ ցաւերով. բնակող ի Նոր Ս. Յովհան (2)։

1574 Յարութիւն (Salvador). 8 ապրիլ. 45ամեայ, հալումաշ հիւանդութեամբ, բնակող ի Նոր Ս. Յովհան։

1. Il quale era chiloso; se fece tagiar, talche morto. Այսպէս գրէ Տապիրք Ս. Յուլիանու։

2. Մեռելագիրք եկեղեցւոյն այսպէս գրէ. Zuane Armeno, d'anni 34 in circa; amalado da *petechie*, mal di *mazucho?*, et febre pestilenzial; za zorni 25, visitato dalo Excellente M.sr Zuan Battista Venturino. Nele case de Due Lion Lic.to.

1576 Յակովբ. 14 հոկտեմբերի։

1578 Յովհաննէս սանսէր Թուրքաց, 90 տարուան. յուլ. 14։

1587 Ստեփան, 2 մայիս. 60ամեայ, ի Ս. Մարիամ Խորոտիկ. 8օրեայ՝ հիմայ անծանօթ անուն՝ scoranzia հիւանդութեամբ։

1589 Բենեդիկտոս ո. Յակովբայ։

1591 Մարկ–Անտոն ո. Հայ Անտոնի, 11 տարեկան. (9 օգոստ. flusso) հիւթոց հոսմամբ. ի Ս. Մարտինոս. ուր † է և հայրն քիչ օր վերջը նոյն հիւանդութեամբ. (տ. 262)։

1591 Գէորգ. 28 մայիս. 17 տարեկան, հիմայ անծանօթ անուն . acipsia հիւանդութեամբ։

1598 Յովհան. 14 մարտի. բնակող ի Ս. Մար. Խորոտիկ. 70ամեայ. 20 օր ջերմով հիւանդացեալ և ծերութեամբ։

1598 Ֆրանչիսկոս Սէֆէր, բնակող ի Ս. Մկրտիչ Պրագորայ. 48ամեայ. 25 օր խցուած (opilatio) հիւանդութեամբ։

1598 Գաբրիէլ ո. Կարապետի, 80ամեայ. 27 յունիսի, յետ 15 օր հիւանդութեան, երեկուն ատեն հրապարակի մէջ ընկեր † է։

1599 Յովհան ո. Մարկոսի 13 օգոստոսի. 13 տարեկան. Թուի լուսնոտութեամբ. բը-

Նակող (1) ի Նոր Ս. Յովհան։ — Ի կանանց՝ նշանակուած է + 1576ին Եղիսաբեթ դուստր Յովհաննու սանսէրին Թուրքաց։

Այսքան հանգուցելոց և ասոնցմէ առաջ յիշեցելոց՝ չկայ և ոչ մէկուն որոշակի թաղման տեղը, այլ յայտ է թէ շատերն իրենց թաղին եկեղեցեաց մէջ կամ քովերը. միայն Սկանդարի որդի Գրիգոր թաղուած է ի Ս. Գէորգ կղզին, որոյ գերեզմանն այլ ճերմակ քարէ մաշած երկայնաձեւ գրերով արձանագրեալ տեսեր են վանացս ծերունի Հարք և ընդօրինակեր են. անոր հետ այն ատեն դեռ մնացեալ (և հիմայ ոչ) հինգ ուրիշ ԺԷ դարու տապանագիրներ այլ։ Գրիգորին կարճ տող մի է, և հայրենեաց անունն տարակուսական.

**Էրքասրուցի ? Իսկանդար յ որդին Գիրգոր ։**
**Թվ. ՌԺԴ։**

Հրապարակին մէջ (հաւանօրէն Ս. Մարկոսի) մեռնող Գաբրիելի և հօրն անունն գրուած է Cabriel Armeno Garabirt. այս յիշեցընէ անկէ եօթն կամ ութ տարի վերջը խնդիր մի Gabriel Carabetto անուամբ մէկի, որ չըսուիր Հայ, այլ հաւանական կ՚երեւի, որովհետեւ խնդիրն այլ էր իր վենետկեցի

1. Zuane figlio di M.sr Marco Armeno, de anni 13: il quale cascava da quel brutto mal: già giorni venti.

չըլլալով՝ ուզելն այնպէս ըլլալ, այսինքն քաղաքացի, ինչպէս կ՚ըսեն քննող պաշտօնեայք տէրութեան: առ դուքսն, յ'9 փեբր. 1601-2. յիշեցընելով որ այսպիսի խնդիրը շատ կարեւոր համարելով՝ յամի 1552 տէրութեան մեծագոյն ժողովով (Maggior Consiglio) վճռուած էր, որ այս շնորհքս տրուի անոնց որ 25 տարի բնակած ըլլան ի Վենետիկ. իսկ Գաբրիէլս այս 36 տարի է որ շարունակ բնակէր ի Վենետիկ (loco et foco), ներկի վաճառականաց Cardigiani կոչուած տանց մէջ, որոց և գործակից էր, և տէրութեան ամեն տուրքերը հատուցեր էր. ուրեմն արժան է որ խնդիրն կատարուի: Հաւանիմ որ այնպէս եղած է, թէ և վճռոյն չեմ հանդիպած:

Ինչպէս յիշած եմ ի սկզբան, Վենետկոյ եկեղեցեաց †ագիրք ԺԶ դարու կիսէն քիչ առաջ կու սկսին. մեր նշանակեալ մեռեալքն այլ դարուն կիսէն վերջ. իսկ ծնունդք Հայ զաւակաց՝ թէ յերկուց Հայոց և թէ ի հօրէ միայն, դարուն վերջի 30 տարիներու մէջ նշանակած են (ըստ իմ գիտութեան) ի Մկըրտագիրս, յորոց քաղած եմ աւելի քան զ'40, և որոց կէսն արդէն յիշած Հայ Անտոնի որդիքն և Թոռունքն (տ. 475. 330) և Թէոդո-

րեան Գէորգայ զաւակքն են. իսկ Պսակք (իմ գտածս) տասնիւ չափ, բայց անոնցմէ գուրս շատ ամուսնաւոր Հայք յիշուին. յորմէ գուշակուի՝ որ շատ աւելի եղած են ծնունդք քան իմ նշանակածս։ Գրոցս 163 և 175 էջերուն յիշածէս յայտնի կ՚երևի՝ որ Հայ–Վենետաց Գ. յեղանակին մէջ ծնունդք 10 կամ 15ապատիկ աւելի եղած են, ըստ այնմ և մահունք, և առաւել ևս. զի մահ ոչ միայն զտեղացի ծնունդս՝ այլ և օտար աստեղաց տակ ծնած հիւրերը՝ հաւասարապէս հնձէ և ծածկէ ի խորս, առանց խտրելու թէ չոր է հողն թէ աղի։ Իսկ մենք, որ նոյն վիճակին սահմանուած եմք նորագոյն յեղանակի մէջ, ինչպէս Առաջնոյն հանգուցելոց համար մաղթեցինք (եր. 164), Երկրորդիս այլ զնոյն մաղթեմք, նա և բազմութեան Երրորդին՝ եթէ ըստ ոճոյ գրոցս յիշուին և եթէ ոչ։



## ԺԷ.

## ՅԱՒԵԼՈՒԱԾ.

Ա. ՔԱՆԻ ՄԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆՔ. — Բ, ԼՐՄՈՒՆՔ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆՑ. — Գ. ՏՈՒՆ ՀԱՅՈՑ. — Դ. ԱԶԳԱՏՈՀՄՔ ՀԱՅՈՑ Ի ՎԵՆԵՏԻԿ. — Ե. ԱԿՆԱՐԿ ՄԻ Ի ՀԱՅ–ՎԵՆԵՏՍ Գ ՅԵՂԱՆԱԿԻ։

*Հայ–Վենետաց* Բ *Յեղանակի գործոց յիշատակներէն բոլորովին չհեռացած կամ թողած, հարկ է մեզ ուղղել մէկ երկու վրիպակներ գրուածիս, աւելցընել քանի մի մոռցուած յիշատակ հետաքրքրաշարժ անձանց, և քանի մի բան այլ Հայոց Տան, Տնպահից և բնակողաց տոհմից և սերընդոց վրայօք։*

Ա. *Վրիպակաց մէկն է (թողլով ուրիշ մանր մունր) յերես* 56 *Բեկոլոտտի Ֆիրենցացի վաճառականին և վաճառագրին միւս մականունը* Պոլչինոյ *գրուիլն, որ պէտք է գրուիլ և կարդալ Պալտուչչի* (Balducci), *և ըստ ոմանց հայադարձութեամբ, եթէ ծիծաղելի չէ,* Բաղդոսկ։

*Երես* 160. Urbe Veteri *քաղաքն, որոյ Հայոց հոգէտան՝ Մարիամ տնպահն Հայոց վենետկոյ՝ միւս իտալական Հայոց հոգէտանց հետ կտակէր դուկատ մի, ոչ է՝ հիմայ ծանօթ*

և Հռովմայ նաւահանգիստ համարեալ Չիվի-տա վեքքիա (Civita vecchia) քաղաքն. այլ Օրվիէտոյ կոչուածն (Orvieto) Ումբրիա հին գաւառի, որոյ ուղղական հին անունն Urbs vetus հին քաղաք նշանակէ, կոչուէր և Her-banum. Նշանաւոր և յարգի է այս Մարեմայ կտակին յիշատակն. վասն զի ինչուան հիմայ ծանօթ էր միայն մէկ իտալացի եկեղեցական թեմից վրայ գրողի վկայութիւնն, թէ յամի 1288 տեղւոյն եպիսկոպոսն հիմնադրեր կամ օծեր է հօն Հայոց Ս. Հոգի եկեղեցին: Դեռ անցեալ տարի նոր հետաքննին եկեղեցականք Հռովմայ՝ հարցընէին մեզի, թէ արդեօք մեր ազգային գրուածոց մէջ կա՞յ այս բանիս յիշա-տակ. և մենք այն ատեն մոռցանք այս Մա-րեմայ տնպահի կտակը, (չփոթած ըլլալով զՕրվիետոյ ընդ Չիվիդավեքքիայ). որ կ՚ ի-մացընէ մեզ, թէ հոգէտունն այն և եկեղե-ցին՝ 56 տարիներէ ի վեր Հայոց բնակարան և պաշտօնատեղի է եղեր:

Բ. Ի Վենետիկ բնակող Հայոց մէջ (յ՚Բ Ցեղանակիս) մէկ կերպով նշանաւոր և հե-տաքննելի անձանց կարգէն տեսնուեցան, Ան-տոն Հայն (թերեւս աւելի քան զամեն այլս), Գէորգն Թէոդորեան և մռտող Մէրտինցին Յակովբ. սոոնց մէկմէկ յիշատակ այլ մոռ-

ցուած էր նշանակելոց մէջ, և են տառք, և բաւական նշանաւորք: — Առաջնոյն (Անտոնի) վրայօք երկար գրածէս՝ իր ճարտարութեան հետ երեւցաւ՝ անոր ոչ արժանաւոր բաղդն կամ ունեւորութիւնն. նոր դուրս ելած յիշատակարանն ցուցընէ՝ որ երբեմն ազգային սպասաւոր մ՚ այլ ունի եղեր. որ է Աբրահամ ո. Դիւանի, Բերիացի Աբիբեան տան փանձառական մի (della casa Abib de Aleppo): Սա յամի 1568, (մայիս 12, De Grandi Paulo) նոտարի առջեւ խոստանայ հաւատարմաբար ծառայել տարի մի. Անտոն այլ (զոր այս տեղ նոտարն գրէ M.sr Antonio Surian Armeno de M. Iseppo di Medici) խոստանայ դարմանել զԱբրահամ ապրուստով, և տարեկան վարձք այլ տալ 20 դուկատ: Սա իբրեւ գրաւ յանձնէ Անտոնի 130 դուկատ, և նա խոստանայ ի վերջ տարւոյ ծառայութեանն՝ դարձընել իրեն 20 դուկատ վարձուց հետ: Այս դաշնադրութեան վկայ կ՚ըլլան՝ ծանօթ բերիացին Աղեքսանդր ո. Շաւալաթայ և անծանօթ Մէրտինցի մի՝ Յակոբ ո. Տաւրոնեայ:

Գէորգայ ո. Թէոդորի նորայայտ յիշատակն՝ առաջին գրածներէս աւելի հին են. 1565 տարւոյ. (13 օգոստոսի). յորում Իսա Ռայիս մեծ խալէի մի տէր (Ese Ras turcha

patronus unius gallioni) գործավար կարգէ զԳէորգ, որ պահանջէ և առնու ի Գասպարայ ո. Անտոնի 155 դուկատ, ըստ մուրհակի՝ զոր գրեր էր (ապրիլի 24ին) Աբրահամ Տրինգա (Triucha) Հրեայն, փոխանորդն դունցի Վենետաց ի Վալլոնա Դալմատիոյ. դարձեալ, եօթն ծեզգին ոսկի այլ՝ զոր ռայիսն ծախսեր էր վասն այլևայլ պիտոյից Գասպարայ: Սա Պալոմբարացի կոչուի (Palombara). իսկ այս անուամբ երկու տեղ կայ, մին ի սահմանս Հռովմայ, միւսն ի հարաւային Իտալիա (յԱբրուցի). որն այլ ըլլայ իր հայրենիքն՝ յայտնուի որ Գասպար իտալացի է, և այս ատենս Ս. Մարկոսի բանտից մէջ էր. վկայ այս բաներուս կ՚ըլլայ նաւուն գրագիրն Թովմաս Պերացի, (de Pera), թարգման՝ Միքայէլ Մամբրէ հրեայն: Երկու ամիս վերջը (15 հոկտ.) Գէորգ՝ որ այն ատեն բնակեր ի Ս. Յուլիանոս, գուցէ և ի Տան Հայոց, սոյն տան մէջ բնակող Յարութիւն ո. Սիմոնը (Թուրք կարկառեցին) իրեն տեղ այս խնդրոյս համար գործավար դրեր է Նոտարի առջև. վկայքն իտալացիք են:

Մէրտինցի Յակոբբայ Նոր ջիշատակն այլ համեմատ է իր գործօնէութեան. յամի 1575 (սեպտ. 22) Նոտարի առջև Ռեկանաթեցի (Անգոնայ գաւառի քաղաք) Մատթէոս ա-

Նուամբ մէկէ մի՝ 40 դուկատի (ոսկի սկուտով վճարելով) գնէ Թուրք գերի մի, Մէհէմմէտ անուամբ, չափաւոր հասակաւ, որ ճակտին վրայ կտրուածի նշան մի կրէր, աջ արմունկէն վար այլ, stachada որ թեւէն անցեր է (1)։

Գ. Տունն Հայոց ի Վենետիկ. Casa degli Armeni. Վեց և կէս դարէ ի վեր այսպէս լսուած և դեռ չէն Հայազգեաց բնակարանին վրայօք՝ արդէն բաւական խօսած ենք (եր. 143–8. 200. և այլն). սակայն չուզելով այս Հայ–Վենետաց Բ Ցեղանակի քանի մի յիշատակներ այլ առջի յիշածներէս հեռուն թողուլ, աւելցընենք, ներելի համարելով և քանի մի առ հարկի կրկնութիւն բանից։ Եւ նախ տեսնենք յետագայ Ցեղանակին մէջ՝ Հայք ինչ (ռամկաբար) ոճով գրած և իտալերէն այլ թարգմանած են Մարկոս Ծիանեայ կտակեալ տուրքը, զոր և յիշած էինք յեր ես 145։

Այս նոր գրուածս՝ կտակին ստորագրութեան ամսաթուին չարադրուած կամ թուագրած է, յետ իբր 430 կամ ըստ գրողացն՝ 449 տարիներու. որովհետեւ փոխանակ 1253

1. Se attrova haver nel brazzo destro dal comedo in zoso, una stachada che passa esso brazzo, et ha un taglio sopra la fronte dalla parte sinistra, et una pichiata nella cossa sinistra.

գրելու կտակին տարին՝ երկու վերջին թի-ւերը իրարու տեղ դնելով 1235 գրեր են. բայց ամսոյն օրն նոյն է, յունիսի 5 = մայիս 25 ըստ հին տումարի, ԺԷ դարու. յորում՝ այսպէս գրեն Հայք, երբ իրենց Տումը նորոգելով՝ մտածէին եկեղեցի մ՚ այլ շինել։ Ստո-րագրութիւն անուանց՝ չկայ. որով չէ յայտ՝ եթէ քահանա՞յ է գրողն՝ թէ աշխարհիկ։

1684. մայիս 25. — Ի թուին Փրկչին ՌՄԼԵ, և ի թուին Հայոց ՌՃԳ, մայիսի 25.
« ի Վէնէցիա։ Կամաւ Հօր ամենակալին
» և Որդւոյ իւրոյ Միածնին, հանգ(ուց)եալ
» էր առ Քրիստոս՝ պայծառագոյն և ճէն-
» թլում (gentilhomo) Վէնէցիոյ քաղաքիս,
» այր մի աստուածասէր և հաւատարիմ մե-
» րոյս Հայոց ազգի, Մարգօ անուանեալ, որդի
» Բէթռօի, ի տանէն Ցիանի։ Կտակ էր
» արարեալ այսպէս. թէ, Այն իմ տունն՝
» ուր Հայք կան բնակեալք՝ թողի իւրեանց,
» ինձ յիշատակ յաւիտենական, որ լիցի
» Սպիտալ տէ Արմէնի (Hospitale կամ Ospizio),
» որ կոչի Աղքատաց տուն Հայոց Լուսաւոր-
» չեան ազգի։ Դարձեալ, մինչ պիտոյ իցէ
» աւերուածոյ շինուածոյն տանն այն, պար-
» տին իմ գօմսարքն (Comisarj, Խոստա-
» կատարք) և Բուրկրաթօռներն (Procura-
» tori) իմ ինթրաթի (եկամուտի) ըստըկէն

» շինել գպակասութիւն աւերման տանն այն.
» որ է այս սուրբ եկեղեցւոյս տեղն։ Ցայս-
» միկ տան կայր շինուածք՝ ընդ ամէնն՝ փոք-
» րիկ մատուռ մի և քանի մի խուց։ Դար-
» ձեալ. այս ճէնթուլումիս կտակին կայ գը-
» րեալ, ի Բուրկուրաթիա տի Չիթրան, (Pro-
» curatia de Citra), ի մէջ Նոցա տէֆթէրի.
» ունիմք մեք և այլ գրեանք։ — Զոր Տէր
» մեր Յիսուս Քրիստոս ի փոխարէնն որոց
» սորա՝ տացէ իւր և իւր ծնողաց հոգւոյն
» հանգիստ և արքայութիւն յաւիտենից. և
» արժանի արասցէ երանաւէտ կոչման և
» երկնից արքայութեան. յաւիտեանս յա-
» ւիտենից. ամէն։ — Ո՛վ սիրելիք Քրիս-
» տոսի, պարտիմք ամենեքեանս միաբերան
» և ուղիղ սրտիւ ասել. Աստուած ողորմի իւր
» հոգւոյն և իւր ծնողաց և իւրեանց զա-
» ւակացն. ամէն։ Հայր մեր։ »

Կտակողին օրերէն մինչեւ գրեթէ ի կէս մեր այս դարուս՝ քիչ շատ Հայ բնակողք եղած են այդ իրենց շնորհուած տան մէջ. յետին բնակողն եղաւ Տէր Սահակ Վ. Մաղաքեան, † ի 1843։ Ա և Բ Յեղանակի մէջ բնակողաց ոմանք յիշուած են գրոցս մէջ. որոց առաջին ծանօթքն են, կտակողէն և ոչ ամբողջ դար մի ետեւ՝ միւս կտակող տանտեսուհին կամ տանտիկին Մարիամ (տ. 157) և

իրեն յիշատակներն, հոգեւորականք և աշխարհականք. յորմէ յայտ է, թէ՝ իրենցմէ առաջ և վերջ այլ կային նոյնպէս բնակողք. առջինները բոլորովին անծանօթ են, վերջիններէն՝ տեսանք գրեթէ Մարիամէ դար մի վերջը Գր. Յակոբը և իւր որդին (տ. 180), և սոանցմէ վերջ զոմանս ի նոյն ԺԵ դարու, աւելի շատերն ի ԺԶ դարու. այլ աւելի եղած են Գ յեղանակին մէջ, և սակաւք այս մեր դարուս։

Տունն թողուած էր Հայոց. բայց հարկ էր որ Հայ գտուած չգտուած ատեն՝ տիրութիւն ընող մ՚այլ ըլլար. և այս կտակին մէջ յիշուած է՝ Procuratori de Citra. այսինքն Հոգցողք Այս կողմի, որ է քաղաքին այն կողմն ուր Ս. Մարկոս տաճարն և հրապարակն է, Ռիալտոյի մեծ կամուրջով բաժնուած միւս մասէն։ Այս ետքի կողմիս Հոգցողք՝ կոչուէին Այն կամ Անդրագոյն կողման (Procuratori de Ultra). շատ հեռ քաղաքն և քաղքէն դուրս տեղիք նշանակեն Այսոն և Այնն։ Թէ՛ տան նորոգութեան, թէ՛ նոր բնակիչ ընդունելու, թէ անոնց պիտոյից կամ գործոց՝ և չփոթութեանց հոգն, այս պաշտօնէից յանձնած էր Մարկոս Ծիանի. և այնպէս ըրած են հաւատարիմ և մեծ պաշտօնեայքն մինչեւ ի վախճան հասարակապետութեան Վենետկոյ։ Եւ որովհետեւ տան նորոգութեան համար այլ

*Թողուած էր գումար մի, անոր շահէն կ՚ըլլային նորոգութիւնք և շինութիւնք. որոց հաշուէգիրքն և մուրհակք (մասամբ) դեռ գտուին իրենց դիւանաց մէջ. հնագոյնքն՝ վերոյիշեալ Գէորգի ժամանակին հասնին (ըստ իմ գտածիս)։ Նախ* 1443, *մարտ ամսոյ մէջ նշանակուին՝ տախտակի և այլ նիւթոց չափք և գինք.* Ospidal, Spedal, Hospitale de Armenj *կոչելով զտունը. և մինչև* ԺԵ *դարուն վերջը՝* 25 *անգամ եղած ծախքերն մի առ մի նշանակուած են, որք՝ հետաքննողաց կըրնան լոյս կամ զբօսանք տալ, այն ժամանակի նիւթոց և աշխատութեան աժնութեան, կամ դրամոց թանկութեան, եթէ համեմատին հիմկու դրամոց հետ։ Օրինակի համար.* 1451 (*հոկտ.* 10) *քսան տեսակ բաւական քանակաւ նիւթք՝ իբրև* 42 *լիրայ արժեր են. վարպետն՝ որ թէ՛ հիւսն է եղեր թէ որմնադիր,* 22 *օրուան բանողչէք առեր է* 35 *լիրայ և* 8 *փող* (*սոլտի*)*. իր մարդն* 32 *օրուան համար՝* 15 *լիրայ,* 18 *փող։ Վենետկոյ լիրայն այժմու կէս ֆրանգն արժէ ըստ նիւթոյն. և հիմայ այդպիսի բանւորաց տասնապատիկ աւելի վճարուի։ —* ԺԶ *դարու մէջ այլ* 30 *անգամի չափ հաշիւք նշանակուած են։*

*Այս նորոգութեանց և ծախուց մեծագոյնն եղած է* 1494–7 *տարիներու միջոց, երբ շատ*

Հայք գալով ի Վենետիկ՝ ուզեր են տունը նորոգել տալ նոր շէնքերով, և օտարազգի բնակիչները դուրս հանել (ինչպէս յիշած եմք յերես 200). այս առթիւ նշանակած (ծանօթ) ծախքն են իբր 45 դուկատ, որ է ըստ նիւթականին իբր 550 ֆր. և նշանակէ շատ մեծ ծախք, այնքան՝ որ Հոգցողք բաւական եկամուտ չունենալով Տիաննայ թողած գլխէն, պարտաւորեցին զՀայս՝ որ մաս մ' այլ իրենք վճարեն քիչ քիչ, որովհետեւ իրենք ըստ հաճոյից այլ շինել տուին, և գրեթէ նորէն շինեցաւ տունն, ինչպէս գրեն Հոգցողք. (pro expensarum factarum in ipsa domo *de nova fabricata*). և երբ Հայք մտան ի տունն, ի 14 յուլիսի, 1497, տուին դուկատ մի, մնացեալն այլ թողլով յետոյ իրենց յաջորդներով վճարել։

Թէ՛ այս ատեն թէ առաջ և թէ յետոյ՝ հարկ էր որ Հոգցողք իրենց մարդկանցմէ տնպահ կամ տնտես մ' այլ դնէին հօն. և այս թուականի մօտ յերեւան գան այդպիսիք, սովորաբար Gastaldi կոչուելով, (տ. 199)։ Ասոնց ծանօթ հնագոյնն է (Ա) Էրիցցօ Անտոն (Erizzo) 1476–81 թուականի յիշուած. քանի մի տարի վերջ այլ 1483–93 թուի իր եղբայրն, (Բ) Alvise Erizzo. թերեւս ասոնցմէ առաջ ըլլայ Նիկոլօ Նիկոլեան մէկն՝ որ յիշուի

1479ին։ Այս ատեններ (թէ ոչ աւելի առաջ) սկսած է Հայոց տան մօտ կամուրջն՝ իրենց անուամբ կոչուիլ (լատ. Pons Armeniorum տ. 199)։ Ասոնցմէ վերջը (թէ և առաջ այլ երբեմն յիշուած) տնպան կոչուած է (Գ) Ամադի Գասպար (Amadi Gasparo), 1493–7, մինչեւ ի մուտս Հայոց ի նորաշէն տունն. յետ որոյ երեւի թէ իրենք հոգացեր են իրենց տան պէտքը, բայց ոչ շատ տարի։ ԺԶ դարուն սկիզբէն մինչեւ տասն տարի (1502–12) յիշուի առաջին Հայ իբր Տնպան (Դ) Աղեքսանդրըն ծանօթ (տ. 309). վերջի տարին (1512) յիշուի Հայոց տան մէջ բնակող իտալացի մի (Հերոնիմ Gedezari), որու կու վճարեն ըրած ծախքերը (57 լիր.) բայց չի կոչուիր տնպան. գուցէ առ ժամանակ մի գործակալ եղած է, մինչեւ յաջորդ տարին (1513) երեւնայ նորէն իտալացի մի (Ե) Պետրոս *Entio*. թէ և սա եւս չի կոչուիր Տնպան, բայց տանը ծածքը կամ երդիքը նորոգել տուեր է, որոյ համար հոգցողք վճարեր են աւելի քան 6 դուկատ։ Հետեւեալ տարին (1514) յիշուի (Զ) Պրիմոս (Primus) անուամբ Հոգցողաց մունետիկն (Præco), որ բնակի եղեր ի Տանն, և որոյ ծախքերն (17 լիր.) վճարուի 1517ին։ — Այս թուականիս որոշակի տնպան կոչմամբ (Gastaldionus) յիշուի (Է) Յովհան *Everutio*?

կամ Gueritio, որ թուի թէ 10 տարի մի պահպանութիւն ըրած է։ Իրմէ վերջ որոշակի յիշուի (Ը) Հերոնիմ Ջիվրան (Civran գրագիրն, Segretario), զոր Հոգցողքն յամի 1529, նոյեմբերի 4, կ՚ընտրեն ի Պահապան (Custode) Հայոց տան, որպէս զի ատեն ատեն հօն եկող Հայերն ընդունի. (per alozare gli Armeni che di tempo in tempo venirano in questa terra). Սա 13 տարի մի այս պաշտօնը կատարեր է. բայց կամ ոչ հաճոյ Հայոց, կամ ասոնք աւելի շատ գալով ի Վենետիկ, ուզեր են իրենց տընէն հանել զնա. և Հոգցողք յամի 1541 (յուլ. 11). իրենց մունետիկի կամ նուիրակի բերնով կու պատուիրեն, ութ օր ատեն տալով, որ տունը թողու Հայոց և ելնէ դուրս. ութ օր վերջը նորէն ութ օր այլ շնորհեն, և եթէ ուշանայ՝ բռնի պիտի հանեն։ Բայց որ և է պատճառաւ՝ նա դեռ հօն մնայ երկայն ամիսներ. մինչեւ յաջորդ տարւոյ (1542, մարտի 8ին) նորէն իբրեւ վերջին հրաման խաւրեն, որ ինչուան այս ամսոյս վերջը պէտք է ելնէ. և նա շնորհակալ ըլլալով՝ խոստանայ. սակայն դեռ քանի մ՚ամիս այլ մնայ. և առջի հրամանէն ամբողջ տարի մի վերջը՝ 1542ի յուլ. 5ին վերջին անգամ խիստ պատուէր ղրկուի, որ եթէ ութ օրէն այլ չելնէ՝ իր կահ կարա-

սկզբը տունէն դուրս փողոցի վրայ թափել պիտի տան. (aliter nui faremo butar la robba sopra la strada: et questo per ultimo et perentorio termine)։ — Թէ ուշ թէ շուտ՝ ելած է Ջիվրան Հայոց տունէն, ուր երեւի որ հանգիստ գտած էր, բայց զրկելով զՀայս։ — Իրմէ անմիջապէս վերջը թէ աւելի ուշ՝ անպայման գրուած է, (Թ) Բարդողիմ. Regia, որ յիշուի յամի 1544, (օգոստ). սակայն նոյն տարւոյ վերջերը (10 Նոյ.) (Ժ) Պերկամոյցի Ֆրանչիսկոս Անտոն և եղբարքն անպայման կ՚ըլլան. բայց Թուի ոչ լաւ ընտրութեամբ և քննութեամբ. վասն զի տարիէ մի քիչ վերջը (1646, փետր. 13) Հոգցողք անվաւեր համարին զայն, որովհետեւ հակառակ էր օրինաց՝ եղբարց կամ ժառանգաց տալ այդպիսի պաշտօն. և դարձեալ, այդ Պերկամացիք տանց հարցընելու իրենց՝ ընդունէր էին քանի մի Հայ. ուստի կու հրամայէն անոնց որ ելնեն. և նոյն օր անոնց տեղ կ՚ընտրուի (ԺԱ) Սանդոյ Գամբոյ (Santo da Campo) անուամբ մէկն, որ և հայերէն գիտէր. Թուի թէ և Ջիվրանն այլ, վասն զի շատ հեղ սա Թարգման կոչուած է (interprete)։ Գովութեամբ գրեն Հոգցողք Սանդոյի համար. (É homo che ha la lingua armena et bono interprete, et etiam per-

sona morigerata, comoda et utile ad essi Armeni). *բայց և խոստիւ պատուիրեն, որ առանց իրենց գիտութեան մարդ չընդունի. ինքն այլ բնակի այն սենեկին մէջ զոր Հայք տան իրեն. և յիշէ, որ ինքն տնպահ է և ոչ տանտէր։*

*Յետ Սանդոյի յիշուած տնպահն է մեղի շատ ծանօթ Հայ մի, (ԺԲ) Սիմոնն ո. Յոլաքեայ (տ. 200, ևն), 1555–6էն մինչև ի մահն, 1577։ Նոյն տարին յաջորդած է նոյնպէս ծանօթն (ԺԳ) Գէորգ ո. Յովհաննու՝ մինչև ի* 1594–5. *իրեն այլ յաջորդեր է (ԺԴ) միւս եւս ծանօթն Մկրտիչ պօրօշխանեայ, † 1608։ Ասոնց հետ յիշած եմք Գէորգայ տնպահութեան սկիզբներում՝ Հայոց նոր սահմանադրութիւնը, որ վաճառականք ելնեն իրենց տունէն և միայն աղքատքն և պանդուխտք բնակին. արդէն Սիմոնի ատեն՝ Աղքատաց տուն կոչուած է տեղին* (de Mendicanti, *որ վուրայկան նշանակէ)։ — Մկրտչի անմիջական յաջորդ չէ դրուած. այլ ինչպէս վկայեն Հոգացողք՝ յետ շատ ժամանակի* (3 *տարի*) *քուէիւք կ'ընտրեն իտալացի մի* (19 *սեպտեմբ.* 1611) (ԺԵ) *Ֆրանչ. Ռիձձարդոյ, կենօք շահ. պատուիրելով՝ որ երբեմն երբեմն իմացընէ իրենց՝ տան մէջ մտնող ելլողը։ Ասոր ժամանակ և բերնով խնդրեն բնակիչ Հայքն,*

որ տանը վրայ արեւանոց (կէօշկի, altana) մի շինուի, ուր կարենան իրենց լուացած զգեստները ցամքեցընել։ Ոփծծարտոյ † է ի սկիզբն 1620 տարւոյ. և շուտով (19 փեբր.) իրեն յաջորդեր է ընտրութեամբ՝ դարձեալ խտալացի մի (ԺԶ) Մէլքոն ո. Ֆռանչօլ. *Battirame*. Սա 30 տարի կատարէ այս պաշտօնը, բայց ոչ և կեանքն ի պաշտօնին. վասն զի ոչ միայն տիրաբար այլ և բռնաբար ու չահասիրութեամբ՝ Հայազգիները քշելով տանը ձեզուան մէջ, օտարներու կու տայ լաւ սենեակները և մթերանոցները։ Այս բանիս համար բողոքեն Հայք (20 ապրիլ, 1650), բերան դնելով՝ մեր այն ժամանակի եկեղեցական և քաղաքական պատմութեան մէջ շատ անուանի (այլ ոչ բաւական ծանօթ) վարդապետը՝ Թովմաս, երբեմն Կ. պօլսի պատրիարք (¹), իր Մէլքոն սարկաւագը և քահանայ մի (Տէր Յովհաննէս ի Պարսից ²).

1. Շատ երկար և հետաքրքրական գրուածներ կան այս վարօրինակ, յանդուգն, խորամանկ և թշուառամահ անձին վրայօք Վենետկոյ դիւանաց մէջ, 1648–57 տարիներու միջոց, (պէտք է գտուին և ի դիւանս Հռովմայ). որ կըրնան ընծայել մեր պատմութեան նոր պատկեր մի, բայց և այլանդակ. և Հայ-Վենետաց Գ. Յեղանակի ամենէն նշանաւոր գիպուածոց մէկն է։

2. Սա այլ ըստ Իտալացւոց՝ Դոմինիկոսի որդի կոչուի. իսկ հայրենիքն ի Հայս Arnavas? գրուած է.

իսկ Թարգման ընեն ազնուական իտալացի մի (Կամիլլոս Մելզոն), որոց հետ կային երեք այլ աշխարհիկ բնակողք։ Հոգացողք պատուիրեն իրենց արբանեկին (fante) քննել. և նա հարցընելով վերոյգրեալ եկեղեցականաց՝ լսէ նոյն գանգատները. նա և՝ թէ Մկրտիչ գիրենք արհամարհելով՝ Մանելուկ կ՝ անուանէր, և իրենց թողուած տան վերի մասին մէջ այլ՝ հաւեր կու պահէր։ Հոգացողք կանչեն զՄկրտիչ (20 մայիս), և քննելով միաբան քուէիւք՝ վճռեն, որ ելնէ Հայոց տունէն, 15 օր ժամանակ տալով, արբանեկին այլ պատուիրեն՝ որ կատարել տայ վճիռը։ — Երեք ամիս վերջը (օգոս. 20, գուցէ յաջորդ տարին) նոյնպէս քննութեամբ և քուէիւք կ՝ ընտրեն Հայ մի (Ժէ) Պետրոս Ոսկան սէնսարը (զոր Իտալացիք գրեն Pietro Toscan, փոխանակ գրելու P. d'Oscan), որ երկար ատենէ ի վեր բնակէր ի Վենետիկ. պատուիրելով, որ հիմայ բնակի ի Տան Հայոց և հոգայ աղքատներն և պանդուխտները։ Բայց ասոր սէնսարութեան և շահուն յարմար չի գար այս նոր բնակութիւնը. իր տեղէն չելլար։ Իմացան Հոգացողքն, հարցուցին, և նա հրա-

գեղեցիկ անուն, մինչ Անտօս լսած անուամբ՝ որ է սահմանս Վանայ, որ և կըրնար գրուիլ Անտառ։

ժարեցաւ ի տեսպանութենէ (7 սեպտ. 1652)։ Նոյն օր հրատարակեցին՝ որ ով կ՚ ուզէ այդ գործը՝ իմացընէ իրենց. քանի մի անձինք ներկայացան. որոց մէջ յարմարագոյն համարւեցաւ և քուէիւք ընտրուեցաւ (ԺԸ) Անդրէաս *Squali* վենետ։ Սա յաջորդ տարին (1653) այլևայլ անգամ հրաման առաւ Հայոց տան նորոգութեանց համար ծախսել 90 դուկատ, նոյնպէս և եկեղեցւոյն սպասուց համար դարաններ շինել. և որչափ ստակի այլ պէտք ըլլար՝ պիտի տրուէր Մ. Ծիտննեայ կտակին հասոյթէն, որ է 465 դուկատ։ Քսան տարիէ աւելի կառավարած է սա Հայոց տան հոգը, և † է յամի 1673 (ի յունիսի)։ Իրեն տեղ՝ նոյն կերպով հրատարակելով փափագողաց մէջ յարմար դատուած և ընտրուած է (11 փետր. 1674) (ԺԹ) Ֆիորավանդէ Փորդա (Fioravante Porta) անուամբ մէկն, որ առջինին պէս Հոգցողաց արքանեակ է եղեր. պատուիրուի իրեն՝ որ Հայոց տան մէջ բնակութեան խցիկ մի և ամբարանոց մի առնու իրեն համար, կերակուրն այլ անոնց հասարակաց խոհանոցին մէջ եփէ, և օտարազգի չընդունի, ևն։ Ասոր ատեն այլ Հայոց տան և եկեղեցւոյն շինութեանց համար 100 դուկատ ծախուց պէտք եղեր է։ Սա վախճաներ է իր պաշտաման մէջ՝ յամի 1676 (նոյեմբ.),

հետեւեալ դեկտ. ամսոյ 11ին սովորական կոչ կ'ընեն. փափագողաց մէկն կ'ըլլայ վախճանելոյն որդին՝ Մկրտիչ, մէկն այլ, (եթէ իր թոռն չէ) Յհ. Մկրտիչ. Ֆրանչ. Battirame, առջի ընտրութենէն և վռընտուելէն (1620) 57 տարի վերջը. բայց հիմայ (14 փեբր. 1677) կ'ընտրուի դարձեալ Հոգցողաց արքանեակ մի (Ի) Բէնէտ Կարարա (Benetto Carara): — Աստ ատեն եղաւ մեծ յեղափոխութիւն մի, Հայ-վենետաց բազմանալով նա և ընտանեօք և հարըստութեամբ ի քաղաքիս. որք միաբանութեամբ ձեռք զարկին շինութեան Նոր (Ս. Խաչ) եկեղեցւոյ, և Նորաձեւութեան Տանն Հայոց: Աստ համար հարկ եղաւ Բենեդի (1682) ելնել տունէն, և տարեկան վարձք ընդունիլ (30 դուկատ). և երբ շինութիւնն սկսաւ շարունակիլ (1685) և լմընցաւ (1688), ի սկիզբն յաջորդ տարւոյ (8 յանուար, 1889) մեծահանդէս փառօք օծուեցաւ. այնուհետեւ ոչ Բենեդի և ոչ այլ օտար կամ բնիկ տնպահի անուն լսուի և ոչ այլ պէտք կար:

Հայք նոյն տարին համագումար ժողոված՝ Նոր Սահմանադրութիւն մի գրեցին նոր կարգաւորութեամբ, և ընտրութեամբ տարեկան պաշտօնէից և վերակացուաց, թէ եկեղեցւոյն և թէ տանն առանձինն. ուր՝ սահմանեցին, որ նորեկ ազգայինք՝ միայն ամիս մի բնակելու

իրաւունք ունենան. և այս օրինաք վարուեցան դար մի, մինչև ի բարձումն Հասարակապետութեան Վենետկոյ (և քիչ մ՚ այլ առաջ), երբ շատ անհատք և ընտանիք թողին զքաղաքս և գնացին ի Լիվոռնոյ կամ ուրիշ տեղ. և շատ ցանցառ եղաւ բնակութիւն Հայոց ի տանն՝ մինչև ի կէս ԺԹ դարուս: — Քաղքին ուրիշ կողմեր բնակող Հայք այլ մարեցան, պակսեցան և տունքն գլխաւորք. Շէհրիմանեան մեծատուն կոմսք՝ ամուրի †. Սեղբոսեանք, Աբելեանք, Ապտուլլահեանք, Աթաճանք, և քանի մի մնացորդքն իտալացեալք և դեռ իրենց ծնողաց մականունը ծածկելով կրող ծերք և պառաւք՝ մի ըստ միոջէ †, մինչև ետքի 1880–90 տարիներուս միջոց: Իբրև նշխարք՝ հազիւ մնան քանի մի աղքատ իտալացեալ կանայք՝ ամենևին անծանօթք հայութեան, բայց եթէ պապուց և մամուց աւանդութեամբ: Միայն մէկ այր մի կայ երկու քոյրերով, Կ. Պօլսի Ալեքսանեան տոհմէ, որ եկած է ի Վենետիկ յամի 1732, և երեք չորս ազգ սերընդեամբ՝ պատուաւոր փաստաբաններ և բժիշկներ ընծայած է Վենետկոյ, մինչև մեր օրերուս, Ալեքսան անունը յիտալերէն Alessandri փոխած. և է ազնուաբարոյ պատկերահան և վարժապետ նկարչութեան յԱկադեմիայն քաղաքիս, Անճելօ —

Դոմինիկոս—Սոփրան անուամբ (ծն. յամի 1854). (սոր տոհմին վրայօք առանձին տեղեկութիւն մի հրատարակեր եմք տասն տարի առաջ իտալերէն, իրեն ընտանեաց հաճութեամբ (1). սորա կինն լեհացի է, և արու զաւակ չունի։

Վենետիկէ դուրս գտուին դեռ վենետաբնակ Հայոց սերունդք՝ յայլ քաղաքս Իտալիոյ և յԱւստրիա, ինչպէս Սեղբոսեան, Հէրմէթեան, Միրմանեան, Աքելեան։

Գ. Երբ խօսքերնուս կարգն և յիշատակք՝ ստիպեցին մեր Բ Ցեղանակէն առ ժամ մի անցնիլ յ'Գն, գուցէ պահանջէին ընթերցողք, որ գոնէ այնքան Վենետահայ ազգայնոց ընտանեաց անուններն այլ լսէին։ Երեք դարուց մէջ՝ ի կիսոյ ԺԶին ցկէս ԺԹիս, հարիւրէն աւելի Հայ ընտանիք ճանչցուած են ի Վենետիկ. բայց միաժամանակ որքան եղած է անոնց մեծագոյն թիւն, չէ յայտ։ Ի կէս ԺԷ դարու (1650) յիշուին 80 արք՝ իբրև բնակողք ի քաղաքին, յայտ է թէ միասամբ կա-

1. Ընտանեաց հայրն Հաճի Եղիա † է յԷստէ քաղաքաւանի Պատուայ, ուր կտաւեղինաց մեծ գործարան մի հաստատեր էր, օգնութեամբ տէրութեան Վենետկոյ. յետ † Մխիթար Աբբահօր՝ իր մէկ տասնամեայ որդին (Մատթէոս) ընծայած է մեր վանուց (1750), բայց ուսմանց ընդունակ չըլլալով՝ դարձեր է առ ընտանիքն, և պատանեակ † է (1757)։

նամբիք. դար մի վերջը (1750) յիշուին 70 արք. 1763ին՝ 80 արք. իսկ իբրեւ ընտանիք յիշուած են 1710ին՝ 27. նոյն ատեն 35 հոգի այլ անհաստատ բնակողք՝ բայց ծանօթ մարդիկ, թող զանծանօթս։ Յամի 1771 յիշէ մեր Մխիթար Աբբահօր յաջորդն՝ ընտանիք իբրեւ 20, ոգիք երկու սեռէ՝ աւելի քան զ100։ Այս մեր դարուս մինչեւ ի կէսն այլ՝ թէ դեռ հայ անուամբ և թէ իտալացեալ Հայոց իբրեւ (ճանչցուած) ընտանիք՝ լսուէին 10 կամ 12, սերունդք 50։ — Յետագայ Ցուցակիս մէջ նշանակուին իբրեւ 50 մի՝ այն 100էն աւելի անուանեալ Հայ ընտանեաց, անոնք՝ որոց երկուքէն աւելի սերունդ կամ ճիւղ ճանչցուած է, և զայն նշանակեն 3 կամ 4 կամ աւելի թիւք սիւնակին. միւս սիւնակին տառքն նշանակեն այն դարերը (ԺԶ–Թ) որոց ատեն ձեւացեր են ընտանիքն և յառաջացեր են սերունդք. ինչպէս տեսնուի՝ շատն ԺԸ դարուն վերաբերին։ Ընտանեաց անուանքն այլ՝ իրենց ի Վենետիկ տոհմին նախահօր անունն է, կամ հօրն՝ որ չէ եկած ի Վենետիկ, կամ թէ եկած՝ բայց զաւակն այլ հետը բերած է և ոչ այս տեղ ծնած։ Այս նախահարց մեծագոյն մասին կանայք՝ վենետուհիք են, ինչպէս և իրենց որդւոց. իսկ որոց որ ամուսինք այլ Հայ ճանչցուած են, զայն նշանակեմք՝ քովը դնե-

լով — Հ. ծանօթ իտալուհի կանոնամբեաց — Ի. որոց որ նշան չկայ՝ չգիտեմք, այլ շատն անտարակոյս — Ի Է: Աստղանիշ անուանք նշանակեն, որ դեռ կայ կամ քիչ տարի առաջ կային այդ ցեղից սերունդք ի Վենետիկ կամ ի Լիվոռնոյ և այլուր, թէ և խառնացեալք. Հաւանօրէն կան և այլ այդպիսիք՝ որք անծանօթք են. և ծանուցելոց շատն այլ՝ մեր քան և աւելի տարի առաջ Հետաքննութեամբ յայտնուեցան: Որ ցեղից որ Հայրենիքն այլ յայտնի են՝ զայն այլ նշանակեմք. որ անուանց քով (·) գրուած է՝ նշանակէ քիչ շատ աւելի ծանօթ և երկարատեւ վաճառական տուն ըլլալը: Այս տեղ անցողաբար ծանուցանելով, որ մեզ ծանօթ 2500 Հայ անուանց մէջ՝ աւելի ծանօթագոյն 500 առնըլով, գրեթէ կէսն Ջուղայեցիք կամ Սիսականք են (Սիւնեաց աշխարհ, Գարապաղ). ասոնց այլ կէսն յատկապէս Հին և Նոր Ջուղայեցի գրուած են. 50 մի Ղափանցի կոչուին, 70 այլ Սիւնեաց նահանգի 25 այլեւայլ գեղերու անուամբ: Իսկ միւս (250) կիսոյն 60 մի՝ յայլեւայլ քաղաքաց Մեծ Հայոց են, 50 ի Փոքր Հայոց, ի Պոնտոսէ և Կիլիկիոյ, 40 մի ի Փոքր Ասիոյ, 40 մի յԱսորւոց, դուցէ նոյնչափ ի Կ. Պոլսոյ և յԵւրոպիոյ կողմանց, 25 մի ի Վրաց և ի Պարսից. ի Մեծ

Հայոց եկողք աւելի Երեւանու կողմէն են, ի Փոքր Հայոց՝ Կեսարացիք, ի Փ. Ասիոյ՝ Անկիւրացիք, յԱսորւոց կողմանէ՝ Ամդեցիք. այս ետքիններէս աւելի՝ Կ. Պօլսեցիք։ Յիշեցընեմք դարձեալ, որ այս Թիւերս համեմատական համարելու է և քիչ քան Թէ շատ. Նոյնպէս յիշեցընեմք ի սկզբան (յերես 175) ըսածնիս՝ Հայ–Վեննետ սերընդոց և խնամութեանց համար։



| | Ազգանուն | Հայրենիք | Դար | Սերունդ |
|---|---|---|---|---|
| * | Աբելեան — Կին Հ. | Կեսան ( Միւնիխ ) | ԺԸ – Թ | 5 |
| | Ադամեան — Իտ. | Զմիւռնիա | ԺԸ | 4 |
| * | — (Adami) — Ի. | | ԺԷ – Թ | 6 |
| | Ագատա (Agiati) — Ի. | Ջուղա | ԺԸ | 5 |
| * | Ալթաճան | | ԺԸ – Թ | 7 |
| * | Ալէքսանեան — Հ. և Ի. | Կ. Պօլիս | ԺԸ – Թ | 7 |
| | Ական — Ի. | | ԺԸ – Թ | 5 |
| | Աղաալեան — Ի. | | ԺԸ | 3 |
| | Ալլան Պապազեան — Ի. | Ռուսիայ | ԺԷ | 3 |
| * | — Lioni | Ամիդ | ԺԸ – Թ | 4 |
| | — de Lion | | ԺԸ | 4 |
| | — Պօղոսեան | | ԺԸ | 3 |
| | Բարակ — Ի. | | ԺԸ – Թ | 6 |
| | Բարունակ — Հ. և Ի. | | ԺԸ | 3 |
| | Բերսեան — Ի. | | ԺԷ – Ը | 3 |
| | Գանցեան (Cantian) — Ի. | | ԺԸ | 4 |
| | Գասպարեան — Հ. | Անկիւրիա | ԺԸ | 3 |
| | Գարագաշ (Rizzi) — Հ. | Կ. Պօլիս | ԺԸ | 3 |

| | Ազգատոհմն | Հայրենիք | Դար | Սերունդ |
|---|---|---|---|---|
| * | Գերագ – Միրման. — Հ. | Ջուղա | ԺԷ – Թ | 8 |
| * | Դրապասուն — Ի. | Մերտին | ԺԸ – Թ | 2 |
| | Երէջանենց, (Iauri). | Ղափան | ԺԷ – Ը | 3 |
| | Թէոդորեան — Հ. | Կեսարիա | ԺԶ – Է | 3 |
| | Խաչատուր — Ի. | Քաղդէացի | ԺԶ – Է | 4 |
| | — | Կ. Պօլիս | ԺԷ – Ը | 3 |
| | Ծարուկ — Ի. | . . . | ԺԷ – Ը | 3 |
| | Հայրապետ (Arabiet). | . . . | ԺԸ | 3 |
| * | Հերմէթեան. | Ջուղա | ԺԸ – Թ | 7 |
| | Ճիկերօղլի կամ Փիրիմ (Figher) – Հ. | Անկիւրիա | ԺԸ – Թ | 6 |
| | Մանուկեան. | . . . | ԺԸ – Թ | 5 |
| | Մարկոս – Ցովհան. | . . . | ԺԶ – Է | 4 |
| | Մարտիրոսեան (Martilengo) — Ի. | Զմիւռնիա. | ԺԷ – Ը | 5 |
| | Մ. Մարտին. | . . . | ԺԷ – Ը | 5 |
| | Մինասեան. | . . . | ԺԸ | 5 |
| | Միքայէլեան (Michieli) | . . . | ԺԸ | 4 |
| | Մուրատ – Բարունակ. — Հ. | Կ. Պօլիս | ԺԸ | 3 |
| | Ցակովբեան. | . . . | ԺԶ | 2 |

| Ազգատոհմն | Հայրենիք | Դար | Սերունդ |
|---|---|---|---|
| Նաւալին — Ի. | | ԺԷ – Ը | 5 |
| Նորատունկ (Casanova) — Հ. | Կ. Պոլիս | ԺԸ | 4 |
| * . Շահումեան, (Saum). | | ԺԸ | 4 |
| . Շէհրիմեան. | Նոր Ջուղա | ԺԷ – Թ | 5 |
| Ոսկան – (Honorato) — Ի. | Նոր Ջուղա | ԺԷ | 3 |
| — Յովհան. | | ԺԸ | 3 |
| Ջուգուրեան – Մարկոսեան (Valle). | Կ. Պոլիս | ԺԸ | 3 |
| * Ջոլաքեան, (Chiolachi) — Ի. | Հալէպ | ԺԸ | 3 |
| — (Խաչատուր). | Կ. Պոլիս | ԺԸ | 3 |
| Պապաճան — Ի. | | ԺԸ | 3 |
| * . Սեղբոսեան — Հ. | Ակն և Կ. Պոլիս | ԺԸ – Թ | 5 |
| Սեֆեր (Ֆրանչիսկ). | | ԺԶ – Է | |
| Սուրեան (Հայն). | | ԺԶ – Է | 3 |
| . Վելիճան — Ի. | | ԺԷ – Ը | 4 |
| Տէրոն, (Tevan). | | ԺԷ | 2 |
| . Քուվալիկ — Հ. | Նոր Ջուղա | ԺԸ | 3 |

.Վաճառական տանց համար յիշելի է (ուրիշ տեղ այլ յիշածնիս), որ ԺԷ դարուն կիսում (1653) Ե Գիտունք կամ Հոգցողք վաճառականութեան՝ վկայէին տէրութեան, թէ արդէն բաւական Հայ վաճառատունք (più d'una casa) հաստատուած էին ի Վենետիկ. դար մի վերջը (1732–58) 12 տունք վաճառականաց թողին հեռացան ի Վենետկոյ. բայց դեռ անկէ աւելի կային մինչեւ ի բարձումն Հասարակապետութեան։ Դարձեալ, զատ ի յիշեալ ընտանեաց և թերեւս աւելի թուով՝ սոսկական կամ ամուրի անտուն հարուստ վաճառականք եղած են. ինչպէս, Գուլնազար Նահապետ, Սինան Պետրոս, Աղամիրէ Զանդ Ա-նտոնէ Քրդահայ, և այլ ոչ սակաւք։

Յիշեցինք տեղ մի (172–3) Նաւատէր կամ Նաւավար Հայերն ի Վենետիկ. առջիններն՝ նշանակեն նա և անոնց վաճառաբեր և վաճառահան ըլլալը. այսպիսիք էին վերոյիշեալ Զանդն, (որոյ նաւն կոչուէր Spirito Santo, Հոգի Սուրբ), Շահումեանք և Նուրիք, որոց նաւք՝ Ս. Խաչ և Տիրամայր Շնորհաց, (Madonna della Grazia), Ալլան (Lioni) Պօղոս, նաւն՝ Ս. Յովսէփ. Պետրոս Սինան, նաւն՝ Galera S. Giorgio, (խալէ Ս. Գէորգ). Առաքէլ Գերաքեան, նաւն՝ Տիրամայր Խաղաղարար (Madonna della Pace). Միքայէլ Նեկրի,

Յովհ. Բեռնարդին, Նաւապետ. և։ Յովհ. Ալբերտինի, զոր՝ յիշող ժամանակագիրն իտալացեալ Հայ կոչէ (G. Albertini, Armeno italianizzato). յամի 1743 (մայիս 5) երբ տէրութիւնն ուզեց քաղաքին մօտ ծովափանց վրայ ալեաց դէմ երկար ամբարտակներ կանգնել, հրաւէր կարդաց նաւատեարց՝ որ Նապոլիէն աւազահող (pozzolona) բերեն. ոչ ոք յանձնառու եղաւ, բայց միայն այս իտալահայն, մանաւանդ թէ Հայ–Վենետոն։ Արդեօք այդ ծովու բնածին ասպատակք՝ միշտ մեռնող կամ Նահանջ–բեկեալ (ըստ Ս. հօր մերոյ Սահակայ Պարթեւի), յիշե՞ն իրենց դէմ պարըսպաց յատակ բերող Հայու մի երթեւեկն՝ նոյն ալեաց վրայ, ի միջոցի երկուց աննման հրաշագեղ քաղաքաց Իտալիոյ, Նէապոլսի և Վենետկոյ։

Ե. Առաջին հայ վաճառականաց նպատակն՝ յատուկ իրենց և իրենց բնիկ հայրենեաց և ընտանեաց շահն էր. վերջնոց՝ (մանաւանդ ԺԹ Յեղանակի՝ որուն կանխաժամ ակնարկ մի կ՚ընեմ), իրենց ընտանեաց ի Նոր Հայրենիս, ի Վենետիկ. որոյ՝ ուրիշ կերպով այլ, արուեստներով և աշխատութեամբ՝ այլեւայլ տեսակ շահ, օգուտ և վայելք հայթհայթեցին։ Ոմանք պէսպէս ձեռագործներով,

*ինչպէս Նախայիշեալ Աղեքսանեանն Եղիա և անդրանիկ որդին Անտոն, Յովհ. Ճէնկէր օղլու (յետոյ* Figher *իտալացեալ), և Աւլոն Բոզ-ոեղ՝ Հնդկակտաւի գործուածովք. Մելքոն Դու-ռէն և Թովմաս Մարտիրոս՝ Սեկ (յղկած կաշի) շինելով. Թէոդորոս Մանուկ՝ Շաքարի գլտարան հաստատեց. գրեթէ ամենքն այլ ԺԸ դարու կիսում. դար մի առաջ այլ* (1670) *յիշուի պարզ ձեռնարուեստ Մարկոս ո. Պօղոսէ՝ քարա-քանդակ* (Tagliapietra)*. կէս դար այլ առաջ* (1617) *աւելի պարզ արուեստաւոր, կօշկար մի. Յովհ. Աղէք, որոյ մականունն Ասորի լսուի, բայց վկայուի Հայ և վաճառական կամ վա-ճառող ըլլալ ի հրապարակի Ս. Մարկոսի, և իր Եփենեան որդին տուած յաշակերտու-թիւն վենետ կօշկարի։*

*Տասք ևս ի Հայ-Վենետաց՝ աւելի քան զձեռագործս՝ մտագործ ճարտարութեամբ յա-ջողուած և հռչակուած են։ Ոմանք բժշկու-թեամբ. ինչպէս շատ հեղ յիշուած Աղեքսա-նեան Եղիայի որդին՝ Անձելօ, († 1796) և թոռն՝ Դոմինիկոս Աղեքսանդր* ( 1806 † 1870 ) *ծանօթ մեզ. — Յովսէփ Հէրմինեան, Մարկոս Հայրապետեան, որ և վիրաբոյժ, և Պօղոս Մա-նուէլ Շէհրիմեան և Յովհաննէս Սեղբոսեան, երի-տասարդ վախճանած դարուս կիսէն առաջ* (1843)*։ Ասոնց ուսումնարանն՝ Պատուայի*

հաչակաւոր համալսարանին եղած է, և առ ժամանակ մի բնակեր կամ հանգիպեր էին ի Վենետիկ, ինչպէս և Կ. Պօլսեցի Ճա-չեանք, հայր և որդի (Մանուէլ և Պօղոս). — Ասոնցմէ քիչ առաջ երեւի Սահակ Ջանճեան. և շատ առաջ՝ Թովմաս Թովմաճեան: Ասոնց հետե-ւող ազգային բժիշկք՝ ուսանողք և դասկերտալք ի Պատուա՝ եղան և կան նաև ի Ներկայիս:

Գեղարուեստից մէջ փարթեալ և հաչակեալ Հայ-Վենետ մի չի յիշուիր Գ Ցեղանակեա մէջ. ի Ներկայիս յիշած եմք մէկ մի, դարձեալ յԱլեքսանեան զարմէն (տ. 495): — Այս Կ. պօլսեցի զարմն՝ բաց ի այս երկու տեսակ ձեռագործ և մտագործ ճարտարաց, ընծայած է և ուրիշ մտաւոր՝ միանգամայն և բանաւոր ճարտարներ, երկու Փաստաբան եղբարք (a-vocat) ռոռունք ազգապետ Եղիայեն. Անտոն Պետրոս Եղիա (1771 † 1845) և Պետրոս Եղիա 1772 † 1850). յետնոյս որդին Անտոն (1808 † 1858) նոյնպէս փաստաբան էր, և սա է հայր քիչ առաջ յիշեալ Անճելոյ պատկերահա-նին: — Ասոնց ժամանակակից և հնագոյն եւս փաստաբանք և օրէնսգէտք եղած են, Մկրտիչ Լեոնի (Ալլան) (1750). Մկրտիչ Տեհրէ-ճան, անցեալ դարու վերջի կիսում. Մանուկ Ալբերտ, ի սկզբան այս մեր դարուս: — Եսայի-նիս ժամանակակից (յառաջին կէս դարուս)

կըրնամք ուրիշ տեսակ մտաւոր ճարտար ա-նուանել զՀամարողս (Computista և Ragioniere) նոր տէրութեան այլեւայլ պաշտօնատանց մէջ. Մանուկեան ցեղէն Թէոդոր մի, Աքսեփեան ցեղէն Յհ. Մկրտիչ մի (ռ. Թովմայի), և սոր որդին Լուդովիկ (Luigi), որ հիմայ թէ՛ փաստաբան է և թէ ուսուցիչ իրաւագիտութեան ի լսարանի Բոլոնեայ քաղաքի, և մանր գրուածներ այլ հրատարակած է։

Ինչպէս գեղարուեստից՝ նոյնպէս և գեղեցիկ դպրութեանց՝ հռչակաւոր կամ յիշեցեալ Հայ-Վենետք չկան, բաց ի Շէհրիմանեան ցեղէն մէկ քահանայէ, Տէր Զաքարիա (1708 † 1784), որ ԺԸ դարու Վենետկոյ գրագիտաց կարգը դասուած է։ Գրուածքն ամէլի երգիծաբանական և երգաբանական կըրնան ըսուիլ, որ և թարգմանութիւններ այլ ունի ի փռանկերէնէ։ Թէ՛ սոր և թէ այս համառօտ ակնարկութեանս մէջ ամէն նշանաւոր Հայ-Վենետաց լիագոյն ծանօթութիւնն՝ վերաբերի Գ. Յեղանակին, եթէ երբեք ի լոյս ելնէ. բայց Զաքարիա իր տեսակին մէջ եզական անձ մի ըլլալով և միանգամայն մատենագիր կամ հեղինակ կոչման արժանաւոր ի համացեղսն, քանի մի տող այլ նուիրեմք իրեն ի ծանօթութեան ([1])։

1. Սա ռ. էր Աստուածատրոյ ; ոյ. Մարգարայ, ոյ. մեծ

Իբրև մատենագիր յիշուած է մեր դարուս կիսում և Մուրատ (Fortunato) Շէհրիման։ Այս ազնուական տոհմին ուրիշ կերպ և մեծ գրաւորական օգուտ արժանի է համարել՝ ԺԷ դարու վերջին քառորդի մէջ ի Վենետիկ հաստատել տուած Սահրատեան տպագրատունն, ուր Թադէոս Երէց տպագրեց Համբարձեալ մեծ ճաշոցը, յամի 1686։ — Քաղաքական տե- սութեանց քննադատ գրող մ՚ եղած է՝ Վե-

Սահրատայ՝ որ ի Սպահան †։ Հօրմէն շատ բան ժառան- գած չէ, այլ թէ ոչ ազգասօրէն՝ չափաւորապէս ապրած և † է։ Քահանայական միհակէն կրթնալ պաշտակուելն, որ նիւթական հարստութեան փոյթ չունէր, այլ մտաւո- րական. թէ բանաստեղծ եղեր է, թէ փիլիսոփայ- ասւր մտօք՝ իր ժամանակին Վենետկոյ անկման (թէ ըստ ուժոյ և թէ ըստ բարոյականի) ընթացքը և պատ- ճառ անձինքը դիտելով, և ուրիշ կերպ չկարենալով, եր- գիծանօք ուզեր է նշաւակել և այն կերպով խրատել. բայց զգուշութեամբ և իր անունը ծածկելով, յամի 1764 հրատարակեր է չորս փոքր հատոր, կեղծ ճանա- պարհորդութեան մը Էնրիկոս Վանտընի (Wanton) ի Թագաւորութեան Կապկաց և Շնագլխաց. յորում այնքան համարձակութեամբ կու ծաղրէ կարծեցեալ գիտունները, քաղաքագէտները, բժիշկները, ևն, որ քննադատք գերա- գոյն դասած են զայն՝ քան զամենայն խոտալայի փիլիսո- փայական վիպասանութիւնս, և նախօրինակ Սուիֆթի Կիւլիվէրի ճանապարհորդութեան։ Յատուկ գրուած մ՚ այլ ունի Բժիշկ և Բժշկութեան անուանեալ, քեր- դուած մի Նշան Աբէլարդեղուի ևն, ևն։

նետկոյ տէրութեան տկարութեան վրայօք՝ ընդդիմաբանութեամբ, Գրիգոր Աշրուլենց († 1789), որ Լեհաց թագաւորի լիազօր երեսփոխան (Plenipotenziario) է եղեր ի Վենետիկ, և մարկիսութեան պատուով ազնուացեալ։ Այս պատիւս ունէին և Սեղբոսեանք. իսկ կոմսութեան և ասպետութեան՝ Շէհրիմանեանք, Մանուկեանք, Ջանդ Աւետիքն, ևն։ — Քաղաքագիտութեան, քաղաքային վարչութեանց կամ պաշտամանց մէջ՝ ի յետին յեղանակիս՝ շատք գործեր են, ինչպէս կըրնան գուշակել տալ վերը յիշած համարողքն։ Մինչեւ ի կէս մեր դարուս՝ Վենետկոյ ներքին վարչութեան (municipalité) այլեւայլ ատենից և բարերարութեան տեղեաց՝

Մասամբ մի Վենետահայ Գրագիտաց և հեղինակաց կըրնանք դասակցել և գծանօթ Տէր Յովհան Յոհովէ՝ Հոլով մականուանեալն, որ շատ տարիներ բնակած է ի Վենետիկ, ուր և † յամի 1691 (24 Նոյեմբ.) 56 տարուան. շատ գրքեր հրատարակած է կրօնական և քերականական, ի լատին, յիտալ և ի հայ լեզու, հեղինակօրէն և թարգմանօրէն. զոմանս տպագրեր է ի Հռովմ և ի Մարսիլիա. այլ շատն ի Վենետիկ ի միջոցի տասն տարիներու (1680–90), ի տպագրատանի Պարպոնի. որոց մէջ նորանշան է՝ փոքրիկ քերականութիւն մի թուրք լեզուի՝ իտալական գրով և բացատրութեամբ։ Սահրատեանց տպագրատան մէջ այլ՝ գիտակումն քրիստոնէութեան (1687)։

հայազգի պաշտօնեայք կային, ոմանք ի Ճէ-
հրիմանեանց և ի Սեղբոսեանց. ետքիններէս
Յովսէփ և իր որդին Յովհաննէս՝ մարկիզք ա-
ռաջին գունդք եղան Օսմանեան տէրութեան
ի Վենետիկ, դարուս կիսուն մօտ։ Իսկ առա-
ջիններէն՝ Մկրտիչ Ճէհրիման կոմսն († 1851),
որ բանասիրական ճեմարանաց մէջ վայելուչ
ճառերով հաճոյ էր ունկնդրաց, յետ երկար
տարի քաղքիս բարերարութեան տեղեաց
ամենէն մեծին հոգցողներէն մէկն ըլլալու,
իրեն և իր մեծահարուստ ցեղին միացեալ
գանձուն՝ ժառանգ ըրաւ զնոյն տեղին. որ
կոչուի Istituto Manin, յանուն Լոդովիկ
Մանինի՝ Վենետկոյ վերջին և գրկեալ դըքսին.
որ իր ստացուածոց մեծ մասը կտակեց՝ որբ
և աղքատ տղայոց և աղջկանց կրթարան մի
կանգնելու. որուն՝ յետոյ ուրիշ շատ անձինք՝
մասն ինչ իրենց ընչից թողուցին։ Բայց քան
զամենն աւելի և քան զդուքսն իսկ՝ վերջին
Ճէհրիմանն՝ ամուրի ըլլալով թողուց իր ստա-
ցուածքը, աւելի քան միլիոն մի ֆրանգաց
և քանի մի տուներ և խանութներ։ Երախ-
տագիտութեան պարտքն՝ կանգնեց իրեն ար-
ձան և արձանագիր՝ Մանինի քով։ Սա՝
կերպով մի իրմով մահացեալ վենետկեան
Հասարակապետութիւնն՝ անմահացընել ուզեց
իր կտակովը. Ճէհրիմանն՝ իրմով հաստատեց

և պայծառացուց զայն։ Կարելի՞ է արդեօք այս Հայ–Վենետը՝ բուն Վենետաց վերջին փառազին՝ փառազն պայազատ անուանել։

Վերջի յիշատակնիս քաղաքագիտաց վրայօք ըլլալով՝ միանգամայն և Շէհրիմանեանց, չմոռնանք այս ցեղէս նշանաւոր մէկն այլ յիշել, եկեղեցական բարձր աստիճանով պատուած, Տէր Յովսէփ մի, ո. Գասպարայ, որդւոյ մեծ Սահրատայ. Թէ և ծնեալ և † (1766) ի Վենետիկ, այլ Հռովմայ քահանայապետական տէրութեան մէջ 40 տարի Ումբրիոյ և Պերուճիոյ այլեւայլ քաղաքաց քաղաքապետ եղեր է։ Վերոյիշեալ գրագէտ Մուրատն այլ Աւստրիոյ տիրապետութեան ատեն՝ Տրեվիս և Ուդինէ գաւառաց այլեւայլ քաղաքաց պաշտօնակալ Նուիրակ (Commissaire) եղած է երկար տարիներ։ Նոյն Աւստրիոյ կայսերութեան բանակաց մէջ զօրավար եղած է Շէհրիման մի եւս, Պօղոս Անտոն (ծ. 1720, † 1790)։

Բայց Հայ Վենետաց քան զայլ ամենայն արուեստս և գործս՝ մեծագոյն և լաւագոյն եղեր է կրօնականն կամ եկեղեցական. և շատ անձինք՝ արք և կանայք նուիրուած են այսպիսի սուրբ կոչման։ Ի պատմական կարգի գրոցս՝ յիշուեցան ի ԺԶ դարէ այլ՝ Հ. Հովսէփն ո. Մկրտչի Պարոնկահայոյ (եր. 422).

անկէ ոչ հեռի ժամանակաւ Եղբայր Յովհան Մնչուէն Անտոնեան կրօնաւորն (տ. 348)։ Անկէ հնագոյն՝ Տիրամօր եկեղեցւոյ մի աւագերէց յիշուի ԺԶ դարուն վերջերը, Գրիգոր Անկիւրացի, Ancyranus, որ չըլլուիր Հայ, այլ անունն կարծել տայ։ Աստ պէս կան քանի մի երիցունք, որոց մականուն թէ հայկական է թէ վենետեան, որով անստոյգ մնայ ազգութիւնն. իսկ ծէսն՝ յայտ է որ լատինական էր, ինչպէս նախայիշելոցն և յետոյ յիշելեաց։ Այսպիսիք են, գերագոյնն աստիճանաւ քան զտոհմակիցսն (Տէր Բարսեղ և Տ. Զաքարիա)՝ Տէր Ստեփան Դոմինիկոս Շէհրիման (1729 † 1806), որ նախ Դոմինիկեան կրօնաւոր ըլլալով, հաւանութեամբ հասարակապետութեան Վենետկոյ՝ ընտրեցաւ առաջ եպիսկոպոս Կաորլէ (Caorle) փոքրիկ վիճակի, յետոյ Գիոճճիայ (Chioggia), ուր բարի համբաւ թողած է։ — Մանուկեան ազնուական տոհմն այլ ընծայած է եկեղեցւոյ՝ երեք պատուաւոր և արժանաւոր հարազատ եղբարք, մին կրօնաւոր (Olivetano, բենեդիկտեան) Հ. Պետրոս (1727–1775). միւսն՝ Տէր Դոմինիկոս (1715 † 1779) աւագերէց Ս. Յուլիանոս եկեղեցւոյ, որոյ իրաւանց ներքեւ է Հայոց Ս. Խաչի եկեղեցին. — երրորդն՝ աւելի հռչակաւոր և արդիւ-

նաւոր, Տէր Յովսէփ (1720 † 1806) կանոնիկոս Տրեւիս քաղաքի մայր եկեղեցւոյն, որոյ և եպիսկոպոսական աթոռոյ տեղապահ եղած է, երկար տարիներ հոգաբարձութեամբ։ — Ամդեցի Ալանեան Բարսղի երկու որդիք ընծայուած են յաբեղայութիւն ի մեր վանս Ս. Ղազարու. առաջինն՝ յետոյ սոսկ երէց եղած է, Տէր Անտոն Լէոնէ մականուանեալ. երկրորդն՝ Հ. Գրիգորիս Լէոնեան՝ ի քարոզութեան † է ի կողմանս Ունկարիոյ (1804) 44ամեայ։ — Աթանանեան պատուաւոր տունէն եղած է Տէր Պօղոս (1702 † 1759). — Եաւրի տոհմէ տէր Յովհան (ծ. 1724 † 1799?) հայածէս քահանայ. — յԱկան տոհմէ յիշուի կղերիկոս մի, Անտոն, ի կէս ԺԸ դարու։ — Անկէ դար մի առաջ (1658) որդէն քահանայցեալ էր Տէր Մկրտիչ ո. Յակովբայ, ոյ. Սահակայ։ Իսկ Նորագոյններէ, Տէր Յովսէփ Մորկոսեան, կամ Ձորաւորեան (Valle ըստ Իտալացւոց) խոհական, ճարտասան, եռանդուն աւագերէց Լորեճճիա աւանի Պատաւիոնի, (1754 † 1835), որոյ համբաւն կենդանի է հօն մինչեւ հիմայ, և մեծ գովասանօք և փառազարդ արձանագրեալ է յաւանդատան եկեղեցւոյն. հրատարակած է և մանր գրուածներ. մին է թարգմանութիւն կանոնի Հարսանեաց մաշտոցիս Հայոց։ Սոէպ տես֊

նուած է սա Մխիթարեան Հարց. հետ. և մէկ թղթին մէջ իտալերէն գրէ (1807). Ես հոգւով և սրտով բոլորովին Հայ և Հայոց եմ (1)։ — Աւելի եւս նորագոյն է մեծապատիւ և մեծարգիւն Տէր Պետ. Սեֆեր, կանոնիկոս Ս. Մարկոս կաթողիկէի, և վերատեսուչ պատրիարքական կղերանոցին, ուր և հանգեաւ յամին 1842։

Ցիշեալներէս տեսնուեցաւ՝ որ ոմանք նաև կրօնաւոր էին, և ասոնց նման ուրիշներ այլ եղած են, անուամբ և անձամբ ծածկուած և ոչ յայտնուած ի վանորայս. որպէս, մէկ Եղբայր մի Դոմինիկեան, ազգական և ժառանգ Պօղոսի Ալանեան (1786)։ — Գուցէ քան զսոսա աւելի ծածկուածք ի մարդկանէ և ծանօթք են իրենց նուիրընկալ Աստուծոյ՝ Հայ — վեննետ Կոստանդ, յայլեւայլ կուսաստանս, և չատք խստակրօնք (2). որպիսի էր յ՚ԺԷ դարու Զողեւ (տոհմի անյայտ), որոյ՝

1. Sappiano tutti li Religiosi Armeni, che io sono di cuore e di animo tutto Armeno e degli Armeni.

2. Այսոնց կարգէն դուրս են արեւելեան սովորութեամբ կուսակրօնքն առանձնացեալք ի տունս. որպիսիք էին ի Վենետիկ, Ջեռնելլո Բոռղոյեռն, † 1775, թաղուած ի վանս մեր. ուր և Ոբրոսլա Տոռվիղյեռն, † 1852, և Ջեռնելլո Ճիկեր, † 1838, են։

ազնուական կամ հարուստ տիկին մի՝ յամի 1666 կտակէ 40 ունկար ոսկի, անոր ընդ Քրիստոսի հարսնութեան (ուխտի) հանդիսին համար. (Նոյն տիկինն ուրիշ Հայու մի եւս կտակած է 7 դուկատ)։ Յաջորդ դարուն (ԺԸ) ծանօթ են, (շատք առանց ընտանեկան մականուանց, զոր կու թողուին՝ իբրեւ հրաժարեալք և մոռացեալք յաշխարհէ). Լաուրա, դ. Գարագաշեան Յարութեան, առ Սալեզեանս, ուխտած յամի 1750։ — Նոյն թուականին յիշուի կնգղաւոր կուսանաց կարգէ՝ Ռոզա, դուստր Մատթէի Կարապետեան. — ուրիշ խստակրօն կուսաստանի մէջ՝ Թագուհի, դ. Նիկողոսի, 1761. — Հեղինէ, քոյր վերոյիշեալ Տէր Յովսեփայ աւագերիցու, ի Տրեվիս. — Մար. Երանուհի (Benedetta) յԱկյան տոհմէ, կնգղաւոր, ուխտեալ ի 1784, † 1791. — Մարիանէ դ. Շէհրիմանեան Պօղոսի զօրավարի, կանոնիկոսուհի ի Գորիցիա. — ուրիշ Շէհրիման մ' այլ թաղած է (գուցէ իրեն ցեղէն) Դոմինիկեան հաւատաւոր մի, Կատարինէ 80 ամեայ † յամի 1798։ — Մեր (ԺԹ) դարուս մէջ յիշուած են Աբեղեան քորք, Մար. Թերեզա և Ճերտրուդա, կնգղաւորք (յԱմենասրբոց վանս, Ogni Santi). — Աննա՝ Ալեքսանեան առ Սալեզեանս, որոյ քոյրն այլ Թագուհի, կնգղաւոր։ — Ասոնցմէ առաջ Նոյն ցեղէ և

աւելի խստակրօն կնգղաւոր ի Ս. Մար. Շնորհաց (alla Grazia) կղզւոյն, Եղջերբերն դ. Թովմայի Արբելեան (ծ. 1780), ուխտեալ ի 1804, ուր պատարագ մատուցեր է մեր ուխտի աբբահայրն Ստեփ. Ագոնց։ Միաբանիցս մէկն այլ գրած է յօրագրին. Սա « զամիսս բազումս
» պատերազմեալ ընդ աշխարհի, և յաղթա-
» հարեալ պղտոր հրապուրանաց նորուն ; ե-
» մուտ յայն երկնաբնակ արգելան, (և եղեւ)
» անուանեալ Մարիամ Մագդաղ »։

Ընդ սմին՝ ընկալցի Աստուած զամենեցուն սոցա Վենետահայոց ճգնութիւնս, վաստակս և արդիւնս, զկուսանացն և միանձանց, երիցանց և երիցապետաց՝, լինել յիշատակ բնիկ ազգայնոցն. և խնդրողի և յայտնողի յիշատակացս՝ ողորմութիւն և ներողութիւն նորին Աստուծոյ, և ներողամտութիւն՝ յորոց հաճոյ թուիցին այսոքիկ կամ ոչ։



# ՑԱՆԿ

## ԱՆՁԱՆՑ ԵՒ ՏԵՂԵԱՑ



# ՈՒՂՂԵԼԻՔ

| ԵՐ· | Տ· | | |
|---|---|---|---|
| 54· | 5 | Armiago | Arminiago |
| 93· | 6 | Կոպիտառ | Կիւքիտառա |
| 99· | 13 | խոստանալով | խոսստանալով |
| 104· | ծն | յետնոյս | յետինս |
| 175· | 18 | հիմայ թէ քաղքիս | հիմայ քաղքիս |
| 195· | 12 | փափագէի | փափագէր |
| 209· | ժ· | una breve | uno breve |
| 216· | 23 | 500 (ֆրանգ) | 600 |
| 306· | 20 | Մերլոյ | Մէոլոյ |
| 318· | 15 | Բանի | Քանի |
| 353· | 11 | եր· 210 | եր· 244 |
| 354· | 17–8 | գրուած չէին | էին |
| 465· | 16 | Ցփսի | Ցփսիի |
| 473· | 14 | acipsia | Cacipsia |
| 479· | 25 | հին են | հին է |
| 495· | 5 | Գէորգի | Յակոբայ |

161· 9–8 Տապանաքարն Թովմայի եպիսկոպոսի՝ հիմայ գտնուի յագարակն Կարդինալէ կոչուած, որոյ տէրն է կոմսն Oddi Baglione.



